# ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՇԽԱՐՀԻ

ՏՆ. Հ. ՂՈՒԿԱՍ ԱԹՈՌԱԿԱԼ ՎԱՐԴԱՊԵՏԻ
ԻՆՃԻՃԵԱՆ

ՏՊԱԳՐԵԱԼ ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ
ՏՆ. ՍՈՒՔԻԱՍԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՍՈՄԱԼԵԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՍԻՒՆԵԱՑ
ԵՒ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԻՆ

ԱՐԴԵԱՄԲՔ ԵՒ ԾԱԽԻՒՔ
ԱՍՏՈՒԱԾԱՍԷՐ ԿԱՐՆԵՑԻ ԵՐԱՆՈՒՀԻ ՏԻԿՆՈՋ
ԿՈՂԱԿՑԻ
ՄԱՆՈՒԿ ԱՂԱՅԻ ՄԱՀՏԵՍԻ ԱՍՏՈՒԱԾԱՏՐԵԱՆ

## ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ



Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1835 ՌՄՁԴ



Busato inv. e dis. Viviani inc.

Երգք առ Աստուած ի վերայ երկրիս։

# ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՇԽԱՐՀԻ

---

## ԳԼՈՒԽ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

### ԼԵԶՈՒ

### ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

Եթէ ցանկալի իցէ զայլ և այլ հանգամանաց հայ-կական լեզուիս ճառ արկանել, զքաղցրութիւն նորա, զվսեմու-թիւն և զկենդանի նկարագրաց իմաստից և գաղափարաց՝ի դարձուածս բանից, յորս պանծալի հանդիսացան գրիչք ոսկի դարուն, ցանկալի ևս իցէ խուզարկու լինել հնութեան նորին եթէ ուստի՞ ունիցի զսկիզբն. իցէ՞ն նորա հիմունք յոր հաստատեալ իցէ, կամ աղբիւրք յորոց ինքն բխիցէ, եթէ ինքն իսկ անդրանիկ՝ի բուն ականց անտի՝ի մարդկայ-ինս բարբառոյ իջեալ անարատ առ մեզ իցէ հասեալ: Զի թէպէտ օտարազգի մատենագիրք՝ որ ակամայ և որ ըստ բերելոյ ոճոյ բանիցն տգիտացան անլուրս և անյար-մարս յօդել՝ Մարաց կամ Ասորւոց և կամ արաբացւոց ծնունդ առնել զլեզու Հայոց և ազգակից, սակայն են մեր հզօր ապացոյցք, եթէ գրոց բարբառ մեր զոր վարեմք այժմ՝ է մայր լեզու, անհաղորդ անզուգակից ընդ այլ լեզուաց: Արդ յառաջիկայ կրկին յօդուածս տեսցես զհաւաստիս հնութեան լեզուիս մերոյ, յառաջնումն՝ եթէ յաշտարակաշինութենէ անտի անխառն առ մեզ իցէ հասեալ. յերկրորդումն՝ եթէ նոյն լեզու էր և յառաջ քան զջրհեղեղն որով խօսէր Նոյ. նմին իրի և նոյն լեզու առաջին մարդոյն Ադամայ:

## ՅՕԴՈՒԱԾ Ա

Հնութիւն լեզուիս սկսեալ յաշտարակաշինութենէ ։

Ի ՊԱՏՄՈՒԹԵՆԷ սկզբնաւորութեան ազգիս գիտեմք հաւաստեաւ եթէ մի 'ի շինողացն աշտարակին, որոց խառնակեցաւ լեզուն [1], էր և Հայկ նախահայր մեր, որ և իբրև իւրովքն հանդերձ դարձաւ յաշխարհ իւր, զիւր լեզուն զիարդ և իցէ եթող 'ի սերունդ իւր և յազգ իւր. որպէս և փոքր 'ի շատէ յառաջ բերաք 'ի գլուխն Բնակչաց ։ Իսկ թէ նոյն հայկեան լեզուն է որ մնաց անդր յաշխարհի իւրում 'ի Հայաստան, և յաջորդութ̃ եհաս մինչև առ մեզ, զայս յայտնի հաստատեն անուանք տեղեաց և արանց հետզհետէ անուանեալք 'ի Հայկայ և 'ի յետագայից նորա մինչև ցայժմ մնացեալք նովին նշանակութ̃ք որովք կոչեցան 'ի սկզբան անդ, և որով նշանակութ̃ վարէ նաև այժմեան լեզու մեր զնոյն բառս. յորոց և զոմանս յառաջ բերցուք օրինակի աղագաւ ։

Արդ սկսեալ 'ի ժամանակաց նորին իսկ Հայկայ, "Շինէ (տես Խորենացին ա̄. 10. վասն Հայկայ) և գիւղ մի, և անուանէ յիւր անուն Հայկաշէն" ։ Եւ 'ի ա̄. 11. գրէ. "Իսկ բլուրն ուր քաջամարտիկքն անկաւ Բէլ, անուանեաց Հայկ Գերեզմանս. որ այժմ ասի Գերեզմանք" ։ Ահա նոյն բառք շէն և գերեզման նովին նշանակութ̃ են մնացեալք և այժմ 'ի մեր լեզու՝ որով կամեցաւ յայնժամ կոչել և Հայկ ։ Որպէս և անունս Հարք, որով կոչեցաւ զլեռնադաշտակն ։ Արմենակ որդի Հայկայ, որոյ անուն թուի եկանել 'ի բառէս այր, զլեառն յիւր անուն կոչեաց Արագած. զորոյն նշանակութիւնն եւս գտանես 'ի մերում լեզուի, որ է Արմենակայ ագած. զի առ նովաւ բնա-

1 Յոհան երանելի 'ի մեկնութեան քերականին ասէ. "Ի բաժանել լեզուացն՝ հնգետասան լեզու առին ազգն Յաբեթի. երեսուն և երկու՝ ազգն Քամայ. քսան և հինգ՝ ազգն Սեմայ" ։ Նախնիքն հրեից յօթանասուն լեզուս դնեն յայնժամ բաժանեալ առհասարակ, պատճառս առեալ 'ի Ժ. գլ. ծննդ. ուր եօթանասուն համարին որդիք և թոռունք երից որդւոցն Նոյի, այսպէս. չորեքտասան՝ Յաբեթի. երեսուն՝ Քամայ. քսան և վեց՝ Սեմայ ։ Իսկ հարք Յունաց եօթանասուն և երկու համարին զլեզուս. զի 'ի յունական թարգմանութ̃ անդ և երկու ցեղապետք աւելեալ յիշատակին, որ է Եղիսա և Կայնան ։

կեալ ազգանէր ըստ խորենացւոյն ։ Արմայիս որդի նորա զանուն զոր շինեաց՝ կոչեաց յանուն իւր, առէ խորենացին, Արմաւիր․ իբր Արմայիսոյ եր կամ երկիր ։ Ըստ այսմ Գեղամ բերէ զմեր բարբառ գեղ անձնոյն․ որպէս և անուանք Գեղաքունի և Գեղամաշէն անդեաց ։ Ցոլակ եղբայր Գեղամայ, իբր յոլացեալ ոգի ։ Գառնիկ թոռն Գեղամայ կրեալ 'ի վերայ զանուն գառին ։ Արամ և Արայ ըղխեն 'ի բառէս այր և արի ։ Այրարատ իբր Արայի արտ, այս ինքն երկիր, դաշտն, կամ արտ․ ուր արդարև արտաւորեցաւ զեղ նորա մեռանելովն անդէն ։ Անուշաւան․ իբր անոյշ հոգի ։ Ցայտնի են և նշանակութիւնք անուանցս Հաւանակ․ Վաշտակ․ Առնակ․ Նորայր․ Զարմայր, իբր զարմանալի այր․ Պերճ․ Բազուկ․ Սկայորդի․ որ առ հասարակ նշանակական են 'ի մեր լեզու ։ Սոփերգունակ և Հրաչեայ, զորմէ խորենացին ա․ 22․ «Հրաչեայ սա կոչի վասն առաւել պայծառերես և բոցակնագոյն իմն լինելոյ» ։ Եւ Շնորհալին 'ի վէպսն․

« ԶԱրայն բնութիւն գեղեցկացեալ,
Եւ ըզՀրաչեայն դիմօք վառեալ » ։

Ըստ այսմ և անուանք հայկազեան թագաւորացս Պաճոյճ․ Տիգրան, իբր տէգ երան․ Վահան, իբր ով ահոգին․ Վահէ, իբր վահան[1] ։ Ըստ այսմ և անուանք յետագայիցս․ Առոգ այր, զոր օտար ազգք եղծեալ փոխեցին յԱբգար․ Սանատրուկ, զոր խորենացւոյն բ․ 36․ ստուգաբանեալ՝ «կոչեցաւ, ասէ, Սանատրուկ, 'ի դայեկէն զանուանակոչութիւն առեալ․ որպէս թէ տուրք Սանոտոյ» ։ Նոյնպէս և Սլաք, վասն դժնեայ բարուցն այսպէս յորջորջեալ ։

Այս ամենայն անուանք շատ իսկ ցուցանեն թէ այժմեան մերս գրոց լեզու՝ էր նոյն իսկ լեզու՝ որով խօսէին նահապետք մեր, և նոյն ինքն իսկ Հայկ ։ Ուստի և է լեզու իջեալ 'ի ժամանակէ անտի աշտարակաշինութեան, անեղծ և հանապազորդեալ մինչև 'ի մեզ․ որով լինի մայր լեզու[2] ։

1 Գրիգոր մագիստրոս 'ի թուղթն իւր որ առ Սարգիս վարդապետ, զանուանս անձանց 'ի նահապետաց և 'ի նախնի թագաւորաց ստուգաբանելով․ և անձանց 'ի նոցանէ այլ և այլ անուանս յարմարելով, այսպէս խօսի․ «Ո՛ւր Գեղամայն գեղեցկութի․․․ ուր Փառնակ փառացն․․․ ուր Հաւանակ դիւրահաւան․․․ ուր Նորայր, վասն զի նոր արիութիւն ցուցանէր․․․ ուր Հրանտ հրափայլ․ ուր Ցոլակ յոլոցեալ զօրութիւն» ։ Որպէս և զՍուր, որ յետ Ա․ Փառնակայ պայազատէր, սուսեր հատու կոչէ ։

2 Այս եւրոպացիս կոչեցեալ Քաղփեն՛լին, իբր ծննդական․ զի 'ի վերայ այնպիսի հին լեզուի շինին դուրք նոյն լեզուին հնացելոյ դոյզն այլայլութեամբ ։

ապացոյց ինչ իցէ և զբարբառս նոցա ազգակիցս միմեանց առնել. այսա թէ ոչ՝ զայդ ընդէ՞ր և զայլոց ազգաց չառնցեմք. զի ազգ իւրաքանչիւր 'ի սահմանագլուխս բնակեալ՝ 'ի հարկէ անխտիր վարէ բազում բառս 'ի բարբառոյ ազգացն այնոցիկ առ որովք կիցն բնակի։ Նմին իրի և մերքն որք բնակեցին 'ի Միջագետս, և 'ի հարաւակողմանս մեծին մանաւանդ փոքուն Հայոց, բազում ինչ առեալ ունէին 'ի հարկէ յԱսորւոց և յասորերէնախօսաց՝ որպէս 'ի բարս զորմէ գրեցաք 'ի վեր անդր [1], նոյնպէս և 'ի բառս ինչ և յոճս խօսից. որպէս և նոքա ինչ ինչ 'ի մերոց. բայց վասն այսր չէ մարթ ասել թէ ընդհանուր լեզուն Հայոց է ածանցեալ 'ի նոցունց. կամ մի և նոյն լեզու է բառիւք ինչ և հնչմամբ զանազանեալ։ Իսկ վասն երկրորդ ապացուցի նորա յանուանէս Արամեան, ներելի է առ ակամայ տգիտութեանն սուրբ գրոց և պատմութեան ազգիս, թէ այլ Արամ է նահապետ Ասորւոց, և այլ Արամ Հայոց, որպէս և այլուր ասացաւ։

Այլ իմն ածանցումն լեզուիս յառաջ բերէ և Ստեփանոս բիւզանդացի 'ի բառն Արմենիա՝ ասելով. "Հայք (Արմէնք) զազգ իւրեանց 'ի Փռիւգիոյ սերեալ ասեն, և 'ի բազումս նմանին փռիւգացւոց"։ Զայս ասէ գուցէ շփոթեալ 'ի բանից Սիբիլլայի՝ որ վիպակաւ 'ի Փռիւգիա դնէ զլեառն Արարատեան, որպէս կարես տեսանել 'ի գլուխն Ներանց. և զի ընդ յիշելն զԱրարատ լեառն յորում էջ տապանն Նոյի՝ զՀայս յիշէին, անտի կարծեմ համբաւեալ առ ոմանս՝ 'ի փռիւգացւոց սերեալ զՀայս, զոր ոչ ասեն այլ օտարազգի մատենագիրք և ոչ մերքն, ուստի և ոչ Հայք. վասն որոյ ըստ կամի և 'ի լրոյ այլոց դնէ Ստեփաննոս թէ Հայք ասեն սերեալ զինքեանս 'ի փռիւգացւոց։ Իսկ պատմութիւն սուրբ գրոց յայտնի գրէ զայն ինչ՝ յորմէ զհետ գայ հաւաստեաւ փռիւգացւոց սերեալ լինել 'ի Հայոց. զի ըստ սուրբ գրոց նախնի նահապետք ամենեցուն 'ի հայաստան էին, և անտի ան-

[1] Գրեցաք յառաջագոյն, և այժմ դարձեալ հարկ է երկրորդել, թէ միջնաշխարհ մեր մեծին Հայոց՝ ուր էր բնիկ նիստ թագաւորաց մերոց և մեծամեծաց, և ուր երևէր բնիկ հայկական կերպարանք, հայկական վարք և լեզու, երբ անծանօթ իմն էր նախնի մատենագրաց Յունաց և Հռոմայեցւոց։ Գրեալ եմք ևս թէ կերպարանագրութիւն այսր կողման մեծին Հայոց՝ և առաւել հիւսիսականաց որչափ զանազանէին 'ի կերպարանաց Ասորւոց. զի ազգ մեր անդր 'ի միջնաշխարհին բնակեալք՝ բերէին կերպարանս կովկասայնոց, որ զանազանի յոյժ 'ի կերպարանաց բնակչացն 'ի հարաւակողմանս։

թօվպացւոց լեզուն 'ի հայկականէն՝ Թէ հայկական լեզուն յեթօվպացւոց է ածանցեալ, որք են հաբեշք։

Նա այսպէս զաշտարակաշէնն Հայկ եղեալ հաւատեա սկզբնաւորող այսր մայր լեզուի մերում, ծաւալող լեզուիս արտաքոյ մեծին Հայոց պարտ է ասել զԱրամ նահապետ, զորմէ գրէ Խորենացին Ա. 14. Թէ յետ վանելոյ զՊայապիս Քաղեայ տիտանեան, որ բռնացեալ ունէր զմիջոց երկուց ծովուց զՊոնտոսին և զմիջերկրականին, զոր Ովկիանոս կոչէ, որ է ասել փոքր Ասիա, " Հրաման տայ՝[1] բնակչաց աշխարհին ուսանել զխօսս և զլեզուս Հայկական „[2]։

Յանցանել ժամանակաց այս գլուխս լեզու հայկական յայլ և այլ գաւառական բարբառս փոփոխեցաւ, որպէս և յայլ ամենայն լեզուս է տեսանել. որոց Թիւ եօթն յիշատակին առ նախնիս[3]։ Սոքա են՝ Ա. Կորճայք։ Բ. Տայեցի։ Գ. Խութային[4]։ Դ. Չորրորդ հայեցի. այսինքն է՝ Չորրորդ Հայոց։ Ե. Սպերացի։ Զ. Սիւնի[5]։ Է. Արցախային։ Իսկ վճիտ հայկական լեզու մնաց 'ի միջերկրեայ գաւառս և յարքունիս առ Թագաւորազունս, որք բնա-

1 Աբբատեր 'ի Գանձարանին արամեան Թղթ. 21. վկայեալ, զայս հրաման առեալ լեալ 'ի Հայկայ։

2 Զայս հրաման ուսանելոյ զլեզուն՝ Աբբատեր Թղթ. 22. վասն բնակչաց Կապադովկիոյ աշխարհին միայն առեալ, որ առաջ կոչեցաւ բանակին փոքր Հայք, վասն այնորիկ կոչեցին առ Յոյնս բառ Խորա. աւանին Հայք. նմին իրի և Սարաբոն 'ի ժԲ. 533. նոյնալեզուս եզ առ զայն մասն Կապադովկիոյ՝ որ ընդ հարաւ ձգի 'ի Յորոս Կիլիկիոյ յանգեալ. իսկ ընդ արեւելս՝ 'ի Հայս և 'ի Կողքիս։ Բայց մեք զայս բան Խորենացւոյն որ վասն Ա. Բ. Գ. Հայոց՝ համառօտելէ ընդունել յորոշումն անուան մերոյն Արամեայ՝ յանուանէ իւրեանցն յոյն Արամայ որ կեղծէին, որպէս ցուցցուք 'ի փոքր Հայս. և զբառս աշխարհի ոչ առել փոփխելք միայն վասն բնակչաց Կապադովկիոյ. զի նախագրեալ բան Խորենացւոյն ընդհանուր է վասն համօրէն փոքուն Ասիոյ ասացեալ. ուստի նաև հրաման Արամայ յուսանել զլեզու՝ ընդհանուր վասն բնակչաց փոքուն Ասիոյ. Թէ և զմիմիայն փոքր Հայք մնացին ընդ անրութեամբ Հայոց՝ (որոյ մի մասն էր և Կապադովկիա), 'ի փոքր Հայս եւեթ մնաց այն լեզու։

3 Զայս գտանեմք 'ի մեկնութեան հին քերականութեան՝ համառօտեալ 'ի ձեռն Յոհաննու Երզնկացւոյ. ուր այսպէս բերէ 'ի Սանդփանոնոսէ. " Եւ գործեալ ղօրս լեզուիք զխօսելն բավանդակ զբառսն գեղջկականս, որպէս զԿորճայն և զՏայեցին, զԽութայինն և զՉորրորդ հայեցին և զՍպերացին և զՍիւնին և զԱրցախայինն. այլ մի միայն զմիջերկրեայսն, (կամի ասել զարարատեան նահանգին), և զՈստանիկան։ Վասն զի այտանիք արտաքինք են 'ի տաղաչափութենէ, այլ և օգտակարք 'ի պատմութիւն. զի մի՛ վրիպեսցի անընտել գաւառ լեզուացն „։

4 Սոքա են տառանցիք. զորոց տես 'ի մեծ Հայս 72. 73։

5 Այժմեան լեզու ազուլեցւոց բարբառք տարբերեալ ոչ միայն 'ի գրաբառէն՝ այլ նաև յամենայն աշխարհաբար լեզուէն՝ Թերեւս է մնացորդ նախնի սիւնեցւոց. զի Ագուլիս 'ի Սիւնիս անկանի։

կեալն 'ի կողմն ինչ չորրորդ Հայոց. Նմին իրի զայն լեզու կոչէ Միջերկրեայ և Ոստանիկ. իսկ զնախագրեալ գաւառական լեզուս անուանէ Եզերական, ըստ որում յեզերս՝ կամ 'ի գաւառսն որ կան 'ի ծայրս Հայաստանեայց՝ այնպէս խօսէին: Կորիւն և զփայտակարանին յիշելով, զոր կոչէ կողմանս Մարաց, առէ լինել խեցբեկագոյն և խոշորագոյն լեզու:

Արժմեան աշխարհաբառ լեզու բնակչաց որ ընդ տէրութեամբ օսմանեանց՝ թուի լինել մնացորդ լեզուի նախայիշեալ չորրորդ Հայոց. իսկ սկզբնաւորութիւն աշխարհաբառ լեզուին երևի լինել 'ի մետասաներորդ դարուն. զի հետք ինչ նորուն գտանին ուրեք 'ի թուղթն Մագիստրոսի. ապա թուի ծաւալեալ յերկոտասաներորդ դարու. ըստ որում բազում ուրեք տեսանի առ Մատթէոսի պատմագրի և առ Միխիթար բժշկի. ևս առաւել յաճախեալ յերեքտասաներորդ դարու, զոր ցուցանեն գրուածք Գրիգորի Անաւարզեցւոյ և Ստեփաննոսի Օրպելեան 'ի գլուխն կը: Բայց և սոյն այս աշխարհիկ բարբառ այլ և այլ է ըստ այլ և այլ կողմանց. առաւելեալքն տարբերութեամբ են Ագուլեցւոց, Վանեցւոց, և Մշկաց, զոր յիշեալ է մեր 'ի Նոր Հայաստան 'ի թղթ. 161. նաև Բէյլանցոց որ առ Անթաքէէիւ՝ այսինքն է հին Անտիոքաւ, որ կարի օտարաձայն է. յորմէ թուի հայկազեան ինչ գաղթականի 'ի վաղուց անտի բնակաւորեալ անդանօր:

## ՅՕԴՈՒԱԾ Բ

### Հնութիւն լեզուիս 'ի ժամանակաց անտի Նոյի:

Յետ յառաջ բերելոյ զհաւաստի պատճառս 'ի նախնի յիշատակարանաց առ 'ի ցուցանել զհնութիւն լեզուիս 'ի ժամանակէ անտի աշտարակաշինութեան, ածցուք 'ի մէջ և զայլ հաւանական պատճառս, եթէ սոյն այս լեզու էր և առաջին մարդոյն նախ քան զաշտարակաշինութիւնն:

1 Զի և Խորենացի զսահմանագլուխն անուանէ եզր հայկական խօսից." Եւ յարևելից կողմանէ վէրէ հայկական խօսից կողմնակալս ,,. Բ. 8:

## Ա. Առաջին պատճառ 'ի պատմութենէ սուրբ Գրոց և արտաքնոց :

Օտարամանէ հարկ է ընթեռնուլ 'ի գլուխն Բնակչաց զերրորդ յօդուածն ողջոյն և 'ի միտ առնուլ, թէ առաջին նահապետք սակս բազմամանալոյն իւրեանց սկսան ցրուիլ, և ելանել արտաքս քան զաշխարհս Հայոց, ուրանօր բնակեալ կային զամս իբր 150. ընդ հայրական կառավարութեամբ նահապետին Նոյի : Եւ քանզի վասն գտանելոյ տեղի բազմութեան իւրեանց ցրուեցան նոքա, ապա ոչ ամենեքին ելին յաշխարհէս, այլ մնացին անդանօր նոքա որք ունէին տեղի բաւական 'ի պէտս իւրեանց, և յարօտ խաշանց և անասնոց իւրեանց [1]. անդանօր մնաց և Նոյ նահապետ. զի յետ գրելոյ սուրբ գրոց թէ Նոյ 'ի հայաստանս ել 'ի տապանէն՝ ոչ յիշէ ինչ զփոխադրելոյ նորա այլուր :

Արդ գաղթականքս այսոքիկ իբրև հասին 'ի Սենաար, անդ բուռն հարին շինել աշտարակ, որ էր գործ չարութեան [2], որպէս յայտ առնէն գիրք Իմաստութեան Ժ. 5. ուր միաբանութիւն չարութեան կոչէ զժողով աշտարակաշինացն. և

[1] Արդարև մերժելի է այն կարծիք ոմանց, որք զամենայն մարդիկ միահամուռ ասեն ելեալ յերկրէն արարատեան, կամ յառաջին բնակարանէ իւրեանց. և իջեալ 'ի դաշտն Սենաար. զի զայդ ոչ 'ի սուրբ գրոց և ոչ յարտաքին մատենագրաց մարթին ցուցանել : Այլ ընդ հակառակն ունիմք վկայութիւն գրաւոր յարտաքնոց զնախայիշեալն Մարբաս՝ որ յայտ առնէ ոչ գնալ ամենեցուն, այլ մնալ յԱյրարատ. որոյ վկայութիւն զօրաւոր է յայտնապէս. Թող զի ընդդէմ պատմութեան Թուի Թողուլն ամենեցուն զերկիրն՝ ուրանօր 'ի հարկէ ինչ ինչ ունէին շինեալ. ունէին և այգեստանս և անդաստանս անփոխականս որք էին ինչք և փարթամութիւնք այնր ժամանակի. և զիարդ հնար էր առաջին նացա թողուլ զայնպիսի անդաստանս և հեռանալ, ուր ոչ գայր երկիւղ թշնամեաց կամ ահ աւազակաց : Նա առաւել ընդդէմ Թուի Թողուլն Նոյ նահապետին զառաջին զիւր բնակութեան տեղի :

[2] Զանց առնեմ 'ի մերժել զկարծիս նոցա՝ որք զաշտարակաշինութիւն ոչ համարին գործ ամբարշտութեան, յոյր սակս կարեն առաւանել 'ի մեկնիչս. այլ վասն ամենայնի ընթերցեր 'ի գլուխն Բնակչաց զողջոյն յօդուածն Գ : Ի բաց թողում հերքել և զայս առելն, թէ ամենեքին իջին 'ի Սենաար շինել զաշտարակն, այլ ոմանք անմեղ մնացք, իսկ ոմանք չարութեամբ մասն շինէին. ուր առհասն Եբերայ չունելով ինչ միտս չարութեան, նմին իբր առաջին լեզուն անարատ մնաց 'ի տոհմին նորա : Այս ամենայն բանք են անդէպ մեկնութեք բանից սուրբ գրոց, և լոկ կամի ինքնասադրեալ 'ի հրէից, և 'ի նոցունց անցեալ 'ի քրիստոնեայս. նաև ընդդէմ բանից սուրբ գրոց, որ յայտնի գրէ խառնակեալ Աստուծոյ զլեզուս ամենեցուն անդ՝ ուրանօր շինէին. որպէս զի գաղթեսցին 'ի շինելոյ :

որպէս ցուցանէ նաև օձն այն սուրբ գրոց ծննդոց ժա. 5. իջանել Աստուծոյ 'ի տեսանել զգործն. զի այս կերպ ասացուածոյ ցուցանէ զդժհաճութիւն Աստուծոյ ընդ գործն. որպէս և 'ի կործանմանն Սոդոմայ այսպէս գտանեմք ասացեալ Աստուծոյ. զնոյն ցուցանէ և նորահաս պատիժ[1] խառնակութեան լեզուացն 'ի շինօղսն. և ապա դադարեցուցանելն զգործն և ցրուելն զնոսա անտի: Հայկ որ էր մի 'ի շինողացն և 'ի պատուհասելոցն՝ ոչ կամելով այլ ևս միաբան մնալ ընդ նոսա որք յայն գործ միջամտեալ եղեն՝ ել անտի, բայց ոչ գնաց այլուր որպէս այլքն, այլ դարձաւ յառաջին տեղին արարատեան՝ ուստի ելին յառաջինն. և անդ եգիտ աստ և անդ բնակիչս՝ որոց չէր գնացեալ 'ի Սենաար. զորս ընդ իւր և առեալ միաբան մի ժողովուրդ կացոյց ընդ իւր. յորս որպէս հաւանական թուի՝ եգիտ և զնոյ զառաջին նախահաւ իւր[2].

Այսպիսիկ 'ի միտ առեալ՝ պարտ է ասել և ճշգրտիւ մտադիր լինել նաև միւս բանից սուրբ գրոց, ուր զպատժելոյն գրէ այսպէս ասելով. Ծննդոց ժա. 7. "Խառնակեսցուք անդ զլեզուս նոցա,,: Եւ 'ի 9. "Անդ խառնակեաց տէր Աստուած զլեզուս ամենայն երկրի,,: Որով բանիւ յայտ առնէ, թէ միայն անդ՝ ուրանօր շինէին զաշտարակն՝ խառնակեաց Աստուած զլեզուս. և արդարև այնպէս իսկ վայել էր արդարութեան Աստուծոյ: Քանզի այս խառնակութիւն լեզուաց գոլով պատիժ՝ միայն զնոսա պատժել արժան էր՝ որք զշինուածն զայն գործէին զարժանաւորն պատժոյ. իսկ զնոսա որք չէին միաբանեալ յայն գործ աշտարակաշինութեան, և ոչ իսկ անդր գնացեալ, հակառակ էր արդարութեան Աստուծոյ պատժել և զնա

1 Աստուածայինն. նոր պատիժն յայտնի կացուցանէ զմեծութիւն չարեաց այն սկզբնական ամբարտաւանից, որք վասն ամբարտաւանութեան բուռն հարկին ասելով. "Արասցուք մեզ անուն,,: Աստուած որ բաց իւրաքանչիւր մեղաց և զարժանաւորս պատիժն հատուցանէ՝ այնպիսի պատիժ առաքեաց 'ի վերայ նոցա՝ որ արդարև անուանի արար զնոսա, բայց 'ի նախատինս իւրեանց: Եթէ ասէր պատիժ անձնական՝ միայն 'ի ժամանակս իւրեանց անէր. այլ առ 'ի մշտնջենաւորել զորում բաղձային՝ եւս պատիժ ինչ յօրդւոց յորդիս 'ի սերունդս իւրեանց, որ ոչ վերջանայ: Զի զայլ ամենայն պատիժս զոր 'ի յԱստուծոյ առաքեալս 'ի գիրս սուրբ գտանեմք և ընթեռնումք միայն. այլ այս է մի միայն պատիժ, զոր տեսանեմք և լսեմք հանապազ 'ի լեզուս իւրաքանչիւր ազգաց նոցա. զոր քանզի ոչ ոք կարէ բառնալ, անմոռաց մնայ անուն և յիշատակ նոցա 'ի գործ անմտութեան իւրեանց զոր խորհեցան:

2 Վասն այսր ամենայնի տես զոր ինչ գրեալ է մեր 'ի գլուխն Բնակչաց. յօդ. Ը. 'ի գիտելիսն վասն բնակութեան Նոյի.

մեզան : Եւ որպէս ամենեքեան ընդունելին՝ ոչ անկաւ ընդ այսու պատժով Նոյ նահապետ արդարն և անմեղն, զի չէր միաբանեալ 'ի գործ աշտարակաշինութեան. զնոյն ապա պարտ է ասել և զայլոց, որոց մնալով 'ի հայաստան ընդ Նոյի, ոչ միաբանեցան ընդ այլոց, և ոչ իսկ ընդ նոսին գնացին : Այլա ասելոյն մեր, յայտնի ցուցանէ ոչ խառնակեալ Աստուծոյ զլեզուս բնակելոցն յերկրեանս առաջին աշխարհին արարատեան. զորս եգիտ Հայկն նահապետ մեր աստ և անդ :

Ի միտ առեալ այսպէս զհարազատ պատմութիւն խառնակութեան լեզուաց բանիւ սուրբ գրոց և արտաքնոց՝ ինքնին ընդունի ընթերցողն զոր ինչ ունիմք 'ի վերայ բերել : Բաւական է յաւել ածել թէ Հայկ, որ կրեաց զայս պատիժ խառնակութեան լեզուի, եւ 'ի միաբանութէ նոցա որք շինեցին, և գնաց ոչ այլուր որպէս այլքն, այլ յառաջին յիւր հայրենիսն՝ ուստի ելին. ուրանօր գիտէր թէ մնացեալ կային նախնիք իւրեանց՝ որք ոչ ձեռն արկին յայս գործ, ուստի և ոչ կորուսին զլեզու իւրեանց. ուրանօր գիտէր և զլինել Նոյի նախահաւուն իւրեանց : Բանաւորն Նեբրովթ պատգամ առաքէր մեկնել յերկրէ անտի և դառնալ, զխստութիւն ցրտութեան պատճառ բերելով, նաև չարիս սպառնալով : Հայկայ յանձն առնուլն զցրտութիւն սահմանանին, և զմահուչափ պատերազմել ընդդէմ Նեբրովթայ, զորոյ գիտէր զզօրութիւնն : Այս ամենայն յայտնի ցուցանեն թէ Հայկ ոչ կամէր կալ 'ի միաբանութեան նոցա և 'ի պատժի անդ բաժանման լեզուաց, զորոյ անձամբ զփորձ առեալ էր, այլ մնալ այնպէս որպէս էին նախնիքն իւր :

Արդ այսու խորհրդով դարձեալ Հայկայ յառաջին արարատեան երկիրն, և գտեալ անդէն բնակիչս յառաջնոց՝ որք խօսէին առաջին լեզուաւ, ընդ որս և միացեալ՝ եղև մի ազգ և մի ժողովուրդ, հարկ էր կամ նոցա թողուլ զիւրեանց լեզուն և կամ Հայկայ, և միոյն զմիւսոյն ուսանել զլեզու : Զայս իմացեալ քաջ՝ ամենայն ոք դիւրաւ կարէ իմաստասիրել, թէ զիարդ մարթ էր Հայկայ՝ որում այդչափ սիրելի էին նախնիքն իւր, և որ զնորաստացիկ լեզու իւր քաջ գիտէր լինել երկնաւաք պատուհաս՝ չթողուլ զիւրն և ուսանել զլեզուն նախնեաց իւրոց, որ և էր լեզու անմեղութեան ժամանակի, և որով սուղ ինչ յառաջ և ինքն վարէր և հայր իւր Թորգոմ. առ որս այնչափ էր սէր նորա՝ մինչև զտեղին Հարք անուն իսկ և իսկ յիշատակ

արձանագրել յանուն Հարց իւրոց, որպէս գրեալ եմք 'ի գլուխն Բնակչաց ։ Արդ՝ որ անաչառ միտօք ուղիղ քննա- թանեսցէ զասացեալքս, ինքնին ընդունի զայս մեր կար- ծիս [1] . զի յայտնի տեսանէ 'ի գործս Հայկայ՝ թէ յոյժ ախորժական էին նմա նախնիքն իւր և վիճակ և լեզու և հաւատք իւրոց նախնեաց, մանաւանդ Նոյի՝ որ կենդանի էր տակաւին . և զիարդ յամենայնի չնմանէր նոցա ։

## Բ . Երկրորդ պատճառ առեալ յանուանէ նախնի որդւոց ։

Այս պատճառ ամենայնիւ հաստատէ զառաջինն . զի ամենայն հնագիրք և ողջամիտ քննաբանք 'ի պատմութիւս վաղեմի ժամանակաց յորժամ գտանեն տեղի ինչ 'ի վա- ղուց մնացեալ՝ որոյ անուն բերէ յարմարութիւն նախ- նի պատմութեան, իբրև մեծ ինչ յիշատակարան կամ մատեան 'ի մէջ բերեն 'ի վկայութիւն հաստատութեան այնր պատմութեան ։ Այսպէս տեսանեմք 'ի հնախօսութիւս յունաստանի, Իտալիոյ և այլոց, յորժամ չիք առ 'ի ժա- մանակէ անտի մնացեալ ինչ մատենագրութիւն [2] ։ Զայս է տեսանել և 'ի հնախօսութիւս Մովսէսի . զոր օրինակ 'ի գտանելն զերկուս գետս Եփրատ և Տիգրիս նովին ա- նուամբ մնացեալս 'ի ժամանակաց անտի Մովսէսի՝ ոչ ոք տարակուսի, այլ ամենեքին ընդունին թէ են նոյն՝ զորոց գրէ Մովսէս 'ի գիրս Ծննդոց ։

Արդ որպէս անուանք տեղեաց աշխարհի մերում Հայ- կաշէն, Գեղամաշէն և այլ այսպիսիք, են իբր արձանք կամ գիր և յիշատակ Հայկայ և Գեղամայ և այլոց, որով ցուցաք զհնութիւն լեզուիս լինել 'ի ժամանակէ անտի Հայկայ, նոյնպէս ունիմք յաշխարհի մերում և տեղիս, որք արձանագրեն զյիշատակ նոյեան ժամանակի յառաջ քան զՀայկ . և որ առաւելն է՝ են տեղիք առհասարակ 'ի շրջակայս արարատեան լերին՝ ուր եւ Նոյ 'ի տապանէն,

---

1 Ազգասէր ևս ընթերցեալ միայն զայս պատմութիւն Հայկայ 'ի գիրս Խո- րենացւոյն՝ հաւանեալ ցուցանէ զին- քըն 'ի Թղթ . 2 . ընդունելոյ զա- ռաջնումն լեզուին մերոյ . բայց առաւ իբր առ ունի չհամաձայնելոյ 'ի բազ- մութէ այլոց մատենագրաց՝ ոչ ընդ- ունի ։ Բայց անկ էր նմա յուշ առնել թէ նոքա ամենեքեան չունէին ինչ բնաւ տեղեկութիւն ոչ պատմութեան և ոչ աշխարհագրութեան աշխարհիս մերոյ ։

2 Անուանք անձանց և տեղեաց նախնի ժամանակաց են առեն իբր ար- ձանք և յիշատակարանք, կամ թէ անգիր մատեանք . որք յայտնի կա- ցուցանեն այնպէս՝ որպէս թէ 'ի գիրս գրեալ էին ։

որք են իբրև անսուտ վկայք անցից և դիպուածոց՝ զորոց պատմէ Մովսէս եղեալ առ Նոյիւ, զորս մի ըստ միոջէ յառաջ բերցուք աստանօր առ 'ի հաստատութիւն ասացելոցս ։

## ՆԱԽՋՈՒԱՆ

Հայկազունք առ հասարակ յայտնի վայրի աւանդեն Նոյի արարեալ զիւր նախկին իջևան յետ ելանելոյ 'ի տապանէն, և աստանօր կալեալ զիւր բնակութիւն. և նորին ազգաց այսպէս անուանեալ։ Եւ ահա բառքն են հայկականք, զնոյն նշանակութիւն ունելով որով կոչեցաւ Նոյ և որդիք իւր, այսինքն է նախ իջևան։ Այս աւանդութիւն Հայոց զոր մեք լսեմք միշտ՝ է աւանդութիւն վաղեմի յոյժ 'ի նախնի նահապետաց իջեալ, յորոյ վկայութիւն ունիմք զՅովսեպոս. զի նոյն աւանդութիւն կայր 'ի Հայս և 'ի ժամանակս Յովսեպոսի որ ասէ[1]. "Իսկ զայս տեղի (այսինքն զտեղի ելից Նոյի) Հայք կոչեն Աբովադիրիոն. զի անդանօր փշխարս պահեալ տապանին մինչև ցայժմ ցուցանեն բնակիչք"։ Յունական ձայնդ ափովադերիոն՝ Թարգմանի 'ի մեզ տեղի ելից, չու, իջևան. սովին բանիւ, որպէս ասէ մեկնիչն, կամի ասել Յովսեպոս՝ թէ Հայք այնպիսի անուն տային տեղւոյն՝ որ յունարէն թարգմանեալ Աբովադիրիոն հնչէր. որ է նոյն ինքն տեղին Նախջուան։ Զայս յիշէ նաև տեղագրութիւն Եւսեբեայ։ Արդ՝ որպէս 'ի Յովսեպոսէ[2] և այսր մնաց միշտ և անունն և աւանդութիւն վասն

1 Հնախօսութիւն գիրք ա. գլ. 3։

2 Յոյժ զարմանալի կամք ընդ բանս Սէն Մարդէնի 'ի Ցիշատակարանին հայաստանեայց տպագրեալ 'ի Փարէզ 1818. հատոր ա. Թղթ. 267. որոյ յոյժ դժուարին կարծելով զանունս Նախջուան 'ի ժամանակաց անտի Նոյի մնացեալ. 'ի մտի ունէր 'ի քրիստոնէից Հայոց զայս անուն հնարեալ. բայց քանզի Պտղոմէոս՝ մանաւանդ Յովսեպոս յիշեն, ասէ, զայս քաղաք, որք բազմօք յառաջէն քան զժամանակ քրիստոնէութեան Հայոց, արդ (իբրև բանադատեալ ինն ասէ) պարտ է համարել զայս անուն հնարեալ 'ի Հրէից՝ որք 'ի շրջակայս Նախջուանու բնակէին։ Զարմանայ յոյժ թէ զիարդ համաձայնին բանք Յովսեպոսի ընդ աւանդութեան Հայոց՝ զորոց զաւանդութիւն ամենևին ոչ կամի ընդունել. բայց զաւանդութիւն և զվկայութիւն արաբացւոց և Տաճկաց ամենայն ուրեք ամենայն ոգւով ընդունի։ Արդ ասէ 'ի Թղթ. 268. "Մի միայն միջոց առ 'ի բացատրել զայս համաձայնութիւն երկոցունց աւանդութեանց՝ յայնչափ տարբեր ազգերաց յառաջ եկելոց առ մեզ, (խնա 'ի հայկազանց և 'ի Յովսեպոսէ), է համարելն թէ անունս Նախջուան՝ եդաւ քաղաքիս 'ի Հրէից բնակելոց 'ի հայաստան բազմօք յառաջ քան զԹուականն քրիստոնէից"։ Այլ այս իւր կարծեցեալ միջոց յոյժ առաւել խրթնացուցանէ զխնդիրն առաջի մեր քան թէ բացատրէ. և 'ի կամելն խուսափել 'ի միոյ դժուարութենէ անկանի յայլ առաւելագոյն դժուարութիւն։ Զի եթէ Հրէից էր եդեալ զայն անուն, իբրևանց եբրայական լեզուաւ էր ե-

տեղւոյն ուր էջ տապանն և ուր ել Նոյ, այնպէս և 'ի սկզբանն մինչև 'ի Յովսեպոս կարէր մնալ։ Զայսմանէ տես և 'ի մեծ Հայս 219 և 220։

## ԱԿՈՌԻ

Մինչև ցայժմ յաւելն կայ այս գիւղ. զորմէ աւանդեն բնակիչքն լինել նոյն իսկ տեղի այգւոյն Նոյի. որպէս և յիշեն սուրբ գիրք Ծննդոց Թ. 20. «Սկսաւ Նոյ այր հողա֊գործ գերկիր գործել. և տնկեաց այգի»։ Զաւանդութիւն բնակչաց Հայոց հաստատէ նոյն իսկ անունն՝ որ է բառ հայկական, և ստուգաբանի արկ ուռի. իբր ասել կամե֊լով տեղի ուր Նոյ արկ կամ տնկեաց ուռ։ Հաստատէ և դիրք տեղւոյն. զի կառուցեալ կայ ընդ զառ 'ի վայր նոյն իսկ արարատեան Մասիս լերին՝ ուր ել Նոյ 'ի տապանէն։ Հաստատէ և ստուգէ նաև պատուականութիւն և ազնու֊ութիւն գինւոյն որ մինչև ցայժմ լինի անդանօր. այր աղա֊գաւ, որպէս կարծեմ, արբեցաւ Նոյ, և ոչ եթէ առ անգէտ լինելոյ զօրութեան հասարակ գինւոյ՝ որ գայր և յա֊ գեալ, և ոչ ստոր հայկական լե֊զուաւ։ Իսկ եւս խնդրեանք Հրեայք բա֊զում անգամ զգինի Նոյի անդր եկեալք՝ միայն զպատմութիւն Ջրհեղեղին գիտէ֊ին, բայց զտեղին որոշել թէ 'ի յա֊րարատեան աշխարհի անդ ուր տն֊կեաց արար Նոյ զնախկին խշխան իւր՝ ոչ գիտէին. պէտս ունէին յայլոց 'ի բնակչաց տեղեկանալ։ Եթէ հայկա֊զուն բնակիչքն գիտացին ցուցանել Հրէից զտեղին, և կարացին պահել զաւանդութիւն որ վասն խշխանելոյ Նոյի, եւս առաւել կարէին նոյն բնա֊կիչքն պահել զանուն տեղւոյն, որ է առաւել բնական։ Զի անուն տե֊ղւոյն է որ առաւ պահել զաւանդութիւն վասն գինարբութեանն, և ոչ թէ աւան֊դութիւն պատճառ լինի անուան կնքել տեղւոյն յետ հոլովելոյ բազմութեան ամաց, որպէս եղև մինչև ցգաղթականս Հրէից 'ի Հայս։ Եթէ հին անուանս Ա֊րարատ, և անուանք Երիվանայ և Տիգրանակերտի կամ Ըսպարայ մնացին 'ի հայ֊աստանեայս մինչև ցայժմ 'ի ժամա֊նակաց անտի Մովսէսի, նոյնպէս կա֊րէին մնալ անուանք այսոցիկ տեղեաց զորոց գրեմք։ Իսկ եթէ կարաց մնալ 'ի հայաստան մինչև ցայժմ անուն և քաղաքք յանուն Թելոյ և յանուն Շամիրամայ յայնչափ հնուց հետէ՝ կարէին և անուանք եղեց և անցից Նոյի հօրն հասարակաց տեւել և մը֊նալ։ Քանզի որպէս կարես տեսա֊նել յաշխարհագրութեան՝ 'ի հայաս֊տան են տեղիք մինչև ցայժմ կոչե֊ցեալք յանուն Շամիրամայ. գաւառ և գիւղ կոչեցեալ Թելու, զոր 'ի հին մեծ Հայս յիշեալ է մեր. այլ ծա֊նեաք զի և մինչև ցայսօր կոչեն զնոյն գիւղ Թելու յանուն Թելոյ։ Ըստ այսմ տեսանեմք և 'ի յունաստան և յիտալիա մինչև ցայժմ զհին անուանս յայնչափ ժամանակաց հետէ մը֊նացեալս, զորս նախնի բնակիչք նո֊ցա եդին. չէ ինչ արդ զարմանք և մնալն 'ի մեզ անուանց 'ի ժամանակաց անտի Նոյի. զի սուրբ գիրք են որք վկայեն թէ Նոյ և սերունդք իւր մին֊չև 'ի ժամանակս շինութեան աշտարա֊կին՝ եղեն բնակիչք Հայոց աշխարհիս։ Տես և զոր ինչ գրեցաք 'ի գլուխն Բնակչաց 'ի յօդ. Է։

ռաջ քան զՋրհեղեղն [1] ։ Քանզի նախ քան զՋրհեղեղն 'ի գինւոյ այլոց տեղեաց ըմպելով՝ ոչինչ այլայլութիւն կրէր յինքն․ բայց անփորձ գոլով սաստիկ զօրութեան գինւոյ Ակոռւոյն՝ նովին սովորական չափովն էարբ Նոյ 'ի գինւոյ աստի, վասն այնորիկ կրեաց զայն արբեցութիւն, զորմէ պատմեն սուրբ գիրք Ծննդոց [2] ։

## ԵՐԵՒԱՆ

Սուրբ գիրք Ծննդոց Ը․ 5․ ասեն․ “Յամսեանն մետասաներորդի՝ որ օր առաջին էր ամսոյն՝ երեւեցան գլուխք լերանց”։ Արդարեւ մեծ ուրախութիւն էր եղելոցն 'ի տապանի․ որոց նստեալ գոլով տապանաւ 'ի վերայ Մասիս լերին՝ բարձրագոյն ժամ մի յառաջ տեսանել զցամաքն․ և ընդ տեսանելն զառաջին ցամաքն՝ ոչ երբէք մոռանային զտեղին, այլ տեղւոյ յիշատակելին և տեղւոյ միմեանց ցուցանելին։ Արդ 'ի տեղւոյ յաճախութենէ այսր յիշատակելոյ՝ ինքնին ծագէր անմոռաց յիշատակ երեւմանն։ Եւ ահա այսպէս եղեւ Երեւան տեղւոյն․ ուր ըստ աւանդութեան ամենայն բնակչաց՝ լերինք Երեւանին էին որք նախ առաջին երեւեցան եղելոցն 'ի տապանի․ և վասն այնորիկ կոչեցաւ 'ի նոցունց Երեւան։

## ԱՌՆՈՑՈՑՆ

Նոյն իսկ անուն այսր գաւառի յայտնի յինքն կրէ զա-

1 Ցեղէ զայս և Գրիգոր մագիստրոս մատենագիր 'ի մետասաներորդ դարու, 'ի թղթին որ առ Հեծուցին Գրիգոր․ “Բայց առ 'ի Հրէից և յառաջադրելոցն մատենից՝ նաև 'ի Քաղդեաց ղՔաղաւթութեան (Նոյ) խնամածք զորթ տնկեալ․ և 'ի ծերոց առասպելաբանեն ասեն յԱկոռի, և առուգաբանեն ուրէ [illegible]։ Զոր Թուէ ինձ ոչ նախատ առասպել բարզկոյութեան պատմառ․ այլ խնամածք նախ եղեալ այգին, և ապա 'ի մեծ 'ի Ջրհեղեղէն պահպանեալ․ և ապա նոյն 'ի մայրս ուրեք անտառի 'ի մնացելոցն 'ի ծառոց ծառոցն հատեալ կրկին տնկէր զնա․ զի եթէ ոչ այսպէս՝ զինչ արդգիւք․ միթէ անեղծանող զնա կարծեմք։ Եւ եթէ ոչ նախ էր տնկեալ զնա 'ի հարցն ձեռնեալ և աննեալ, զիարդ ընդ երեկին ըմպեալ արբեցոյք”։ Ցայս բան ցուցանել կամի Մագիստրոս, թէ նաև յառաջ քան զՆոյ գոյր տնկել այգիս, զոր տեսանելով ուսեալ էր զտնկելն և զըմպելն․ յոյր ասէս զասելն Մագիստրոսի [illegible], պարզ է խնանալ ասէս միւս կարծեաց, թէ նախ քան զՆոյ ոչ գոյր այգեգործութիւն․ այլ նախ առաջինն Նոյ նահապետ տնկեաց որթ և այգի 'ի տեղւոջն Ակոռի։

2 Որպէս և այժմ դեռ լինի տեսանել 'ի տեղիս տեղիս գինի այնչափ զօրաւոր՝ որոյ և գաւաթ մի չափ բաւական լինի յարբեցութիւն արկանել նաև զնոսա՝ որք սովորական գինւով ոչ երբէք զինովցին արբենալ․ և զաւուրս երկուս անընդհատ 'ի քուն խորին թմբրեցուցանել, որոց նուաղ էր դէմք քնոյ։

նաւն Նոյի, հայկական բառ և նախագիր 'ի վերայ ուռե-
լով. որ թէպէտ 'ի Վասպուրական նահանգին է, բայց
մերձ 'ի Մասիս լեառն արարատեան. ուր և թաղեալ ա-
սեն զնոյն կնոջն Նոյ. թէպէտ և Վարդան աշխարհագիր
'ի Նախիջևան դնէ զտապան նորա:

## ՄԱՐԱՆԴ

Գաւառ 'ի Վասպուրական նահանգի, այլ ոչ հեռի յա-
րարատեան լեռնէ. ուր աւանդութիւն ազգիս ասէ թա-
ղեալ զկին Նոյի. որպէս յիշեն և յեւրոպացւոց Դուբէանիկ
ա. 8. և Շարտէն Ճանապարհորդք. զորոյ և զանուանն
Նոյեմզարա արձանագրեալ ունին, որպէս կոչէ և Վար-
դան աշխարհագիր: Եւ սակս այսորիկ կոչեցեալ Մարանդ,
որ է անուն հայկական ձայն մայր անդ. զի արդարև մայր էր
համօրէն ծննդոց Նոյի որ անդ թաղեցաւ: Վասն այսր
կարծեմ թաղեալ անդանօր և բազմաց 'ի մեծամեծաց
Տաճկաց, անդի սրբազան համարեալ և առ նոսա սակս
անդ թաղեալ գոլոյ մօրն հասարակաց:

## ՑՐՕՆՔ . ԱՍՏՂԻԿ

Այն հայաձայն անուանք 'ի ժամանակաց անտի Նոյի.
որոց վասն Ոլոմպիոդորոս 'ի հին աւանդութենէ պատմէ առ
Խորենացւոյն ա. 6. թէ մին 'ի կրտսեր որդւոց Սեմայ կոչէր
Տարբան, որ զգաւառ բնակութեան իւրոյ կոչեաց Տարօն.
իսկ զտեղի բաժանելոյ և ցրելոյ որդւոց իւրոց կոչեաց
Ցրօնս: Երկոքին ես են անուանք նշանակիչք գործոյն 'ի
մեր լեզու: Զայս անգիր աւանդութիւն զոր պատմէր Ոլոմ-
պիոդորոս 'ի յունաստան, ըստ նմին օրինակի պատմէին
ամենեքին և մեր գիւղականք 'ի Հայաստան. “Զոր և բա-
զումք 'ի գեղջկաց, ասէ Խորենացին, զրուցեն մինչև ցայ-
ժմ„: Այս անուանք մինչև ցայժմ արձանացեալ կան
'ի սահմանս Մշոյ, որ է Տարօն. զի գտանի գիւղ Ցրօնք
կոչեցեալ. այլ գիւղ Տաղօնք իբր Տարօնք. և Աստղնբերդ,
մանաւանդ թէ Աստղնաբերդ յորջորջեալ յանուանն Աստ-
ղիկ դստեր Նոյի[1], զոր անդ յիշէ Խորենացին: Ստուգու-
թիւն այսոցիկ պատմելոցն յՈլոմպիոդորոսէ հաւաստի և 'ի

[1] Բազումք աւանդեն թէ յետ ե-լանելոյ Նոյի 'ի տապանէն ծնաւ նմա զայլ որդիս. յորոց մերձ է լինել և այս զաւակ նորա Աստղիկ:

Գողթան երգոցն, որ էր պատմութիւն ազգին, անե-նեւին համաձայն նմին. «Բայց առաւել յաճախագոյն՝ հինքն արամազնեայց 'ի նուագս բամբռան և յերգս ցցոց և պարուց զայսոսիկ ասեն յիշատակօք». որպէս ասէ Խորենացի ա. 6:

Արդ՝ քանզի ըստ բաւականին ցուցեալ համարիմք թէ այս ամենայն անուանք մինչև ցաստ յառաջ բերեալք՝ են 'ի ժամանակաց անտի Նոյի, ինքնին զհետ գայ ընդունել թէ նոյեան, կամ որ նոյն է առաջին լեզուն՝ էր հայկա-կան. որովհետև ամենեքին են նշանակիչք 'ի նոյն հայկա-կան լեզուի: Բայց բերցուք և այլ ինչ ինչ անուանս 'ի մե-րում լեզուի՝ որք զնոյն հաստատեն:

Զի 'ի ժամանակէ անտի նախաստեղծիցն բերել կա-մելով քանի յարմարուն է 'ի մերում լեզուի զպարտէզն ուր եդան նախաստեղծք՝ կոչել Դրախտ, կամ դարաս-տան, այսինքն ծառաստան. և այն իբր տեղի անախտուն: Յայն սակս երևի 'ի ժամանակաց անտի սկզբնաւորու-թեան 'ի նմին իսկ յԱդամայ այս անուն եդեալ, մանաւանդ յետ անկմանն, յորժամ փորձիւ ծանեաւ նա յանձն իւր զհոգևոր և զմարմնաւոր ախտս յորոց զերծ էր ամենևին 'ի դրախտին:

Սուրբ գիրք ծննդոց գ. 20. գրեն. «Եւ կոչեաց Ադամ զանուն կնոջ իւրոյ կեանս, զի նա է մայր ամենայն կեն-դանեաց»: Արդ 'ի հայկական լեզուիս կին և կեանք 'ի նմին յարմարոյ յառաջ գան, որ քաջայայտ երևի ա-ռաւել 'ի բազմաւորականն. որովհետև կեանք՝ 'ի բազմա-ւորականն 'ի գործ ածի 'ի մեզ. ըստ այսմ կեանք, կանայք. կենաց, կանանց:

Ծննդոց ժ. 10. գրեալ կայ վասն Նեբրովթայ. «Եւ եղև սկիզբն թագաւորութեան նորա Բաբելոն... և Քաղանէ յերկրին Սենաար»: Յայսմ Սենաար երկրի սկսան մարդիկ շինել աշտարակ միաբանգամայն և քաղաք. որպէս ասէ անդ ժա. 2. 4. «Գտին դաշտ մի յերկրին Սենաար... և ասեն, եկայք շինեսցուք մեզ քաղաք և աշ-տարակ»: Յայտ է աստի թէ Քաղանէ կոչեցաւ առաջին բարբառոյն նախ քան զբաժանումն լեզուաց սակս շինելոյ անդ քաղաքի: Արդ բառս Քաղանէ չէ ինչ հեռի 'ի բառէս Քաղաք, որ է անուն հայկական մնացեալ յառաջին լե-զուէ. որպէս Կրատիոս և վասն Բաբելոնի անուանն համա-րի յառաջին լեզուէ մնացեալ:

Ծննդոց ը. 13. ասի և այս. «Ցամաքեաց առաջնում

որ օր մի էր ամսոյն՝ նուազեալ ջուրն յերեսաց երկրի. և եբաց Նոյ զձեղուն տապանին զոր արար. և ետես զի նուազեալ էր ջուրն յերեսաց երկրի ,,: Արդ ո՞չ ապաքէն ուրախութիւն մեծ էր այս փակելոցն 'ի տապանի զամ մի ողջոյն, որք էին իբր նաւաստիք երևելի նաւարկութեան այնմիկ. վասն որոյ և արժան էր չթողուլ զայն որ անյիշատակ. և ահա 'ի հայկական բարբառս մեր գտանեմք զյիշատակ նորուն 'ի նոյն իսկ յանուանն առաջին ամսեան տարւոյն յորում եբաց Նոյ զձեղունն, կոչեցեալ Նաւասարդ, համառօտեալ յանուանէս Նաւաստ արդ. զի յայնժամ եղև համօրէն մարդկան և տապանակերտ նաւուն նաւաստարութեան արդ. որով իմա 'ի նոյն իսկ 'ի նոյեանց արդեօք արձանացեալ զայս անուն: Այս յայտ առնէ թէ յիշատակ այնր մեծի ջրհեղեղին ուրոյն իմն օրինակաւ ծնացեալ կայր 'ի վաղնջուց յազգի և յաշխարհի մերում՝ ուր բնակեցան ելեալքն 'ի տապանէ, և որդիք և թոռունք նոցա. զի 'ի քննելն՝ արձանացեալ գտանեմք զյիշատակ նորուն ոչ միայն 'ի հայկական անուանս Նաւասարդ, այլ նաև յայլ նշանս և յազգային սովորութիւնս, որք բերեն զծանօթութիւն այնորիկ զորս նշանագրեսցուք: Զի արդարև արժան էր նոյեանց անդուստ սկսանել զսկիզբն նոր տարւոյ, որոց եղև արդարև նոր կեանք և նոր օր. և ահա 'ի մեզ 'ի նմին նաւասարդ ամսեան սկսանի նոր տարի, զանուն յիշատակին կրելով 'ի վերայ իւր անուան: Զի և ձայնս նէվ ըստ Պարսից, որ է ըստ Յունաց նէօս և ըստ Լատինացւոց նօվուս, է ածանց հայկական բառիս նոր, որ 'ի բարդութիւս լինի և նաւ. որպէս 'ի բառն նաւակատիք, իբր նորակերտութիւն և նորոգութիւն հանդիսի նոր շինութեան: Արժան էր նաև յայնմ ամսեան նաւասարդի զյիշատակ տարեդարձին կատարել մեծահանդէս տօնելով. և ահա ունիմք յազգի մերում 'ի հայաստան 'ի վաղուց անտի 'ի ժամանակէ կռապաշտութեան տօն աշխարհախումբ ամենայն փառաւորութեամբ կատարեալ 'ի նաւասարդի, որ թուի 'ի սկզբանէ անտի 'ի նոյեանց սկսեալ 'ի շնորհակալութիւն Աստուծոյ վասն զերծանելոյ 'ի ջուրցն հեղեղէ, և վայելելոյ 'ի նոր պտղոյ երկրին. կամ լաւ ևս ասել՝ 'ի յիշատակ տարեդարձի այնր հուչակաւոր ողջակիզին՝ զոր Նոյ յետ ելանելոյ 'ի տապանէն 'ի հայաստան աշխարհիս մատոյց 'ի շնորհակալութիւն Աստուծոյ իբր 'ի դիմաց համօրէն մարդկութեան: Բայց սպա 'ի ժամանակս կռապաշտութեան փոխեալ այլայլեալ յանուն կռոց իւրեանց, և ա-

որս յանուն Մաժանայ քրմապետին [1]. իսկ ապա 'ի Լու-սաւորչէն մերմէ փոխեալ 'ի տօն այլակերպութեան Քրիստոսի. բայց նախնական աշխարհախումբ ժողովով ամենայն փառաւորութեամբ տօնեալ [2]: Յաւել 'ի վերայ և զընդհանուր սովորութիւն 'ի մէջ ազգիս անխափան մուծեալ յամենայն տեղիս՝ 'ի նաւասարդի 'ի նմին տօնի այլակերպութեան ջուր սրսկելոյ 'ի վերայ միմեանց. սովորութիւն ինչ յանյիշատակելի ժամանակաց 'ի հաւուց և 'ի նախահաւուց մնացեալ. որ յայտ առնէ 'ի նախնի ժամանակաց անուն առ մեզ եկեալ, յորում չիք տեսանել յարմարութիւն ինչ առ տօնն այլակերպութեան, բայց յարմարութիւն մեծ առ անցումն որ 'ի սկզբան անդ անցին յայսմ նաւասարդի ամսեան 'ի հայաստան աշխարհիս, երբ 'ի յիշատակ զերծանելոյ 'ի համայնաջինջ ողողմանէ ջուրց անձրևաց, նախ որդւոց Նոյի զայս սովորութիւն սկսեալ, և 'ի նոցունց ապա առ մեզ իջեալ: Յաւել և զսովորութիւն 'ի տեղիս տեղիս մնացեալ, 'ի նմին տօնի այլակերպութեան աղաւնիս թռուցանելոյ 'ի յիշատակ երիցս թռուցանելոյ Նոյի 'ի տապանէն. որպէս առնեն յիւրաքանչիւր յայնմ աւուր. յորս սակս և 'ի Տաճկաց կոչի այս տօն Կէ-վէրճին բայրամը, սակս բազմութեան աղաւնեվաճառացն, որք անդր ժողովին: Այսչափ խաւսն այլևայլութիւնք իրաց 'ի գործս և 'ի հանդէսս և յանունսն իսկ երևելի ամսոյս նաւասարդի առ մեզ՝ բերէ արդարև իմաստնոց խորհել և ինչ ինչ իմաստասիրել. և զինչ այլ, բայց եթէ հաստատել զայն ամենայն զոր մինչև ցայս վայր ասացաք եթէ վասն մնալոյ Նոյի 'ի հայաստան, և եթէ վասն մնալոյ լեզուի նորա 'ի Հայս:

### Գ. Երրորդ պատճառ առեալ 'ի սուրբ-գրականութենէ անասնոց կենդանեաց:

Սուրբ գիրք Ծննդոց Բ. 19. ասեն. "Եւ ստեղծ ևս տէր Աստուած զամենայն գազանս վայրի և զամենայն թռչունս երկնից, և ած զնոսա առ Ադամ տեսանել զինչ կոչեսցէ զնոսա. և ամենայն շնչոյ կենդանւոյ զինչ և անուանեաց Ադամ, այն անուն է նորա„: Այս բանք սուրբ գրոց ցուցանեն, թէ Ադամ ըստ իւրաքանչիւր ա-

1 Տես 'ի մեծ Հայս 408. 409:

2 Տես վասն այսր 'ի գլուխն Սովորութեանց, ուր բանք եղեն զԹագաւորական հանդիսից յերես 283. հատ. Բ:

նամանց բնութեան կամ ձայնի՝ եդ նոցա անուանս. որպէս է տեսանել և 'ի մեկնութեան հին 'քերականութեան հաւաքեալ 'ի Յովհաննու Երզնկացւոյ՝ բերելով 'ի Ստեփաննոսէ և 'ի Մովսիսէ քերթողէ. ուր ասի. "Սուրբն Գրիգոր պարթև և Աստուածաբան ասեն, թէ ըստ կերպարանացն նշմարեցուցանէր և դնէր անուն մարդն առաջին. և փիլոն իմաստասէր (ասէ), թէ ընտանեբար և ըստ բնութեան դնէ նախաստեղծն զկենդանեացն անուն»: Եւ կրկին Երզնկացի ասէ 'ի նմին մեկնութեան. "Նախնեաց մարդկութեա... ըստ որում տէր և իշխեցող 'ի վերայ արարեալոցն յԱստուծոյ զգայական կենդանեաց որ 'ի ծովու և յերկրի: Այլ և անուանս իւրաքանչիւրոց նոցա դնէ ըստ բարոյից և տեսակին զանազանութեան. վասն զի պարտ էր ամենայն իր 'ի բաց երևակել և անուանել: Եւ այսու յաւելեա պատուի յԱստուծոյ որպէս կցորդ լեալ յարարչութեան 'ի դիրս անուանցն յարարեալոցն յիւրեանէ»:

Արդ եթէ գտցուք 'ի մերում լեզուի անուանս կենդանեաց առեալ 'ի բնութէ կամ 'ի ձայնից նոցա, լինի և այն մի 'ի նշանաց առաջնութեան լեզուիս մերոյ: Որ թէպէտ չծաղկեցաւ, որպէս արժանն էր, յայլ և այլ դիտութիս, նա մանաւանդ անթիւք են՝ որ առ 'ի նախնեացն մերոց կորուսեալ մատեանք, այլ քանզի յազգաց ընդհանուր կազմութե լեզուիս են աստանօր բանքս, կան 'ի նմա բազում բառք որ երևին ըստ բնութեան և մանաւանդ ըստ ձայնից կենդանեաց առեալ. յորոց զոմանս դիցուք աստանօր:

## ԱՆՈՒԱՆՔ ԿԵՆԴԱՆԵԱՑ Ի ԲՆՈՒԹԵՆԷՆ ԱՌԵԱԼ

Արծիւ: } Իշր աւտօղ և ծառօղ[1], յափշտակիչ և գիշատիչ:
Արծուի: } Բայց մտադիր ընթերցողն տեսանէ թէ արուեստիւ և խորհրդով կազմեալ են կրկին անուանքս, որպէս վայել էր կազմել Ադամայ: Երկոքին ևս կենդանիք թագաւոր ծանուցեալք՝ մին չորքոտանեաց և միւսն թռչնոց. և ահա երկոքին ևս նախատառ անուամբ յորջորջեալ, միայն յետևառաջութեամբ վանկից տարբերեալ:

Առիւծ: յերի իւրում հարօղ. 'ի վերայ իւր կրօղ:

1 Սովին անուամբ ասէ Խորենացի 'ի պատմութեան իւրում եթէ կոչէին Գող- ... անուանե- լով: Այլ Վիպասանքն 'ի յառաջա- բանութեան Խորենացւոյն մերժելով զայս, հայ բառ համարելով զառ, որ- պէս և է իսկ, և ոչ օտարական:

Պաղատանք : Աղաչանօք. որոյ չիք այլ ինչ գէն, բայց եթէ ապաստանիլ 'ի դժուարս և յամուր տեղիս :

Սողուն : Իբր յինքն հաւաք. ունելով բնութիւն որ նմանիլ կամի ամենայնի զոր տեսանէ :

Ռամ : Ի ընեօղ բնութէ խարմէ առեալ :

Մշունէս : Որ աղու կամ քաղցր ճեանայ :

Ոստր : Ոխոր. որոյ ոխ առաւելեալ է քան զամենայն կենդանիս :

Եղջերու : Եղջերաւոր :

Սիրամարգ : Սիրող զմարգ :

Մշտանի : Աղու անի :

Սափոր : Քանզի 'ի գնացս իւր 'ի գետնի սոտոտելով ընթանայ, իբր կափառելով :

Մրջիւն : Ի բնակութենէն առեալ, զի յարտորայս բնակի :

Լորամարգի : Ի բնակութենէն առեալ. այսինքն է 'ի լերս կամ 'ի գլխին տեղիս բնակող :

Բազէ : Վազէ :

Մջողող : Այգուն ողողակօղ :

## ԱՆՈՒԱՆՔ ԿԵՆԴԱՆԵԱՑ Ի ՁԱՅՆԻՆ ԱՌԵԱԼ

| | |
|---|---|
| Ճպռուռն<br>Ճնճղուկ<br>Ճանճ<br>Ճճի<br>Չերզ | Առեալ 'ի տառէս ճ. և չ. որ տիրէ 'ի հրճուանս, նաև 'ի թռիչս և 'ի գնացս նոցա : |
| Ձի<br>Սինձ<br>Շուն<br>Շեռ | Ի ձայնաւոր տառէս է առեալ, որ տիրէ 'ի հնչմունս նոցա : |
| Ոսկեծեան<br>Ոսկր | Ի հնչմանէս ծի : |
| Բադ<br>Սագ<br>Ջոր<br>Ճայ<br>Ճագար<br>Ռաղ<br>Պառյլ<br>Սագր | Ի ձայնաւոր տառէս ա. որ տիրէ 'ի հնչմունս ձայնից նոցա : |

լեզուէ յառաջ եկեալ, որպէս էր լեզու ժամանակի աշ-
տարակաշինութեան ։

Որոյ և այլ ինչ 'ի դիտել, զի 'ի լեզուի մերում պակա-
սին անուանք ձկանց. զի ըստ սուրբ գրոց նաև Ադամ ոչ
եդ նոցա անուանս. քանզի ոչ էած Աստուած առ Ադամ
զձկունս. որպէս գրեն մեկնիչք ։

Դ. Զորրորդ պատճառ տեսեալ 'ի ճոխութենէ լեզուիս ։

Որպէս գրեցաք 'ի վերոյ՝ թէպէտ լեզու մեր չէ այնչափ
ինչ մշակեալ որպէս այնց ազգաց յորս դպրութիւնք ծաղ-
կեցան, և ոչ այնչափ մատեանք յօրինեցան, այլ մանա-
ւանդ յօրինեալքն իսկ կորեան կամ այրեցան ընդ ժա-
մանակս ժամանակս, սակայն 'ի վերայ այսր ամենայնի
յընդհանուր կազմութեան լեզուիս գտանեմք պերճութիւնս ոչ յա-
րուեստէ, այլ բնական. որք են նախ՝ հարստութիւն հնչման
ընդհանրական յոյժ, որպէս 'ի դէպ էր լինել առաջին լեզուի,
որ էր լեզու սփռելոց ընդ ամենայն կողմանս աշխարհի.
զի ունելով բազմութիւն տառից երեսուն և վեցից՝ հայկա-
զունք մեր այժմ ևս յորում և կողման աշխարհիս սփռ-
եալ գտանին, դիւրաւ կարեն հնչել զհնչմունս օտար
լեզուաց որչափ և հնար է, յարմար ամենեւին լեզուին
Ադամայ, որում անկ էր ունել լեզու և հնչումն դիւ-
րադարձ և համատարած ։ Է և հնչումն հեշտալուր, եթէ
խօսողք բերցեն զհետս վճիտ խօսից նախնի միջերկրեայց,
և սաստանկաց կամ չորրորդ Հայոց. զոր յայժմու ժամա-
նակիս առաւել 'ի հարաւային կողմանս փոքուն Հայոց է
տեսանել, և 'ի տեղիս տեղիս փոքուն Ասիոյ ։ Այս այն է՝
զոր Վարդան համեղ կոչէ. որպէս և Յոհան Երզնկացի 'ի
մեկնութեան քերականին 'ի ձայնէն զյատկութիւն զանազան
լեզուաց՝ այսպէս բերէ 'ի Ստեփաննոսէ. "Փափկախօս Հել-
լենն. սաստիկ Հռոմայեցին. սպառնական Հոնին. աղաչական
Ասորին. պերճական Պարսիկն. գեղադարդ Ալանն. ծաղրա-
կան Գութն. խռովական Եգիպտացին. ճռճռողական Հըն-
դիկն. համեղական Հայն, այլ և համեմատիչ, զի կարէ զյոլո-
վիցն (հնչմունս) առ ինքն ամփոփել" ։

Երկրորդ՝ ընդաբոյս իմն հարստութիւն և ճոխութիւն բա-
ռից, զորոյ զնմանն 'ի սակաւ լեզուս է տեսանել. ունի
և դիւրութիւնս յօրինելոյ նորանոր բառս. այս է զոր յիշէ
Դաւիթ 'ի մեկնութեան քերականին Երզնկացւոյ 'ի ձայնէն

զնմանադրութեանց. «Ի Հռովմէս (լեզուի) ութ և տասն պարզք, և երկոտասան բարդք. իսկ 'ի մերումն բառ երկայնութեն լեզուիս՝ յանբաւս հասանելք»: Յորմէ զհետ գայ յարմարութի ինչ յամենայն գիտութիս միջամուխ լինելոյ մերով լեզուաւ, և զամենայնն համառօտ խօսելոյ. զի զգիտութիւնս և զուսմունս որք չեն տակաւին մուծեալ 'ի լեզուի մերում, թէ որ կամիցի բուռն հարկանել 'ի ձեռնել, դիւրաւ գտցէ բառս և անուանս յարմարել այնմ բառ պիտոյից. միայն թէ յօրինօղն իցէ քաջածանօթ 'ի քերականութեան և 'ի հմտութիւնս գրոց նախնեաց մերոց. վասն որոյ և Վարդանն 'ի թուղթն զհանգամանս զանազան լեզուաց՝ զմերն կոչէ ամենալիր և համեղական:

Երրորդ՝ խորհրդաւոր իմն կազմութիւն 'ի բառս. զի թէպէտ 'ի մեր լեզու բազումք գտանին օտարաձայն բառք սակս բազմաժամանակեայ գերութեան ազգիս, բայց 'ի քննելն տակաւին գտանեմք բազում բառս իբր արուեստիւ դիտմամբ և խոկալով կազմեալս. որ է ցուցակ լինելոյ իբր մնացորդ ինչ աւերակաց նախնի այնր լեզուին մարդկութեանս, յորժամ Ադամ [1] խորհելով դնէր զանուանս կենդանեաց և զանուանս իրաց, նմանաձայն անուանակոչութիւն հնարեալ նոցա, և ոչ խառն 'ի խուռն բերմամբ անուանակոչեալ, զոր օրինակ եղև յաւուրս աշտարակաշինութեան: Օրինակի աղագաւ բերցուք գլխաւոր անուանս. Այր, Հայր, Մայր, Եղբայր, Քոյր, (իբր Քայր). և տոցա արմատ Մարդ. յորմէ և ածանցեալ թուի անունն Երիտասարդ. իբր երից տասանց մարդ: Ըստ այսմ են և Ուստր, Դուստր. Ամ, ժամ, Ամիս. ժամանակ կամ Ամանակ: Եւ անուանք չորից եղանակաց տա-

1 Այս է ասելն Պղատոնի, թէ առաջին անուանք իրաց՝ էին գիւտք աստուածայինք: Վասն որոյ և խնդիրն այն յոլովս 'ի լեզուագէտ բանասիրաց թէ մանուկ ոք անկեալ յանապատ անգիտս բազմակաց ամենեւին և զուրկ 'ի ուսուցմանէ մարդկան զինչ ձայն արձակէր, զիա՞րդ յօդէր վանկս, և որպէս յառաջնորդեալն զոր ուսանէր՝ բառս ստեղծէր և նախկին կազմէր նոր իմն լեզու, անդէպ է զայդպիսի և զմտաւ խոկ առնել յաղագս աստուածաստեղծ մարդոյն: Զի յետ ստեղծանելոյն զնա արարչին՝ ոչ եթէ եղեւ եթող զնա 'ի բացէ, այլ երեւեալ խօսէր ընդ նմա, առաջնորդէր և ուսուցանէր. այնու զի իւրն զանասունսն ածէր առաջի նորա զնել նոցա անուանս, և նա դնէր համառօտ. սակայն ընդէ՞ր չասիցեմք թէ 'ի սկզբան անդ ընդ բնութեան ընկալաւ նա յարարչէն և զձիրս լեզուի անթերի արտնական. յորմէ որ ինչ զաղափարք 'ի միտսն ծնանէին վասն անասնոցն այնոցիկ իւրաքանչիւր՝ անդէն ձայնիւ յօդէր զնոսա: Այսպէս ուրեմն վայրապար կարծեցին ոմանք եթէ տակաւ ջանիւք և աշխատութեամբ հնարեալ իցէ ինքեան նոր լեզու մարդն առաջին:

բուդին. Գարուն. Աշուն. Ամառն. Ձմեռն, (իբր Ձմառն)։
Եւ Երկինք, Երկիր. Հուր, Ջուր. Արջառ, Ոչխար։ Թող-
ցուք 'ի նշանակել զայսպիսի նմանաձայնութիւնս նաև 'ի հա-
սարակ բառս ինչ մնացեալ. Բարիք, Չարիք. Բասրանք,
Բամբասանք, Ամբաստանք. Ողոքել, Բողոքել, Ամոքել։

Մերձ 'ի չորից զօրաւոր պատճառաց զոր ցայս վայր յա-
ռաջ բերաք յայտնի երևի առաւելութիւն լեզուիս քան թէ
Հրէից, որ վասն վայրապար ճգնեին այլք։ Եւ եթէ ան-
զեակ լինէր բաղդատութեան ձեռակելչն, այլ աղդ գրէր 'ի
ճառն իւր որ յաղագս սկզբնաւորութեան լեզուի և գրոց։

Ե. Հետևանք առաջնութեան լեզուին Հրէից։

Յայս վայր յառաջելոցս յայտնի առաւ, եթէ զնա-
խունի Նոյի և զլեզու՝ որով նա խօսէր, քանզի չիք 'ի միջի մա-
տեան և գրաւոր յիշատակարան ժամանակին վասն այսր,
պարտ է խնդրել նախ անդ՝ ուր ել Նոյ 'ի տապանէն, և
ուրանօր բնակեցաւ ինքն և նախնի նահապետք յառաջ
քան զժամանակ աշտարակաշինութեան. և ոչ անդ՝ ուր
ոչ ոք 'ի նահապետաց նախ քան զբաժանումն լեզուաց
բնակեալ էր։ Երկրորդ և յայնպիսի ժողովուրդս՝ որ 'ի
ժամանակաց անտի Նոյի սկիզբն կալեալ իցէ, և 'ի ժամա-
նակէ անտի աշտարակաշինութե ուրոյն ազգ կացուցեալ,
որպէս և առաջեր յայլոց ազգաց։ Եւ երրորդ՝ զի ժողո-
վուրդն այն կամ ազգ, մնացեալ իցէ 'ի ճշմարիտ աս-
տուածպաշտութե, և յիւրում առաջին անմեղութե։ Զե-
րեսին զայսոսիկ գտեալ 'ի պատմութե ազգիս 'ի Նոյեան՝ որոց
մնացեալ 'ի Հայաստան՝ անմեղք էին և զերծ 'ի չարութէ
գործոց աշտարակաշինութեան, և որոց ըստ սերունդս
Հայկայ միացեալ՝ մի ազգ եղեն ըստ նմա, նմին իրի
եդաք 'ի վերոյ վասն հայկական լեզուիս լինել առաջին
լեզու Նոյի։ Իսկ յազգին Եբրայեցւոց՝ քանզի պակասին
երեքին այս կարևոր հանգամանք, նմին իրի և չէ արժան
նոցին ընծայել զառաջնութիւն լեզուի, որպէս ցուցցուք
մի ըստ միոջէ յառաջիկայդ։

Նախ զի Հրեայք մինչև ցԱբրահամ չև էին ազգ ձևա-
ցեալ, այլ քաղդէացւոցն էր որ ազգ կոչէր. ուստի զսկզբ-
նաւորութիւն Եբրայեցւոց յետոյ ուրեմն տեսանեմք յԱբ-
րահամէ անտի սկսեալ։ Նոյնպէս զսկիզբն բնակութեան

եբրայեցւոց՝ յաշխարհին քաղդէացւոց գտանեմք լեալ հետի յայժ յերկրէն ուր բնակութի կալաւ Նոյ. որպէս յայտնի առի ծննդոց ժա. 31. "Եւ առ Թարա զԱբրամ որդի իւր... և եհան զնոսա յաշխարհէն քաղդէացւոց երթալ յերկիրն քանանացւոց. և եկին մինչև ցխառան (որ է 'ի Միջագետս), և բնակեցին անդ,,: Եւ վասն այնորիկ Աստուած, քանզի կամէր զԱբրահամ նոր ազգ սահմանել, ասաց ցնա. "Ել դու յերկրէ քումմէ և յազգէ քումմէ (որք էին քաղդէացիք), և 'ի տանէ հօր քոյ, յերկիր զոր ցուցից քեզ. և արարից զքեզ յազգ մեծ,,. ժբ. 1: Եւ արդարև սուրբ գիրք ամենևին ոչ կամին ճանաչել զնախնիս Աբրահամու որք էին քաղդէացիք. այլ 'ի յիշելն զծագումն Հրէից՝ միշտ յԱբրահամէ առնի սկզբանն, որոյ սերունդ առ սակաւ սակաւ բազմանայր առ 'ի լինել յետոյ ազգ նոր: Զայս յուշ առնել կամի Հրէից յաւելն յՕրինաց Ժ. 22. առ 'ի խելամուտ առնել զնոսա, թէ 'ի կողմանէ հնութեան չէին և ոչ ազգ ինչ. "Եօթանասուն ոգւովք իջին հարքն քո յեգիպտոս. և արդ ահա արար զքեզ տէր Աստուած քո իբրև զաստեղս երկնից բազմութեամբ,,: Վասն որոյ ամենևին իսկ հրէական մեծաբանութիւն է և արտաքոյ աստուածաշունչ գրոց՝ ըղձեալս ազգ նախնագոյն քան զամենայն ազգս առնել. զի սուրբ գիրք որ զսերունդ Հրէից 'ի Նոյէ անտի իջեալ յայտնի պատմեն, առեն յայտնի՝ թէ նախ քան զԱբրահամ՝ Հրեայն չէր 'ի թիւս ուրոյն ազգաց[1], այլ քաղդէացին էր ազգ, որ էր ազգ կռապաշտ: Արդ՝ չտեսանեմ որ հաստատուն պատճառք կայցեն զքաղդէացին առնել ազգ առաջին, կամ զի՞նչ յարմարութիւն՝ զառաջնութիւն լեզուին տալ նոցա, առ որս և ոչ իսկ եկաց Նոյ:

Երկրորդ՝ որպէս սերունդ Եբերայ չէր ազգ կարգեալ յառաջ քան զԱբրահամ, նոյնպէս չէր մնացեալ և յառաջին աստուածպաշտութեան. այլ որպէս յայտնի գրեն սուրբ գիրք՝ նախնիք Հրէից յառաջ քան զԱբրահամ

1 Հրէից ծագումն և սկզբնաւորութիւն սկսանի ոչ յազգէ, այլ յետոյ ուրեմն 'ի միոյ առնէ, որ առ սակաւ սակաւ բազմանայր առ 'ի կազմուցանել ազգ: Զայս և սուրբ գիրքն յայտնի յուշ առնեն Հրէից զսկսեալ լինելն նոցա յառաջնութեան ազգի, յաւելն ը. Օրինաց Է. 6. "Զքեզ ընտրեաց տէր Աստուած քո լինել նմա ժողովուրդ սեպհական քան զազգս ամենայն որ 'ի վերայ երեսաց երկրի. ոչ զի բազում էք դուք քան զամենայն ազգս հաճեցաւ տէր ընդ ձեզ. և ընտրեաց զձեզ, զի դուք սակաւաւորք էք քան զամենայն ազգս. այլ վասն սիրելոյ զձեզ տեառն,,:

կուռս պաշտէին. զոր օրինակ է տեսանել յայս բան Յե-սուայ իդ. 2. "Յայնկոյս գետոյն (Եփրատայ) պանդխտեցան հարքն ձեր յառաջագոյն, Թարա հայր Աբրահամու և հայր Նաքովրայ, և պաշտեցին զաստուածս օտարս. և առի ես զհայր ձեր զԱբրահամ յայնմ կողմանէ գետոյն": Եւ 'ի 14. 15. ասէ. "Ի բաց արարէք զաստուածս օտա-րոտիս զոր պաշտեցին հարք ձեր յայնկոյս գետոյն ... ընտրեցէք այսօր թէ զո պաշտիցէք, զաստուածս հարցն ձերոց որ յայնկոյս գետոյն էին ......": Յայտնի ևս գրի 'ի գիրս Յուդիթայ Ե. 6. ուր ասէ Աքիովր վասն Հրէից. "Ժողովուրդս այս են յազգէ քաղդէացւոց. և պանդխտե-ցան զառաջինն 'ի Միջագետս, զի ոչ կամեցան պաշտել զդիս հարց իւրեանց (Թարայի և այլոց) յերկրին քաղ-դէացւոց. և ելին նոքա 'ի հայրենի երկրէն իւրեանց, և եկեալ գնացին նոքա 'ի Միջագետս և պանդխտեցան անդ աւուրս բազումս": Ի բանից աստի սուրբ գրոց իմա-նիմք 'ի դերև ելանէ զոր ասեն ոմանք, թէ 'ի սկզբանէ անտի 'ի Նոյէ յաջորդութիւն կացեալ իցէ ճշմարիտ աս-տուածպաշտութեան 'ի սերունդս Եբերայ. և որպէս մնաց առաջին հաւատք 'ի նոսա, նոյնպէս մնաց ասեն և առաջին անմեղութիւն. զի սերունդ Եբերայ ոչ խառնեցաւ 'ի գործ աշտարակաշինութեան, նմին իրի և ոչ լեզուն Եբերայ փո-խեցաւ, այլ առաջին լեզուն Նոյի մնաց 'ի սերունդս նորա. մանաւանդ զի նոյն իսկ Նոյ ընդ սերունդս Եբերայ իջեալ 'ի Միջագետս ընդ նոսա բնակեցաւ: Այս ամենայն են իմքնահնար հրէական կեղծիք և մտապարծութիք նախնի րաբունեաց Հրէից. զոր և Հուետիոս մերժէ ասելով. վայ-րապար և առանց ինչ վկայութեան գրեն ոմանք, թէ Սեմ կամ Եբեր 'ի բաբելոնական միաբանութեան չեղեն մասնա-կից. և վասն այնորիկ փոխարէն ընկալան 'ի տեառնէ զար-տօնութիւն սրբազան և առաջին լեզուի պահելոյ յին-քեանս և 'ի սերունդս իւրեանց: Այլ պարտ է ասել թէ որովհետև կռապաշտութիւն 'ի վաղուց անտի մուծեալ էր 'ի սերունդս Եբերայ, որպէս տեսեր 'ի վերոյ 'ի վկայութիւնս սուրբ գրոց, զորմէ կարես տեսանել նաև առ մեկնիչս [1],

[1] Զսոյն յիշէ և մերս Մագիստրոս 'ի թուղթն որ առ Ապրեհիմ ամիրայն. "Աբրահամու առաջին .... գիտէր հայրապետն այն թէ գոյ Աստուած. սակայն ուղղապէս ճշմարտախոհ լի-նել, աստուածութեան անզեղծանել (կա-մէր) զերբեմն 'ի մտաւորութեան անկեալն 'ի մոլորութէ հարցն. ոչ հետևապար լինելոյն յարդարութեան, այլ զկնի կռամոլութեանն մոլորեալ ...": Այլ

ուստի յայտնի երևի՝ թէ անկեալ էին ընդ բռնաւորութե
Ներբրովթայ հիմնադրի քաղդէացւոց տէրութեան, և 'ի նը-
մանէ ուսեալ զկռապաշտութիւն։ Ի գերև ելանելն և առ 'ի բազ-
մաց քրիստոնեայ մատենագրաց ածեալ անզօր փաստք,
եթէ քանզի Աստուած ընտրեաց զայս ժողովուրդ Եբե-
րայ 'ի պաշտել զինքն և 'ի կրթել 'ի ճշմարիտ աստուած-
պաշտութեան, և 'ի նորին ներքոյ յարուցանել զմե-
սիայն Քրիստոս փրկիչ աշխարհի, և նոյնին լեզուաւն Ե-
բերայ գրել զըստագան տառս աստուածաշունչ գրոց, 'ի
դէպ էր նորին լեզուին անպատիժ մնալ և լինել առա-
ջին լեզու՝ որով Աստուած խօսէր ընդ Ադամայ և ընդ
Նոյի։ Այլ զայս յախճամ մարթ էր կարծել՝ յորժամ
չէր վկայեալ սուրբ գրոց վասն կռապաշտութեան նոցա.
բայց յետ յայտնի վկայելոյն, որպէս տեսաք, զիա՞րդ
մարթ է ասել, և ո՞րպէս հաւատալ թէ նոյն ինքն Նոյ
մնացեալ իցէ 'ի տան Եբերայ, և բնակեալ 'ի Միջագետս,
յորժամ չիք ինչ ամենևին նշան վասն այսր, ոչ 'ի սուրբ
գիրս՝ և ոչ արտաքոյ։ Իսկ բարբառ աստուածաշունչ գրոց
ոչ ինչ ցուցանէ. զի գիտեմք զոմանս 'ի նոյն սրբազան
գրոց քաղդէարէն գրեալ, և զոմանս յունարէն։ Զայ-
տնիկ եդեալ՝ պարտ է և զայս ասել՝ թէ չունելն եբրայ-
ական լեզուին զայս առաւելութիւն՝ ոչ բերէ ինչ արատ
ազգին Հրէից. որպէս և ոչ լինելն դրախտին յերկրի
բնակութեան նոցա, կամ ոչ իջանելն անդ տապանին Նոյի,
չունելն նոցա յառաջնմէ անտի աշխարհ սեփական առան-
ձին, ոչ բազմամարդութիւն և ոչ թագաւորութիւն, այլ
յաւէտ պանդխտութիւն և գերութիւն։ Զի ամենայն առա-
ւելութիւն ազգի նոցա հոգևորք են, և յետոյ ուրեմն յԱբ-
րահամէ սկսեալք. միայն սնոտիապաշտ բանք ռաբբիից
նոցա են՝ որ զամենայն ինչ յազգ իւրեանց ձգել նկրտին.
որպէս նաև զհնութիւն որ նախ քան զԱբրահամ։ Այլ

զանազան են վկայութիւնք նախնեաց վասն առաջին հաւատոց Աբրահա-մու։ Յովսեպոս 'ի Հնախօսութեան ա. 7. գլխ. թէ Աբրահամ առաջին եղև որ համարձակեցաւ ասել Աս-տուած մի է. և ամենայն արարածք նորա են գործ։ Փիլոն ուրեք գրէ, թէ Աբրահամ նախ կռապաշտ էր. իսկ այլուր գրէ, թէ որպէս հայր Աբրա-համու զաստեղս պաշտէր. բայց 'ի ձեռն Աբրահամու ծանեաւ զաստուծ

նոցա։ Մովսէս 'ի բանն Աբրահամ գրէ. 'ի չորեքտասանամեանի զերրորդ-կան լուսով լուսաւորեալ՝ կշտամբ-էր զհայր իւր զԹարայ, որ զկռոցս շինէր և վաճառէր, ցուցեալ զսնոտու-թիւն նոցա։ Իսկ բազում առաւելք հաս-տատեն՝ թէ Աբրահամ մինչև ցքա-ղաքն և ուր մ հասանի իւրոյ զկուռս պաշտէր զորոշեալս շինելով և վաճառելով։ Տես և 'ի Հիմաս 'ի պատմ. եկեղ. հին Ղուկաց ԹչԹ. 58։

պարտ է յուշ ածել, թէ ասացիք զոր ինչ խօսին 'ի հնա-
գրաւիս արտաքոյ սուրբ գրոց, թիւրին յուղղուէ, և թիւ-
րեն նաև զհետևօղս իւրեանց. քանզի այնպէս իսկ ընաւո-
րեցան նոքա՝ 'ի պատճառս սուրբ գրոցն 'ի լեզու նոցա գրե-
լոյ՝ զերևելիսն 'ի հնութեց՝ ազգին իւրեանց սեփականել։

Երրորդ՝ լեզու Հրէից չկարէ փաստս և յիշատակարանս
ածել յանուանէ տեղեաց և անձանց նոյեան ժամանակի,
որպէս մեք բերաք վասն մերում լեզուի։ Զի այն յատուկ
անուանք և այլ նշանական անուանք յիշատակեալք 'ի գիրս
ծննդոց զորս ոմանք յառաջ բերեն 'ի հաստատել զառաջ-
նութի լեզուին Հրէից՝ ոչինչ զօրեն. քանզի Մովսէս որ
գրեր, յիւր եբրայական լեզու թարգմանելով զնշանա-
կութիւն գրեր՝ որով նշանակութե կոչեցին Նոյ և Ադամ
առաջին լեզուաւ իւրեանց։ Որպէս և Կրատիոս իսկ գրէ,
թէ 'ի Մովսիսէ գրեցան եբրայական լեզուաւ առ 'ի ծա-
նօթս առնել եբրայեցւոց նովին նշանակութեամբ զոր
ունէին յառաջին լեզուի անդ. զոր օրինակ և այլ թարգ-
մանութիւնք ըստ իւրեանց լեզուի գրեցին զնշանակու-
թիւնսն։ Ըստ սմին և թարգմանիչք մեր 'ի հայկական
լեզու թարգմանելով եդին զոմանս յանուանց 'ի գիրսն
ծննդոց, զորս ոչ կարեմք մեք բերել վասն այսր 'ի վկայ-
ութիւն։ Իսկ զանուանս այլոց ազգաց զոր Մովսէս ոչ
թարգմանելով այլ ընիկ լեզուաւ ազգին դնէ, գիտեմք
զի բառք են այլում ազգի և ոչ Հրէի. վասն որոյ վայրա-
պար ոմանք եբրայական բառ կարծելով բռնադատու-
թեամբ իմն կարծեն հանել զնշանակութիւնն. ըստ այսմ
է և հայկական անունս Արարատ. զոր հրէական բառ
կարծելով, թարգմանեն անէծք սոսկման։ Զորոյ զնշա-
նակութիւն քանզի գիտեմք մեք թէ ուստի է յառաջ եկեալ,
երբ և յինչ պատճառս այսպէս յորջորջեալ, զարմանամք
ընդ անհարազատութի այնպիսի թարգմանութե։ Վասն որոյ
և ուղիղ գրէ Հուետիոս, թէ անուանք ազգաց բազմաց
զորս գրէ Մովսէս՝ ոչինչ նշանակութի ունին յեբրայա-
կանն. և եթ հաւանական է ասէ, թէ զօտար անուանս
բազում տեղեաց և անձանց փոխեալ է նորա 'ի նշանա-
կութիւն իւրոյ լեզուի։

Այս երեքին պատճառք ըստ բաւականին 'ի սուտ
հանեն զառաջնութի լեզուին Հրէից, զոր ոմանք տարա-
պայման պնդեն բազում նշանս յառաջ բերելով, ըստ
մեծի մասին հնարեալս 'ի սպանիացի ռաբբիէն՝ կոչեցեալ
Ալպէն Եզրաս, որ եկաց յերկոտասաներորդ դարուն։ Այլ

Հուետիոս [1] զգլխաւորս 'ի նոցունց որք են հինգ՝ յառաջ բերեալ՝ մերժէ, զանազան պատճառս ածեալ ընդդէմ այնոցիկ. և ասէ թէ առաջին և "սրբազան լեզու կամ ոչ մնաց 'ի տանն Սեմայ և Եբերայ յատակ և անթերի, և կամ եբրայական լեզուն ոչ է այն սրբազան լեզու և առաջին„: Զի եբրայեցւոց լեզուն քանանացւոցն է ասէ, որ կոչի և փիւնիկեցւոց, 'ի ժամանակս աշտարակաշինութեան 'ի վեր երևեալ. վասն որոյ և ոմանք զԱբրահամ ասեն գտիչ եբրայական լեզուին, և վասն Աբրահամու ասեն կրկին լեզուօք խօսել. քաղդէացւոց լեզուաւ՝ որ եղ 'ի ժամանակս աշտարակաշինութեան, և քանանացւոց լեզուաւ՝ որ կոչեցաւ եբրայական լեզու [2]. ըստ որում եղև հասարակ լեզու 'ի յաջորդս սերնդոց Աբրահամու: Սոյնպէս և Պօղգօն Գուլիէլմոս 'ի ճառն իւր որ յաղագս խառնակութեան լեզուաց 'ի Բաբիլոն՝ անորոշ եթող զխնդիրն որ վասն առաջնութեան լեզուին Հրէից: Ի գրեւոցս աստի դիւրաւ իմանան ընթերցօղք զտկարութիւն ընդդիմութեանց նոցա, զոր իբրև զօրաւոր փաստս յառաջ բերեն պաշտպանք առաջ-

1 Ի գիրսն անուանեալ Ապացոյց աւետարանական. առաջարկութիւն Դ. գլուխ 13:

2 Քանզի այսպէս բանք են վասն եբրայեցւոց լեզուին առաջնութեան՝ կարեւոր համարիմ աստ ընդհանուր տեղեկութիւն ինչ վասն այլայլութեան լեզուին նոցա որ ըստ ժամանակս ժամանակս, զոր ինչ գրեն Հուետիոս և այլք վասն այսր: Աբրահամ նահապետս խօսէր 'ի լեզու քաղդէացւոց. նմին իրի և Փիլոն ասէ, թէ սուրբ գիրք գրեալ են 'ի լեզու քաղդէացւոց. կամելով ասել այնու լեզուաւ՝ որով խօսէր Աբրահամ յորժամ եղ յերկրէն քաղդէացւոց: Զայս քաղդէական լեզուն որով խօսէր Աբրահամ, 'ի բաց թողին յետագայք նորա. իսկ յորժամ Նաբուքոդոնոսոր գերեալ ըզՀրեայս տարաւ յերկիրն քաղդէացւոց 'ի Բաբելոն, ցրուեալ 'ի մէջ քաղդէացւոց խառնեցին Հրեայք զհայրենի լեզու իւրեանց. և 'ի քաղդէացւոց և յեբրայեցւոց լեզուէն եղ երրորդ լեզու՝ որ Ասորւոց լեզու կոչեցաւ, որով առաքեալք և Քրիստոս խօսէին: Զի այն քաղդէական լեզուն յետոյ գաւառական լեզուս բաժանեալ եղև 'ի վերջոյ: զոր 'ի սահմանացն առեալ՝ կոչեն Բաբելոնեան, Անտիոքեայն՝ որ և Դամաղեան կոչեցաւ, և Երուսաղէմեան կամ Հրէաստանեան. յայսմ միջնակի էր լեզուն Հրէից և 'ի ժամանակս Քրիստոսի: Անտիոքեայ ասորի լեզուն՝ էր քաղդէական լեզուն բաբելոնեան. և գըրեալ լինէր տառիւք 'ի բաբելոնեան գրոց: Երուսաղէմայ լեզուն խառնեալ էր ընդ եբրայականին, ընդ քաղդէականին և ընդ ասորւոյն. յորմէ և կոչեցաւ լեզու Ասորի քաղդէական, և Ասորի եբրայական: Սխալի Որոգինէս որ զեբրայեցւոց լեզուն տառիւք գծէ 'ի փիւնիկեցւոց կամ որ նոյն է 'ի քանանացւոց. զի այն տառերուն նուազ է յոյժ. և զքաղդէացւոց լեզուն կոչէ և լեզու ասորեստանեայց. ըստ որում մի ակերուն էր լեալ: Այնչափ մերձաւորութիւն գտանի 'ի մէջ լեզուաց եբրայեցւոց, քաղդէացւոց, արաբացւոց և եգիպտացւոց, մինչև մին զմիւսոյն իմանալ: Նաև յաւուրս Աբրահամու լեզու Միջագետաց, Ասորւոցն և քանանացւոց և Պաղեստինուն այնչափ նըման էին՝ մինչև զմիմեանց բարբառ իմանային առանց թարգմանի:

նութե̃ն լեզուին Հրէից, այն է՝ զվկայութիւն սրբոց հարց, որք զառաջնութի̃ն լեզուին՝ նոցա տան ։ Թող զհարս այլոց ազգաց՝ նաև մերքն իսկ¹ նոյնպէս ասեն։ Այլ յայն սակս անզօր ասեմ զայդպիսի փաստս՝ զի սուրբ հարք յայսպիսիս զհետ երթային ռաբունեաց Հրէից. քանզի ոչինչ փոյթ էր նոցա յայսպիսիս վիճել առ որոշելոյ զստոյգն որք արտաքոյ էին 'ի խնդրոց հաւատոյ ։ Եւ քանզի սկզբնագիր մատեան աստուածաշունչ գրոց էր 'ի ձեռս Հրէից, զոր ինչ գրէին ռաբբիք նոցա զայսպիսի բանասիրական խնդրոց սուրբ գրոց՝ բազում ուրեք զնոյն ընդունէին ։ Վասն որոյ և այն զոր ասէ սուրբն Հերոնիմոս, թէ նախնիք առհասարակ հաւատացին եբրայական լեզուի՝ որով գրեալ է հին կտակարանն՝ լինել սկզբնական լեզու 'ի հասարակ խօսս, նախնիքն անդանօր՝ են նոյն իսկ Հրեայք, որոց վկայութի̃ թէ քանի զօրէ՝ ծանուցաք 'ի վերոյ ։ Բայց ոչինչ այլ պատճառս յառաջ բերեն սուրբ հարք՝ քան զոր յառաջ նշանակեցաք. մանաւանդ սուրբ հայրն Գրիգոր Նիւսացի 'ի հակառակ կարծիս է. գրելով թէ Մովսէս միով 'ի լեզուացն վարէր որք եղեն յետ աշտարակաշինութե̃ ։ Եւ Հուետիոս վասն Հերոնիմոսի գրէ, թէ ասելն նորա 'ի

1 Լուսաւորիչ առ Ագաթ. մծգ. ասէ. « Ցրուեալք ընդ իւրաքանչիւր վիճակս ըստ կամացն Աստուծոյ 'ի վերայ երկրի սփռեցան. եօթանասուն և երկու նահապետք լեզուաց կացեալք բաժանեցան ընդ երկիր, հաստատեալք յիւրաքանչիւր սահմանս. բայց մի ոմն 'ի յեբրայական ազգէն ոչ եմուտ 'ի խորհուրդ շինել զկաղապարուն. և ոչ կցեցաւ յերագուերն՝ որ վասն այնր էր խորհուրդն. վասն այնորիկ զիւր լեզուն պահեալ շնորհեաց »։ Ահա վարդապետութիւն բովանդակ յունական հարց՝ առեալ 'ի Հրէից. զոր ուսեալ էր 'ի Կեսարիա 'ի դպրոցս Յունաց. և արդարև չէր իսկ անկ սրբոյ հօրն յայնպիսի ժամանակի յորում հոգ 'ի վերայ կայր նորա զճշմարտութե̃ հաւատոյ ուսուցանել նորոգ դարձելոց 'ի կռապաշտութե̃, թողուլ զոր ինչ լուեալ էր վասն այսր 'ի դպրոցս Յունաց, 'ի քննել՝ արդեօք ստոյգ կամ սուտ իցէ այս խնդիր, որ էր լոկ խնդիր բանասիրական, ոչինչ ինչ վերաբերեալ առ հաւատս։ Նոյն այսպէս և Վարդան որ և յայլ խնդիրս ըստ ամենայնի զհետ երթայ Հրէից՝ գրէ ուրեք. « Առաջին լեզուն մնաց առ Եբերս... որ ոչ միաբանեաց ընդ այլսն »։ Որպէս և Եզնկացին գրէ 'ի մեկն. քերակ. « Բուն՝ լեզուն մնաց առ Եբեր, որ ոչ միաբանեցաւ ընդ շինողաց աշտարակին. վասն որոյ եբրայեցի ասեն զբուն լեզուն, և ամենք զասորին. և որք աստուգել կամեցան՝ զքաղդէացին ասացին. զի այժմ զանանին առ նոսա անուանք նահապետացն Ադամ, Սեթ, Ենովս, որ և մերձ է յասորին։ Իսկ Իսրայէլ անցեալ ընդ ծովն՝ եբրայեցիք կոչեցան. զի Եբրայն՝ անցք թարգմանի. (այս է կարծիք Որոգինեայ). և մոռացան զքաղդէացի լեզուն. և զհայրենին յԵգիպտոս էին մոռացեալ. և բարձաւ Ադամայն զոր այժմ ունին Ասորիք եւեթ քաղդէացիք. և իմաստասէր ոմն ազգաւ եբրայեցի Ապողլեմոս անուն ասէ, թէ նախ Մովսէս շնորհիւն Աստուծոյ արար գիր 'ի վերայ նոր լեզուին. և այն գրովն ետ Աստուած զպատուիրանսն »։

Է. ԳԼ. Սոփոնիայ վասն երբայեցւոց լեզուին լինել մայր ամենայն լեզուաց, է ասացուած ընդարձակ. այլ զայս բան Հերոնիմոսի պարտ է, ասէ, ամփոփել միայն յայն լեզուս՝ որոց արմատ համարի լեզու քանանացւոցն՝ որով վարին Հրեայք։ Այլ վասն այսորիկ այսչափ. զառաւելն թէ կամիցի ոք լսել, գտցէ 'ի գիրս այլոց անաչառ գրողաց թէ զինչ է լեզուն Հրէից, զինչ ազգ նոցա, և երբ ծագումն։



# ԳԻՐՔ ԻՆՆԵՏԱՍՆԵՐՈՐԴ

## ԴՊՐՈՒԹԻՒՆՔ

## ԵՒ

## Ա Ր Ո Ւ Ե Ս Տ Ք

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

ՅԱՌԱՋԻՆ սկզբնաւորութիւն դպրութեանն և արուեստի հայաստան աշխարհիս սկսանի միանգամայն ընդ դպրութեն համօրէն աշխարհի։ Արդ՝ քանզի քննակութիւն նախնի նահապետաց յետ ջրհեղեղին 'ի հայաստան եղև ըստ գրելոյս 'ի գլուխս Բնակչաց, մի օտարաձայնս ինչ ումեք թուեցին խօսեցեալ՝ եթէ ապացուցիւ յայտ առնիցեմք աստանօր զհայաստան աշխարհ լինել խանձարուրք արուեստից և գիտութեանց՝ եթէ նահապետքն այնոքիկ ուսուցեալ ինչ իցեն անդանօր. և մի դարձեալ թուեսցիմք այնպէս՝ թէ զայլոց զփառսն յափշտակիցեմք. զի խօսել զծրից՝ որ ըստ 'ի հայաստանեայց ոչինչ իւիք այլում աշխարհի պատշաճի՝ համարեցի յափշտակութիւն։ Այլ ո՞ւր էր, թէ և առ մեզ երևեալ էր նորոյ ուրումն Դիոդորեայ, որ իւրով ճարտարխօսութեամբ 'ի մեզ դարձուցեր զմերս, որպէս նա 'ի գիրսն իտալացւոց դպրութեան Իտալիոյ գրաւեաց զտարածուցեալսն յայլոց։ Եթէ ոչինչ յափշտակութիւն գտանիցէաք վասն առաջնոց նահապետաց ուսուցեալ ինչ, չէր արժան բանն 'ի մէջ առնուլ. այլ յետ գտանելոյ առ բազում բազմապատիկ յափշտակութիւնս, զիա՞րդ զանց վճռեցաք արարեալ՝ առանց ինչ պատճառի մերժեսցուք զգրեալսն, որպէս առնեն ոմանք. որոց

թէ վասն աշխարհի իւրեանց լինելին բանք՝ արժան թուէր արտի մտօք պաշտպանել։ Այլ քանզի այս ամենայն յիշատակութիւնք ցրուեալք են և անորոշ թողեալք, հարկ է 'ի մի ժողովել, և ըստ կարի յորոշ գլխակարգութիւն խմբագրել։ Բայց յառաջ քան զայս հաստատել՝ են ինչ ինչ գիտելիք յաղագս դպրութեան ժամանակի որ նախ քան զՋրհեղեղն, յորոց սակս պէտք են նախ տեղեակս կացուցանել զընթերցօղս, ապա վասն եղելոցն յետ Ջրհեղեղի բան 'ի մէջ առնուլ։

Արդ. կրկին կարծիք են վասն առաջնոց ժամանակացն դպրութեան ներհակակք իրերաց. զի ոմանք յոյժ առաւելութեամբ համարին ծաղկեալ, յորոց մի է և Պայլի, որ ունի գրեալ վասն այսր առանձին ճառ երկարաձիգ իւրով նրբաքննին ճարտարխօսութեամբն. իսկ այլք բազումք այնպէս խօսին՝ որպէս թէ ոչինչ դպրութիւն գտանէր յազգս մարդկան յառաջ քան զՋրհեղեղն։ Ի մէջ երկոցուն սոցա կարծիք նոցա առաւել ընդունելի գտանի մեզ, որք ասեն նախ՝ թէ որպէս զանազան արուեստք վաղ ընդ փոյթ հնարեցան 'ի յերկարակեաց նահապետացն այնոցիկ զորս յիշէ Մովսէս ծննդ. Դ. 21. 22. այնպէս և հնարեալ էր յայնժամ գիր. և յետ հնարելոյն՝ 'ի գիր արձանացեալ նաև բազում ինչ մանաւանդ պատմական գրուածք։ Այս և 'ի բնաւորութենէ մարդոյս յայտ է. զի թէ ընդաբոյս իմն է և այժմ յամենեսին՝ զայն զոր գիտեն և զոր կրեն և զոր տեսանեն՝ ընդ գրով արձանագրել 'ի յիշատակ սերնդոց իւրեանց յետագայից, ևս առաւել վասն առաջին նահապետաց մարթ է իմաստասիրել՝ 'ի գիր դրոշմեալ նոցա զերևելի անցս. զոր օրինակ զարարչագործութիւն և զանցս դրախտին, զոր լուէին յԱդամայ. զառաջին մահն որ եղև յաշխարհի 'ի Հաբէլ յեղբօրէն իւրմէ Կայենէ. ապա զսպանութիւն նորին Կայենի 'ի Ղամեքայ. զգիւտս արուեստից. զանուանս նահապետաց և այլն։ Զայս ամենայն անհնարին էր նոցա, որք գիր ունէին և լսէին, անգիր և անյիշատակ թողուլ, և միայն բերանով պատմել յետագայից իւրեանց, որպէս ոմանք պնդեն։ Թող զայն՝ զի եթէ մարդիկ զանց առնէին, Աստուած՝ որ վրէժխնդիր էր յայսպիսիս՝ հրամայէր զբարերարութիւնս և զերախտիս իւր 'ի գիր արձանացուցանել. որպէս 'ի սկզբնաւորութեան նոր օրինացս արար 'ի ձեռն չորից աւետարանչաց և յայտնութեան Յովհաննու, որում գրել հրամայէր հրեշտակ Աստուծոյ. և որպէս

յայտնի տեսանեմք 'ի պատմութե խորայելացւոց, որոց պատուիրէր չթողուլ անյիշատակ, այլ ընթեռնուլ. նաև զանազան ծէսս տայր սահմանել առ 'ի անանց պահել զյիշատակ իւրոց երախտեաց։ Ի դնելն այսպէս՝ դիւրին լինէր յայնժամ և Մովսէսի զպատմութիւն գրոց ծննդոցն ըստ իմիք և 'ի գրուածոց և 'ի յիշատակարանաց յայնցանէ հանել [1]։

ԱՅԼ բազմաց ամենեքին 'ի բաց հեռացուցեալ զգրաւոր աւանդութիւն որ յառաջ քան զՋրհեղեղն՝ միայն անգիր աւանդութեամբ հասեալ կարծեն առ Մովսէս։ Բայց զառաջինն յայն սակս առաւել ընդունելի համարիմք, զի բաց 'ի հաւանական պատճառաց 'ի վերոյ յիշելոց՝ նաև զհետս ինչ այնորիկ դատանեմք յիշատակեալ և 'ի սուրբ գիրս. զի Յուդա առաքեալ 'ի 14. բերէ զբան մարգարէութեն Ենովքայ ասելով. "Մարգարէացաւ վասն նոցա և եօթներորդն յԱդամայ Ենովք"։ Այս եղանակ խօսից այսու օրինակաւ 'ի մէջ բերեալ զմիւրիկ բնաբան մարգարէութեն՝ կարի իմն հաւանական ցուցանէ լինել գրաւոր, զոր ունէր 'ի ձեռին առաքեալն, թէպէտ ոչ զայն զմերժեալն յամենեցունց՝ զոր յետագայքն հնարեցին յանուն Ենովքայ. յորոյ հաստատութի բերցուք աստանօր զոր ինչ գրէ Վալդոն 'ի սկզբնաճառն անդ սուրբ գրոց գլ. Է. թղթ. Ց. "Ինձ անշուշտ երևի լինել կիրառութի գրոց յառաջ քան զՋրհեղեղն անդստին 'ի սկզբանէ աշխարհիս. որով առաջին ծնօղն մարդկան հաւանական երևի առաջին գտօղ լեալ նաև գրոց, յորմէ ուսաւ Սէթ զնոսին. 'ի նմանէ աւանդեալ եղեն Նոյի և յետագայից նորուն միանգամայն ընդ առաջին լեզուի, և մնացին մինչև ցխառնակութի լեզուաց, յորժամ ընդ նոր լեզուաց նաև անցմամբ ժամանակաց նոր գիր հնարեցան. իսկ առաջին գիրն պահեցաւ առ նոսա որք զառաջին լեզուն պահեցին [2]։ Քիրխէր 'ի կոթողն պամփիլեան, գիրք

1 Որ կամի առաւելագոյնն իմիք հմուտ լինել վասն այսր, զայլս թողեալ՝ ընթերցցի զայն ճառ՝ որոյ խորագիր է. Կարծիք յաղագս սկզբնագիր յիշատակարանաց. յորում կան այլ և այլ կարեւոր հմտութիւնք։ Տպագրեալ է այս 'ի Պրուքսէլ յամին 1753։

2 Սոյնին բանքս մատուցանեն մեզ առհաս մերոց բանասիրաց փաստ 'ի ձեռս բանել և 'ի հաւանութիւն ածել զբանականս եւրոպացւոց, թէ յետ ցուցանելոյ բազում հաւանական պատճառս զառաջնութիւն հայկականն լեզուիս քան զեւրոպացւոց լեզուին, ո՞չ ապաքէն 'ի դէպ է ընդունել առ հայկականն այդ մեր մնացեալ որպէս առաջին լեզուն Ադամայ՝ նոյնպէս և առաջին գիր Ադամայ։ Մանաւանդ զի պատմութիւն այդպիսի ցուցանէ վասն

ուանդութիւն անեալ մնացեալ ընդ այնչափ հազարաւոր ամս ,, [1] ։

Գտանեմք զհետս ինչ այսորիկ նաև առ արտաքին մատենագիրս. զի Յովսեպոս պատմէ երկուս սիւնս մնացեալ 'ի նախնեաց եղելոց յառաջ քան զՋրհեղեղն, յորս կային տառք. զորմէ գրէ նոյն ինքն Վալդոն անդանօր ասելով. « Եւ եթէ ստոյգ իցէ որ ինչ պատմի 'ի Յովսեպոսէ 'ի հնախօսութեան գրքն Ա. գլ. 2. վասն երկուց սեանց՝ յորոց մին մնաց մինչև 'ի ժամանակս իւր, թէ մարդիկ որ յառաջ քան զՋրհեղեղն արձանագրեալ ունէին 'ի նոսա զմակացութիւս երկնային մարմնոց, և զընթացս և զկարգս աստեղաց [2], չիք ինչ տարակոյս սակս լինելոյ գիր յառաջ քան զՋրհեղեղն ,,։

Բայց ոչ միայն առ Յովսեպոսի, այլ նաև առ Եւսեբեայ 'ի Քրոնիկոնին Ա. 32. գտանեմք յիշատակութիւն ինչ լինելոյ գիր յառաջ քան զՋրհեղեղն. զի 'ի բանից բազմավէպն Աղեքսանդրի բերէ, թէ շինօղն նաւու վասն Ջրհեղեղին՝ հրամայէր « զամենայն զառաջինս և զմիջինս և զվերջինս

[1] Բերցուք ստուգանօր զոր ինչ գրէ Եզնիկացին 'ի Մեկնութ. քերականին. « Յետ սորա եօթներորդն յԱդամայ Ենովք արարեալ նշանագիրս կարծեցաւ և բազմաստղս, և այնու եթող զկեանս վարուց սաստինացն, և զիւր մարգարէութիւն ասաց. գրէ և նա նոյնպէս զուգականս անուանս 'ի աղիւսս և 'ի խեցի, զի ամբողջ պահեսցին նշանակք անուանց և իրաց. և մի պահպանեսցէ նշոյլս բանական շնորհին յազգս բանականաց։ Եւ վկայ այսմ եթէ գոյ նշանագիրք առ 'ի նըմանէ՝ Յուդա յակոբեան զոր ասէ 'ի հանրական իւր թղթի, թէ եօթներորդն յԱդամայ Ենովք գրեաց 'ի մարգարէութեան իւրում, թէ եկն տէր բիւրաւորս հրեշտակօք. վասն որոյ յԵնովքայ և 'ի սմանէ խնամածք սկսեալ զձև նշութառոր գծի, որով առաջինքն վարեցան մինչև 'ի ժամանակս հաստատութեան պատուահասին որ 'ի Ջուրց հեղեղն ,,։ Այլ վասն մարգարէութեան Ենովքայ տես 'ի մեկն. Կալմէտ. ծննդ. Է. 24։ Իսկ վասն գիւտոյ գրոց՝ Յունաց վերջին պատմագիրք Եւստաթէոս, Զենոբիոս, Կեդրենոս, Նիկեփորոս, Նիկետաս, և այլք, զՍէթ գտեալ զտառս գրոց, նաև զխօսս ընթացից արևու և լուսնի. և սահմանօք տարւոյ և ամսոյ։

[2] Զայս յիշէ և Եզնկացի. առեալ 'ի հարկէ 'ի բանից Յովսեպոսի. զի 'ի մեկն. քեր. գրէ վասն Ենովքայ որդւոյ Սեթայ. « Սա մարգարէացաւ թէ անցանելոց է երկիր հրով և ջրով. բայց ոչ յայտնեցաւ թէ հուրն յառաջ իցէ, եթէ ջուրն. վասն որոյ երկուս սիւնս արարեալ աղիւսէ և խեցի. և թէ որպէս ասենն աղիւսաձևս երկուս. և գրէ 'ի վերայ նոցա զանուանս մարմնոց արարածոց զոր կոչեալ էր նախահայրն Ադամ, և զանուանս մոլորակացն զոր ինքն եգ։ Եւ զայս արարեալ հնարս, զի եթէ ջրովն ապականի՝ աղիւսն մնասցէ. և եթէ հրով թրծեալ աղիւսն (մնասցէ) ,,։ Այլ վասն սեանցս յիշելոց 'ի Յովսեպոսէ՝ շփոթեալ, վասն որոյ և սուտ համարին Պրուքքեր և Կալմէտ ծննդ. Է. 13. այլ թողեալ զճշմարիտ կամ սուտ լինելն այսորիկ սեանց՝ լաւագոյն լինէր ասել, թէ Յովսեպոս յայսմ սխալեալ գտանի. զի զսիւնն որ յաւուրս իւր կայր 'ի Սերիադա անուանեալ աշխարհն Եգիպտոսի, կարծէ լինել նոյն՝ որ յԵնովքայ էր թողեալ։

մատենից փոխել, և դնել յԱրեգ քաղաքին ուխտաւորա-ցւոց»։ Այսպէս 'ի 36. տող՝ թէ յետ Ջրհեղեղին հրամանս եկն «երթալ 'ի ուխտաւորացւոց քաղաքէն փոխել հանել զմատեանսն՝ որ ծածկեալ կային անդ, և տալ մարդ-կան. և եթէ տեղին յորում վայրի եղեալ կային, Հայոց աշխարհն է»[1]։

Յետ ցուցանելոյ զհաւանականութիւն լինելոյ գրոյն յա-ռաջ քան զՋրհեղեղն, ևս և զդպրութիւն՝ յաւէտ կամ նը-ւազ, անցցուք այժմ յառաջ բերել զպատճառս՝ յորս սակս 'ի Հայաստան աւելի սկզբնաւորեալ զդպրութիւն յետ Ջրհեղեղի։ Առաջին պատճառն է՝ զի վասն զարմից եղելոց 'ի տապանէ 'ի Հայս՝ գտանեմք 'ի հնագրութիւնս նոյն նոյն յիշատակութիւն, որք վկայեն ոմանց 'ի նոցանէ նոյն նոյն ա-ռաւելեալ, զորոց զվկայութիւնս և զանուանս մի առ մի ու-նիմք բերել առաջի. ուր ունիս տեսանել ոչ միայն զա-նուանս նոյն ուսուցիչ նահապետաց, այլ ոմանց 'ի նոցա-նէ նաև զտեղիսն 'ի Հայաստան։

Երկրորդ՝ բազումք 'ի վաղեմի ժամանակս անդ յՈւր քաղաքի ծաղկեցաւ տոհմն աստեղաբաշխութ̃ի և երկնախօ-սութ̃ի. յորս սակս երկրինք Ուրանոս կոչեցաւ տոհմն[2]. և անդ սկսեալ վարդապետութ̃ի զարևէ, որոյ նմանութ̃ի համարեցան զհուրն. վասն որոյ և զնոյն քաղաքն կոչեցին Ուր, որ նշանակէ հուր[3]։ Արդ հուր կոչել զերկրակն՝ ոչ միայն յեբրայեցւոցն՝ այլ նաև 'ի լեզուի Հայոցս է տե-

[1] Փոխար զուխտաւորացւոց քաղաքն գնէ յատուկ անուան. այլ Կալմէտ 'ի ա. հատ. մեկն. ծննդ. 'ի սկիզբն ճառի որ վասն աշտարակին՝ ասէ. «Սաֆարա քաղաք (խմա ուխտաւորացւոց քաղաք,) կամ գաւառն Սաֆարէնս՝ զորմէ Աղեքսանդր բազմավէպ, Բերոսոս, և Աբիւդենոս, համաձայնք են լինել ա-մենեքին զայն՝ զոր Մովսէս կոչէ Սա-ֆար (լեառն մեծ Սոփիր) լեռանն արևելից 'ի ծննդ. Ժ. 30. և Եբրայ. գիրք ա. կոչէ Սափիրա. և գիրք Է. զնոյն լեռնան գնէ ընդ մէջ Կողքիսայ և Մարայ»։ Այլ մեր գրեալ և ցու-ցեալ է 'ի գլ. Լերանց, և 'ի գլ. Վա-ճառականութ̃ թէ Սոփիրն է Սափիր։

[2] Տես 'ի Ֆոնտմայեան, 'ի պատմութ̃ Աշխար. ծովքը հատոր Ա. գլուխ 3. թղթ. 246։

[3] Բազում հին մատենագիրք, որ-պէս և նախնի Հրէայք ասեն, թէ յայս քաղաք նախնի քաղդէացիք պաշ-տէին զհուր, որ էր նշան արևու, վասն այնորիկ և քաղաքն կոչեցաւ 'ի նոյն անուն Ուր. և քանզի Աբրա-համ նահապետ ոչ կամեցաւ պաշ-տել, քաղդէացիք ընկեցին զնա 'ի հուր. այլ Աստուած ազատեալ զեր-ծուցեալ զնա 'ի հրոյ՝ հրամայեաց ե-լանել յերկրէն յայնմանէ. որում յարմարեալ զբան սուրբ գրոց. զի ծննդ. ժա. 31. ասի վասն Աբրահամու ընդ այլ Թարայ. «Եհան զնոսա 'ի հուր (քաղաքէն) քաղդէացւոց»։ Սուրբն Հերոնիմոս որ զայս պատմութ̃ հեր-քէ մերժէ, բայց 'ի Բ. Եզրաս Թ. 17. թարգմանէ 'ի լատինն, «Հաներ զԱբ-րահամ 'ի հրոյ քաղդէացւոց». փո-խանակ թարգմանելոյ 'ի Ուր քաղա-քէն քաղդէացւոց։

սանել. և քաղաքն Ուր՝ որ է Ուրհայ և Եդեսիա՝ է 'ի Միջագետս անդ կից հայաստանեայց 'ի հարաւոյ. և ընդ բազում ժամանակս ընդ տէրութե̃ մերով լեալ, և իբր մի սահման միակցեալ:

Երրորդ՝ 'ի Խաղտիս գտնեն 'ի սկզբան անդ ծաղկեալ ուսմանց. զի ըստ Փօսմալէանի[1] այսպէս ցուցանեն թէ առաջին նահապետք քաղդէացւոց բնակեալ էին 'ի ձորս Կովկասու առ Պոնտոսիւ. ուր և կոչէին Քաղդիք, Քալիւբք[2], ըստ մեզ Խաղտիք. և անտի ապա իջին 'ի ստորին ծայրս Եփրատայ, որ կոչեցաւ աշխարհ քաղդէացւոց: Սոքա առաջին Քաղդիք կամ Խաղտիք՝ որք էին կողքիայիք՝ 'ի սկզբանէ անտի ունէին դիտողութիւնս երկնից փառագրեալ 'ի վէմս 'ի Կողքիս. ուստի առեալ Թուրի ասէ Արգանաւորդաց և բերեալ 'ի յունաստան. եղեն առաջինք 'ի բանալ զհանքս. նաև զերևելի գիտաս արուեստից և գիտութեանց սոցա ընծայեն ասէ նախնիք. աստեղաբաշխութիւն համարիւր սկզբնաւորեալ առ սոսա. վասն որոյ և յորժամ գաղթականք ինչ սոցա փոխադրեալ գնացին յաշխարհն քաղդէացւոց, անդանօր ևս պահեցին զնոյն սէր դպրութեանց: Եւ արդարև ըստ առացելոցս գտանեմք ինչ ինչ յիշատակութի նաև առ նախնիս՝ որք զայս կարծիս նորա հաստատեն: Այետաս անուն զոմն ասեն լեալ նախնի թագաւոր կողքիսացւոց, և զնա որդի արեւու կոչեն. որով յայտ առնեն և անդ լեալ 'ի նախնումն զուսումն և զվարդապետութի̃ 'ի վերայ արեւու, յորմէ եւ այսպիսի համբաւ, որպիսի եւ և 'ի հայաստան 'ի վերայ այլոց, զորոց ունիմք գրել: Ապողոն նոյն իսկ կողքիսացւոց ընծայէ և զաշխարհագրութի̃, յասելն զնոցանէ. "Պահեն տախտակս նկարագրեալս 'ի հարց անտի աւանդեալս, յորս է տեսանել ցուցակ ինչ որոշ ճանապարհաց, և պատկեր առհասարակ ծովու և ցամաքի": Ի Քրոնիկոնին Եւսեբեայ 'ի նախնագոյն ժամանակս դիւցազանց յորջորջեալ՝ յիշատակի Մարսիաս անուն փիլիսոփայ 'ի Կողքիսոյ եկեալ: Նոյն իսկ անցք Մեդեայ՝ հռչակեալ 'ի պատմութե̃ անդ Արգանաւորդաց՝ յայտ առնէ յաճախեալ առ նոսա մոգութե̃ ուսումն վաղեմի, որ 'ի

[1] Փօսմ. հատոր ա. գլուխ 10. սորին և 'ի հատոր Է. 'ի Թղթահամարսն 246. 247 և 371:

[2] Ստրաբոն, գիրք ԺԲ. գրէ. "Ի վեր քան զՏրապիզոնի և Փառնակիոյ են Տիբարենիք և Քաղդիք և Սաննիք": Եւ դարձեալ ասէ վասն նոցա. "Որք այժմ Քաղդիք կոչին՝ երբեմն Քալիւբք կոչեցան":

սկզբանն անդ էր արդարև գիտութիւն, ապա հետզհետէ այլայլեալ փոխեցաւ 'ի հմայութիւն ։ Յուստինոս գրէ վասն սկիւթացւոց, յորս իմն և զԿողքիացիս, ունել աւանդութիւն 'ի սերունդս իւրեանց՝ թէ այս մեր հողագունտ յաւուր միում ունի բորբոքել հրով ։

Այս ամենայն բանք ցուցիչք բանաւորութեան յայնչափ հին ժամանակս՝ յայտ առնեն թէ նախնի նահապետք սերունդք Նոյի ուսուցին անդէն 'ի Խաղտիս զայս ամենայն վարդապետութիւն կամ դպրութիւն և ծանօթութիւն ։ Արդ եթէ նոքա 'ի սահմանակից աշխարհս ուսուցին, քանի՞ առաւել 'ի Հայաստան ուսուցեալ էին, որ էր բնիկ աշխարհ նոյն նահապետաց կողքիացւոց, որոց նախ 'ի Հայս էր բնակեալ, ապա հետզհետէ 'ի բազմանալն սփռեալ 'ի դրակից աշխարհս, յորոց մի է Խաղտիք կամ Կողքիս կից հայաստան աշխարհիս յարևմտից հիւսիսոյ ։ Ի հաստատութիւն այսորիկ աստանօր յառաջ բերցուք և զուսմանս և զուսուցիչս յառաջինն նահապետաց բնակելոց 'ի Հայաստան՝ որչափ ինչ գտանին յիշատակեալ կամ աւանդութիւն առ նախնի ազգս, և կամ 'ի գիրս ։

## ՅՕԴՈՒԱԾ Ա

Նահապետք 'ի Հայաստան բնակեալք յետ Ջրհեղեղին, սկզբնաւորողք ուսմանց և դպրութեանց ։

## ՆՈՅ կամ ՍԱՏՈՒՐՆՈՍ

ՅԵՏ ցուցանելոյ մեր 'ի վեր անդր հաւանական փաստիւք լինելոյ գիր և դպրութիւն նախ քան զՋրհեղեղն, ինքնին զհետ գայ և Նոյի՝ որ զամս 600 կացեալ էր ընդ առաջինն նահապետսն նախ քան զՋրհեղեղն՝ գիտել ինչ ինչ 'ի դպրութեանց անտի ։ Նոյն իսկ արուեստն երկրագործութեան՝ զոր սեփական Նոյի լինել ասէ սուրբ գիրն, յայտ առնէ թէ գիտէր ինչ ինչ և 'ի բնական պատմութենէ բուսոց, ունէր և տեղեկութիւն ժամանակի, ընթացից արևու և լուսնի՝ զորմէ կախեալ կայ արուեստ երկրագործութեան ։ Այլ յառաջ բերցուք զոր ինչ գտանեմք յայլոց աւանդեալ ։

Հրեայք զի զՆոյ 'ի մարգարէս կարգեն, ցուցանեն և զեօթն պատուէրս նորա գրեալս, զորս մեկնեալ բացատրեաց Սելտենոս, յորոց վեցք էին պատուէրք տուեալք Ադամայ յաստուածուստ. իսկ եօթներորդն էր Նոյի յԱստուծոյ տուեալ նմա: Տեղեակ էր ասեն փոքր 'ի շատէ և բնութեան կենդանեաց: Իսկ արաբացիք ուսուցեալ ասեն Նոյի և զգաղտնիս բնական իրաց և զընթացս աստեղաց, սահմանեալ զամս ըստ ընթացից արեւու, և զերկոտասան ամիսս ըստ ընթացից լուսնի: Հեթանոսք զՍատուրնոս՝ որպէս կոչէին զՆոյ, անչափ հմուտ համարէին մասանց և հանգամանաց ժամանակի, մինչև համարել զնա իշխան ժամանակի. յայս սակս և անուն տային նմա Կռոնոս, որ նշանակէ ժամանակ[1]:

Սակայն այսր ամենայնի զոր ասեն սոքա, թէ և ոչ գտցուք վկայութիւն ինչ յարժանահաւատ մատենագրաց[2], բայց նոյն իսկ պատմութիւն սուրբ գրոց՝ որ զՆոյէ ասէ կացեալ զամս բազումս, որպէս եդաք 'ի վերոյ, նախ քան զՋրհեղեղն, և յետ Ջրհեղեղին ևս կացեալ ընդ դարս երիս, յայտ առնէ բազում ինչ ուսեալ նորա յառաջնոցն բնաբանականս և տնտեսաքաղաքաշխականս. բազում ինչ ևս ինքնին ուսեալ յետ Ջրհեղեղին, մանաւանդ յետ սկսանելոյ գործել զերկիր:

1 Սատուրնոս, ասէ Կիկերոն, գիրք Բ. յաղագս բնութեան աստուածոց, զընթացս եղանակաց ժամանակաց պարագրեաց ասեն. վասն որոյ և յունարէն Քռոնոս ասի, որ է միջոց ժամանակի: Եւ Մակրոբիոս գրէ. Սատուրնոս է հաստիչ ժամանակաց. վասն որոյ և 'ի Յունաց կոչի Քռոնոս: Նաև ոմանք երկնի կոչեցին զՍատուրնոս, որպէս գրէ Կիկերոն, Էննիոս, Սերվիոս և Արնոբիոս, կամ սակս յանծանօթ աշխարհէն իբր 'ի յերկնից 'ի լեառն Մասիս իջանելոյ, և կամ սակս վարդապետելոյ նորա զերկնից:

2 Պռուքքէր ոչ միայն զփիլիսոփայութիւն, այլ և զամենայն գաղտնութիւն զոր ինչ պատմեն գիտել վասն առաջին նահապետաց՝ բոլորովին մերժէ իբրև սուտ, սակս չունելոյ 'ի ձեռին պատմագիր հաւաստի. մինչև ըստ բանից նորա զհետ գայ նախնի նահապետաց ոչինչ գիտել՝ բայց միայն զարուեստ ձեռին իւրեանց: Այլ 'ի դէպ իսկ գրէ Գէսժիէ 'ի բանն Նահապետ. „Անհնարին իմն էր որոց գլուխ էին ազգատոհմի, և որոց կեանքն էր բազմադարեան՝ չունանել ինչ ծանօթութիւն մասնաւոր իւրեանց 'ի մասին բնական պատմութեան, բնաբանութեան, տնտեսաքաղաքաշխութեան, աշխարհագրութեան և այլն: Այլ զի անշուշտ գտեալ գործէին ուսանել զայնոսիկ և առ յետագայս իւրեանց: Վրիպակ մեծ է առնել հաստատութիւն՝ թէ նախ քան զելս գրոց և գրեանց՝ ամենեքին առհասարակ տգէտք էին և անմիտք... Արդարքն Յոբ և իւր բարեկամք չէին ինչ ուսեալ 'ի Ճեմարանի, բայց խորհրդածեալ հանճարէին զգործոց Աստուծոյ, և զանեաչուէ աշխարհ. որպէս արարին զկնի փիլիսոփայք ամենայն ազգաց,,:

## ԶՕՐՕԱՍՏՐ Ա. կամ ԶՐՈՒԱՆ

Նախկինս այս Զօրօաստր, որ և Զրադաշտ, զոր բազում ուրեք յիշատակեն մատենագիրք ; մի 'ի նախնեաց յաջորդանէ Համարի, որք եղեն սկզբնաւորօղք կամ ծագկեցուցիչք դպրութեց, որպէս ասիմք գրել ստորև․ բայց նախ 'ի մէջ բերցուք զբազմադիմի այլևայլութիւն անուանց նորա ։

Արդ, որպէս ցուցաք 'ի գլուխն Բնակչաց, Զօրօաստրս այս է Սեմ որդի Նոյի․ որ և զկնի կոչեցաւ Զրուան․ իսկ զայս անուն ածանցեալ կարծեմք 'ի բառէս Զարուանդ, 'ի բանից Խորենացւոյն այսպէս իմաստաւորեալ, որ ասէ եթէ տեղի բնակութե Սեմայ կամ Զրուանայ կոչեցաւ Զարևանդ ։ Եւ զի բազումք միաբանին յայսմ՝ թէ տեղիք բնակութեան նախնեաց կոչեցան գէթ ըստ մեծի մասին յանուանէ նահապետաց որք բնակեցան 'ի նոսա, յայնմանէ և մեք համաձայնեալ եմք՝ թէ տեղի բնակութե Զրուանայ յանուանէ նորին կոչեցաւ Զարևանդ, որ ապա աղաւաղանօք փոխեցաւ 'ի Զրուան․ և այս անուն ևս քաջայայտ է, զի և օտարազգի մատենագիրք զԶօրօաստրն զՀաստիչն դպրութեց պէսպէս հնչմամբ անուանեն, նաև այնպիսի անուամբ՝ որ մերձենայ յանուանս Զարևանդ ։ Աղեքսանդր բազմավէպ առ Կղեմայ աղեքսանդրացւոյ կոչէ Զարաս կամ Նազարատաս․ առ Պորփիւրի՝ Զաւրատաս․ առ սրբոյն Բարսղի 'ի վախճանի յիե․ Թղթոյն Զարինաւն, զոր ոմանք ուղղել կամին 'ի Զարօաւն․ Աղաթաս գիրք ջ․ որ զՊարսից՝ ասէ․ "Զօրօաստրէր կամ Զարադէս, քանզի կրկին ունէր անուն": Թէոդորոս մոպսուեստացին առ Փոտիոսի, մատեան ձա․ գրէ․ "Սահմանեաց զմոլար վարդապետութիւն Պարսից Զարադէս, որ առ Զարադամ էր": Սուիդաս 'ի բառն Պիւթագորաս սամոսացի՝ կոչէ Զարէս ։ Պետրոս սիկիլիացի 'ի պատմ․ կոչէ Զարադէս ։ Պլուտարքոս 'ի բանախօսութիւն Տիմէոսի կոչէ Զարադաս, որ է Զրադաշտ անուն, որ առ Եղիշէի և առ Եզնկայ խառն 'ի գործ ածի ընդ Զրուանայ ։ Եւ այսպէս զանազան հնչմամբ կոչելով յայտ առնեն, թէ սոքա հեռաբնակքն ոչ գիտէին զբնիկ անունն՝ որպէս գիտեն Հայք բնիկք աշխարհին՝ ուր բնակեցաւ Զարևանդն, զոր այլք յարևելեայց կոչեցին Զրուան ։ Իսկ թէ ընդէր անուն Սեմայ՝ յորմէ և տեղի նորա՝ կոչեցաւ Զարևանդ, թուի

մեզ սակս վարդապետութեան նորա զարեէ․ որպէս թէ զօրս ամօք ուսոյց․ գոլով տեղի կամ իբր դպրոց վարդապետութեան նորա ։ Իսկ զանուանս Զօրօաստր՝ բազումք ստուգաբանելով կարծեն նշանակել կենդանի աստղ․ զոր օրինակ է ասեալ և 'ի գրուածս ընծայեալ Կղեմէսի․ բայց յունականն կեղծիք է այս ասէ Պօշար․ իսկ ինքն ըստ իւրում սովորութեն յեբրայականէն բերելով ստուգաբանէ աստեղագէտ կամ աստղադիտողն ։ Այլ թէ ծանօթ լինէր լեզուի և պատմութեն ազգիս՝ քաղդայայս իմանայր լինել և այսմ աղաւաղութեն հայկական անուանցս զօրն աստղ․ աստղ՝ ածանցեալ 'ի բառէս աստղ․ իսկ․ զօր՝ 'ի բառէս զօրն․ զի տառս ա կամ ա—, յայտ է թէ դիւրաւ փոխի 'ի օ ։ Վասն որոյ և Պրուքքէր զստուգաբանութիւն հանեալս 'ի յունականն և 'ի հրէական լեզուաց՝ 'ի բաց մերժեալ, 'ի դէպ իսկ գրէ 'ի հատոր ա․ Թղթ․ 118․ թէ զստուգաբանութի Զօրօաստր անուանս "պարտ է յաւէտ յօտար լեզուաց հանել, որք յառաջին ժամանակի անդ կային,,։ Զոր օրինակ է մերս հայկական լեզու, որում անտեղեակ էր ինքն։ Մինչև ցայս յայտ արարեալ զհաւաստի ծագումն անուանս Զրուանայ և Զօրօաստրայ՝ արդ մատիցուք 'ի նշանագրել զոր ինչ նախնիքն գրեն ուսուցեալ նորա ։

Ամենեքին միաբան գրեն զնմանէ հաստիչ լեալ մոգութեան [1]․ իսկ մոգութեն ուսումն, որպէս գրէ Պլինիոս, ուսուցանէր զերիս զայսոսիկ, զբժշկութի, զկրօնս և զաստեղագիտութի։ Ցայս պարտ է վերածել և զասացեալն Յուստինոսի ա․ 2․ (Թէպէտ նա վասն երկրորդ Զօրօաստրայ գրէ, որ ուսեալ էր յառաջնոյն, որպէս տեսցի ստորև․) թէ Զօրօաստր ուսուցանէր զարուեստ մոգութե, (որով իմա զուսումն կրօնի և բժշկութե), զսկզբունս աշխարհի, (իմա զպատմութի սկզբնաւորութե աշխարհի, որ է արարչագործութի), զշարժումն աստեղաց, (իմա ասել զաստեղաբաշխութի)։ Ի բանից․սոցա և այլոց նախնեաց այսպէս համարիմ, թէ Զրուանն առաջին որ էր Սեմ՝ ուսոյց նախ զաստուածպաշտութիւն զոր գիտէր 'ի նախնեաց իւրոց․ երկրորդ՝ զբժշկութի, կարևոր կենաց մարդոյ․ և երրորդ՝ զստոյգ աստեղաբաշխութիւն, որ զկնի 'ի յետագայից փոխեցաւ յաստեղագիտութի կամ յաստղահմայութի ։

[1] Պրուքքէր հատոր ա․ Թղթ․ 117․ զԶօրօաստր կոչէ "Հաստիչ աստեղեան փիլիսոփայութե,,։ Բայց զոր ինչ գրեն, ասէ, ընծայեն՝ անստոյգ են։

Վասն երկուց առաջնոց խօսեցաք զենի · իսկ վասն ուսուցանելոյ նոցա զաստեղաբաշխութիւն, բաց 'ի վկայութէ նախնեաց՝ են և բնական պատճառք մնաց համոզիչք : Զի քաջ քննեալ՝ յայտ է թէ նախ քան զջրհեղեղն գիտէին մարդիկ եթէ արեգակն զշրջան իւր կատարէ 'ի միջոցս այսչափ ինչ աւուրց, իսկ լուսին 'ի միջոցս ամ-սոց · ունէին 'ի հարկէ գէթ քանի մի տօնս յորոշեալ ա-ւուրս տարւոյն · արդ բնական իմն էր նոցա աւանդել որ-դւոց իւրեանց և սերնդոց զայս ամենայն · այսինքն է՝ զըն-թացս արեւու, զչորս եղանակս, զընթացս լուսնի և զքա-ռորդս նորա : Եւ ևս քանզի յետ ելիցն 'ի տապանէն եր-կրագործութիւնն էր առաջին արուեստ մարդկան, զի անտի էր ամենայն դարմանք կենաց նոցա, և զի երկրա-գործութիւն յամենայնի պէտս ունի գիտել զժամանակս, թէ երբ պարտ է սերմանել զայս ինչ և զայն, և որ այլ այսպիսիք, այս ևս ստիպէր զնոսա գիտել և ուսանել զդ-փոփոխութիւն ժամանակաց, որ է ասել զուշակութիւն իմն զընթացից արեւու և լուսնի և փոփոխութեանց նոցա : Արդ եթէ զայս ամենայն կարեւոր իսկ արարեալ իցէ նոցա՝ ըն-դէ՞ր չասիցեմք թէ մին յելելոցն 'ի տապանէ, որ այն ինքն է Սեմ որդի Նոյի, առաւել խնամով ուսուցիչ եղեւ այսմ ամենայնի · որ և 'ի բազմանալ մարդկան՝ որոշեալ էր իւր տեղի ինչ և ուսուցանէր անդէն, ուր և եղեւ բնակութիւն նորա · յորմէ և Սեմ ընկալաւ զերկիրորդ անուանս Զարե-ւանդ կամ Զարուանդ, զոր ապա յետագայք այլայլեալ փոխեցին 'ի Զրուան և յայլ անուանս՝ զորս նշանագրե-ցաք 'ի վերոյ : Եւ քանզի 'ի հետաքննելն տեղեկութէ ըն-թացից արեւու և լուսնի հարկաւ զհետ գայ զուշակել զցրտութիւն, զջերմութիւն և զայլայլութիւն օդոց՝ անձրեւաց և շնչելոյ հողմոց, զորպէս և այսօր իսկ տեսանեմք զնոսա որք քաջ դիտող են այսպիսեաց՝ հաւաստեաւ գուշակեն զփոփոխութիւնս օդոց, աստի յայսմանէ յառաջացեալ կամ համբաւեալ կարծեմք զուսումն գուշակելոյ զապագայս, զոր և տան առաջնոյն Զրուանայ :

Այլ զգուշակութիւնս զայս որ յայնժամ զփոփոխութէ ժամանակաց միայն էր՝ յետագայք փոխեցին, և զհետ եղեն գուշակել նաեւ զմարդկային գործս և զանցս ա-խարհի · յորմէ ճշմարիտ աստեղաբաշխութիւն առաջին այլափոխեալ դարձաւ յաստեղագիտութիւն : Եւ առաջին մոգութիւն որով կոչէին յայնժամ զուսումն աստուածպաշ-տութեան, բժշկութեան, և գուշակութեան օդոյ, և խաւար-

մանն արեգական և լուսնի, և ժամանակի անկելոյ և սեր-
մանելոյ, փոխեալ գտաւ յազգանդ իմն նոյնպէս անուա-
նեալ մոգութիւն, որ ուսուցանէր զարեգապաշտութիւն, զաս-
տեղագիտութիւն, և զհմայութիւնս: Նոյնպէս և բժշկական
գուշակութիւնս 'ի գիտութէ յառաջացեալ, որ գուշակէ
զջերմութիւն և զցրտութիւն, զվտանգաւոր աւուրս հիւան-
դին, զառողջանալ և զմեռանել նորին, դարձաւ 'ի կա-
խարդութիւն[1]: Եւ որ չարն է՝ 'ի նախնի ժամանակս՝ մա-
նաւանդ Պարսիկք զամենայն ուսուցիչս այսպիսեաց կոչե-
ցին Զրուան կամ Զորոաստր. և յայնմանէ զայն ամենայն
մոլորութիւնս ուսուցեալս 'ի յետագայ Զորոաստրաց, ե-
դին 'ի մտի յառաջնոյն Զորոաստրայ ուսուցեալ: Այլ առ
'ի տալ ընդհանուր ինչ տեղեկութիւն վասն այսպիսեաց՝ 'ի
դէպ է աստանօր յիշել զբազմաւորութէ Զորոաստրաց՝ զո-
րոց պէսպէս բանք գտանին առ նախնիս. որոշելով ըստ
կարի որչափ ինչ մարթ է:

Պլինիոս Լ. 1. այսպէս ասէ. "Անշուշտ անդանօր 'ի
պարսկաստան 'ի Զորոաստրայ սկզբնաւորեալ եղև (մո-
գութիւն). յայսմ միաբանին հեղինակք. այլ թէ այս մին
եղև, թէ յետոյ և այլ, չէ յայտ ըստ բաւականին": Այլ
պատմութիւնք զանազան ազգաց անշուշտ յայտ առնեն՝
թէ բազում եղեն Զորաստր անուանեալք, յորոց զառա-
ջինն ասեմք լինել Սեմ՝ 'ի պատմութէ Խորենացւոյն ի-
մաստասիրեալ, որպէս գրեցաք 'ի վերոյ և 'ի գլուխն
Բնակչաց: Սա է զոր ուսուցիչ համարին քաղդէացւոց.
քանզի զպատմութիւն արտաքնոց յարմարել կամելով ընդ
սուրբ գրոց՝ 'ի դէպ է ասել, թէ կամ նախ քան զցրուել
մարդկան 'ի հայաստան աշխարհէ, և կամ յետ ցրուե-
լոյն՝ նախնիք քաղդէացւոց՝ յորժամ Սեմ ուսուցանէր 'ի
Զարեւանդ գաւառի աշխարհիս Հայոց, ուսան 'ի Սեմայ

[1] Զոր ինչ ուսումն հեթանոս մա-
տենագիրք ընծայեն նախնոյն Զորո-
աստրայ՝ զնոյն և հրեայք՝ զոր օրինակ
առաքել Եւփեզէր՝ ընծայէ Սեմայ որ-
դւոյ Նոյի. որպէս է գիտութի ժա-
մանակի, գիւտ աստեղաբաշխութէ,
և զժամանակն հաշուելոյ 'ի ձեռն
ամսոց և տարւոյ, և զնահանջելն ամ-
սոց. ուսուցիչ Սեմայ եղև ասեն Մա-
թուսաղայ, որ յառաջ քան զջրհե-
ղեղն զամս 78 ուսոյց նմա: Իսկ Յոյնք
զՍեմ նաև ուսուցիչ լեալ ասեն այլոց,
որ առաւել 'ի դէպ գայ առաջնոյն Զո-
րոաստրայ՝ որպէս գրեցաք. բժիշկ
լեալ ասեն՝ որպէս էր Զորոաստր, և
զբժշկուէ գրուածս թողեալ յետա-
գայից: Իսկ Մեթոդիոս կոչէ զՍեմ և
գտիչ արուեստի աստեղաբաշխութէ:
Զայս ամենայն չէ պարտ մերժել առանց
այլոց առասպելախառն զրուցաց՝ որ
գուցէ 'ի յետագայից յաւելան, և առանց
ոչ գտանելոյ յայժմեան պատմութիւնս
ազգին Հրէից:

զմոգութիւն, որ նախ, որպէս ասացաք, էր ուսումն աս-տուածպաշտութեան, աստեղաբաշխութեան և բժշկութեան. և զայն ուսումն տարան յաշխարհն իւրեանց. և յայնմա-նէ համարեցան արտաքինք՝ թէ նոյն իսկ Զօրօաստր էր յաշխարհին քաղդէացւոց: Ուր արժան է յուշ առնել, թէ քանի՛ յարմարի աստանօր ըստ կարծեաց Փօռմա-լէօնի ասել, թէ քաղդէացիք որ 'ի Բաբելոն՝ յառաջին Քաղդէայց կամ ըստ մեզ Խաղտեաց 'ի կողմանց Պոնտոսի՝ որ առ Հայաստանեաւք, իջեալ գնացեալ էին զկնի անդր 'ի Բաբելոն: Զի 'ի դնելն այսպէս՝ ամենեւին ոչինչ ընդ-դէմ թուիցի առնելն վասն քաղդէացւոց ուսեալ 'ի նոյն իսկ 'ի Սեմայ. քանզի յայտ է թէ բնակիչքն այն Քաղ-դեայց կամ Խաղտեաց որ առ Պոնտոսիւ՝ նախ յառաջ Սեմայ բնակէին 'ի Հայս. և ապա առ բազմանալոյն հետզհետէ սփռեցան մինչև ցանդր 'ի Խաղտիս, յորոց բազումք ունկնդիր լեալ էին վարդապետութեան Սեմայ. Քանի՛ յարմարի և ընդունելի լինի նաև այն հնութիւն աստեղաբաշխական դիտողութեան՝ զոր ունէին քաղդէացիք կամ բաբելոնացիք առաւել հին քան զՊարսիկս: Զի պարտ է ասել, թէ այն առաջին Քաղդիք կամ Խաղտիք առաւել քան զայլս փութոյ պնդութեամբ ուսան 'ի Սեմայ. և առաւել հետամուտ գոլով՝ թուի թէ ինչ ինչ 'ի դի-տողութեանց նախնեաց օրինակեալ կամ առեալ 'ի Սեմայ՝ տարան յաշխարհն իւրեանց 'ի Խաղտիս. և ինքեանք եւս 'ի ժամանակաց անտի Սեմայ սկսան առնել զդիտողութիւն իւրեանց. ապա յորժամ գաղթական ինչ այսր Քաղդեայց խաղացին յաշխարհն Բաբելոնի՝ անդր տարան և զայն դիտողութիւնս առաւել հնագոյնս քան զՊարսից, որպէս յայտ եղև յառաման անդ Բաբելոնի 'ի մեծէն Աղէքսանդ-րէ, բայց խառնեալս և առասպելեալ հնութեամբ՝ գուցէ յաւելեալս 'ի յետագայից:

Այս է ահա պատճառն առաւել տեղեակ գոլոյ քաղ-դէացւոց կամ ասորեստանեայց քան զայլս, և ոչ դաշ-տավայր դիրք աշխարհին իւրեանց, որպէս համարի Կի-կերոն 'ի դիրան գուշակութեան. զի և յաշխարհին Հայաս-տանեայց ոչ պակասեն լայնարձակ դաշտավայրք. բայց զարմանք այն են՝ զի Հայք բնիկք երկրին Սեմայ անփոյթ եղեն բոլորովին, իսկ առ քաղդէացիս յետ փոխադրելոյ անդր գաղթականին Խաղտեաց՝ նոյն փոյթ դիտողութեան մնաց նաև առ յետագայս նոցին, որպէս գրէ Դիոդորոս

սիկիլիացի ¹. վասն որոյ և ասէ Պրուքքէր Հատոր Ա. Թղթ. 104. «Ցայսմ (փիլիսոփայական) պատմութեան մերում ոչ գտանի ազգ նախնագոյն քան զՔաղդէացիս, Թէպէտ և ոչ կարեմք նշանագրել զհաւաստի ծագումն նորին»։ Այլ եթէ եղեալ էր նորա զառաջին Զօրոաստրն լինել Սեմ, որպէս ուսուցանէ պատմութիւն ազգիս, և անդէն վարդապետեալ նորա զարևէ և զասորեղէ 'ի Զարեւանդ գաւառի, կարէր և զծագումն քաղդէացւոց դպրութեան անել ըստ մեզ 'ի Սեմայ անտի սկզբնաւորեալ, 'ի բաց Թողեալ զոր ինչ առաջ յաւելլին յետագայք կեղծեալ կամ մոլար վարդապետութիւնս։ Այսչափ ինչ շատ լիցի առ 'ի հմտութիւն ընթերցողացն՝ Թէ առաջին Զօրոաստրն էր Սեմ ուսուցիչ մոգութեան 'ի Զարեւանդ գաւառին Հայոց. և Թէ սա էր Զօրոաստր քաղդէացւոց, որ լինի նախնագոյն քան զՊարսիցն։ Արդ տեսցուք զատանօր և զերկրորդն Զօրոաստր։

## ԶՕՐՕԱՍՏՐ Բ. ԲԱԿՏՐԻԱՑԻ

Զսա համարիմք լինել Թոռն Սեմայ որդի Տարբանայ, որ առաջ գնաց բնակեցաւ 'ի Բակտրիա. այսպէս իմաստասիրեալ 'ի հին պատմութէ զոր յիշէ Խորենացին Ա. 6. առեալ 'ի սուրբգրապատում մատենից, որպէս յառաջ բերաք 'ի գլուխն Բնակութեան վասն Սեմայ. ուր պատմէ Թէ Տարբան ելեալ 'ի հայաստան աշխարհէ և 'ի Տարօն գաւառէ ուր բնակէրն՝ գնաց բնակեցաւ առ եզերբ սահմանաց բակտրիացւոց. ուր Թէպէտ Տարբան սակաւ աւուրս բնակեցաւ, բայց մին յորդւոց նորա անդ 'ի Բակտրիա մնաց. «Մնացեալ, ասէ, և մի ոմն անդ յորդւոցն նորա»²։

1 Հատոր Ա. Թղթ. 145. ըստ առաջադրութեն Վէսսելինկայ. «Զայս ինչ իրաւամբ կարէ ոք հաստատել, Թէ 'ի գիտութեն աստեղաբաշխութեն քաղդէացիք գերազանցեն քան զամենեսին, և փոյթ մեծ ունէին այսմ գիտութեն»։ Եւ այլուր ասէ, Թէ քաղդէացիք ոչ որպէս զՅոյնս ուսանէին զայսր աստեղաց զուսումն, (որ յայնժամ փոխեալ էր, և լեալ ուսումն զուշակելոյ զանցուածս 'ի ձեռն աստեղագիտութեն). այլ որպէս աստեղագիտն 'ի մանկութէ 'ի հարց անտի ուսեալ զայն փիլիսոփայութեն՝ 'ի բաց Թողուն զհոգս այլոյ ամենայնի. և այնպէս անկս 'ի գեղարդյա հասանին ուսմանց այն վարդապետութեն, և առնս ընդերկար ուսելոյ 'ի նոյն՝ քաջահմուտ հանդիսանան։

2 Զայսպիսի անցանախոսութե գնեն և նոքա՝ որք զՔամ զորդի Նոյի կացուցանեն զանիչ մոգութե. այլ փոխանակ Բակտրիոյ փոխադրեալ ասեն 'ի Պարսս, և անդ զանձն իւր Զօրոաստր անուանեալ։ Սոքա որդին Քուշ, ասեն, կոչեալ զորպեսա հօրն, նաև զանուն մոգական անուանեալ Զօրոաստր. յետ այնորիկ ոք և կեր-

Եւ զի Նախնի մատենագիրք 'ի չորից Զօրոաստրաց զմին Բակտրիացի լինել ասեն, վասն այնորիկ զսա համարեմք լինել Բակտրիացի Զօրոաստրն. որոյ գոլով Թոռն առաջնոյն Զօրոաստրայ կամ Զրուանայ որ էր Սեմ, 'ի հարկէ ուսեալ էր 'ի հայաստան 'ի բերանոյ հաւուն իւրոյ Սեմայ, և զուսեալսն իւր ուսուցանէր անդէն 'ի Բակտրիա. և նմին իրի պատուեալ 'ի նոցանէ՝ գլուխ կարգեցաւ 'ի վերայ նոցա, զորս յայնժամ կոչէին Թագաւորս. և վասն պատուոյ նաև զանուն առաջնոյն եդուն և սմա, նաև ինչ ինչ 'ի վարուց առաջնոյն. զի որպէս վասն առաջնոյն ասէին 'ի հրեղէն գօտւոյ իջեալ, սոյնպէս և վասն սորա համբաւեցին 'ի մէջ հրեղինաց երևոյթս տեսեալ, յայնմանէ և ինքն լուսաւորեալ:

Զայս Զօրոաստր կամի նշանագրել և Յուստինոս պատմագիր գիրք ա. գլուխ 1. յորժամ ասէ. "Յետին պատերազմ նորա (Նինոսի) եղև ընդ Զօրոաստրայ Թագաւորին Բակտրիացւոց. զորմէ ասեն նախ առաջին զարուեստ մոգութեան գտեալ և զսկզբունս աշխարհի և զշարժումն աստեղաց փութոյ խնդութեամբ դիտեալ": Զսկիզբն սորին Զօրոաստրայ տառապին գտանել հետազօտեմնիմք. քանզի յայս բան Յուստինոսի գտանեն վրիպակք և շփոթութիւնք, զորս ես այսպէս ուղղեմ 'ի պատմութենէ Խորենացւոյն: Զօրոաստր զոր 'ի ժամանակս Նինոսի յիշէ Յուստինոս՝ է այն Զրադաշտ մոգ, զոր Խորենացին յիշէ ա. 6 և 17. յաւուրս Շամիրամայ, արքայ Բակտրիացւոց կոչելով զնա և նահապետ Մարաց. բայց զսա պարտ է այլ համարել 'ի Թոռանէն Սեմայ: Իսկ զոր գրէ զարուեստ մոգութեան գտեալ և այլն, զայն պարտ է տալ Թոռին Սեմայ. զոր ասա Յուստինոս 'ի մի շփոթելով տայ Զօրոաստրայ՝ որ էր 'ի ժամանակս Նինոսի և Շամիրամայ": Եւ այնպէս պարտ է ասել, թէ Թոռն Սեմայ 'ի Բակտրիա նախ առաջին ուսոյց զարուեստ մոգութեան, զսկզբունս աշխարհի և

Թէր ըստ մոգութեան՝ Զօրոաստր անուանեն. զորմէ կարես տեսանել 'ի Ժ. գիրս Նախապատրաստութեն Եւսեբեայ. Թղթահամար 484: Այս ամենայն բանք առաւել ընդունելք առանձն զպատմութեան յառաջ բերեալ 'ի Խորենացւոյն վասն Զօրոաստրայ կամ Զրուանայ:

1 Առաւել շփոթութիւն կամ յաւէտ վրիպակս գտանեն այլք յայս բան Յուստինոսի. քանզի Կտեսիաս հին պատմագիր՝ յորմէ առնու և Դիոդորոս Սիկիլիացի բ. 6. զԹագաւորն Բակտրիացւոց ընդ որում մարտեաւ Նինոս, ոչ կոչէ Զօրոաստր. այլ Օքսիարդէս. և ոչ իսկ ասէ լինել մոգ, կամ արուեստիւ մոգութեան ընդդէմ կացեալ Նինոսի: Եւ այս առաւել 'ի դէպ գայ պատմութեան Խորենացւոյն:

զշարժութն աստեղաց. վասն որոյ և յանուն հաւուն իւրոյ Սեմայ կոչեցին և զնա Զօրօաստր կամ Զարուանդ. զկնի նաև 'ի յաջորդաց նորա ոյք զհետ լինէին մոգութե՝ կոչեցան նոյնպէս Զօրօաստր, կամ Զրադաշտ. որպէս և նա՝ որ յաւուրս Նինոսի կամ Շամիրամայ. բայց գիւտն էր առաջնոյն։

Այս այսպէս եղեալ, ասեմք թէ Զօրօաստր Պարսից է նոյն իսկ թոռն Սեմայ. քանզի 'ի դէպ գայ նմին 'ի Բակտրիայ 'ի Պարս անցանել, և անդ ևս ուսուցանել. կամ թէ անցմամբ ժամանակաց Բակտրիա ընդ տէրութեամբ Պարսից մտեալ, յաշխարհէն իւրեանց Պարսք համբաւեցին ուսուցեալ Զօրօաստրայ. մանաւանդ զի 'ի Պարս առաւել ծաղկեալ գտաւ այս արուեստ մոգութեան։ Ի դէպ գայ նաև հնութիւն ժամանակին. զի յետ քաղդէացւոցն՝ վասն Պարսից աւանդեն 'ի վաղ ժամանակաց ուսեալ նոցա զմոգութն յիւրեանց Զօրօաստրայ. քանզի ըստ այսմ՝ որպէս քաղդէացւոց Զօրօաստրն՝ էր Սեմ որդի Նոյի, նոյնպէս և Պարսից Զօրօաստր էր թոռն Սեմայ. որով լինի հին յոյժ, բայց զկնի քաղդէացւոցն Զօրօաստրայ։ Այսմ յարմարի և վկայութի Եղմակինոսի արաբացւոյն, որ վասն Պարսից Զօրօաստրայ գրէ ոչ հաստատեալ՝ այլ նորոգեալ զՊարսից և զմոգուց կրօնս. զի հաստիչն կամ հնարօղն ոչ էր Պարսից Զօրօաստրն, այլ քաղդէացւոցն, որ էր Սեմ՝ հաստատեալ և ուսուցեալ յաշխարհիս Հայոց, յորմէ ուսան կամ նախնիք բաբիլոնեան քաղդէացւոց և տարան զայն ուսումն յաշխարհն իւրեանց 'ի Բաբիլոն, և կամ որ առաւել հաւանական է, նախնիք Խաղտեաց կամ Քաղդեայց ուսեալ տարան զայն ուսումն 'ի Խաղտիս, և անտի ապա գաղթականք նոցա տարան յաշխարհն բաբիլացւոց, որ և նոյն է՝ քաղդէացւոց։ Իսկ Պարսից Զօրօաստրն թոռն Սեմայ 'ի Պարսից աշխարհի ոչ հնարեաց զմոգութին, այլ նորոգեաց. բայց առաջին ուսուցիչ գոլով այնր վարդապետութե անդանօր, իբր նոր գտիչ համբաւեցաւ անդէն. ուր և 'ի զանազան ազգս բաժանեցաւ[1] ուսումն այն մոգութե, կամ կրօնն աստուածպաշտութե

[1] Զհինգ աղանդս մոգութեան և պաշտօնէութեան օրինաց յիշէ և մեր Եզնիկ 'ի թղթ. 253. յասելն. «Նաև զոր մեծ պարծանս համարէին ըստ իւրեանց մոլորութեն կարգին՝ համոկդեն անուն էր. զխօսէր և զԱմպարուզրաշն. ուսեալ էր և զԲոզպայխան. ունէր և զԴայհաւաւիկն, և ըզՊարսկադեննն։ Քանզի այս հինգ կէշտք են, որք զբովանդակ ունին զամենայն օրէնս մոգութեն»։

ըստ Նորին Ելմակինոսի: Ցետ երկոցունց սոցա իբր սովորութիւն իմն եղև յարևելս Զօրօաստր կամ Զրուան և Զրադաշտ կոչել զորս անուանի լինէին յուսումն մոգուց, մանաւանդ աստեղաբաշխութեան որ փոխեցաւ յաստեղագիտութիւն և յուսումն բժշկութեան [1]: Զորոց զժամանակ, զտեղի և զազգն իւրաքանչիւրոց խառնեցին յետագայք ընդ միմեանս. յոյր սակս և Կաէվլիոս բազումք բանեալ ասելով, թէ այնչափ է զանազանութիւն կարծեաց սակս ժամանակին Զօրօաստրայ՝ մինչև անստոյգ լինել ամենայնի: Այլ յորոշելն և 'ի բաց հանելն զերկուս նախնագոյն Զօրօաստրս ըստ առաջնորդելոյ պատմութեան Խորենացւոյն, որպէս և եդաք լինել Սեմ և Թոռն Սեմայ, յայնժամ բազում մատենագրաց բանք 'ի յայտ գան, և խրթնութիւք վասն ժամանակին Զօրօաստրայ լուծանին՝ գէթ ընդհանրապէս. զի զորս գտանեմք խօսեալ զԶօրօաստրայ հնագոյն ժամանակի, որպէս ոմանց՝ որոց 'ի տարապայմանն ձգեալ ժամանակ չորս կամ հինգ հազար ամօք յառաջ դնեն քան զպատերազմն Տրովայ, զնոցին Զօրօաստր պարտ է իմանալ վասն առաջնոյն ասացեալ, թէպէտ և անտեղեակ ստոյգ չափման ժամանակի: Իսկ զոր Եպիփան դնէ ժամանակակից Նեբրովթայ՝ զայն յաւէտ իմանալ վասն երկրորդ Զօրօաստրայ, որ էր Թոռն Սեմայ: Այլ զԶօրօաստրս յիշատակեալս յաւուրս զանազան Թագաւորաց Պարսից՝ պարտ է իմանալ վասն յետագայ Զօրօաստրաց, որք ոչ մի՝ այլ բազում եղեն, և այն յաւէտ 'ի Պարսս. որպէս Ագաթիաս յոյն պատմիչ նաև այլք դնեն 'ի սկիզբն տէրութեան Պարսից. Եւտիքիոս աղեքսանդրացի (զոր և ընդունի Աբուլֆարաջոս) 'ի տարեգրութեան արաբացւոց յայտնի երկուս Զօրօաստրս յիշելով, զմին դնէ յաւուրս Նաքովրայ, որ եղև հաստիչ սաբէացւոց կրօնի,

[1] Զայսմանէ տեղեկութիւն (որոյ հիմն է վաղեմի այն մատենանն յիշատակեալ յՈղիմպիոդորոսայ,) եթէ գիտէր Պէլ, ոչ գրէր յիւրում բառարանի 'ի բանն Զօրօաստր, թէ ոչ միայն ստոյգ ինչ՝ այլ և ոչ հաւանական ինչ մարթ է հանել 'ի պատմութեանց և լուսաւորել: Այլ ունէր գրել, թէ պարտ է 'ի բաց հանել 'ի շփոթութեանց աստի զառաջինն նաև զերկրորդն Զօրօաստր, և դնել թէ առաջինն էր Սեմ. իսկ երկրորդն Թոռն Սեմայ: Եւ ոչ իսկ Պրուքքէր գրէր 'ի հատոր ա. թղթ. 123. „Իսկ զհաւաստի ժամանակ նախնագոյն այնր Զօրօաստրայ որոշել, կամ թէ գէթ հաւանական կարծեօք նշանագրել, անկարելի համարիմք. այնչափ պակասին հաւաստարիմ յիշատակարանք և այնչափ տարաձայնեն„: Այլ 'ի յիշատակարանս պատմութեանն ազգին Հայոց գտանեմք վկայութիւն հաւաստարիմ վասն նախնոյն Զօրօաստրայ, որ առաջնորդէ 'ի ծանօթութիւն նաև վասն երկրորդ Զօրօաստրայ:

իսկ զմիւսն յաւուրս Թագաւորութեան Շամիրամայ մոգի , որ զկրօնս մոգութեան հաստատեաց՝ կանգնեալ ատրուշանս, որ է նոյն ընդ Զօրոաստրայ՝ զոր առաքացիք յաւուրս Դարեհի ասեն լեալ ։ Բայց զմատեանս որք յածին յանուն Զրուա-նայ կամ Զօրոաստրայ՝ չէ պարտ համարել հարազատ գործ առաջին և երկրորդ Զօրոաստրաց , զորոց խօսեցաք մինչև ցայս վայր . որպէս են հին պատգամքն մոգութեան յանուարէն գրեալ, և բացատրութիւն Բսելլեայ և Բլեթա-նեայ տպագրեալ . սկզբունքն քաղդէարէն գրեալ ։ Եւ գրուածքն յանուն Զօրոաստրայ յերկերիւր հազար տողս , զորս բացատրեաց Հերմիպպոս 'ի Պլինեայ յիշատակեալ Լ. 1 ։ Նոյնպէս և գրուածքն զորս յիշէ Սուիդաս 'ի բառն Զօրոաստրես ։ Թող և զայլս . յորոց սակի է և յայտնութիւն Զօրոաստրայ 'ի Պորփիւրէ յիշատակեալ ։ Իսկ այն գիրք Զէնտ ավեստ անուանեալ, և յԱնքէդիլեայ Թարգմա-նեալ , է գործ յետագայ Զօրոաստրաց , թէ իցէ գործ հարազատ , և թէ կեղծեալ ։ Իսկ ուր վասն Երիէմէնա աշխարհին գրէ լինել իւր բնակարան , և առաջին աշխարհ ընդդունող վարդապետութեան իւրոյ , և լինել տեղի անարատ և այլն , եթէ Երիէմէնա անուամբ իմանայցուք աստէն զաշ-խարհս Հայոց՝ այսպէս յորջորջեալ յանուանէ Արամայ , որպէս իմանայ Սէն Մարդէն 'ի յիշատակարանի իւրում , յայնժամ պարտ է ասել թէ գտանին ինչ ինչ 'ի սմա՝ զորս պարտ է համարել մնացորդս ինչ անցից առաջնոյն Զօ-րոաստրայ ։ Զի առաջին Զօրոաստրք Սեմ և Թոռն Սե-մայ էին՝ որք վարդապետեցին 'ի հայաստան աշխարհի յայնմ անմեղ դարու . իսկ յայլոց ազգաց այլ Զօրոաս-տրաց գալ վարդապետել 'ի հայաստան՝ մնացուած զմո-գուն, և Հայոց ընդունել զնոյն աւանդս սիրով ոչ յար-մարի ամենևին պատմութեան ազգիս ։ Վասն որոյ չէ ինչ ընդդէմ խառնեալ կարծել յայն գիրս զյիշատակս ինչ անցից և վարուց առաջին Զօրոաստրացն ընդ յետնոցն ։

Սակայն մատենագիրք օտար ազգաց յիշեն և զերրորդ ումն Զօրոաստր հայկազուն . այլ քանզի նորայն ժամանակ բառ մեզ յապագայս անկանի , գրեսցուք զնմանէ զկնի խօսելոյ զառաջին նահապետաց 'ի Հայս և 'ի շրջակայս բնակելոց , զորոց ինչ ինչ աւանդեցաւ պատմելն ։

## ՄՈԳ

Օտար ազգաց Մակուս կոչեցեալ ։ Զայս անուն նշա-

նական համարեալ ամսոց՝ պէսպէս տառադարձեն՝ 'ի յոյն լեզուէ ածանցեալ կարծելով. այլ Քլէրք կարծէ լինել անուն Մարաց, և 'ի նոցանէ 'ի Պարսս անցեալ. բայց ընդունելին այն է՝ զոր դնեն Սալմասիոս և Հուետիոս, թէ Մոդ՝ էր յատուկ անուն առաջնոյն Զորոաստրայ. «Ես, ասէ Հուետիոս, որք զԶորոաստրն, որպէս ասացի, յատուկ անուամբ Մոդ՝ այսինքն է Մակուս կոչեցեալ համարին. եթէ այս այսպէս է՝ 'ի Մոդ հեղինակէ ուսումն մոգուց ընկալաւ զանուանս մոգութի»:

Այլ 'ի դնելն այսպէս զՄոդն լեալ յատուկ անուն՝ ինձ առաւել հաւանական թուի ոչ զԶորոաստրն, այլ զայլ ոմն նահապետ ասել Մոդ անուանեալ. քանզի որպէս զերկիր առաջնոյն Զորոաստրայ կամ Սեմայ՝ ուրոյն անուամբ Զարևանդ կոչեցեալ գտանեմք 'ի Հայս ըստ Խորենացւոյն, նոյնպէս և ուրոյն երկիր գտանեմք 'ի Հայս կոչեցեալ Մոկք. յորմէ կարեմք իմաստասիրել՝ թէ նաև այս էր անուն ուրումն յառաջին նահապետաց բնակելոց 'ի Հայս նախ քան զաշտարակաշինութիւն: Այն զի գտանեմք 'ի գիրս Ծննդոց Ժ. զերկուս նահապետս Մասաք անուանեալս. մի յիշեալ 'ի 3. որդի Յաբեթի. իսկ զերկրորդն յիշեալ 'ի 23. որդի Արամայ[1] որդւոյ Սեմայ: Զառաջնոյն Մասաքայ զբնակութիւն եդաք 'ի կողմն Մոսքիքեան լերանց. իսկ զերկրորդիս բնակութի դնել 'ի Մոկաց նահանգի՝ 'ի դէպ իսկ երևի ինձ. որ էր մերձ 'ի Զարևանդ գաւառ՝ ուր բնակէրն Սեմ: Տարբերութի անուանն չէ ինչ մեծ. զի արդէն մի 'ի գաւառացն Մոկաց կոչի Առանձնակ Մոկս, որ առաւել մերձենայ. գտանի և յիշատակութի տեղւոյ ինչ Մոկս անուանեալ, զորմէ տես 'ի Մեծ Հայս 167: Եւ այսպէս յայտ հաւանական երևի թէ Մոդ անուն նահապետ ոմն ունեալ յառաջին Զորոաստրայ՝ որ էր Սեմ, առաւել քան զայլս իմաստով և ընդերկար ժամանակս ուսոյց. յորմէ և այն ուսումն յանուն նորին կոչեցաւ Մոգութի. որ, որպէս ասացաք, 'ի սկզբան անդ էր ուսումն աստուածպաշտութե, աստեղաբաշխութե և բժշկութե. և երկիրն ևս յանուն նորին կոչեցաւ Մոկ, կամ Մոկս: Երկիր ինչ յայս անուն յորջորջեալ՝ ոչ այլ ուրեք գտանեմք, բայց միայն 'ի Հայս, ուր եղև բնակութի առաջին նահա-

1 Յաստուածաշունչ գիրս լատինացւոց Ծննդ. Ժ. 23. այս Մասաք անուն գրի Մէս. բայց նոյն անուն 'ի Ա. Մնացորդաց Ա. 17. գրի առ նոսա Մէսէք, որ առաւել մերձենայ յանուանս Մասաք, որպէս գրեալ կայ առ մեզ:

դետայց. և այն՝ որպէս ասացաք, մերձ 'ի բնակարանն Սեմայ, որ է Զարևանդ. և յայնմանէ ամենեքեան որ զայս ուսումն ուսանէին՝ կոչեցան Մոգք յանուն երևելի ուսուցչին. որպէս և բազում Զօրօաստրք յանուն երևելւոյ և առաջնոյն Զօրօաստրայ: Եւ ոչինչ ընդդէմ է ասել՝ թէ յայն երկիր և 'ի մերձակայ սահմանս մնաց հետք ինչ այսր ուսման մոգութեան որ ոչ գրեցաւ, որպէս և այլ ինչ բազում. քանզի այլուստ գտանեմք ինչ ինչ նշանս որք զնոյն հաստատեն: Զի Բաղաամ՝ որ հմուտ էր արուեստի մոգութեան, 'ի Միջագետս էր բնակեալ, որ չէ այնչափ հեռի 'ի Մոկաց. զի 'ի գիրս Թուոց իգ. 7. և ե. Օրինաց իգ. 5. 'ի Միջագետաց և 'ի լերանց արևելից[1] եկեալ ասի զնմանէ. ընդ նմին մնաց անդէն 'ի Միջագետս աւանդութիւն լուեալն 'ի նախնեաց իւրոց և ասացեալն 'ի նմանէ զուշակութիւն աստեղն երևելւոյ 'ի ծննդեան մանկան ուրուք՝ որ ունէր լինել փրկիչ ամենայն մարդկան: Զի այս մարգարէութիւն գալստեան փրկչի ուրուք է հին յոյժ, ընկալեալ 'ի ժամանակաց անտի նախնի նահապետաց, մինչև նաև հեթանոս մատենագրաց տեղեակ լինել այնմ[2]: Մնացորդս այնր նախնի մարգարէութեան համարիմք և զբանս նորին Բաղաամու վասն գուշակութեան աստեղն երևելւոյ 'ի նշան գալստեան փրկչին, և հանապազորդութ նոյն մարգարէութեան տեւեալ 'ի սահմանսն յայնոսիկ Մոկաց և Միջագետաց նաև մինչև 'ի ժամանակս Քրիստոսի՝ իբր 'ի բնիկ սեփական աշխարհի մոգուց. ուստի և իբրև տեսին զաստղն՝ որք յայնմ ժամանակի մոգքն էին՝ իսկ և իսկ ելին 'ի ճանապարհ գտանել զայն՝ որում յայնչափ ժամանակաց հետէ ապաստէին յուսադրութեամբ հարց լուեալ:

Նորին աղագաւ սակս տեղւոյ՝ ուստի եկին մոգքն 'ի տեսանել զփրկիչն՝ քան զկարծիս այլոց ամենեցուն մեզ առաւել հաւանական թուի նոցայն՝ որք 'ի Միջագետաց

1 Մեկնիչք գրեն, թէ 'ի լերանց արևելից ասելով, կամի ասել յայնց լերանց՝ որք էին 'ի վերին մասն Միջագետաց ընդ արևելս երկրին Մովաբու. մանաւանդ զի քաղդէացւոց Թարգմանութիւն Թուոց իբ. 5. գրէ, թէ Բաղակ « առաքեաց հրեշտակս առ Բաղաամ 'ի Բէթօրա քաղաքէ Ասորւոց, որ է առ Եփրատաւ, յերկիր որդւոց ժողովրդեան իւրոյ »: իսկ Եւսեբիոս զԲեթթօրայն դնէ 'ի վերին մասն Միջագետաց, որով լինի մերձ յոյժ 'ի բնիկ Հայս:

2 Տակիտոս և Սուետոն գրեն անդրուածն 'ի վաղուց անտի համբաւեալ լինել ընդ ամենայն արևելս, թէ աշխարհակալի ուրուք ելեալ 'ի հրէաստանէ՝ ունէր լինել տէր համօրէն աշխարհի:

դաւողք և իշխանք զանազան ազգաց ևս և արաբացւոց և բազմազան կղզեաց դարձան 'ի քրիստոնէութիւն, յայնժամ խնդրեմք և որդիք նոցա ձագախառն երամովքն եկին 'ի ծոց եկեղեցւոյ, բերելով պէսպէս պատարագս և նուէրս յեկեղեցիս Քրիստոսի[1]: Իսկ վասն ընծայիցն բերելոց 'ի մոգուց՝ չիք ինչ պատճառ ստիպօղ առ 'ի կարծել զմոգսն յԱրաբիոյ[2] եկեալ. զի որպէս գրեալ է մեր 'ի գլուխն Բերոց, ասկին է բերքն աշխարհիս Հայոց 'ի վաղուց անտի հռչակեալ. մանաւանդ զի հանքն են 'ի նոյն իսկ 'ի վերինն կողմն Միջագետաց առ Եփրատաւ և Տիգրիսիւ: Կնդրուկ և զմուռս՝ են ծխանելիք անուրոշք. յորոց ասկի գտանին և 'ի Հայաստան, որպէս յիշեալ է մեր անդ 'ի գլուխն Բերոց. ամոմում կամ կինամոմոն 'ի Կորդուս. քարախունկ յԱրցախ. պտղախունկ 'ի Տայս. Թող և զայս գտանին 'ի նոյն իսկ 'ի Միջագետս:

Յայտ է դարձեալ և 'ի դիւրաւ և վաղվաղակի հաւատալոյն Աբգարու 'ի Քրիստոս. քանզի 'ի դնելն 'ի Միջագետաց և 'ի շրջակայ սահմանաց եկեալ զմոգսն, 'ի դառնալն նոցա յերկիր իւրեանց՝ 'ի հարկէ հռչակէին զաստուածածն նորա և զոր ինչ տեսին. վասն որոյ և Աբգար որ 'ի Միջագետս էր՝ բազում ինչ լուաւ 'ի նոցանէ: Ապա յետ անցանելոյ ամաց ինչ՝ 'ի լսելն և յայլոց նաև զզարմանչելի բժշկութիւնս Քրիստոսի, դիւրին լինէր նմա հաւատալ, և փութալ առաքել զնախարարս իւր հրաւիրելով յերկիր իւր, և խնդրելով զբժշկութիւն: Եւ այնպէս դալուստ մոգուցն ցուցանէր զիւր զարդիւնս՝ յանձն այնպիսի Թագաւորի, և ճշմարտութիւն կատարումն լինէր բանիցն Քրիստոսի զոր ասաց Յոհ. Ժբ. 23. յորժամ հեթանոս իշխանք Աբգարու եկին տեսանել զնա. “Եհաս ժամ, զի փառաւորեսցի որդի մարդոյ„: Զի փառաւորիլ Քրիստոսի էր այսպիսի հեթանոս Թագաւորի հաւատալ իւրովք իշխանօք: Այլ 'ի դնելն 'ի Պարսից կամ այլուստ

1 Թող զի և վասն վերինն կողմանց Միջագետաց՝ նախնի մատենագիրք յարաբացւոց բնակեալ ասեն:

2 Պետաւիոս գրէ, թէ մոգք անտի եկին՝ ուր մոգութիւն առաւել ծաղկեալ դատաւ 'ի Պարսս. իսկ դալուստ նոցա յԱրաբիոյ չէ ինչ առ հաւանական. որովհետև Արաբիա 'ի հարաւոյ Հրէաստանի անկանի և ոչ յարևելս: Բայց թէ նա գիտէր զայսպիսի անգիտութիւնս, և ոչ առաւել հաստատէր զիւր կարծիս, քան խոնարհելով զմոգութիւն 'ի սկզբան անդ հիմնեալ և ծաղկեալ 'ի հարաւակողմն աշխարհիս Հայոց. որ և երբեմն ընդ տէրութեամբ Պարսից գոլով կարէր կոչել երկիր Պարսից: Նմանապէս նոյնպէս ծաղկեալ լինել մոգութիւն և 'ի Միջագետս, և ըստ առաձնայնի յարմարելոյ բանից ասացեալ դրոց:

եկեալ, ոչինչ պտուղ. բայց եթէ որպէս զհիւսիսոյն յա-ռաջ բերցուք զփութով պատճառն Պարսից 'ի քրիստոնէու-թեն, որ է տարադէպ բանաւորութեն. զի դարձ Պարսից եղև յախուժամ, յորժամ եղև և այլոց ազգաց ։

Յայսմ ամենայնէ զոր մինչև ցայս վայր գրեցաք, քա-ջայայտ ցուցանի թէ բազում յարմարութիւնք գտանին 'ի հաւանեցուցանել՝ թէ ուսումն մոգուց ոչ միայն 'ի սկզբ-բան անդ ծաղկեալ գտաւ 'ի Հայաստան, այլ և յապա-գայ ժամանակս տևեաց 'ի կողմն ինչ Հայոց և 'ի շրջա-կայս, թէ և ոչ այնպէս՝ որպէս 'ի Պարս և 'ի Քաղդեայս. առ որս թուի թէ բաց 'ի հանապազորդելոյն այլափո-խեալ գտաւ այն ուսումն նաև 'ի զանազան աղանդս և 'ի մոլորութիւնս քան թէ յայսոսիկ կողմանս ։

## ՈՐՍԻՐ կամ ՕՍԻՐ

Հեթանոս հին մատենագիրք մի 'ի հնագոյն նահա-պետաց կացուցանեն զՕսիրն[1]. և ասեն զնմանէ լինել որ-դի Սատուրնոսի՝ որ է նա ինքն Նոյ, և եղբայր Իսիսի՝ որ էր դուստր Նոյի ։ Օսիր գտող եղև ասեն երկրագործութեան. համարեցաւ լինել արև. յորմէ յայտ է և սորա վարդա-պետեալ զարևէ ։ Արդ յետ ասելոյ զՕսիր որդի կամ թոռն Նոյի, պարտ է զտեղի նորա խնդրել 'ի Հայս, որ-պէս և զամենայն նահապետաց տեղին այնր ժամանակի, յորում ըստ սուրբ գրոց ամենեքին բնակէին 'ի Հայաս-տան մինչև էր հասեալ ժամանակ ցրուելոյ նոցա ։ Սոյն-պէս յետ ասելոյ զնա առաջին ուսուցիչ երկրագործութեան, 'ի հարկէ և յաշխարհէս Հայոց երևի լինել ծագումն իւր ։ Եւ յասելն զնա ուսուցիչ լեալ վարդապետութեան արևու 'ի սկզբան անդ ժամանակի, յայտնագոյն ևս երևի լի-նել յաշխարհէս Հայոց, ուր սկսաւ այս վարդապետութիւն առ 'ի տեղեակ լինել ընթացից արևու ։ Բայց 'ի վերայ այսոցիկ նշանացս յաւելցուք մեք և զգլխաւորն 'ի նշա-նաց. այն է՝ տեղի իւրով անուամբն յորջորջեալ 'ի Հայաս-տան. զի 'ի նահանգն Կորճէից՝ մի 'ի գաւառացն նորին կոչի Որսիրանք ։ Յորմէ յայտնի է իմաստասիրել, թէ Որսիր էր մի յորդւոց կամ 'ի թոռանց Նոյի բնակեալ յայս գաւառ իւրովք սերնդովք. վասն որոյ 'ի նորա անուն և սերնդոց նորա կոչեցեալ Որսիրանք, իբր Որսիրեանք[2].

1 Ըստ յունական ձայնի Օսիրիս ։ 2 Վասն որոյ ստորագրեն մատենագիրք՝

մանաւանդ զի մերձ է գաւառս այս 'ի Զարեհաւանդ, ուր բնակէին Սեմ ։ Ի հաստատուն այսր բեր զայն՝ զոր վասն Օսիրայ ասեն՝ տօրոսացւոց ուսուցեալ զարօրադրութիւն և զերկրագործութիւն ։ Արդ Տորոս լերինք յորմէ բնակիչքն կոչեցան տորոսացիք՝ են 'ի Հայաստան, մանաւանդ 'ի Մոկս և 'ի Կորճէս, ուր է Որոտիրանք. ապա այս Նահապետս 'ի նոյն կողմանս Տորոսի էր բնակեալ ։ Ոմանք զՈրսիրն նաև գտիչ լեալ բանաստեղծութեան ասեն. զորմէ կարես տեսանել և առ Հուետիոսի ։ Այսչափ ինչ ահա 'ի հաւաստի երևեալ ծանօթութեանց մարթացաք յառաջ բերել յաղագս ծագման Որսիր կամ Օսիր նահապետին ։

Այլ արտաքինն պատմագիրք յետ ասելոյ զնա լինել որդի Նոյի, առհասարակ պատմեն յԵգիպտոս կացեալ նորա և անդ ուսուցեալ զերկրագործութիւն ։ Բայց այս բանք՝ մնացորդ ինքնապարծութեան եգիպտացւոց գիւտք են. որք զամենայն հնութիւն, որպէս և հմուտքն վկայեն, կամին աշխարհին իւրեանց սեփականել. և զբազմաց միտս 'ի նոյն յանգուցանէին եգիպտացիք թերևս՝ եթէ չունէաք 'ի ձեռին զսուրբ գիրս, որ հնագոյն գոլով քան զամենայն մատեանս նոցա՝ հաւաստեաւ վկայէ թէ ուր էին բնակեալ զառաջինն որդիք և թոռունք Նոյի, և երբ և զիարդ եղև ցրուիլ նոցա այլուր ։

Արդ կամելով զարտաքնոց բանս յարմարել ընդ պատմութեան սուրբ գրոց և մերս կարծեաց, պարտ է ասել վասն Որսիրայ՝ զկնի ժամանակաց ինչ 'ի Հայոց գնացեալ յԵգիպտոս, և անդ անծանօթ եւս ուսուցեալ զերկրագործութիւն որ հնարեալ էր 'ի Հայս. որպէս և զվարդապետութիւն զընթացից արևու, զոր լուեալ և ուսեալ էր 'ի Հայաստան յառաջնոյն Զօրօաստրայ, որ 'ի մօտակայ գաւառն Զարեհաւանդ բնակեալ ուսուցանէր, որպէս գրեցաք 'ի վերոյ ։

Պլուտարքոս 'ի գիրսն Իսիսայ և Օսիրիսայ, և Մակրոբիոս յանուրբն Սեկիպտոնի՝ վկայրապար ճգնին յառաջ բերել զանազան տարագրութիւնս յաղագս այսր անուան ։ Զի այն ամենայն անուանք՝ են բառ առանձին եգիպտացւոց յարմարեալք. այլ ընդ գնել ձևանգամ զՕսիրն լեալ որդի Նոյի՝ պարտ է զծագումն անուան նորա խնդրել 'ի Հայս, ուր բնակեցան յայնժամ Նոյ և ամենայն նահապետք, բառիւք յառաջ քան զընդարձակութիւն նոցա յԵգիպտոս. և ընդ դամենեցուն անդ 'ի Հայս առեալ ինչ անուանս նահապետքն նոցին ժամանակի, անշուշտ պարտ է ասել, թէ այն էր նախկին բնակարան նոյն նահապետի. և յանուանէ նորին անգին յորջորջեալ. քանզի այսպէս անուանեալ լեալ 'ի նախնի արարչին պատմութիւն և 'ի սուրբ գիրս նաև այլոց նահապետաց ։

ցից արևու ասեալ, ասեմք թէ հարկ է նախ ընդունել զՕսիրիս և զԻսիդն լեալ բնական մարդիկ յառաջին նահապետաց կարգի. և ապա յանուն նոցին յաւելեալ եգիպտացւոց կամ այլոց զայն վարդապետութիւն:

## ԻՍԻԴ որ է ԱՍՏՂԻԿ

Յետ ասելոյ զՈրսիրիս կամ զՕսիրիս լինել 'ի Հայաստան, զԻսիդն ևս պարտ է գտանել անդ: Քանզի նախնիքն, զոր օրինակ Դիոդորոս սիկիլիացի[1] զԻսիդն դուստր Սատուռնոսի ասէ լինել, այսինքն է Նոյի, և քոյր Որսիրեայ, ծագեալ յայնմ ժամանակի՝ յորժամ յերկրէ ծնեալ առասպելաբանէին զմարդիկ. «Յորժամ յերկրէ նոր ծագումն տայր կենդանեաց» ասէ. որ և 'ի դէպ գայ նոյեան ժամանակի. որպէս և այլ աւանդութիւնք եգիպտացւոց զորս բերէ յաւուրս Որսիրեայ և Իսիդայ: Զի եգիպտացիք սահմանեցին, ասէ, ամուսնանալ ընդ քեռ ընդդէմ հասարակ օրինաց ամենեցուն. ըստ որում այսպէս եղև Իսիդայ, որ քոյր զուգեալ Որսիրեայ՝ եղև նաև կին նորա, որպէս մարթ էր լինել յաւուրս Նոյի յելանելն 'ի տապանէն: Զժամանակ Իսիդայ կոչէ ժամանակ հսկայից ըստ Յունաց, որ յարմարի նոյնպէս նոյեան ժամանակի. զի և Մովսէս յայնմ ժամանակի յառաջ քան զՋրհեղեղն և յետ Ջրհեղեղին յաւուրս Նեբրովթայ դնէ զժամանակ բռնանալոյ հսկայից 'ի վերայ երկրի:

Արդ ըստ ասացելոցս՝ 'ի նոյեան ժամանակի անդ եդեալ զԻսիդն, ես յայնմ ժամանակի 'ի մերում աշխարհի ուր բնակեցան նախնի նահապետք՝ յարմար այսմ գտանեմ զԱստղիկն զքոյր երից որդւոց Նոյի զյիշատակեալն 'ի Խորենացւոյն. մանաւանդ զի Դիոդորոս թղթ. 35. և Պլուտարքոս յայտնի ասեն զԻսիդն լինել դուստր Սատուռնոսի և Ռէայի, որ է ասել Նոյի և Ռէայի կնոջ նորա. զոր քանզի զկնի աստուածացուցեալ՝ լուսին լինել համարեցան, վասն որոյ և Լուսին կոչեցին, կամ սակս աստուածացուցանելոյն՝ և կամ սակս գեղեցկութեանն: Այս Լուսին կամ Աստղիկ անուանս է՝ զոր սուղ ինչ այլայլութե յունական մերձաւորութե փոխեալ համարիմք յօտար ազ-

1 Դիոդ. հատոր ա. թղթ. 31. Բերէ զարձանագրութիւն սեանն՝ որ 'ի վերայ գերեզմանին. «Ես եմ Սատուռնոսի նորոյն աստուծոյ երէց դուստր. Ես եմ Օսիրիս թագաւորին կին և քոյր»: Զորոյ զգերեզմանն մատնեացեալ ասեն գտանել, ասէ, 'ի Նիսիա Արաբիոյ:

գաւց յանուանս Իրիս [1] ։ Յանուանէ սորին Իրիսայ, որպէս գրէ Պօշար Թղթ. 287. կոչեցաւ Իրիս գետ՝ մինոուն առ-պարիզօք սորին քան զՓասիս (Ճորոխ) գետ, առորա-գրեալ յԱրրիանոսէ, յիշատակեալ և 'ի Պլինիոսէ Զ. 4։ Այժմ յայսոսիկ կողմանս անկանի Եըլտըզ էլին, և Եըլտըզ սույին, որ է գաւառ և գետ, յոմանց 'ի մերոց կոչեցեալ Աստղիկ գետ[2]։ Ի համաձայնութէ աստի անուանցս մարթ է մեզ իմաստաւորել, թէ բնակութիւն Աստղկան կամ Իրիսայ դստեր Նոյի՝ եղև յայսոսիկ կողմանս. և յանուանէ նորին կոչեցաւ երկիրն և գետն։ Նա մանաւանդ տեսանելով մինչև ցայժմ և 'ի սահմանս Տարօնոյ կամ Մշոյ արձանացեալ տեղի ինչ Աստղաբերդ կամ Աստղնաբերդ կոչեցեալ. հաւանական համարիմք Աստղկան քեռն Սեմայ՝ նախ 'ի կողմանս Տարօնոյ բնակեալ և անդ ուսուցեալ. ապա փոխադրեալ 'ի կողմանս փոքուն Հայոց և փոքուն Ասիոյ առ և անդ, ուր կոչեցան յանուն նորին Իրիս կամ Աստղիկ, և 'ի Թուրքաց՝ Եըլտըզ։

Յեգիպտացիք որպէս զՕսիրոն՝ նոյնպէս և զԻսիսն սեփա-կանեցին աշխարհին իւրեանց. զորմէ մեծամեծս պատմեն. և գտիչ զնա ասեն լեալ բժշկութե, որ էր մզան ինչ ուսու-մանն նախնի մոգութե։ Այլ Ճշմարիտ պատմութի սուրբ գրոց և ազգիս մերոյ յայտնի ցուցանեն՝ թէ 'ի նախնի ժամանակին անդ ոչ գոյր բնակութի արտաքոյ Հայաստան աշխարհի. մինչև եհաս նոցա ժամանակ ցրուելոյ անտի. և 'ի ցրուելն անդ ընդ զանազան կողմանս՝ եթէ գոյր ոք 'ի նոցա յորդւոց կամ 'ի դստերաց Նոյի՝ ամենեքին նոքա 'ի Հայոց աշխարհէս ելեալ սփռեալ էին անդ զկնի ժամանակաց։ Վասն որոյ հարկ է ասել և զեգիպտացւոց՝ որք պանծան զհնութէ ազգին իւրեանց, թէ և նոքա երկոքին ծնաւնդք Նոյի՝ Օսիրն և Իսիսն՝ 'ի հայաստանեայց եկին յաշխարհն Եգիպտոսի [3]. զորոց զպատմութիւն կա-մելով մեր միաբանել ընդ Ճշմարիտ պատմութե, պարտ

[1] Զի յայսպիսիս դիւրաւ լինի փո-փոխումն՝ մանաւանդ ձայնաւոր տա-ռից յօտար ազգս, առ որս և յայլ բազում անուանս տեսանեմք լեալ. զոր օրինակ անուն Եըսոխ գետոյն փոխեալ է առ նոսա յԱքօրիս, նաև 'ի Ոսոս, և 'ի Ոօշ։ Սոյնպէս և այս անուն մարթ էր առ նոսա փոփոխմամբ նախ կոչել Ասիս կամ Լասիս. և ապա առաւել փոխելով կոչել Իրիս։

[2] Տես 'ի Նոր Հայաստան. Թղթ. 294. և թէ և ոչ ըստ ամենայնի յաջողակութիւն ստեղծանեն, բայց զի ... թէ նաև յայլ տեղիս քանի քանի՛ ստուգաբանութիւնս զանազանս հնոց հնագրից, ասելով ... հաճոյ ... ։

[3] Պատմաւոր այսպիսի մանրամասնութիւնս յիշելոյ մեր զայս և կցկտելոյ՝ են արդեն մատենագիրք ամենայն յիշատակեցին.

է ասել, թէ Աստղիկ քոյր Զրուանայ որ է Սեմ, իսկ ըստ արտաքնոց քոյր Օսիրայ, 'ի հայաստան եգիտ՝ մանաւանդ թէ առաւել քան զայլս ուսոյց և 'ի կիր էարկ զբժշկութիւն որչափ ինչ գիտէին ելեալքն 'ի տապանէ։ Զկնի Աստղկաս այս՝ որ է Իսիս, ընդ Օսիրայ գնաց յԵգիպտոս, ուր անուանի եղև յոյժ ուսուցանելով և 'ի գործ ածելով զբժշկութի. և թէպէտ 'ի հին արձանագրութե զոր բերեն՝ կոչէ զինքն ուսուցիչ երկրագործութե[1], բայց Դիոդորոս սիկիլիացի յեգիպտացւոց բերէ վասն երևելի գոլոյ նորա 'ի բժշկութե մասին, և գտիչ զանազան դեղորէից։ Սմա ընծայեն և գրուած ինչ եգիպտական տառիւք յիշատակեալ 'ի Քիրխէրայ, և պահեալ 'ի համդիսարանի դքսին Սավոյայ. որպէս և ոչ սակաւ վաղեմի ստորագրութիք բաղդրութեց զանազան դեղորէից յանուն Իսիսայ ստէպ յիշատակեալ 'ի Գաղենոսէ։ Իսկ 'ի ժամանակս Պղատոնի գտանէին և բանք ինչ բանաստեղծականք յանուն Իսիսայ։

Եւ այսպէս նախ պարտ է զնել զԻսիսն մի ոք 'ի նոյեան ժամանակի, որպէս գրեն արտաքին պատմագիրք, և որպէս հաստատէ նաև պատմութի ազգիս՝ զուգելով անուննն Աստ-

տրոց 'ի ձեռին ունելով զատուածաշունչ մատեանն՝ որ յայտնի ուսուցանէ 'ի Հայս լեալ զառաջինն և զնախկին բնակութի մարդկան և զբազմամարդութի, սակայն յընթեանուլն 'ի գիրս նախնի հեթանոսաց այլազգ. ինն համդամանս պատմութե նախնի ժամանակաց, փոխանակ զնոցայն ուղղագրելոյ՝ ինքեանք ևս 'ի նոյն կարծիս երևին յօժարել, կամ լռութե զանց առնեն 'ի յիշելոյ զաշխարհէս Հայոց. յորոց մի է և բազմահմուտն Հուետիոս, որ 'ի գիրս վաճառականութե նախնեաց ասէ վասն եգիպտացւոց և եթովպացւոց, թէ սոքա երկոքին ազգք ընդ երկար ժամանակս վիճէին յաղագս առաջնութե և հնութեան իւրեանց. եթովպացիք ասէին լինել նախնագոյն քան զամենայն ազգս աշխարհի, և թէ ինքեանք հաստատեցին զառաջին բնակութիւն յԵգիպտոս 'ի ձեռն իւրեանց գաղթականաց առաջնորդութե Օսիրայ։ Եգիպտացիք ընդ հակառակն ասէին՝ թէ եթովպացիք սերեալ են յինքեանց. "Տե՛ս այս, առէ 'ի թղթ. 321. երևի հաստատեալ վկայութե Մովսէսի. ծննդ. Ժ.". Իսկ վասն նախնագոյն բնակութե աշխարհիս Հայոց՝ ուսանի առնուն զծագումն եգիպտացիք և եթովպացիք, ձեռն ինչ բնաւ։

1 Ցայս հայի, ասէն մեկնիչք, և բան Օրինաց ի՞ժ. 14, ուր 'ի մատուցանելն Հրէից առ մի առ մի զերախայրիս արդեանց երկրի քահանային՝ ասելոց էին զայս բան ըստ այլ թարգմանութե. "Ոչ կերայ 'ի նոցանէ 'ի սուգն իմ, ոչ որոշեցի զնոսա 'ի պղծութիւն ինչ (կռապաշտական ծիսից), ոչ ծախեցի ինչ 'ի նոցանէ յիրս կոծոյ". Այս էր խոտորեալն զամենայն երախայրիս յՕսուծոյ առնելոյ. ոչինչ հանեալ 'ի բաժնէն Իսիս աստուածուհւոյն առ 'ի կատարել զսոն կոծոյ նորա. որ ըստ եգիպտացւոց ուսոյց գործել զանդաստանս, և անկել զծառս։ Վասն որոյ և եգիպտացիք 'ի յիշատակ կոծոյ զոր Իսիս արար վասն մահուան Օսիրայ առն իւրոյ՝ կոծ մեծ առնէին առ մի մի յաւուրս հնգից զարգիւնս երկրի ընծայելով։

երկիր Պրոմէթէոսի լինի 'ի Հայաստան․ զի 'ի գլուխն Բնակչաց ցուցաք՝ թէ երկիր Մագոգայ էր Գուգարք նահանգ մեծին Հայոց ։ Համաձայնի այսմ և այն՝ զոր ասեն վասն Պրոմէթէոսի 'ի սահմանս Կովկասու բնակեալ․ զի 'ի առաքագրութեան լերին Կովկասու գրեցաք, թէ բազումք ինչ այնր լերին հատուածն ըստ Նախնեաց նաև 'ի Հայաստան ։ Բայց ոչինչ ընդդիմանայ, այլ յաւէտ 'ի դէպ գայ առնել ըստ հին պատմութեան՝ թէ Մագոգն, որ է Պրոմէթէոս, ելեալ աստ արտաքս յերկրէն իւրմէ գնաց 'ի Սկիւթիա, և բնակեցաւ 'ի մօտիկ կովկասային լերինս․ յորմէ ել կեղծիքն՝ անուանեալ կապեալ լինելոյ 'ի կովկասեան լերինս․ մանաւանդ զի Երոդոտոս զայն Պրոմէթէոս թագաւոր սկիւթացւոց կացուցանէ․ և անդ մուծեալ հրահանգս քաղաքականութեան, գնաց և 'ի Կողքիս․ և անդ ուսոյց զարուեստ բանալոյ հանքս, և հրով հալելոյ զհրահալելիս ։ Այն արուեստ է որ յորդւոց յորդիս մնաց 'ի ժողովուրդն Սօմեաց [1], զորոց գրեալ եմք յառաջն․ այս է զոր բանաստեղծք կեղծեցին Պրոմէթէոսի ելանել յերկինս, և անտի հուր գողանալ և յերկիր իջուցանել․ այլ 'ի բանաստեղծութեան Եսքիղոսի յայտնի ասէ Պրոմէթէոս զանձնէ գտիչ լինել հրահալելեաց արծաթոյ, ոսկւոյ, երկաթոյ և պղնձոյ, զոր չէր ումեք գտեալ յառաջ քան զինքն ։ Բայց որ նշանաւոր կացուցանէ զՊրոմէթէոսն առաւել քան զբազումս է այն՝ զի առաջին եղև որ ուսոյց զՅոյնս․ զի ըստ Եսքիղոսի 'ի Սկիւթիոյ 'ի յունաստան խաղացեալ Պրոմէթէոս՝ ուսոյց անդ զամենայն արուեստս, զդպրութիւնս, զաստեղաբաշխութիւն, որպէս և զգուշակութիւն զապագայից ։ Որով արդարանայ ասելն՝ թէ 'ի բարբարոսաց ծագեցաւ ուսումն առ Յոյնս ։ Իսկ թէ զիարդ ընդ Սկիւթիա անուամբ նաև Հայաստան աշխարհս անկանէր 'ի նախնի ժամանակս անդ՝ գրեալ եմք 'ի գլուխն Անուան ։

Այս այսպէս 'ի գրելոցս մինչև ցայս վայր յայտնի եղև 'ի Հայաստան և 'ի շրջակայս նորին լեալ սկզբնաւորութիւն դպրութեանց համօրէն աշխարհի 'ի զանազան նահապետաց առաջնոց, որպէս ասացաքն ։ Եւ թէպէտ յապագայ ժամանակի չմնացին հետք այն ամենայն դպրութեանց ըստ փոփոխել բազդին, բայց ոչ այնու կորուսանէ Հայաստան զիւր պարծանս առաջնութեան․ վասն որոյ ըստ գրելոյ Պրուքէ-

1 Վասն Պրոմէթէոսի տես նաև առ Ֆօռմալէոնի 'ի գիրսն պատմութեան Սեաւ ծովու ։

բոսի [1], « Խնդիր էր վաղեմի, արդեօք զանկզնաւորութիւն փիլիսոփայութեան 'ի բարբարոս ազգաց պարտ է յառաջացեալ ասել. զոր և բազումք 'ի նախնի վարդապետաց եկեղեցւոյ . . . հաստատեցին »:

Այլ արդ առ 'ի որոշակի գիտել, թէ յոր կողմն հայաստանն աշխարհիս ծաղկեցան դպրութիւնք 'ի նախնի անդ ժամանակին, 'ի գրեալս իմանամք յերկուս կողմանս լեալ: Մի՝ յարևելեան հարաւակողմն 'ի Հեր և Զարևանդ գաւառի, և 'ի Կորճայս՝ որ է Կորդուք, ուր էր Որսիբանք, և 'ի Մոկս. իսկ արտաքոյ հայաստանեայց յայն կողմն յառաջ խաղալով 'ի Միջագետս և 'ի շրջակայս նորա: Երկրորդ՝ յարևմտեան հիւսիսակողմն 'ի Տայս նահանգի. զի թէպէտ նախնիք 'ի Կողքիս սակն ծաղկեալ, բայց կարի հաւանեալ եմ զԿող գաւառ Տայոց նահանգին բազում ուրեք շփոթեալ նախնեաց ընդ Կողքիսոյ սակս մերձաւորութեան անուանն. և 'ի Կողքիս եդեալ նաև զայն ամենայն գործս՝ որք լինէին 'ի Կող գաւառ մերոյ աշխարհին: Եւ թէպէտ 'ի Քաղդիս դնեն մեծապէս ծաղկեալ յայնժամ, որ է Խաղտիք գաւառ Կողքիսոյ, այլ բազում ուրեք յիշատակեալ է մեր, թէ 'ի նախնուստն զիարդ յաճախութիւն էր մերոց և խառն բնակութիւն ընդ Խաղտիս, մինչև օտար ազգաց կոչել զայն Արմենոքաղդիա, այն է՝ Հայախաղտիք [2]:

Իսկ առ 'ի որոշ լինել գիտել՝ թէ զինչ ազգ դպրութեան էր որ 'ի սկզբան անդ ծաղկեցաւ 'ի հայաստան, նոյնպէս 'ի գրեալս մինչև ցայս վայր՝ իմանամք լեալ վարդապետութիւն աստուածգիտութեան, բժշկութիւն յորմէ զհետ զայլ բուսաբանութիւն, որ է ասել տեղեկութիւն բնութեան խոտոց

[1] Գիրք Ա. գլ. 1. թղթ. 48 և 49:

[2] Զարմանցիր նաև 'ի մերոյ նոյնութեան ուսմանէ. զի զոր ինչ ուսուցին առացուք սկզբնաւորեալ և վարդապետեալ 'ի հայաստան 'ի սկզբան անդ ժամանակի, զնոյն ուսուցին սաև և նախնեացն խաղտեաց կամ Քաղդեայց, որք են կողքիսացիք. այն է վարդապետութիւն 'ի մերոյ արևու. յորոյ յիշատակ յաշխարհի մերում զվարդապետօքն և զանեզին կոչեցին յանուն արևու Զարևանդ. իսկ 'ի Կողքիս յանուն արևու կոչեցին Թագաւորութիւն և Թագաւոր արևու: « Հին պատմութիւնք այնր ժամանակի (ասէ Ֆոսսմայէրն պատմ. Սեաւ ծովու, հատոր Բ. թղթ. 284.). . յիշեն զԱրև Թագաւոր Կողքիսոյ, յորմէ սերեալ էր Այետաս հայրն Մեդեայ. այս սաստկել զորով ծագը սանէ Կիկերոն՝ ցուցանէ թէ նաև սկզբնաւորութիւն այսր շքեղանին երեսուն հազար ամաց անփոփոխ է աստղաբաշխութեան Քաղդեայց բնակելոց յայն սահմանս, ուրանօր սեաւ ծնեալ զաստղին սերմանս գիտութեան երկնի »: Բայց լաւ ես է մեկնել բառ մեզ 'ի մերոյ վարդապետութեան արևու, քան 'ի մերոյ շքեղանի երեսուն հազար ամաց:

և անձնային բերոց երկրի, աստեղաբաշխութեան և գիտու-
թեանց ժամանակի ։ Նմին իրի ոչ դուզնաքեայ գիտութիւն
է տեսանել 'ի մերում լեզուի՝ եթէ թէպէտ պակասին
բառք վասն յոլով գիտութեանց, բայց վասն ծանօթութեան
մասանց ժամանակի յաւելուածով իմն զատանին ոչ միայն
երկոտասան ամսոց, այլ նաև երկոտասան ժամուց տուըն-
ջեան՝ և երկոտասան ժամուց գիշերոյ ունել ուրոյն ու-
րոյն անուանս սեփականս. նոյնգունակ և տուանձին ա-
նուանս եօթն մոլորակաց սեփականս, լուսին, լուսնթագ,
արուսեակ և այլն. որք թուին լինել անուանք դստերաց
նախնեկին նախահայրեացն այնոցիկ. զորս համարիմք իբր մնա-
ցորդս յանյիշատակելի ժամանակաց աւուրց անուն նախա-
յիշատակեալ նախահարեացն յորժամ յաշխարհի մերում
վարդապետէին և ուսուցանէին յաղագս ժամանակի. և
ոչ 'ի յետագայ ժամանակս յորժամ անկեալ էր բոլորո-
վին սէր դպրութեան ։ Եւ այս անձնային ուսմունք միով ա-
նուամբ կոչէին յայնժամ Մոգութիւն, որպէս յայտնի իմա-
նամք 'ի բանից Պլինիոսի, որ 'ի սկիզբն գրոց Լ. 1. ասէ,
թէ մոգութիւն կարի իմն յարգի եղև. քանզի 'ի մոգու-
թեան անդ խառն էին երրեակ իրք կարևորք, բժշկութեան ա-
րուեստ, կրօնք և աստեղագիտութիւն ։ Զայսոսիկ գրէ Պլինիոս
վասն մոգուց ազգին Պարսից. առ որս մոգք նոցա զվար-
դապետութիւն իւրեանց Զօրօաստրաց որք բազմացանն՝
այլայլեալ փոխեալ էին հետզհետէ 'ի զանազան աղանդս,
'ի մոխրապաշտութիւն, 'ի կռապաշտութիւն և 'ի հմայու-
թիւն. զայն վարդապետութիւն ասեմ փոխեալ, որ 'ի
սկզբան անդ յաւուրս առաջնոյն Զօրօաստրայ՝ որ է Սեմ,
գիտութեան էր կատարեալ, որպէս գրեցաք յառաջ ։

Այս անձնային զոր ասացաք՝ կարծեմ թէ ոչինչ ընդ-
դիմանայ անձնային ողջամիտ քննաբանից. զի և արդէն
իսկ հաստատեալ կարծիք է ընդհանուր պատմութեան ա-
մենայն ազգաց, թէ 'ի սկզբան անդ յառաջին ժամա-
նակս յիւրաքանչիւր ազգս տանուտեարքն էին՝ որք վե-
րակացու լինէին գործոց կրօնի. և որք վերակացու էին
կրօնի՝ նոքին իսկ էին և իմաստունք և փիլիսոփայք այնր
ժամանակի, որք ուսուցանէին այլոց զոր ինչ գիտէին ։
Արդ զայս ևս առաւել 'ի դէպ է ասել վասն առաջին նա-
հապետացն այնոցիկ 'ի վերոյ յիշելոց՝ սկսեալ 'ի Սեմայ.
քանզի և իւրաքանչիւր նոքա 'ի հայաստան էին մի մի տա-
նուտեարք նորաստեղծ գերդաստանաց ։ Այլ նախ քան
զաւարտել մեր զայս գլուխ բանի՝ տացուք տեղեկութեան

ինչ և վասն երրորդ Զօրոաստրայ, որպէս և խոստացաք յառաջագոյն :

## ԵՐ որ է ԿԱՐ

Յիշէ զսա Պղատոն 'ի տասներորդ գիրս Հասարակապետութեան Արմենիոս կոչելով, որ է Հայկազուն . զոր Կղեմէս աղեքսանդրացի 'ի յաճախապատում գիրս 'ի Ե . նաև զսա Զօրոաստր կոչեցեալ համարի յասելն . « Զայսոսիկ գրեաց Զօրոաստրն Հայկազուն, ազգաւ պամփիլիացի » : Արմենիոս, զորոյ զբանս տես 'ի գլուխն Բնակչաց՝ ուր գրեցաք զՍեմայ, 'ի Թիւս զանազան Զօրոաստրաց դնէ և զոմն Հայկազուն . և ասէ լինել Թոռն Ոստանայ : Սոքա ամենեքին զայս Զօրոաստր՝ քանզի Հայկազուն լինել վկայեն, համաձայնեալ եմ յոյժ լինել աստանօր ապացուցութիւն Հայկական անուանց, որպէս և այլ բազում ուրեք է տեսանել . և նոյն իսկ անունս Եր ցուցանէ լինել անուն արեւելեան . չփոխեալ, որպէս կարծեմ, ընդ անուանս Ար, կամ Արայ . նոյնպէս և անունս Ոստան ցուցանէ լինել անուն արևելեան :

Արդ առ 'ի գտանել զյարմարութիւն բանից մատենագրացս այսոցիկ ընդ պատմութեան ազգիս, գտանեմ զայս Զօրոաստր լինել Կար նահապետ մեր, որ յաւուրս դատաւորացն Իսրայէլի՝ յաջորդ Վստամ նահապետին . որոյ գուցէ էր և թոռն ըստ ասելոյ Արմենիոսի . և այնպէս զանունս Կար փոխեալ կարծեմ 'ի Ար կամ 'ի Եր . որ չէր դժուարին ինչ 'ի լեզուս օտար ազգաց . իսկ զանունս Վստամ փոխեալ 'ի Ոստան : Արդ ըստ այսմ զպամփիլիացին ասեմ լինել այլ Զօրոաստր, որպէս և համարին բազում մատենագիրք, ընդ սոս և Սուիդաս և Սալմասիոս . զորմէ տես դարձեալ անդ 'ի գլուխն Բնակչաց . քանզի Առնոբիոս զպամփիլիացին զատուցանէ և ասէ զնա լինել յաւուրս Կիւրոսի, որ լինի բազում ամօք զկնի այսր մերոյս Հայկազեանն Զօրոաստրայ : Եւ զի չիք ամենեւին յարմարութիւն զմի և զնոյն Զօրոաստր նախ կոչել Հայկազեան կամ արամազնեան, ապա ազգաւ պամփիլիացի . այն զի Պամփիլիա ոչ է անուն ազգի, այլ երկրի . և պամփիլիացիք էին ազգաւ յոյնք բնակեալք 'ի Պամփիլիա :

Յետ այսպէս որոշելոյ չիք ինչ ընդդիմութիւն ասել, թէ Կար [1] նահապետ մեր յաջորդ Վստամայ՝ հետամուտ լեալ

1 Յոյժ համանմանական երևի անուն այսր նահապետի՝ լինել անուն Հեր

էր երբեմն մոգութեան, յորմէ եւ ունէր նմա ընթերակայք զանուանս Զօրօաստր, որպէս էր սովորութիւն 'ի հնումն յարեւելեան ազգս ։ Չէ ինչ դարձեալ թէ պատմագիրք մեր չիցեն յիշատակեալ այսպիսի ինչ ․ զի և այլ ոմն Բուօէրեսիոս հայկազուն քաջ ուսումնական յԱթէնս տեսանեմք յիշատակեալ 'ի գիրս օտար ազգաց, զորմէ առ մերսն չիք ինչ գտանել յիշատակութիւն ամենեւին ։ Զայս այսպէս եդեալ՝ յանժամ և կարգաւ ըստ ժամանակագրութեան գտանեմք յիշատակեալ 'ի բանսն Արնոբիոսի զչորեսին Զօրօաստրս ․ զի առաջինն եկեալ 'ի հրեղէն գօտւոյ 'ի խորին սահմանաց՝ լինի Սեմ, որպէս բացատրեցաք անդէն ․ երկրորդն բակտրիացի յիշատակեալ 'ի Կտէսիասայ՝ է Թոռն Սեմայ, զորմէ նոյնպէս գրեցաք ․ իսկ երրորդն հայկազուն՝ է այս Կար նահապետ Թոռն Վստամայ, որ յաւուրս դատաւորացն Խորայէլի ․ յետ սորա չորրորդն է պամփիլիացին, որ ընտանին էր Կիւրոսի ։ Իսկ այն զոր պատմեն Վաղերիոս Մաքսիմոս, և Մակրոբիոս վասն սորին հայկազն Զօրօաստրայ 'ի մէջ պատերազմի սպանեալ և ապա կենդանացեալ, ես համարիմ 'ի մերձաւորութենէ անուանցս Արայի և Կարայի վրիպեալ սոցա, և 'ի մի խառնեալ ընդ սմա զանցս նախնոյն մերոյ Արայի ․ զորմէ համբաւէին ըստ հնարելոյ Շամիրամայ՝ յետ սպանեալ լինելոյ 'ի պատերազմի, "լիզեալ աստուածոցն զԱրայ և կենդանացուցեալ" ․ որպէս գրէ Խորենացին ա ․ 15 ։

գաւառի որ 'ի Պարսկահայք նահանգի ․ կամ Հերն փոխեալ 'ի Կար, և կամ Կարն փոխեալ 'ի Հեր ։ Զնանգի տեսանեմք Թողուլ մերոց զաւառին անուն նահանգին որ էր Պարսկահայք՝ և զհամօրէն նահանգն յանուն երկուց գաւառաց նորոց կոչել Հեր և Զարեւանդ, 'ի միասին կցեալ իբր մի անուն ։ Եւ զի Զարեւանդն գիտեմք յորջորջեալ վասն առաջին հաւաքաւորին Զօրօաստրայ, որպէս անդ եղե զհամօրէն նահանգն կոչել Զարեւանդ իբր յանուն մեծի ուսումնականի, այնպէս միակցելն ընդ նմա զանուանս Հեր գաւառին՝ յայտ առնէ թէ և այն էր անուն այլոյ ուրումն ուսումնականի ․ վասն որոյ իբրև մի անուն կոչել սովորութիւն եղև ։

## ՅՕԴՈՒԱԾ Բ

**Առաջին նորոգութեան դպրութեան յաւուրս Երկրորդի Արտաշէսի Բագրատունւոյն:**

Յետ անցանելոյ ժամանակի նախնի նահապետաց՝ կարի իմն անշքացաւ Հայաստան աշխարհս 'ի մասին դպրութե. զի մինչև յաւուրս Թագաւորելոյ Վաղարշակայ, որպէս տէրութիւն հայկազեան կայր յանհնարին անկարգութեան, նոյնպէս և դպրութիւնն. զոր յայտ առնէ այս բան նորին Վաղարշակայ առ Խորենացւոյն. "Ոչ կարգք ինչ լեալ աստ յայտնի, և ոչ մեհենից պաշտամունք. և ոչ գլխաւորաց աշխարհիս առաջինն յայտնի է և ոչ վերջինն, և ոչ այլ ինչ օրինաւոր. այլ խառն 'ի խուռն ամենայն և վայրենի". Ա. 9: Եւ թէպէտ ինքն Վաղարշակ ոչ փոքր ինչ նպաստամատոյց գտաւ նաև 'ի յառաջադիմութե դպրութե, այլ միայն 'ի պատմագրութեան մասին: Բայց քանզի երկրորդս այս Արտաշէս է, որ զբազմազան ազգս դպրութեանց նորոգեալ կենդանացոյց յաշխարհիս մերում, արժանապէս 'ի դէպ է կոչել զնա առաջին նորոգիչ դպրութեանց. զայս հաստատէ բան Խորենացւոյն յասելն. "Թէպէտ և զայլն ամենայն զոր ինչ յիշատակեցաք յառաջագոյն ձաւիցն, կարգք և սովորութիւք գեղեցիկք հաստատեցան 'ի Վաղարշակայ և յայլոց առաջնոց թագաւորացն, այլ 'ի մեծամեծ արուեստից և 'ի գիտութեանց ունայնացեալք էին, որպէս հինից և աստպատակաց պարապեալք. և այսպիսի գիտութեանց կամ անփոյթ արարեալք, և կամ ոչ հասեալք. զշաբաթուց ասեմ և զամսոց և զտարեաց բոլորմանց. քանզի ոչ այսպիսի ինչ ճանաչիւր առ նոսա... Այս ամենայն յօրինի յաւուրս Արտաշիսի". Բ. 59: Այլ քանզի սակաւ ինչ յիշատակէ Քերթողահայրս մեր 'ի նորոգեալ գիտութեանց և դպրութեանց, և մեք սակաւուք ունիմք նշանագրել զնոսին յիւրեանց տեղիս: Տեսցուք այժմ զերկրորդ նորոգութիւն դպրութեանց:

## ՅՕԴՈՒԱԾ Գ

Երկրորդ նորոգութիւն յաւուրս Վռամշապհոյ Թագաւորին յետ գիւտի գրոյն :

ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ յայտ առնեն թէ յետ նորոգութեան Արտաշիսի երկրորդի դարձեալ շիջաւ սէր դպրութեան : Միայն թէ մատենագիրք ոմանք և ուսումնականք՝ որք ե-րևեցան յայս միջոց ժամանակի 'ի Հայս և 'ի շրջակայս նո-րա՝ զորս զկնի յիշատակելոց եմք, ցուցանեն թէ ոչ այն-չափ ինչ շիջեալ էր նշոյլ դպրութեան, որպէս յառաջ քան զՎռամշապուհ : Պատճառ այսմ երկրորդ նորոգութեան դպր-րութեան եղև գիւտ Հայկական գրոց. որ քանզի մեծ փո-փոխութիւն եած 'ի մասին դպրութեան ազգիս, հարկ է պատ-մել ըստ կարգի : Քանզի տեսանեմք յետ գիւտի գրոյն հաստատուն մնացեալ առ մեզ որչափ ինչ գրէին կամ ուսուցանէին. որ յառաջ առ 'ի չգոյէ սեփհական գրոց անհաստատ մնացին այն ուսմունք. և որպէս կարծեմ, ոմանց ևս գրուած յունարէն գոլով առ Յոյնս մնացին : Քերթողահայր մեր 'ի սկզբան անդ պատմութեան իւրոյ բո-ղոք բարձեալ յաղագս անփոյթ գոլոյ մերոց 'ի դպրութիւն, յաւէտ 'ի պատմագրութեան մասին, "կամիմ, ասէ, և ոչ զանիմաստասէր բարս առաջնոցն մերոց նախնեաց առանց յիշատակի բամբասանաց թողուլ. այլ և առաւել իսկ յիս-կզբան մերոյ գործառնութեանս զկամն նոցա կշտամբութեան յարմարել զբանս,, . Ա. 3 : Այսպէս փաստս իրաւացիս բե-րելով թէ որպէս գովութեան արժանաւոր գտան թագա-ւորքն այնոքիկ, որք զգործս երևելիս արձանացուցին 'ի վէպս, զհետ բերէ. "Այսպէս ուրեմն ամենեցուն մեզ յայտնի է թագաւորացն մերոց և այլոցն առաջնոց առ 'ի յիմաստն ազգամարութիւն, և անկատարութիւն ոգւոյն բա-նականի : Զի... բազում գործք արուեստ գտանին գործեալ և 'ի մերում աշխարհիս, և արժանի գրոց յիշատակի, զորոց և ոչ մի ոք 'ի նոցանէ պէտս յանձին կալաւ մա-տենագրել,, : Միթէ և զպատճառն ոմանց՝ թէ "վասն ոչ լինելոյ գրոյ և դպրութեան 'ի ժամանակին, կամ վասն պէս-պէս պատերազմացն,, , գուցէ ոչ գրեցին : Զի յետ ցու-ցանելոյ թէ յայլ ամենայն հարկաւոր գրուածս յորժամ

կամէին՝ 'ի կիր առնուլն զգիր Պարսից և Յունաց, և բա-զում ժամանակք եղեն որք առանց պատերազմաց մնա-ցին, ապա յայս կնքէ զբան իւր. «Այլ ինձ թուի որպէս այժմ, և առ հինսն հայատառնեայց լեալ անտիրելութեն իմաստութեն, և երգարանաց բանաւորաց»: Այլ զկարգ և համարեցուք զպատճառն այսորիկ, վասն ունելոյ կամ չունելոյ զգիր սեփական, սակայն այս ինչ յայտնի է, զի կատարեալ դպրութիւն աշխարհիս մերոյ սկիզբն էառ 'ի դպրութեն հայկական գրոյն, զորմէ յառաջիկայդ:

## ՊԱՏՃԱՌՔ ՅԱՌԱՋԱՑՈՒՑԻՉՔ ԴՊՐՈՒԹԵԱՆՑ ԱՇԽԱՐՀԻՍ

Ի գիւտոյ գրոյն բացան ճանապարհք առ մեզ ամենայն դպրութեց: Զի նախ քան զայն դար չէին ծաղկեալ առ-հասարակ ամենայն ուրեք դպրութիւնք, որպէս յայտ առնեն գանգատք մատենագրաց, բայց եթէ առ սակաւս. և նոյն իսկ թարգմանութեն զանազան գրեանց յետ գիւտի գրոյն սկսանէր. վասն որոյ Ասողիկ Ի. 1. յետ պատմելոյ զգիւտ գրոյ՝ ասէ. «Սկիզբն դպրութեւս Հայոց՝ եղև սկիզբն մեծի գիտութեն»: Եւ Կորիւն յետ գիւտի գրոյն ասէ. «Յայնմ ժամանակի երանելի և ցանկալի աշխարհս Հայոց անպայման զարմանալի լինէր»: Այլ առ քաջ իմանալ զօգուտ գիւտի գրոյն՝ հարկ է տեղեակ լի-նել վիճակի դպրութեն նախ քան զգիւտն. և լսել զդժուա-րութիւնս և զաշխատանս զորս կրէին մերքն:

### Ա. Գիւտ գրոյն:

Յառաջին ժամանակս զերից դրացի ազգաց զգիրս 'ի կիր առնուլն 'ի Հայս, զորս զերեսին եւս միանգամայն յիշէ Վարդան. իսկ զՊարսիցն և զՅունաց՝ Խորենացին յիշէ յայս բան Գ. 3. «Քանզի գտանին և մինչօք լեալ պա-տերազմացն, և գիր Պարսից և Յունաց, որովք այժմ... առ մեզ գտանին անբաւ զրուցաց մատեանք»: Եւ 'ի Գ. 52. գրէ վասն արքունական դրանն յաւուրս Վռամշապ-հոյ թագաւորին. «Քանզի պարսկականաւն վարէին գրով»: Բայց առաւել երևի գործածութի յունական

տառից, եւս առաւել Ասորւոցն [1]. զի Ղազար միայն զԱ-
սորւոցն յիշէ միշտ. « Տրտմէր, ասէ, երանելի այրն Մաշ-
թոց, տեսանելով զմեծաջանն ծախս մանկանցն հայաս-
տանն աշխարհիս, որք բազում թոշակօք եւ հեռագնաց ճա-
նապարհօք եւ բազմաժամանակեայ դեգերմամբք մաշէին
զաւուրս իւրեանց 'ի դպրոցս ասորի գիտութե. քանզի պաշ-
տօն եկեղեցւոյ եւ կարդացմունք գրոց՝ ասորի ուսմամբ
վարէին 'ի վանորայս եւ յեկեղեցիս հայաստան ժողովրդ-
գոցս, յորմէ ոչինչ էին կարօղ լսել եւ օգտել ժողովուրդքն
այսպիսի մեծի աշխարհի յանլրութենէ լեզուին ասո-
րոյ ». 26: Դարձեալ. « Այնմանյն անձն յորդորեալ փա-
փագէր յուսումն հայերէն գիտութե. որպէս 'ի խաւա-
րէ յասորի ուսմանցն զերծեալ 'ի լոյս խնդային....
(քանզի յառաջ քան զգիւտ գրոյն) ասորի մեծաջան եւ
անօգուտ ուսմամբքն աշխատեալք յոխորս. յորոց բազ-
մութի ժողովրդոց ունայնք եւ թափուրք հրաժարեալք
զնայլին յեկեղեցւոյն. եւ ուսուցիչքն հանելով յոգւոց
եւ հառաչելով զզջանային զանօտի ջանն իւրեանց » [2]. 30:

Այս դժուարութի առաւել նեղէր զամենեսին յըն-
թեռնուլն զաստուածաշունչ գիրս յեկեղեցւոջ. զի ոչ
գոլով թարգմանեալ 'ի հայ բարբառ՝ ասորերէն ընթեռ-
նուլն յեկեղեցիս, ապա ձայնիւ թարգմանէին. որով
դժուարին եւ տաղտկալի լինէր եթէ թարգմանչաց եւ
եթէ ունկնդրաց. նմին իրի երբեմն եւեթ լինէր այսպէս
ընթեռնուլ եւ թարգմանել 'ի լսելիս ժողովրդեան, մա-
նաւանդ յորժամ ոչ գտանէր քաջ թարգմանօղ ձայնիւ,

[1] Մինչեւ ցայժմ լսեմք ուրեք ուրեք գտանել հայկական մատենից գրեալ ասորի տառիւք. յորոց զմին ինքնին տեսեալ վկայեաց մեզ Սխման ասան-մանեան, որ մի էր 'ի վարժապետացն 'ի Պետասաւրան:

[2] Ի բանից աստի Ղազարայ երեւի թէ յեկեղեցիս զԱսորւոցն 'ի կիր առնուին. բայց Խորենացին Գ. 36. յստակագոյն յիշէ ասելով. « Զի յայնժամ գիր դպրութեան Հայոց չեւ եւս էր լեալ. եւ յունականաւն վարէին եկեղեցւոյ կարգք »: Յորմէ յայտնի է թէ ուրեք ուրեք՝ կամ երբեմն զայս եւ երբեմն զայն վարէին: Այնպէս եւ վասն արքունի գրանն որպէս խո-րենացին զՊարսկացն միայն յիշէ. Ղա-զար 'ի թղթ. 25. զհիւս երկոսին եւեթ յիշէ ասելով. « Ասորի եւ յոյն գրով վճարէին յայնժամ ('ի ժամա-նակս Մեսրոպայ) զպարծ թագաւորին Հայոց արքունի գործքն զմնացոն եւ զհրովարտակացն »: Մեծապէս սխա-լի Գօշար, որ պատճառս զԱսորւոց գիր 'ի վեր արկանելոյ մերոց՝ ասէ լինել զմերձաւորութիւն լեզուի երկոցունց ազգաց. զի գիրք Ռ. գլ. 3. թղթ. 21. 'ի մէջ բերելով զբան Գողթէնո-սի Է. դարու. ուր ասէ. Նամնեա « Թուղթ մատայց իրբ յԱրմենզոսէ հայ-աստանեայց առաքեալ զգեալ ասորի տառիւք », ինքն յաւելու ասել. « Վասն զի Հայոց եւ Ասորւոց ասէ մերձաւորութե լեզուին, հատուածակաց էր գիր »: Զնոյն կրկնէ եւ 'ի գիրս Է. գլուխ 9:

զոր օրինակ էր Մեսրոպ ։ Զայս ամենայն յայտ առնէ Խո-
րենացին համառօտ բանիւք ասելով . «Ի վարդապետել
երանելւոյն Մեսրոպայ՝ ոչ փոքր կրէր վաստակս , քանզի
ինքն էր ընթերցող և թարգմանիչ . և եթէ այլ ոք ըն-
թեռնոյր , ուր նա ոչ հանդիպէր , զանխուլ՚ի ժողովրդոցն
լինէր յաղագս ոչ լինելոյն թարգմանչի»[1] . Գ . 47 ։ Սակս
այսորիկ փղձկեալ եռայր սիրտ սրբոյն առ ՚ի գրով թարգ-
մանել զսուրբ գիրս . բայց և այսմ խափան տեսանէր զպա-
կասութիւն հայկական տառից ։ Ահա պատճառն փափագա-
նաց սրբոյն Մեսրոպայ վասն գտանելոյ զգիր հայկական .
պատճառ բոլորովին հոգեշահ . զի և յայնմ տեսանէր
սուրբն՝ թէ առ նուազ ծանօթութեան սուրբ գրոց՝ նուա-
զեալ էր նաև հաւատք քրիստոնէական ՚ի Հայս . մա-
նաւանդ թէ ուրեք ուրեք խանգարեալ , և կռապաշտութիւն
մուծեալ , ՚ի Գողթն , ՚ի Սիւնիս և ՚ի Փայտակարան ։

Իսկ այսպէս առաջին պատճառ գիւտի գրոյն եղև
հոգեւորութիւն երանելւոյն Մեսրոպայ . որ տեսանէր
սակաւ յոյժ ծանօթութիւն լեալ ՚ի մերում աշխարհի առ
աստուածաշունչ տառից՝ որ է հիմն քրիստոնէութեան , աս-
տուածպաշտութեան , նաև բարեպաշտութեան . իսկ զպատճառ
նուազ ծանօթութեան ծանեաւ լինել առ ՚ի չգոյէ թարգ-
մանութեան . և պատճառ չլինելոյ թարգմանութեան էր չու-
նելն գիր սեփական Հայոց լեզուիս . «Վասն որոյ , ասէ
Խորենացին Գ . 47 . եդ ՚ի միտ հնարել գտանել նշանա-
գիրս Հայոց լեզուիս . և արկեալ զանձն ՚ի պէսպէս ջանս ,
պէսպէս փորձիւք տաժանէր» ։ Ղազար ՚ի թղթ . 26 .
յաւելու պատմել նաև զզեկուցանելն նորա առ սուրբն
Սահակ , և զառնուլն ՚ի նմանէ քաջալերութիւն աւետիս ։
Այսպէս ահա բոլորովին հոգևոր եղև պատճառ հետա-
մուտ լինելոյ սրբոյն Մեսրոպայ ՚ի գիւտ գրոց[2] . վասն
որոյ և յոչ յաջողելն ՚ի մարդկայինն հնարից՝ չէին ինչ զար-
մանք , որպէս վայրապար զարմանան Վիգոանեանք , առ
Աստուած ապաւինելն նորա , և յաստուածուստ ընդու-
նել ՚ի տեսլեան[3] զայն՝ որ արտաքոյ էր իւրում արուեստի .

1 Զարմանք մեծ են , զի յաջժմեան օրինակի մերում կցորդեն պատմագրի ոչ յիշատակին այս ամենայն պատճառք յորոց յորդորեալ եղիտ Մեսրոպ գիր հայկական ։

2 Վասն որոյ և ՚ի Շարականս ՚ի պատկեր կանոնին Թարգմանչաց՝ առաւել խօսի և յիշէ զգիւտոյ և զբերելոյ Գրոցագանց , պայծառ ... զաստուածաշունչ տառս . զի ՚ի պատճառս ծանօթանալոյ աստուածաշունչ գրոց ընծէր մեր հայկական լեզուաւ , եղև գիւտ հայկական տառից ։

3 Վիգոանեանք երկու եղբարք

հին ազգացն է տեսանել, արաբացւոց, եբրայեցւոց և այլն. յոյր տառս պատմագիրք զայս պակասութիւն միշտ յուշ առնեն ասելով. ոչ լինել "բաւական նշանագիրքն որջ ածել զսիւղոբայս և զկապս հայերէն լեզուին„. որպէս ասէ Կորիւն. նաև Խորենացին գ. 52. զի արդարև 'ի պակասել ձայնաւոր տառիցն՝ չէ մարթ կապել կամ հեգել զվանկըս, յաճախերէն կոչեցեալ Սիւղոբայս: Եւ վասն այսորիկ նախնիք մեր բոլորովին 'ի բաց թողեալ զայն գիր՝ երից դպրացի ազգաց դրովքն վարէին, որպէս ասացաք, մինչև իբր անգիւտ լինել այնմ 'ի Հայս. բայց յորժամ խնդիր արար Վռամշապուհ արքայ վասն այսր 'ի Միջագետս՝ Հաբէլ վանականն յայտնեաց առ արքայ, թէ անդ առ Դանիէլի ասորւոյ գտանէին պահեալ հայկական տառք. բայց զերկեամ մի ուսուցեալ 'ի դպրոցս զայն, զորս կոչեցին Դանիէլեան նշանագիրս, իբրև տեսին թէ չեն բաւական 'ի հեգել՝ որպէս ասացաք, յետ այսր և անդր յուզելոյ 'ի ստեղծել գէթ զմնացեալս, ապաստանեալ առ Պղատոն և առ Եպիփան Ճարտար և առ Հռոփանոս, և 'ի դերև ելեալ՝ յաղօթս ապաւինի սուրբն Մեսրոպ. և 'ի տեսլեան տպաւորին 'ի սիրտ նորա նշանագիրք խնդրելիք. և զի ձայնաւոր տառքն են գլխաւորք, վասն որոյ յարինակս ինչ Խորենացւոյն գ. 53. յիշէին միայն ձայնաւոր տառքս, ա, ե, է, ը, ի, ո, ւ. որ երևի առեալ յօրինակէ բանիցն Ասողկայ ա. 6. որ գրէ այսպէս. "Ի սորա (Թէոդոսի փոքու) աւուրս էր սուրբ հայրապետն Հայոց Սահակ. յորոյ աւուրս (եղև) դպրութիւն Հայոց լեզուիս. քսան և ինն 'ի Դանիէլէ փիլիսոփայէ Ասորւոց կարգեցաւ, (որ էր 'ի նախնեաց մնացեալ առ նմա). իսկ զեօթն գրոյն պակասութիւն՝ Մեսրոպայ երանելի տարօնեցի խնդրուածովք յԱստուծոյ առնու„:

Սակայն զայսմանէ լաւագոյն ևս գոգցես գրէ Վարդան ասելով. "Սուրբն Մեսրոպ յօրինէ դպրութիւն Հայոց. քսան և երկու գիր առ Դանիէլի ասորւոյ գտեալ 'ի հին ժամանակաց, որ վասն ոչ պարզելոյն զընդարձակութիւն լեզուիս՝ անհոգացեալ եղև յառաջնոցն. յոյն և ասորի և պարսիկ գրով շատացեալք... Տայ նմա Աստուած զխնդրելին չորեքտասան գիրս [1] աջով իւրով դրոշմեալ առաջի նորա.

[1] Որ է ասել, թէ բաց 'ի ձայնաւորաց՝ զորս գիւտն էր Մեսրոպայ և 'ի Յունաց առնուլ. պէտք եղեն և քանի մի բաղաձայնից սեպհական եղելոց ազգիս. որպէս է զանազանեալ տառիցս ձ, կ, փ, խ. և ո, յ, ց. և ղ, ծ. և ր.

որպէս մեծին Մովսէսի 'ի լերանն Սինա, և սմա 'ի լերանն Բալուայ. որպէս տակաւին ցուցանի դրոշմն աստուածադիծ վիմին, և նկարք գրերոյն. և պատուի տեղին...
Եւ զի լեալ է հայերէն գիր հնոցն՝ վկայեցաւ 'ի ժամանակս Լևոնի արքայի (Հայոց). զի գտաւ դրամ 'ի Կիլիկիա հայերէն գրով դրոշմեալ զանուն կռապաշտ Թագաւորացն հայկազանց. զորոյ զԹերութիւն ելից նորս մեր Եզրաս,,[1]:

Օսոյն հաստատէ և բան Ղազարայ 'ի Թղթ. 26. ուր գրէ վասն Մեսրոպայ նախ քան զգալն առ Սահակ կաթողիկոս և առ Թագաւորն Վռամշապուհ, և նախ քան զլսելն 'ի նմանէ վասն Դանիէլեան նշանագրոց, Թէ յայժ եռանդն զգայր յինքեան Մեսրոպ վասն ստեղծանելոյ գիր հայերէն. "Մանաւանդ Թէ գտն նշանագիրք հայերէն լեզուայս,, ասելով: Եւ 'ի Թղթ. 30. պատմէ ասել քահանայից առ սուրբն Սահակ, Թէ զՄեսրոպ "զարԹոյց աստուածայինն շնորհ 'ի ցանկութիս յայս՝ կարգել զվաղնջուցն գրեալ շարագիրս տառիցն՝ զորս ոչ ուրուք էր հոգացեալ արկանել 'ի կիր,,[2]: Զսոյն ցուցանէ և բան Խորենացւոյն Գ. 52. "Կարգեալ ըստ ձևոյ օրինակի յունականին՝ զվաղնջուց գտեալ նշանագիր տառից,, որ գտաւ առ Դանիէլի ասորոյ: Որպէս և այս բան Կորիւն պատմագրի

ռ. և այլն: Վասն որոյ Շնորհալին երգուածքը իւրում Մեսրոպայ ընծայէ ասելով.
"Ըստ Մովսէսի արժանացեալ
Զաստուածադիծ տառս ընկալեալ
Երեք տասամբք վեցեւք յանգեալ
Արեգական երեւք շաւիղեալ,,:
Յայտնի են և բանք Շարականին:

1 Այսմ և մեք վկայեմք մերձն լեալ ականատես. զի յերկելեն հաւաքամանս դրամոց՝ զորս ժողովեալ հռչակաւոր գեղապանն անգղիացի Այնդլէ անուանեալ յասուրս ասլցան հանճարոյ, բաղմուԹիւն հին և նոր դրամոց տեսի և անուի բերեալ 'ի Բիւզանդիոն, հաղարաւոր դրամս անտից առ նմա 'ի կարգս անծանօԹից գտեալ, որոց անմնեցուն Թիւ հասանէր երրդ 'ի հարիւր հազար. և որոյ հնագիր և կարգաւորող էր հռչակաւոր Ցօմէնիկօս Սէստինին որ 'ի Փլորենտիա: Ի մէջ անծանօԹիցն այնոցիկ յամին 1788 տեսի հարիւրաւոր դրամս արծաԹիս. 'ի մի կողմն դրոշմեալ ունելով ասպուշան 'ի մէջ երկուց մնացուց. իսկ 'ի միւս կողմն դէմք Թագաւորի ըստ արևելեան օրինակի սաղաւարտեալ, ունելով շուրջանակի հայկական տառս որոշ մնացեալս. Հ. ա. պ. կ. Ճ, և այլն, զանմանս ուղղագիրս, իսկ զանմանս խառնագիրս. բայց ոչ գտանելով 'ի նոսա տառ ինչ ձայնաւոր՝ չեղև ինձ մարԹ անուն ինչ ընԹեռնուլ: Գտանին այսպիսիք և յայլ հանգիտաբանս դրամոց, զորս առհասարակ կոչեն դրամս Պարթևաց արշակունեաց, այլ գիրն անծանօԹ մնայ առ նոսա. զորս համարիմ լինել դրամս մերոց արշակունի Թագաւորաց հին հայկական գրովք՝ յորս պակասէր ձայնաւոր:

2 Ահա յայս միտ պարտ է առնուլ և զոր ասէ Խորենացի Գ. 3. "Այլ ասկիցէ ոք արդեօք, վասն ոչ լինելոյ գիր և գրոյն 'ի ժամանակին,, ոչ դրեցան յիշատակարանք պատմուԹեց: Այսպիսիքն են՝ վասն ոչ ուրուք հոգալոյ 'ի կիր արկանել զայն գիրս, այնպէս 'ի բաց Թողեալ կայր՝ որպէս Թէ չգտի:

յասելն. «Մանաւանդ զի և նշանագիրքն իսկ (դանիէ-լեանք) յայլոց դպրութեանց թողեալք, և յարուցեալ դիպե-ցան»: Այսինքն է՝ թէ այն դանիէլեան նշանագիրքն ոչ նորոգ հնարեալք լինէին, այլ հին անկատար տառքն էին՝ յայլոց առաջնոց թողեալք, որք այժմ նորոգ յարուցեալ գտան ըստ դիպաց առ Դանիէլի ասորւոյ. Եթէ առաջինքն թողլին զայն առէ սակս ոչ լինելոյ բաւական ողջ ածել կամ հեգել զխուզաբայս, մեք ընդէ՞ր աշխատիմք անդրէն նախնին անկատար նշանագրօք: Ոմանք վասն այսր վկայութի նաև յօտար ազգէ, որ յայտ առնէ լեալ գիր հայկական նախ քան զՄեսրոպ. զի Փիլոստրատոս ծաղկեալն յառաջ Կարակալլայ կայսեր յամին իբր 200. 'ի վարս Ապողոնեայ Տիանեայ պատմէ, «կալեալ երբեմն 'ի Պամփիլիա յովազ, ունելով զպարանոցաւն մանեակ ոսկի՝ հայկական գրովք գրոշմեալ այս բան. Արշակ Բագաւոր աստուածոյն Նիւսեայ»:

Իսկ այսպէս ըստ մերոց նախայիշեալ պատմագրաց՝ հին հայկական նշանագիրք էին որք գտան առ Դանիէլի, և դանիէլեան նշանագիրք էին զորս լուացոյց Մեսրոպ. բայց 'ի կարգի ունելն փնտաս եղև 'ի Միջագետս կամ 'ի Դանիէլէ և կամ 'ի Հռոբէլէ և յայլոց, «ըստ ձևոյ օրինակի յունա-կանին». որպէս գրէ Խորենացին Գ. 52: Կորիւն՝ Հռո-փանոսի ընծայէ զայս կարգադրութի ասելով. «Ընտրու-թիւս նշանագրոյն, զնրբագոյնսն զկարճն և զերկայնն, զա-ռանձինն և զկրկնաւորն միանգամայն յօրինեալ»: Նմա-տայ և Խորենացին Գ. 53: Բայց ըստ Ղազարայ առաւել 'ի կարգի ունօղ եղև մեծն Սահակ. զի 'ի թղթ. 29. յետ դը-նելոյ զբանն Խորենացւոյն [1] վասն Հռոփանոսի, թէ Մես-րոպ «ետեղծ զնշանագիրս մեր հանդերձ Հռուփանոսիւ, կերպաձևեալ զգիրն առաձեան պատրաստ Մեսրոպայ. փոխատրելով զհայերէն աթուսթոյն ըստ անսայթաքուն սիղոբայիցն 'ի հելլենացւոյն», անդէն 'ի վերայ ածէ. «Ձեռն 'ի գործ արկանէր երանելին Մաշթոց, յերիւրե-լով զնոսա ուսուրբ հայրապետին Հայոց Սահակայ, դիւրա-հնար ձանապարհ ցուցանելով կարգադրութեն գրենոյս, և հեգենոյին ուղղաձայնութե»: Եւ սորև գրէ. Մես-րոպ «համադրպեցուցանէր զհայերէն աթուսթոյն ըստ կարգման սալովքայիցն Յունաց, առէպ հարցմամբ և ու-

1 Ղազար և Խորենացի զպատմութիւն գիւտի գրոյն ամենայնիւ մի և նոյն բանիւք պատմեն. յորմէ յայտ է 'ի գիւտնոյս արբանի հանեալ որի-նակեալ երկոցուն նոյն զոյն պատ-մութիւն. զի ոչքս երկոքեան չէին ըն-թերցեալ զգիրս միմեանց:

առնելով 'ի սուրբ կաթողիկոսէն Իսահակայ զաթու-
թայիցն գաղափար ըստ անսայթաքութեան յունին[1]. վասն
զի ոչ լինէին բաւական 'ի վճարել անսխալ ուղղակի առանց
առաջնորդելոյ նոցա սրբոյ Հայրապետին Սահակայ, որ
յոյժ առլցեալ անցուցանէր վարժիւք զբազում գիտնովք
Յունաց»: Զայս կարգադրութիւն մեծին Սահակայ ոչ յի-
շեն այլք:

Ի գտանելն զդանիէլեան նշանագիրս՝ նախ զայն ըստ
կարի ուղղեալ Սահակ և Մեսրոպ 'ի գործ ածին 'ի դըպ-
րոցս. բայց 'ի սուղ ժամանակի ծանեան զնորայն թերութիւն,
որպէս առէ Խորենացին. «Որոց ուսեալ, և թևածելով
ընդ նոսա ամայոց զամս սակաւս, տեղեկացեալ գիտացին
ոչ լինել բաւական այնու նշանագրօք ստոյգ հոլովել զհե-
գենայ բառից հայկականաց համներգաբար մաւրացա-
ծայինն այնուիկ գծագրութիւն». Գ. 52: Յետ գտանելոյ
Մեսրոպայ զեօթն ձայնաւորսն՝ յայնժամ վերստին 'ի
կարգի եդեալ զայբուբենսն՝ զայն սկսան ուսուցանել. զոր
Սամուէլ զկնի Աթողկայ նշանագրել կամելով սակաւուք,
առէ 'ի թուլին նիդ. «Սկիզբն դպրութե Հայոց՝ Մաշտոց որ է
Մեսրոպ երանելի և մեծն Սահակ զԴանիէլի նշանագիրսն
յօրինէին ընկերօքն հանդերձ. և յետ միոյ ամի դարձեալ
աստուածատուր նշանագրօքն զնոյն յեղանակեալ. (այս-
ինքն զնոյն դանիէլեան նշանագիրսն լրացուցեալ կարգա-
դրեալ,) որով և դպրութիւք և գիրք աստուածայինք ուղ-
ղեալ թարգմանէին»: Այլ տառքս այս մեսրոպեան անց-
մամբ ժամանակաց ընդ դարս դարս այլայլեալ 'ի զանա-
զան ձևս փոխեցան. և յայլայլութէ ձևոցն զանազան անուն
ընկալան, զորս յառաջիկայդ մի ըստ միոջէ յիշեսցուք յա-
նուանէ:

Երկաթագիր: Այս է կարգեալ և կերպաձևեալ գիր սրբոյն
Մեսրոպայ 'ի սկիզբն հինգերորդ դարուն. որով գտանին
մինչև ցայսօր գրեալ մագաղաթեայ գրեանք: Պատճառ
այսպէս կոչելոյն ոմանք համարին ոչ սակս երկաթի գըչաւ
գրելոյն 'ի վերայ մագաղաթեայ թղթոյ՝ այլ սակս թա-
նաքին՝ զոր գործէին յայնժամ 'ի ժանկէ երկաթոյն:

[1] Բանքս այսչափ պատմագրաց յայտ առնեն, ոչ թէ զյունականն տառս՝ որ առաջի աչաց ունելով մերքն գրէին զհայկական տառսն, այլ զյունական տառսն աշխատեցան զկնի ըստ կարգի յունականին գտանել: Վասն որոյ սխալեալ է առել ըստ ոմանց՝ թէ կարգադրութիւնք և ձևք հայկականն առաւել են առնելի ըստ Յունաց. այլ ապա վայրապար էր այնչափ աշխատութիւն և աղօթից օժանդակութիւն:

Միջակագիր։ Գրիչք դիւրացուցանել կամելով զերկայնաձև երկաթագիրն, ակնդէմ տարրին 'ի տամն և 'ի մետասաներորդ դարու յեղափոխել զայն 'ի ձև փոքրիկ, որ եղև ընդ մէջ երկաթագրոյն և բոլորագրոյն. սակս այսորիկ և մեք կոչեցաք Միջակագիր։ Այս ձև թէպէտ դիւրին է 'ի գրել քան զերկաթագիրն, այլ ընթեռնուլ քան զայն դժուարին. որպէս է տեսանել 'ի մագաղաթեայ մատենս զորս ունիմք առ մեզ։

Բոլորագիր։ Զնախայիշատակեալ գիրն հետզհետէ յառաւել փոքրն ամփոփելով գրչաց յետ մետասան և յերկոտասաներորդ դարուն հնարեցին զայս ձև բոլոր գրոյն. որով բազում մատեանք գտանին գրեալ 'ի թուղթս բամբակիս և մետաքսեայս Ապատի կոչեցեալ։ Այս ձև է որ մնաց այժմ յամենայն տպագրեալ գրեանս։

Նօտրագիր։ Զբոլոր գիրն առաւել շաւթափուռն հանգոյն երագագիր նօտարաց գրելով գրչաց՝ 'ի չորեքտասան և 'ի հնգետասաներորդ դարու հանեին զայս ձև գրոյ, բազմօք տարբերեալ 'ի բոլորագրոյն, որ մինչև ցայժմ 'ի գործ ածի առ ամենեսին 'ի գրելն։ Սոքա չորեքին ձևք են՝ յորս ընդ ժամանակս ժամանակս այլափոխեալ գտաւ գիր մեր։ Այլ բաց 'ի սոցունց գտանին և փոփոխուիք կամ յաղաւաղելոյ՝ և կամ ըստ կամաց մուծեալք, զորս յիշեսցուք յառաջիկայդ։

Դրամագիր։ Երկաթագիրն մերպահեալն 'ի դրամս մերոց թագաւորաց Ռուբինեանց՝ ուրեք ուրեք յայլ և այլ ձևս փոխեալ տեսանի առ նուազ ճարտարութե փորագրողաց։ Զայն հին փոփոխութի իւրաքանչիւր տառից որչափ ինչ գտանէին, 'ի խնդրոյ նախայիշեալ Տօմինիքօ Սէստինեայ հանեալ նշանագրեալ մեր յուրոյն այբուբենս, յանուն դրամոց կոչեցաք Դրամագիր. որպէս ընթերցօղք կարեն տեսանել 'ի վերայ պղնձոյ փորագրեալ միանգամայն ընդ դրամոց Ռուբինեանց 'ի դրամագրական Նամակագրութե նորին Սէստինեայ, զոր եռ տպագրել իտալերէն 'ի Լիվօռնօ։

Կոնդակագիր։ Է իբր Չէֆիրա կոչեցեալ գիրն եւրոպացւոց. տեղին գրեալ գոլով կոնդակաց ինչ նախնեաց՝ յայս անուն կոչեցաւ։ Որոյ և օրինակ այբուբենի գտանէր առ մեզ կարգաւ գրեալ մեծաւ ճարտարութը. տառքն էին որպէս զգիտաւորս. բայց յամին 1815 ընդ այլ գրեանց մերոց հրկիզ եղև 'ի Բիւզանդիա։

Փառագիր։ Ցայս անուն կոչէին զամենայն ձևս, զորս

գրիչք յեօթնեւտասներորդ դարուն հնարեցին՝ փոխանի երկաթագիրն կերպաձեւեալ 'ի ձեւ զանազան զարդուց, եւ 'ի ձեւ զանազան ճնճղկանց. եւ անուանեալ Ճնճղագիր կամ Զագագիր. նաեւ 'ի ձեւ մարդոյ։ Որում անտեղեակ գոլով Ըզմիթ անգղիացի, յերկհատորեան գիրս իւր՝ յոր-ջորջեալ Հետազօտութ՟ որ յաղագս Չինաց, եւ եդեալ 'ի նմա զպատկեր հայկական այբուբենի 'ի ձեւ այսպի-սի ձագագրոց, ձգնի ցուցանել թէ նաեւ տառք Հայոց ըստ Չինաց են մի մի բառք նշանականք եւ խորհրդականք։ Այլ օրինակ սմին նման է տեսանել եւ 'ի սկզբնաճառն բազմալեզուեան գրոց Վալդոնի անգղիացւոյ. 'ի Թղթ. 12. ուրանօր նախ եդեալ զհայկական այբուբենն բոլորա-գիր, ապա զքսան եւ մի տառս 'ի նոցունց ուրոյն դասեալ՝ դնէ 'ի վերայ խորագիր. “Տառք, որք ունին զնմանութ՟ի ինչ կերպարանաց „. համարելով թէ այլ տառք իցեն։

Փակագիր։ Մի եւ նոյն երկաթագիր վերածեալ 'ի բա-ղում տառից բաղադրութ՟ի, հնարեալ 'ի գրչաց առ հա-մառօտութ՟ի. եւ 'ի մատեանս եւ 'ի տապանագիրս ինչ 'ի վար արկեալ մինչեւ ցայժմ։

Մատանագիր։ Ցիշատակի ուրեք առ մատենագիրս մեր վասն Շապհոյ Պարսից Թագաւորի՝ գրեալ ունել 'ի վերայ մատանւոյ սովին գրով. զոր օրինակ յասելն Ստեփաննոսի օրպէլեան. “Վճիռ կնքեալ Վարազագիր մատանեաւ „։ Որպէս եւ առ Բուզանդայ Դ. 53. յիշատակի նոյնպէս 'ի վերայ մատանւոյ։ Ցորմէ հաւանեալ կարծեմ ոչ սակս տարբերութ՟ե ձեւոյն այսպէս անուանեալ՝ քան թէ սակս տարբերութ՟ե փորագրութ՟են 'ի վերայ մատանւոյ, կամ 'ի խոր՝ կամ յուէտ 'ի բարձր։

Նշանագիր։ Այս արուեստ գրելոյ՝ որ է համառօտելով գրել 'ի ձեռն նշանաց, (զորմէ գրեալ է մեր 'ի տետրակս տարեգրութ՟եց), թէ գտանէր 'ի հնումն եւ յազգի մերում, ցուցանէ պատմութիւն Ագաթանգեղոսի, որ պատմէ զխօսս սրբոց կուսանաց Հռիփսիմեանց գրել այսպիսի նշանագրօք. որպէս եւ զսրբոյն Գրիգորի լուսաւորչին, զի ասէ. “Մինչդեռ կախեալ կայր նա այնպէս, խօսեցաւ զայս ամենայն. եւ գրեցին ատենակալ դպիրք նշանագրաւքն „։

Բ. Դպրոցք եւ վերջինք ուսանելոյ 'ի Հայաստան եւ արտաքոյ, յորս ցրուեցաւ նոյին Հայք:

## ՆԱԽ ՔԱՆ ԶԳԻՒՏ ԳՐՈՑՆ

Յառաջ ժամանակաւ գնալն մերոց յԱթէնս առ 'ի ուսումն գիտութեանց՝ յիշատակի ուրեք ուրեք: Երեւելի է այն զոր յիշէ Գրիգոր աստուածաբան 'ի քսաներորդ ճառն, որ է արձանական 'ի մահն Բարսղի, թէ զկարգ հայկազունք ոմանք յառաջ քան զԲարսեղ եկեալք յԱթէնս՝ վիճաբանէին ընդ նմա: Նոյնպէս եւ այս յիշատակութիւն Վանական վարդապետի 'ի ճառս իւր հարցմանց. "Օրէն էր ուսանել յԱթէնս լաւ կալով եւ 'ի հնազանդութեան. այլ զմերոցն ամբաստանեն՝ թէ սակաւ ուսանին, եւ խօսելով երկար գիտնանան: Զայս Աստուածաբանն հռչակեցոյց 'ի Բարսղի արձանականն„: Որ է նախայիշատակեալ քան Գրիգորի աստուածաբանին: Այլ առաւել պանծալի ազգիս այն է՝ զոր պատմէ Եւնաբիոս, որ եկաց 'ի չորրորդ դարուն, 'ի Վարս փիլիսոփայից՝ թէ ոմն ծնեալ 'ի խորին Հայս, (իմա զմեծ Հայս), անուանեալ Բռօերեսիոս՝ դասատու ճարտասանութեան էր լեալ յԱթէնս, այնչափ հռչակաւոր գտեալ՝ մինչեւ 'ի Հռոմ կանգնել զարձան նորա, անուն տալով նմա Թագաւոր ճարտասանութեան. որում եւ աշակերտեալ էր Գրիգոր աստուածաբանն:

Բայց եւ բազմաց 'ի Կեսարիա լինէր գնալ յուսումն, ուր ուսեալ եւ մնեալ էր սուրբն Գրիգոր Լուսաւորիչ. զի վասն մեծին Ներսէսի գրէ ընդ այլոց Յոհաննէս կաթողիկոս. "Մանկիկ մի փոքրիկ Ներսէս անուն միայն թողլով իւր որդի Աթանագինէ, որ յայնժամ էր 'ի վարժս ուսման 'ի Կեսարիա„: Սոյնպէս ասէ եւ Բուզանդ Գ. 3. եւ Խորենացին Գ. 16: Գուցէ անդ էր ուսեալ եւ սուրբն Մեսրոպ, զորմէ Կորիւն իւր աշակերտ եկեալ պատմէ. "'ի մանկութեան տիովք վարժեալ հելլենական դպրութեան. եկեալ հասեալ 'ի դուռն Արշակունեաց թագաւորաց Հայոց մեծաց„: Կամ թէ 'ի Բիւզանդիա էր ուսեալ. որպէս եւ վասն սրբոյն Սահակայ պարտ է ասել: Իսկ յաճախութիւն գնալոյ յԱթէնս, եւ առաւել յԱղեքսանդրիա, եղեւ 'ի ժամանակս աշակերտացն Սահակայ եւ Մեսրոպայ:

Այսոքիկ են աՀա դպրոցքն արտաքոյ աշխարՀին Հայ-
ոց յիշատակեալք 'ի գիրս՝ յորս դէպ եղև մերոց եր-
բեմն երբեմն գնալ առ 'ի յուսումն գիտութեց ։

Իսկ 'ի Հայաստան յիշատակեալ դպրոցք՝ են զկնի
քրիստոնէութեան. յորում ժամանակի զառաջին դպրոցն
յիշատակեալ գտանեմք առ Ագաթանգեղոսի, որ էր 'ի
պէտս ուսման Հաւատոյ. զոր քանզի 'ի կրկին տեղիս յի-
շատակէ զանազանեալ յիրերաց, և մեք զանազան ա-
նուամբ ուրոյն յիշեմք զնոսին աստէն ։

## ԴՊՐՈՑ ԹԱԳԱՒՈՐԱԿԱՆ

Սոյնպէս կոչեմք, քանզի Լուսաւորիչ կարգեաց զայն
միայն յուսուցանել զորդիս թագաւորական և զորՀմն
արշակունեաց. « Առնոյր, ասէ, այնուՀետև և զարշա-
կունեացն որդիս, 'ի վարժս վարդապետութե պա-
րապեցուցանէր (Լուսաւորիչ). որոյ առաջնոյն Տրդատ ա-
նուն, որ և թագաւորն իսկ էր՝ ամենայն տամբ իւրով » ։
Ագաթանգեղոս թղթ. յճ ։

## ԴՊՐՈՑՔ ՀԱՄԱՐԱԿԱՑ

Որք էին բազումք 'ի զանազան տեղիս, զորս նոյնպէս
Լուսաւորիչ Հրամանաւ Տրդատայ թագաւորին 'ի Հաստա-
տել. « Նոյնպէս Հրամայեցուցանէր, ասէ, զթագաւորն. զի
գաւառաց գաւառաց՝ և կողմանց կողմանց՝ 'ի տեղիս տե-
ղիս ժողովեսցեն բազմութի մանկտւոյ առ 'ի նիւթ վարդա-
պետութե. . Եւ 'ի տեղեաց տեղեաց 'ի սաՀմանացն Հայոց
տայր Հրաման թագաւորն Տրդատ յիւրոց իշխանութեցն՝
յաշխարՀաց և 'ի գաւառաց՝ բազմութեան մատաղ ման-
կտւոյ ածել յարուեստ դպրութե, և կարգել 'ի վերայ Հա-
ւատարիմ վարդապետս. առաւել զազգս պղծագործ քրր-
մացն. զմանկունս նոցա 'ի նոյն ժողովեալ գումարել դասս
դասս յարժանաւոր տեղիս. և դարման ռոճկաց կարգեաց ։
Եւ զնոսա յերկուս բաժանեալ՝ զոմանս յասորի դպրութի
կարգեալ, և զոմանս 'ի Հելլէն »[1]. Ագաթանգեղոս 'ի
թղթաՀամարն յՀԷ ։

[1] Զայս յիշելով և Վարդանայ 'ի նկա-
րագրելն, ասէ վասն Լուսաւորչին.
« Դպրոցս յօրինէր, մանկունս Հա-
ւաքէր. վարդապետս յոյն և ասորի
գրոյ և լեզուի գիտակս կացուցանէր.
ռոճիկս կարգէր յարքունուստ » ։

Յետ այսոցիկ դպրոցաց կարգելոց 'ի Տրդատայ՝ վասն
մեծին Ներսէսի գտանեմք յիշատակեալ առ Բուզանդայ.
զի ըստ համառօտիւ փութոյ եռանդեան իւրոյ՝ ընդ այլ
աշխարհաշէն գործս « կարգէր և 'ի տեղիս տեղիս դպր-
րոցս յունարէն և ասորերէն յամենայն գաւառս Հայոց »:
Դ. Դ: Այսչափ ինչ ահա գտանեմք յիշատակութիւն 'ի
գիրս վասն դպրոցաց յառաջ քան զգիւտ գրոց:

## ԴՊՐՈՑՔ ՅԵՏ ԳԻՒՏԻ ԳՐՈՑՆ.

Յայտնի տեսանեմք պատճառ բազմանալոյ և առաւել
ծաւալելոյ դպրոցաց 'ի Հայաստան՝ լեալ զգիւտ գրոյն 'ի
սկիզբն դարուն հինգերորդի. զի որպէս տեսաք 'ի վերոյ՝
քանզի յառաջագոյն ասորի և հելլէն դպրութիւն ուսուցա-
նէին, որ է ասել ասորի և յունական գրովք, ընդ գտա-
նելն զնոր գիրս, առ 'ի փոխել զհինն և մուծանել զնորն՝
հարկ էր ընդ ամենայն տեղիս մանկունս ժողովել առ 'ի
ուսուցանել. և թէպէտ Կորիւն նախ յիշատակէ դաս մի
մանկանց ժողովեալ 'ի Հայաստան յուսանել զնոր դա-
նիէլեան նշանագիրս, որ էր հին հայկական գիրն պակա-
սորդ՝ պահեալ առ Դանիէլի, բայց զերկեամ մի ուսու-
ցեալ, և պակասութիւն նորին 'ի վերայ հասեալ, Մեսրոպ
ընդ իւր առեալ զմանկունս փոխադրեալ տարաւ 'ի Միջա-
գետս. ուր բացաւ առաջին դպրոցն ընդ կարգաւորու-
թեամբ նորա, բայց միայն դանիէլեան հին նշանագրօք,
մինչդեռ չև էր շնորհեալ յամենաշնորհ աջոյն ծնացեալ
հարկաւոր նշանագիրքն. « Առեալ, ասէ Կորիւն, երանե-
լւոյն Մաշթոցի դաս մի մանկտոյ հրամանաւ արքայի...
երթեալ հասանէր 'ի կողմանս Արամի[1] 'ի քաղաքս երկուց
Ասորոց, որոց առաջինն Եդեսիա կոչի և երկրորդն Ամիդ
... Իսկ աշակերտասէրն վարդապետին (Մաշթոցի) զառ-
եալսն ընդ իւր յերկուս բաժանեալ, զոմանս յասորի
դպրութեան կարգէր և զոմանս յունական դպրութեան »: Այլ
քանզի սկիզբն ուսուցանելոյ զնոր գիրս Մեսրոպայ յայ-
լում դպրոցի սկսաւ, անտի սկիզբն արասցուք յիշատակել
զդպրոցս զառ 'ի Մեսրոպայ և զառ 'ի այլոցն զկնի նորա
բացեալս ըստ կարգի դարուց:

[1] Ի կողմանս Արամի ասելով զՄէջ աւուրս գրոց. զորօք ասէ 'ի Միջա-
գետս կամի նշանակել ըստ ոճոյ գրոց:

## Ի ՍԱՄՈՍՏԻԱ

### ԴԱՐ Ե

Վասնզի յետ գիւտի մեսրոպեան նշանագրոց վերնական աջօքն՝ 'ի Սամոստիա եղև առաջին կարգաւորելն զկարգս դպրոց 'ի ձեռն Հռոփանոսի. անդ սկսանէին, ասէ Կորիւն, թարգմանել զԱսորւոց գիրսն, և միանգամայն բանաւորին անդամոր դպրոց յուսուցանել մանկանց զնորագիւտ գիրսն. «Համադերձ ուսուցանելով մանկունս գրիչս նմին դպրութեան»։ Յորմէ յայտ է թէ առաջին դպրոցն բացեալ 'ի Մեսրոպայ առ 'ի ուսումն նոր հայկական տառիցն՝ եղև 'ի Սամոստիա։ Ուսանողք դպրութեան նոր այբուբենից էին նոյն մանկունքն զորս Մեսրոպ բերեալ էր ընդ իւր 'ի հայաստանեայց 'ի Միջագետս. յաւելլով գուցէ առ նոսա և զայլ մանկունս սամոստացւոց հայկազուն ընտրելոց։

## Ի ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

Առաջին դպրոցն որ 'ի բնիկ Հայս յետ գիւտի գրոյն՝ եղև աստ. զի Մեսրոպ հրաժարեալ յեպիսկոպոսէ Սամոստիոյ քաղաքին, և եկեալ առ եպիսկոպոսն Ասորւոց՝ որ էր եպիսկոպոսն Ամդայ, որպէս կարծեմ թուղթ առեալ 'ի նմանէ, «Եկեալ հասանէր, ասէ Կորիւն, 'ի հայաստան աշխարհն 'ի կողմանս արարատեան գաւառին, առ սահմանօք Նոր քաղաքին (որ էր Վաղարշապատ. ուր) ... զաշակերտութիւն նորագիւտ վարդապետութեան խմբէին ուսուցանել ... որոց և ինքեանք 'ի կողմանց և 'ի գաւառաց հայաստան աշխարհի յորդեալք և դրդեալք հասանէին 'ի բացեալ աղբիւրն գիտութեան Աստուծոյ. քանզի յարարատեան գաւառին 'ի կայս թագաւորացն և քահանայապետացն բղխեցին Հայոց շնորհք»։ Ի դպրոցէ աստի Վաղարշապատու սկսան աշակերտքն սփռիլ յայլ և այլ տեղիս և բանալ դպրոցս. «Որ և սկսան իսկ, ասէ ......... գումարել 'ի կողմանս, 'ի գաւառս, 'ի տեղիս տեղիս հայաստան ազգին՝ դաս դաս զաշակերտելոյն ճշմարտութեանն. զհաստուցելոցս 'ի կատարումն գիտութեան՝ բաւականս և առ 'ի զայլսն զեկուցանելոյ»։ Այսինքն է զհասեալսն 'ի կատարումն՝ որք

բաւական էին զայլսն ուսուցանել, առաքէին 'ի գաւառս գաւառս առ 'ի բանալ դպրոցս, զի և անդ եւս ուսուցանիցեն ։ Իսկ ինքեանք Սահակ և Մեսրոպ փոյթ տարան զարքունիսն ուսուցանել. և տիրապէս երանելւոյն Սահակ զմամիկոնեանսն՝ որք իւր ազգականքն էին ։ Զայս ծանուցանէ Կորիւն յասելն. «Եւ իւրեանց (այսինքն է՝ Սահակայ և Մեսրոպայ) անդէն զառընթերակայ արքունիսն հանդերձ ամենայն ազատագունդ բանակիւն առատածեղէն իմաստութեն վարդապետեալ, առաւել երանելւոյն Սահակայ զմամիկոնեան որեարն 'ի վարժս վարդապետութե պարապեցուցեալ, որոց առաջնոյն Վարդան անուն էր» ։ Ի բազմութենէ անտի դպրոցաց, զոր ասէ Կորիւն, միայն զյիշատակեալսն յանուանէ աստ յառաջ բերցուք ։

## Ի ՓԱՅՏԱԿԱՐԱՆ

Ընդ գալն Մեսրոպայ 'ի Վաղարշապատ՝ փոյթ եղեւ նմա 'ի կողմանս Մարաց սկիզբն առնել ուսուցանելոյ տակս կարի ինն տարացեալ գոլոյ նոցա 'ի լաւութենէ բարուց, 'ի դպրութէ և 'ի ծանօթութէ աստուածպաշտութե գրոց ։ Ուր յանուն Մարաց համարիմ կոչեցեալ զաշխարհն Փայտակարան [1], որպէս նշանագրեալ է մեր և այլուր. «Ցայնժամ վաղվաղակի, ասէ Կորիւն, հրաման առեալ (Մեսրոպայ) 'ի թագաւորէն սկիզբն առնելոյ զխուժա-

1 Զի Մեսրոպ 'ի հայաստան շրջէր, և հայկազնեայց ուսուցանէր, և ոչ թէ Մարաց. վասն որոյ յարմարագոյն բանին թուի վասն Փայտակարան աշխարհին իմանալ՝ որ էր 'ի հայաստան, և 'ի Հայոց բնակեալ ։ Այլ կարի ինձ տարադէպ լինի իմանալ, Մեսրոպայ՝ որում փոյթ մեծ էր յայնմ ժամանակի նախ 'ի Հայս տարածանել դպրոցս, թողեալ զհայաստան, յեռ Վաղարշապատու իսկ և իսկ ելանել երթալ 'ի Մարս, և յայնմ աշխարհի կարգել դպրոցս, ուր և ոչ այնչափ բազմութիւն Հայոց գուցէ էին որչափ ցուցանէ բանն ։ Այլ քանզի յայնժամ ըստ Խորենացւոյն՝ Ատրպատականք, որք են Մարք, ունէին զՓայտակարան, չէ ինչ ընդդէմ յանուն Մարաց կոչեցեալ տակս տիրեալ գոլոյ 'ի նոցունց. և յաղագս այսորիկ է՝ զի զինի Խորենացւոյն գրեթէ այլ ուրեք ոչ գտանեմք յիշատակեալ 'ի գիրս մեր զՓայտակարան նահանգ կամ զաշխարհ, ոչ յանուն իւր՝ և ոչ յանուն գաւառաց ինչ իւրոց, որպէս անուանին այլ նահանգք ինչ. զոր օրինակ զԳուգարանհայս գտանեմք յանուն հեր և Զարեւանդ գաւառաց իւրոց յորջորջեալ, զԿորճէս յանուն Կորդուք գաւառին. այլ միայն զքաղաքն Փայտակարան գտանեմք յիշատակեալ զինի Խորենացւոյն ։ Այն զի նոյն իսկ գաւառք Փայտակարան նահանգին ըստ մեծի մասին բերեն զհնչումն անուանց Մարաց ։ Ըստ այսմ և վասն Փայտակարան նահանգին տարացեալ իմանամք, ուր գրէ՝ թէ զգեւս հալածեալս 'ի Գողթանէ անկանին զի զնոյին 'ի Մարս ։ Տես վասն այսր և 'ի մեծ Հայս զՓայտակարան նահանգ ։

գուժ կողմանն Մարաց (այսինքն զՓայտակարանն նահանգ-
ուսուցանելոյ), որք ոչ միայն վասն դիւական սատանայ-
ակիր բարուցն ճիւաղութեան, այլ և վասն խեցբեկա-
գոյն և խաշորագոյն լեզուին դժուարամատոյցք էին: Առ-
'ի յարդարել զնոցա հարուստ ամացն ծնունդս' առեալ
պարզախօսս հռետորաբանս, կրթեալս աստուածատուր
իմաստութեն ծնունդս կացուցանէին ... 'ի ձեռն առեալ
այնուհետև ... 'ի թարգմանել, 'ի գրել և յուսուցա-
նել ... հայաբարբառք հայերէնախօսք գտան ... երկիր'
որ համբաւուցն անգամ օտար էր կողմանցն այնոցիկ,
յորում ամենայն աստուածագործ սքանչելագործութիւնն
(զորս սուրբ գիրք պատմեն) գործեցան, առժամայն վաղ-
վաղակի ամենայն իրացն եղելոց խելամուտ լինէր":
Ի բանից սորա յայտնի երևի, թէ սոքա էին Հայք,
բայց բազմութիւնք. յորմէ զհետ գայ թէ էին 'ի Հայաս-
տան. զի ցայնժամ չև էր տակաւին հայկազանց այնչափ
ինչ ցրուեալ արտաքոյ աշխարհիս, որպէս ցրուեցան յետոյ:
Արդ թէպէտ Հայք էին' բայց 'ի կողմանս Մարաց բնա-
կեալ գոլով որպէս էր Փայտակարան նահանգ, և գոլով
խառնեալ ընդ Մարս, զնոցին հեթանոսական բարս զգե-
ցեալ ունէին. այլ և լեզու նոցա ըստ բանից և ըստ հնչ-
ման խառնեալ գոլով ընդ Մարս' այնպէս իմն աղճատեալ
էր' մինչև դժուարին էր իմանալ: Սուրբն Մեսրոպ կամե-
լով զնոսա յարդարել յուղղութիւն' որք 'ի վաղուց անտի յոր-
դւոց յորդիս այնպէս օտարացեալ էին, սկսաւ զնորագիւտ
գիրն ուսուցանել նոցա' բանալով դպրոցս և 'ի թարգմանութիւն
կրթելով զնոսա. որով և լեզու նոցա եղև ճշգրիտ հայե-
րէն. և ինքեանք խելամուտ սուրբ գրոց, զորոյ և ոչ զա-
նուն կամ զհամբաւն լուեալ էին մինչև ցայնժամ:

## Ի ԳՈՂԹՆ

Որպէս գրէ Կորիւն, սուրբն Մեսրոպ յետ ուսուցա-
նելոյ զկողմն Մարաց, որ էր Փայտակարան, "Երթեալ
իջանէր առ ոտս տանն Գողթան յառաջին դաստակերտն
իւր: Եւ անդ ընդելական սովորութեամբն 'ի կիր արկեալ
զվարդապետութիւն, հաւատարութեամբն բարեպաշտին
Շաբաթայ, լի առնէր զգաւառն ողջունիւ աւետարանին
Քրիստոսի, և կարգէր յամենայն գիւղս գաւառին դասս
սրբոց վանականաց", առ 'ի ուսուցանել մանկանց զնորա-
գիւտ այբուբենսն, որպէս երևի:

## Ի ՍԻՒՆԵԱՑ ՆԱՀԱՆԳԻՆ

Կորիւն գրէ՝ թէ սուրբն Մեսրոպ յետ Գողթանն «ի սահմանակիցս 'ի Սիւնական աշխարհն եկանէր. և անդ աստուածասէր հնազանդութեամբ ընկալեալ զնա իշխանին Սիւնեաց, որ էր Վաղինակ անուն ... մինչև հասանել նմա բովանդակ 'ի վերայ սահմանաց Սիւնեաց: Եւ ժողովեալ մանկունս առ 'ի նիւթ վարդապետութեանն, տուեալ զգա-ւառամիտս զվայրենաբարոյս զձիւաղաբարոյ կողմանցն. և այնչափ փոյթ 'ի վերայ ունելով և դայեկաբար սնուցանել և խրատել, մինչև 'ի նոցունց իսկ 'ի վայրենեացն եպիսկոպոսս տեսուչս եկեղեցւոյն Սիւնեաց կարգել ... ապա և զերկիրն Սիւնեաց դասուք վանականաց լնոյր»: Տես և զոր ունիմք գրել վասն Անանիայ 'ի յառաջացուցիչս ուսմանց:

## Ի ՇԱՂԳՈՒՄՔ կամ ՇԱՂԱԳՈՒՄ

Որ է մի 'ի գաւառաց Նահանգին բարձր Հայոց. ուրանօր սուրբն Մեսրոպ 'ի գնալն իւրում 'ի Բիւզանդիոն՝ ուսոյց ըստ Խորենացւոյն զառաջինն խումբ աշակերտացն՝ զոր ընդ իւր էր առեալ. «Մեսրոպայ կացեալ յանապատ և 'ի հովանաւոր տեղիսն՝ որ Շաղգոմքն անուանին, բովանդակեաց զվարդապետութիւն առաջին առելոց խմբիցն. քանզի ոչ որպէս արուեստ ուսուցանէր, այլ իբրև զհոգի առաքելաբար աշակերտելոցն տայր». Գ. 60:

Ի ԳԱՐԴՄԱՆ. Վասն այսր տես առաջև:

## Ի ՏԱՇԻՐ

Խորենացին գրէ վասն Մեսրոպայ, թէ յետ կատարելոյ զգործ իւր 'ի Բաղասականն գաւառ Աղուանից, և 'ի Գարդմանն գաւառ ուտէացւոց, հալածելով զհեթանոսութեանն զաղանդն և լուսաւորելով զնոսա 'ի գիտուն ճշմարտուն, ասէ «Հրաւիրի, ասէ, անդէն 'ի բդեշխէն գուգարացւոց Աշուշայէ՝ յաղագս նորին գործոյ գալ յիւր իշխանութիւն 'ի գաւառն Տաշրայ. ուր երթեալ՝ լաւագոյնս վարդապետեաց, և հաստատագոյնս քան զամենայն աշակերտեալսն. առ որով ժամանակաւ Արձիլ ոմն էր կացեալ թագաւոր Վրաց». Գ. 60: Քան զամենայն աշակերտեալսն ասելով

իմանամք թէ 'ի Տաշիր ոչ միայն զՀայաստան լուսաւորեաց, այլ նաև վասն դպրութեան նորագիւտ գրոց՝ զոր ուսոյց յայլ դպրոցս ։

Այսոքիկ են ահա դպրոցք 'ի Մեսրոպայ սահմանեալք . որոց արդիւնք և պտուղ թէ զիարդ ստացեալ ծաւալեցաւ ընդ ամենայն Հայաստան՝ յիշատակեալ գտանեմք յետ վեցերորդ դարուն և 'ի սկիզբն եօթներորդին առ Ստե-փաննոսի օրբելեան յայս բան . "Եւ էր յայնմ ժամանա-կի ('ի ժամանակս ա̃ . Աբրահամ կաթողիկոսի) 'ի Հայաս-տան դպրութիւնս նորոգ և չէն . և յոյն լեզուացն և դըպ-րութեանն յոյժ հմուտք և տեղեակք » . Գլ. Եզ ։

## ՑԱՐՇԱՐՈՒՆԻՍ կամ Ի ՎԱՐԴԻԿ ՀԱՅՐ

### ԴԱՐ Է

Վարդապետարան անուանի յեօթներորդ դարու, նաև մինչ յերրեքտասաներորդ դար . կառուցեալ յԱրշարու-նիս կամ յԵրասխաձոր գաւառին Այրարատու, որպէս յայտ առնէ Ստեփաննոս օրբելեան յասելն վասն Կոմի-տասայ կաթողիկոսի . "Զանց արարեալ զամենայն վարդա-պետօք կաթողիկոսարանին . նաև զվարդապետարանն որ յԱրշարունիսն էր , զմանկունսն յորում ժողովեալ էին Ճարտարք և գիտունք Հայոց, այն որ յԵրասխաձորին է, զոր այժմ Վարդիկ Հայր կոչեն » . Գլ. ԻԸ ։ Կամի ասել, թէ Կոմիտաս կաթողիկոս կամելով զեղբօրորդի իւր զԹէ-ոդորոս առաքել 'ի վարդապետարան՝ որ առաւել ծաղ-կեալ էր ուսմամբ քան զայլսն , ոչ առաքեաց 'ի վարդա-պետարան կաթողիկոսարանին , ուր բազում ուսումնական վարդապետք գտանէին , և ոչ 'ի վարդապետարանն Արշա-րունեաց՝ որ առաւել անուանի էր , և ուր ամենայն գի-տունք Հայոց ժողովեալ էին , այլ առաքեաց առ Մաթու-սաղայ քերթողն Սիւնեաց , նախադասելով զդպրոցն Սիւ-նեաց քան զայլոց տեղեաց ։

## ՎԱՐԴԱՊԵՏԱՐԱՆ ՍԻՒՆԵԱՑ

### ԴԱՐ Ը

Թէպէտ 'ի ժամանակս Սահակայ և Մեսրոպայ կա-ռուցան դպրոցք 'ի Սիւնիս , որպէս յիշեցաք 'ի վեր անդր,

բայց հետզհետէ յառաջանալով անդ զարգացումն ուսմանն՝ առաւել անուանի գտաւ յութերորդ դարուն. վասն որոյ Ստեփաննոս Օրպելեան 'ի գրելն վասն Ստեփաննոսի Սիւ-նեցւոյ՝ ասէ. “Ելեալ 'ի մենարանէ անտի (Մաքենոցաց) փութայ ճեպի յաղբիւրն իմաստից 'ի վարդապետարանն Սիւնեաց, որ գլուխ էր ամենայն գիտնոց Հայոց, և պայ-ծառացեալ դպրոցքն որ 'ի նմա. քանզի որպէս աթենա-ցիքն 'ի մէջ Հառոմոց (հռոմայեցւոց) և Յունաց ճոխացեալ էին, և մայր իմաստից կոչեցեալ 'ի տարածիացւոց աշխար-հին լատին և հելլէն դպրութք, այսպէս և սոքա 'ի տանս Թորգոմայ աշխարհիս Հայոց„. Գլ. լա: Պատճառ այսպէս անուանի գոլոյ այսր վարդապետարանին է նախ՝ զի ա-թոռն Սիւնեաց 'ի սկզբանէ անտի մեծարգի եղև. որպէս գրէ նոյն մատենագիր. “Էր մեծարգոյ և նախաթոռ 'ի վարդապետսն Հայոց աթոռն Սիւնեաց ... և գլուխ կալ և հրամանատար ամենայն վարդապետաց Հայոց„. Գլ. իէ: Երկրորդ՝ զի այսմ աթոռոյ միայն շնորհեալ էր, ասէ, մեկ-նել և թարգմանել զսուրբ գիրս. “Հրաման մեկնութե և թարգմանութե սոցա միայն շնորհեցաւ 'ի մէջ Հայոց 'ի սրբո-յն Սահակայ և յերանեալ վարդապետէն Մեսրոպայ„. Գլ. է: Դարձեալ. “Ի վաղնջուց հետէ հրամայեալ զթարգ-մանութի և զմեկնողութի նոցա ունել 'ի սրբոյն Սահակայ և Մեսրոպայ„. Գլ. իը: Երրորդ՝ զի դասատուք 'ի դպրոցս նորա եղեն գիտունք անուանիք, և քերթող կոչեցեալ բազումք. զոր օրինակ եղեն Պետրոս, Մաթուսաղայ, Թէոդորոս, Մովսէս և Ստեփաննոս:

## Ի ՇԱՂԱՏ

Ընդ համօրէն նահանգն Սիւնեաց 'ի վարդապետանս նախաթոռ եղև աթոռն Շաղատոյ, որ էր իշխանանիստ գիւղաքաղաք 'ի ծղուկս գաւառի. զի Ստեփաննոս Օրպէ-լեան պատմէ՝ թէ յաւուրս Յովակիմայ Սիւնեաց եպիս-կոպոսի յութերորդ դարուն հակառակութի եղև վասն նախադասութե ուսմանց՝ թէ ո իցէ նախապատիւ. յայն-ժամ, ասէ, “հրամայեցաւ Շաղատեցեաց իբրև մայրա-քաղաքացեաց յառաջնիստ լինել մեծագոյն պատուով. նոյնպէս և զվարդապետութե Սիւնեաց փոխադահութե զնիստ հրամայեցին Գէորգայ Շաղատոյ վարդապետի„. գլուխ ծդ:

## Ի ՏՅԱՐՔԵԻ

### ԴԱՐ Թ

Որ է 'ի Սիւնիս. զորմէ գրէ Ստեփաննոս օրպէլեան. "Այն էր և ծովամոյց փիլիսոփայից երաժշտական երգոց. Ձայն էր և վարժարան դպրոցացն վարդապետական կրթութեն. նաև արուեստաւորք նկարչացն և գրողաց անհամեմատք ". գլուխ խա։

## ՅԱՐԳԻՆԱՑ

### ԴԱՐ ԺԱ

Մատթէոս 'ի Թիւն Ձիք. գովելով զՆերսէս զիշխանն Հայոց 'ի Բագրեւանդ գաւառէ՝ լինել յայժ հանճարեղ, բանիբուն իմաստասէր, անդէակ կոռակարանաց, հզօր գիտութք, զարմանալի առհնախօսութք, զանգի ուսմանն նորա ասէ լինել Մեծն Արգինա, որ էր 'ի Շիրակ գաւառին Այրարատու։ Յորոյ և յեկեղեցւոջ բազմութիւն գրեանցն հաւաքելոց 'ի Խաչիկ կաթողիկոսէ՝ անխարկէ լինել անդէն սէր ուսմանց և ուսուցիչս։

## ԳՆՑԻԿ ՎԱՆՔ

### ԴԱՐ ԺԲ

Դպրոց Մխիթարայ Գօշի 'ի Զարափոր գաւառին Գուգարաց. և զայսմանէ ասէ Կիրակոս. "Բազում եղեալք ժողովեցան վանս հռչականուն անդուոյն. և բազմաց եղև անդի մննդեան և ուսման. ուր և մեք իսկ մնեալ և ուսեալ եղաք 'ի նոյն վանս ... նաև այլ յոլով չքնաւանք եղեն 'ի նմա. և բազմացան քահանայք և պաշտօնեայք և մանկունք ուսումնականք "։

## Ի ՍԵԱՒ ԼԵԱՌՆ

### ԴԱՐ ԺԲ. ԺԳ

Որ և կոչի Սուրբ լեառն, յաշխարհին Եփրատացւոց. ուր էին բազմութի յայժ միանձանց և վանականաց. և

'ի նոսա անուանի ուսուցիչք։ Ցայտ է այս յանցից անտի Մխիթարայ Գօշի. որոյ ոչ շատ գրեալ զոր ինչ ուսաւ 'ի Յովհաննէս վարդապետէ տաւուշեցւոյ, որ ըստ Կիրակոսի "ի ժամանակին յայնմիկ երեւելի էր նա գիտութեամբ", և յայլոց եւս, այլ առ քաջուսմամբ լինելոյ "չոգաւ, ասէ, յարեւմուտս կոյս յաշխարհն որ կոչի Սեաւ լեառն, առ վարդապետսն որք էին ուսուցիչք անդ... բազում ինչ օգտեալ 'ի նոցանէ՝ եկն նա 'ի կարնոյ քաղաքն"։

## Ի ՏԱՒՈՒՇ ԲԵՐԴ

### ԴԱՐ ԺԳ

Դպրոց Վանականն վարդապետի աշակերտի Մխիթա-րայ Գօշի, 'ի նահանգն Ուտի։ Ցոյց սակս աւս դպրեալ-ոցն վասն Վանականն վարդապետի 'ի կարգս յառաջա-ցուցչաց։ Ժամանակ սորին անկանի իբր 'ի ժամանակս սկսանելոյ 'ի Գաղղիա յամին 1253 հռչակաւոր Ճեմարա-նին որ 'ի Սօրպօն անուանի։

## ՍՈՒՐԲ ՄԻՆԱՍ

Որ էր յանապատս Սեպուհ լերին. զորմէ գրէ Յովհան Երզնկացի 'ի մեկնութեան քերականին. "Ի լեառն հանգըս-տեան սուրբ լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի յանապատ-ոցն որ ընդ հովանեաւ նորին. յորում 'ի մանկական հասակին էաք վարժեալ յուսումն դպրութեան, յանապատանն՝ որ յանուն սուրբ Մինասին։ Անդ սկիզբն արարաք երգարց ոմանց առնել զգիրս աստուածաշունչս. և 'ի յիշումն ածաք զմնացիրս պատահարելի երգարցն"։

## ԳԼԱՁՈՐ

Ի Վայոց ձոր գաւառին Սիւնեաց. է մենաստան, բայց յիշատակին 'ի նմա երկու վարդապետք Ներսէս և Ե-սայիաս ուսուցիչք լեալ դպրութեանց յեւս երեքտասաներորդ դարուն. յորոց և Եսայի կոչի Վարժապետ։ Այս Գլաձոր նոյն թուի մեզ լինել ընդ Գայլաձոր մենաստանին, "ուր աթոռն է և վարժարան սուրբ վարդապետացն մերոց"; ասէ Վարդան աշխարհագիր.

## ՄԵԾ ՔԱՐ

Ի Կիլիկիա. զորմէ գրէ ընդարձակօրէն Սամուէլի 'ի Թուին չն. ասելով վասն Լևոնի Թագաւորին որդւոյ Հեթմոյ. «Սիրէր զեկեղեցիսն Աստուծոյ և զվանորայսն և զեկեղեցականս, մանաւանդ զվարդապետս. որ և տուն կարգեաց վարդապետաց վասն վարժելոյ զմանկունս՝ զսուրբ ուխտն Մեծ Քար կոչեցեալ»։

Յիշատակին 'ի գիրս մեր և այլ մենաստանք, յորոց ելին արք ուսեալք մի կամ երկու. զայնոսիկ վանորայս ոչ գտանեմք 'ի կարգս դպրոցաց, զի ոչ յիշէն վասն նոցա լինել վարժարան, կամ գտանիլ 'ի նոսին ուսուցչաց, և կամ ժողովել զանազան անձանց յուսումն, որք են հանգամանք դպրոցի։ Դարձեալ քանզի զհնոց ժամանակաց են բանք մեր, չեդաք 'ի կարգս սոցա և զդպրոցս և զվարդապետս, որ յետ չորեքտասաներորդ դարուն և 'ի սկիզբն հնգետասաներորդին զյիշատակեալն 'ի Թովմայէ Մեծոփեցւոյ զկնի բանիցն զոր ասէ. «Երկու դասատուն կային Սիւնեաց, մին 'ի սուրբ ուխտն Աղրակունեաց», և այլն. և այլուր. «Եկին ամենայն ցրուեալքն և սկիզբն արարին շինութեան. և ծաղկեցան ուսումնականքն 'ի ձեռն խաղաղութեան և ողորմութեան Աստուծոյ մեծապատուան ամ, ամենայն ծովակողմս Բզնունեաց[1]»։

### Գ. Մարզարանք։

Տաղկրթութիւն մարմնոյ 'ի շարժմունս՝ վաղեմի է յոյժ։ Ի սոյն պատճառս նախնիքն հնարեցին զանազան խաղս՝ վարժս խոստանալով առ 'ի մարզել զմարմինս 'ի զինուորական շարժմունս, զորս և նկարագրէ Հոմերոս. որպէս և զէն Հերակլէս և Պեղոպս. իսկ Իփիտոս Թագաւոր Եղիսոյ ըստ օրինակի նոցա նորոգեաց զայն 'ի սահմանեալն զաղիմպիական խաղսն։ Յորմէ ապա փիլիսոփայք և բժիշկք 'ի միտ առեալ թէ որպէս մարդ յաճախիւ մարզս ստանայ ոյժ և առողջութիւն՝ յորդոր եղեն 'ի նոյն, մինչև զկնի նաև

1 Ցուցանէ մտադիր ընթերցողին՝ թէ դպրոցքս այսպիսի այլ և այլ ուսմանց էին կրթարան որ ինչ ծանօթ էր յայնժամ ուսուցչաց. այլ դպրոց մի զորս մանկանց կրթելոյ չէր 'ի նոսա և ոչ մի. որպէս ասացաւ և այլուր։

ուրոյն շինուածք հասարակաց կառուցման վասն այսր՝ անուանեալք Կինօպիշիօն , որպէս թէ միրկամրցարան , միակցելով ընդ այլ դպրոցս սահմանեալս առ 'ի կրթութիւն մանկանց . յայնմհետէ առաւել ծանեան զօգուտ մարզարանացն առ 'ի պէտս կատարելութեան և պահպանութեան առողջութեան մարդոյ :

Սահմանեալն զայսպիսի մարզարանս 'ի պահպանութիւն առողջութեան՝ Երոտիքոսի ասեն գտեալ . զորոյ զկանոնս առեալ էր ասեն Իկքոս յառաջ քան զնա . բայց սակս զննութականին առ Պղատոնիւ յաւուրս Կիւրոսի յաճախեալ էր յոյժ կրթութիւն այս , և օր ըստ օրէ առաւելույր , մինչև ասել Պղուտարքոսի՝ թէ յաւուրս իւր աշխարհ ամենայն անձնատուր էր 'ի նոյն : Իսկ Ստրաբոն ժք . 733 . զՊարսիցն յիշատակելով գրէ վասն մանկանց նոցա 'ի հինգ ամաց մինչև քսան և չորս ամ հասակի մարզիլ միշտ 'ի մարզս զինաշարժութեան և ձիավարութեան , սահմանեալ սակս այսորիկ ուրոյն դաստիարակ և ուսուցիչ :

Եւ յամ ամենայնի 'ի վերայ հաստեալ՝ դիւրաւ իմանամք թէ նաև 'ի մերում աշխարհի գոյին այսպիսի մարզարանք՝ 'ի բանից Խորենացւոյն Գ . 22 . ուր յայտնի ցուցանէ թէ նախարարք մեր զորդիս իւրեանց տային առ նախարար որ քաջ յայսպիսիսն՝ առ 'ի կրթել զնոսա 'ի մարզս գործածութեան զինուց . որով լինէր ածն տեղի՝ մարզարանի նոցա : Զի ասէ անդէն , թէ ամենայն նախարարք յոյժ հաճեցան ընդ Գնել եղբօրորդի Արշակայ թագաւորին մերոյ , վասն այնորիկ զորդիս իւրեանց ետուն նմա . որով յայտ առնէ թէ սովոր էին տալ և այլոց 'ի կրթել , այլ յայնժամ ետուն Գնելայ , զի սիրելի էր նոցա այրն : Իսկ Գնել ընդ առնուլն , ասէ , “մեծապէս հանդերձեաց զարդու և զինու „ զնոսա : Ուր հանդերձեաց ասելով , իմա ոչ լոկ զզգեցուցանելն զնոսա զինու , այլ և զկրթելն 'ի զէնս . զի միայն առ 'ի զգեցուցանել՝ չէր հարկ տալ նմա . և զի ասէ՝ եթէ “ Որոց հաճեալ ընդ նա և սիրեալ , ետուն առ նա զզաւակս իւրեանց „ , յայտ է թէ բազմօրեայ առ նմա լինէին . կամ բազմօրեայ երթային և գային , որպէս հարկ էր առնել առ 'ի կրթիլ : Քաջ ես ցուցանի զարգանալ 'ի բանից նորին Խորենացւոյ թէ կայր սովորութիւն այս և առ մերսն . զի ասէ վասն մերոյն Ա . Արտաշէսի . “Տայ զՏիգրան որդի իւր ցպատանի ածն Վարաժ անուն որդի Դատայ , որ 'ի զաւակէ Գառնկայ որ 'ի Գեղամայ , քանզի էր պատանին նշանաւոր 'ի նետաձգութիւն կորովութե ,

ուսուցանել զՏիգրան. զնա իշխան արքունականացն ա-րարեալ որսոց, և շէնս պարգևեալ նմա առ Հրազդան գետով, յանուն նորա կոչի ազգն Վարաժնունի". Բ. 11 : Որով յայտնի երևի թէ տուն Վարաժայ էր մարզպատուն յուսուցանել զնետաձգութիւն, և յայնմանէ նաև զորսոր-դութիւն :

Ըստ սմին օրինակի մարզպատունս կամ կրթարանս ա-սել՝ են նաև զտեղիս որսոցն կամ զորսարանս՝ յորս գնայ-ին ոչ միայն սակս որսորդութեան, այլ և 'ի սակս կրթութեան 'ի միշտ 'ի շարժման պահել զանձինս, մանաւանդ զմանկունս և զերիտասարդս 'ի զինաշարժութիւնս և 'ի ձիավարութիւնս : Զնոյն իսկ որսորդութիւնս այնչափ յաճա-խեալ յաշխարհի մերում, սակս կրթութեան մարմնոյ համարիմ կարգեալ : Տես սորին զոր ինչ ունիմք գրել վասն որսորդութեան մերոյն :

Դ. Դիւանք :

Ի Խորենացւոյն երկու անուամբք գտանեմք զյիշա-տակութիւն գրեանց. մի 'ի մեհեանս, զոր կոչէ Մեհենական. և միւս ևս յարքունիս, զոր և կոչէ Դիւան. որպէս յա-սելն վասն Աբգարու թագաւորին. "Փոխէ 'ի Նա (յԵդե-սիա) զարքունիս իւր որ 'ի Մծբին . . . և զմատեանս մե-հենիցն վարժարանին. և միանգամայն զդիւանս թագա-ւորաց". Բ. 27 : Սոյնպէս և յերկուս որոշէ 'ի Բ. 38. յա-սելն վասն Հռոմայեցւոց, թէ "Զամենայն դիւանս, զդի-ւանն հարկաց, և զմեհենականն (այսինքն է զդիւանն մե-հենական) որ կայր 'ի Սինոպ պոնտացւոց՝ անդր փոխեն". այսինքն յԵդեսիա :

Դիւան ասելով, որ ըստ եւրոպացւոց է [illegible], իմանայ զդրատունն՝ ուր պահեալ լինէին հաշուէգիրք, վճիռք, թագաւորական թուղթք, դաշնադրութիւնք, և այլն. զոր օրինակ յայտ առնէ 'ի Բ. 33. ուր յետ բերելոյ զթուղթն Աբգարու գրեալ առ Տիբերիոս կայսր, ասէ. "Զայս գր-եալ Աբգարու՝ զհաւասար (զօրինակ) թղթոյն եդ 'ի դի-ւանի իւրում որպէս և զայլսն" : Ըստ այսմ պարտ է ի-մանալ և զոր ասէ Թովմա Արծրունի վասն Համամայ Ար-ծրունւոյ յաւուրս Բ. Արտաշէսի. "Տեղեակ էր դիւա-նական մատենագրութեանցն. զի յաւագութեան ոչինչ գոյր հոգ ինչ զբաղմանց, և ոչ մի ինչ ըստ աշխարհաշէն խնա-

մանկալութեանց, կամ պատերազմասէր աշխատութեանց, բայց միայն 'ի դպրան արքունի մտանել և ելանել ընդ հաւատարիմս թագաւորին, 'ի տունս դիւանաց և գանձուց „. Ծ. 11: Այլ բաց 'ի սոցունց՝ 'ի դիւանսին պահեալ լինէին նաև պատմական գրեանք. որպէս յայտնի առէ. "Ղերուբնայ որդի Ափշադարայ դպրի գրեաց զամենայն գործս՝ որ ինչ յաւուրս Աբգարու և Սանատրկոյ. և եդ 'ի դիւանին յԵդեսիա „. Խորենացի Բ. 36:

Մեհենական կոչեցաւ առ Խորենացւոյն միւս դպրատունն, ոչ զի 'ի նմա պահեալ լինէին մատեանք մեհենական պատմութեանց, կամ իւրեանց սնոտի պաշտամանց դից, զոր կոչեմք Դիցաբանութիւն, յունարէն Միթոլոգիա, այլ սակս 'ի մեհեանս պահեալ լինելոյ գրեանց՝ մանաւանդ յիշատակարանաց և պատմութեանց: Մի՝ զի այն գրեանք իբր սրբազան իմն համարեալք՝ արժանի դատէին 'ի մեհեանս մնալոյ: Եւ երկրորդ՝ սակս ապահովութեան. զի քուրմք նոցա որպէս պահէին զայլ անօթս և զգանձս մեհենին, սոյնպէս և զգրեանսն՝ նոցա յանձնէին պահել որպէս պատուական անօթս: Վասն որոյ զայս կարգ պահեալ տեսանեմք և առ այլ նախնի ազգս, որպէս առ Եգիպտացիս, և առ նոյն իսկ Եբրայեցիս. առ որս քահանայք 'ի տաճարին էին աւանդապահք դիւանաց, օրինաց և պատմութեանց ազգին. և Մովսէս իսկ առ քահանայս էր յանձնեալ զիւր գիրսն: Մանաւանդ թէ նոյն իսկ քահանայից կամ քրմաց հեթանոսաց թուի լինել գործ՝ զանցս ժամանակին իւրեանց և զթագաւորացն 'ի գիր արձանագրել. զորոյ զյիշատակ ինչ գտանեմք հարևանցի իմն նշանակեալ առ նորին Խորենացւոյ, որ վասն գործոց Բ. Արտաշէսի արքայի 'ի վկայութիւն կոչէ զպատմութիւն արարեալ Ողիւպ քրմին. թէպէտ և զգիրսն կոչէ Մեհենական պատմութիւն, ասելով. "Եւ զայս մեզ ստուգապէս պատմէ Ողիւպ քուրմ Հանւոյ, գրող մեհենական պատմութեանց, և զայլ բազում գործս (Արտաշէսի արքայի) զոր ասել կայ մեզ առաջի, որում և Պարսից մատեանքն վկայեն „. Բ. 48: Եթէ մեհենական պատմութիւն լինէր պատմութիւն դից իւրեանց և մեհենից և եթ, ոչ գրեալ լինէին 'ի նմա և գործք Արտաշէսի թագաւորին մերոյ: Զայս առաւել ևս յայտ առնէ նոյն մատենագիր Բ. 66. թէ 'ի մեհենական պատմութեան երկոքին ևս պատմեալ լինէին. այսինքն է՝ թէ վասն մեհենական պաշտամանց, և թէ վասն գործոց թագաւորաց մերոց, զի 'ի գիրն վասն Բարդածանայ՝ասէ.

“Ըմբռնեաւ նա յամուրն յԱնի, և ընթերցեալ զմեհենական պատմութիւն, յորում և զգործս թագաւորացն, յաւելեալ իւր և որ ինչ առ իւրեաւն, և փոխեաց զամենայն 'ի լեզու ասորի. որ և ապա անտի յեղաւ 'ի յոյն բան: Ցուցանէ պատմէ 'ի մեհենիցն պաշտամանց, վերջին Տիգրանայ արքայի Հայոց պատուեալ զգերեզման եղբօրն իւրոյ Մաժանայ քրմապետի„, և այլն. որք են բանք վասն զոհից և տօնից:

Նոյնպէս մեհենական պատմութիւն կոչէ նաև զայն մատեանն՝ ուստի Ափրիկանոս պատմագիրն եհան զպատմութի մերոց թագաւորաց. “Քանզի նա (Ափրիկանոս) բովանդակ փոխադրեաց և որ ինչ 'ի քարտէսս դիւանին Եդեսիայ՝ որ է Ուռհայ, որ յաղագս թագաւորացն մերոց պատմէր. որ մատեանքն 'ի Մծբնայ էին փոխեալ անդր, 'ի Սինոպայ Պոնտոսէ 'ի մեհենական պատմութեանցն„. Բ. 10: Եւ ցուցանէ այսմ լինել սովորութիւն նաև յայլ նախնի ազգս, որպէս 'ի մատեանս թագաւորաց՝ նախնիս և 'ի մատեանս մեհենից գրել զյիշատակ անցից և երևելի գործոց թագաւորացն. “Բայց թէ ընդէր այսոքիկ (գործք քաջութեան Արամայ) 'ի բուն մատեանս թագաւորացն կամ մեհենիցն ոչ յիշատակեցան, մի ոք ընդ այս երկբայացեալ տարակուսեսցի... զի ոչ հարկ ինչ և ոչ պէտք կարևորք էին նոցա՝ զազգաց օտարաց... զգրոյցս նախնականս յիւրեանց թագաւորաց կամ մեհենից մատեանս գրել„. Ա. 14: Զայս յայտ առնէ և Եւսեբիոս 'ի Քրոնիկոնին հատոր Ա. 'ի Թղթ. 199. 'ի բանից Դիոդորի սիկիլիացւոյ [1] բերելով վասն եգիպտացւոց. “Զարոց անուանեցեալն իսկ քուրմքն ունէին զմատեանս 'ի մեհենադիրս, 'ի հնոց ժամանակաց 'ի պայազատաց 'ի պայազատս աւանդեալ„: Եւ 'ի 222. 'ի Յովսեպոսէ բերէ, որ ասէ վասն Մանեթովնի պատմագրի. “Մանեթովն այր եգիպտացի յազգէ, 'ի յունական խրատու վայելեալ որպէս յայտ իսկ է, գրեաց յեղլադական բարբառ զիւր գաւառական պատմութիւն՝ 'ի մեհենական պատմութեանցն, որ-

1 Այս բան Դիոդորոյ գտանի 'ի Ա. հատոր մատենագրութեանն իւրոյ 'ի Թղթահամարն 53. ըստ տպագրութեան Վէսսելինկեայ. առ 'ի Թղթ. 56. վասն շիրմից թագաւորաց Եգիպտոսի վկայէ գրեալ 'ի սրբազան մատեանս քրմից եգիպտացւոց: Եւսեբի մեհենագիր անուանէ Սինեայ զփոխահրդական տասն նոցա, զորս քուրմքն 'ի վեր արկանէին. բայց պատճառս մեհենական պատմութեան կոչելոյ ոչ վասն այսորիկ էր, այլ զոր նշանակագրեցաք 'ի վերոյ. զի և առ այլ ազգս կոչեցան մեհենական պատմութիւնք, առ որս ոչ գոյին խորհրդական տասն այնորիկ:

պէս առի՝ ինքն թարգմանեալ »: Եւ 'ի 380. 'ի խօսելն ըղ-
պատմութենէ հռովմայեցւոց, 'ի մեհենական մատենից ա-
ռեալ գրեցին, ասէ, նախնիքն: Եւ հատ. Ը. թղթ. 226.
« Մակաբայեցւոց գիրքն զՑուդայ թագաւորութեան առ-
ուր հատմարեն. և է ինչ՝ որ ոչ 'ի մեհենական (կամ՝ 'ի սըր-
բազան) մատեանս նոցա կարգեալ գտանի »:

Ի ժամանակս քրիստոնէութեան յայտ է թէ առա և անդ-
յաւէտ յեկեղեցիս և 'ի վանորայս գտանէին գրեանք ինչ
ժողովեալք և պահեալք, առաւել եկեղեցականք. զորոյ
զյիշատակութիւն ինչ 'ի հարևանցի գտանեմք առ Խորե-
նացւոյն Գ. 10. յորժամ վասն գրոց Եւսեբեայ յանձն
առնէ խնդրել և գտանել 'ի Գեղաքունի գաւառին Սիւ-
նեաց. զոր կարծեմ թէ զմեհենատան Սևան կղզւոյն իմա-
նայ, որ էր 'ի Գեղարքունիս: Զայս օրինակ յիշատակութ
և առ Ասողկայ գտանեմք վասն տ. Խաչիկ կաթողիկո-
սին, թէ յետ շինելոյ զկաթուղիկէ եկեղեցին յԱրգի-
նայ քաղաքի, « Այլ և զատուածախօս կտակս, ասէ,
յոլովակի ստացեալ զգիրս սուրբս, զառաքելատեացս, և
զմարգարէաքարոզ պատգամս հանդերձ ամենայն վար-
դապետացն ձայնիւք »: Է. 9: Եւ 'ի վանս Սևանայ կըղ-
զւոյն ցուցանէ լինել հաւաքումն գրեանց յաւելն. « Սպա-
նալով զբազմութիւն գրոց սրբոց »: Է. 3:

Ե. Թագաւորք և իշխանք ուսումնասէրք, և կամ յառաջա-
ցուցիչք ուսմանց և դպրութեանց:

Յամենայն ազգս և յամենայն ժամանակս յայնժամ
յառաջանան դպրութիւնք, յորժամ թագաւորք և կամ
իշխանք լինին յառաջացուցիչք: Այժմ 'ի վերայ հա-
սեալ Գրիգորի մագիստրոսի՝ 'ի խօսելն զհագներդութէ
կամ զերդոց գուսանութէ առ Ցոհաննու եզնկացւոյ 'ի
մեկնութեան քերականին, այսպէս գովէ զիշխանս արքա-
ցւոց, և ուսանէ զդանդաղութիւն մերոցս. « Բոլորն Արա-
բիա սովոր վարին. և թէ ոչ մանկունքն նոցա ստեղծա-
նեն նորագոյնս ինչ և կատարեալս պատկանաւոր շարա-
մանութիւ զչափ և զկշիռ, ոչ նոցա հրամայեն տալ ամու-
սին. և այսպիսի բազմաց գրելով ձառս ներբողականս, և
ոչ յայլ ինչ պարապեն քան եթէ զայնոսիկ յարմարեալ
նկատեն: Եւ բազում խնդիր և պատուասիրութիւն առ
նոսա ցուցանեն թագաւորք և պետք նոցա. որ և ասեն

## ՎԱՂԱՐՇԱԿ Ա

Սորա սէր առ դպրութիւն և առ քաղաքական հմտութիւն յայտ է յանմահ յիշատակաց արժանի գործոյ իւրմէ, որ հետամուտ եղև զի յօրինեսցի պատմագրութիւն ազգին. ընդ որ և այնչափ զուարճանայր՝ մինչև ըստ գրելոյ Խորենացւոյն՝ "Առաջին իւրոյ գանձուն համարելով զնէ յարքունիսն 'ի պահեստի մեծաւ զգուշութբ". ա. 9: Բայց քան զպահեալն առաւել օգտակար գործ համարելի է զոր ասէ զկնի. "Եւ զմասն ինչ 'ի յարձանի հրամայէ դրոշմել"։ Որով յայտ առնէ զսէր նորա ուսուցանելոյ և այլոց։

## ՄԻՀՐԴԱՏ [1]

Միհրդատս այս որ յաւուրս միջին Տիգրանայ՝ եղև երևելի յոյժ որպէս 'ի պատերազմունս՝ նոյնպէս և 'ի դպրութիս. ուսումնական և սիրող ուսումնականաց, լեզուագէտ և օրէնսդիր. "Միհրդատ, ասէ Պլինիոս Է. 24. քսան և երկու ազգաց թագաւոր, նոյնչափ լեզուօք օրէնս ուսոյց, ոչ զոք 'ի կիր արկեալ իւր թարգմանիչ։ Արդիւնաւոր եղև նաև յաշխարհագրութն մասին. զի Ստրաբոն ա. 14. յառաջ բերելով ոյք 'ի թագաւորաց զաշխարհ ծանօթացուցին մեզ իւրեանց արշաւանօք և պատերազմօք, և ոյք զո՛ր կողմն աշխարհիս, զչորեսին յիշէ ածեալ յԵրատոսթենեայ. որք են՝ մեծն Աղեքսանդր, Հռոմայեցիք, Պարթևք և Միհրդատ. "Այլ զորս յախնայս են (ասէ, Տիւրաս գետոյ) մինչև 'ի Մէոտիս ծովակ, և յեզերս ծովու որ 'ի Կողքիս յանգի, Միհրդատ՝ Եւպատոր մականուանեալն ծանօթացոյց, և զօրավարք նորա"։ Սոյնպէս արդիւնաւոր գտաւ նաև 'ի բժշկութեան մասին՝ զորմէ ստորև։

## ԱՐՏԱՇԷՍ Բ

Սա, որպէս գրեցաք 'ի նորոգութն դպրութն՝ քանզի մեծամեծ արուեստից և գիտութեանց, որպէս ասէ Խորենացին, նորոգող և հնարող եղև, որք 'ի վաղուց հետէ խափանեալ կային 'ի Հայաստան, արժանապէս հարկ է

1 Թէ ընդէր զսա 'ի կարգս իշխա- գլուխն Պատմութեան. հատոր Ա. նաւորացն մերոց դասեմք, տես 'ի յերես 383։

զատել 'ի կարգս ուսումնասէր Թագաւորաց ։ Որոյ սէր և փոյթ էր ընդհանուր առ ամենայն ինչ . բայց քանզի յա֊նուանէ սակաւուք յիշատակեալ գտանեմք 'ի գիրս , և մեք փոքր 'ի շատէ ունիմք յիշել սորա 'ի բժշկութեան և 'ի տոմարագիտութեան ։

## ՏՐԴԱՏ

### ԴԱՐ Գ . Դ

Ագաթանգեղոս յԺԲ . խօսելով զփութոյ սորայն Գրի֊գորի՝ յիշէ և զՏրդատ Թագաւոր ասելով . "Եւ այսպէս հանդերձ Թագաւորաւն և ամենայն աշակերտելովքն՝ զամենայն ժամանակս իւրեանց ընթերցուածոց գրոց ծախէին զտիւ և զգիշեր . և նովիմբք ծաղկեալք և շա֊հաւէտեալք , և օրինակ բարեաց ուսումնասէր առընթե֊րակայիցն լինէին ,, ։ Տես և սորև ։

## ՎՌԱՄՇԱՊՈՒՀ

### ԴԱՐ Ե

Արդիւնաւոր գտաւ 'ի գիւտ հայկական տառից . մին զի ինքն եղև առաջին՝ որ լուաւ զդանիէլեան նշանագրոց մինչդեռ 'ի Միջագետս էր , և ինքն ետ զայս լուր առ Սա֊հակ և առ Մեսրոպ ։ Եւ երկրորդ՝ զի Թէպէտ յայնժամ ընդ լսելն 'ի Միջագետս՝ անփոյթ եղև զայնմանէ , որպէս գրէ Խորենացին Գ . 52 . բայց 'ի դառնալն 'ի Հայս՝ յոր֊ժամ ետես զմեծն Սահակ և զՄեսրոպ հոգացեալ վասն գիւտի գրոյն՝ ունկնդիր եղև , ասէ Ղազար 27 . յորդո֊րանաց նոցա , "Որք փութացուցանէին զնա ասելով , Թէ Ձեպեա յաղագս մեծ օգտաբեր աշխարհիս Հայոց գիւ֊տիս այսորիկ 'ի ժամանակս քո , որ շատ աւելի առա֊ւելագոյն բերէ քեզ շահ՝ յիշատակ անմոռաց , և օգուտ երկ֊նաւոր վայելից քան զիշխանութիւն Թագաւորութեան քո . և կամ որպէս յառաջ քան զքեզ նախնիքն քո էին յազ֊գէն արշակունեաց ,, ։ Զայս յորդոր լուեալ Վռամշապուհ արքայ՝ իսկ և իսկ առաքեաց 'ի Միջագետս զՎահրիճ առ Հաբէլ երէց , որ տուեալ էր տեղեկութիւն արքային վասն հնին պակասորդ հայկական տառիցն՝ որք կային առ Դա֊նիէլի եպիսկոպոսի . և զայն ետ բերել 'ի Հայս . "Եւ Թա֊

գաւառին լուեալ (զայս յորդորումն Սահակայ և Մեսրո-
պայ, ասէ անդ Ղազար,) և խնդալից եղեալ եւս փառս
Աստուծոյ, որ՚ի ժամանակս թագաւորութեան նորա զայսպիսի
հոգևոր կենաց փափագ ժառանգեաց յաշխարհիս Հայ-
ոց»։ Այլ երանի թէ ուրախութեան առնս մեծի ընդ յա-
ռաջադիմութիւն ուսմանց՝ նախանձաւորք լինէին և այլք։

## ՍԱՀԱԿ ԱՍՊԵՏ

Որչափ արդիւնաւոր գտաւ մեծն Վաղարշակ հետա-
մուտ լինելովն և տալով յօրինել Մարիբասայ զպատմութիւն
ազգիս, նոյնչափ արդիւնաւոր պարտ է համարել և զայս
Սահակ Բագրատունի, որ ըստ Խորենացւոյն «զազգիս
մերոյ կարգել զպատմութիւն, ճշդիւ զթագաւորացն և զնա-
խարարականաց ազգաց և տոհմից, թէ ով յումմէ, և զինչ
իւրաքանչիւրոք 'ի նոցանէ գործեաց ... 'ի ժամանակէ ան-
կարգ ամբարտակին շինուածոյ մինչև ցայժմ»։ որպէս ասէ
Խորենացին ա. 3։ Զի թէ ոչ լինէր այս պատմութիւն Խո-
րենացւոյն, և ոչ Մարիբասայն հասանէր առ մեզ. Քանզի
պատմագրութիւն Խորենացւոյն է՝ որ կենդանացոյց և 'ի
ձեռն մեր հասոյց զպատմութիւն Մարիբասայ, զյիշատակ
Վաղարշակայ, զկարգ և զգործ մերոց թագաւորաց։ Վասն
որոյ յաչս իմաստնոց այնչափ արժէ այս պատմութիւն Քեր-
թողահօրն՝ որչափ ազգն. որովհետև 'ի նմա բովանդակի
համօրէն ծնունդ և սերունդ և լրումն ազգիս մերոյ. ա-
րով և արդիւնք Սահակայ ասպետի բազմօք առաւելու
յաչս իմաստնոց։ Զի թէ սա ոչ խնդրէր՝ ոչ ումեք փոյթ
լինէր զայնմանէ, և ոչ իսկ Խորենացին ունէր բուռն
հարկանել, մանաւանդ 'ի ծերութեան հասակի անդ։ Յաղագս
որոյ ոչ անպատճառ զարմանայ նոյն ինքն Քերթողահայրն՝
գրելով առ նա ինքն Սահակ. «Բայց ընդ քո յոյժ զար-
մացեալ եմ ընդ միտս ծննդականութիւն, որ յիսկզբանցն
մերոց ազգաց մինչև ցայժմուս միայն գտար զայսպիսւոյ
մեծ իրէ բուռն հարկանել, և մեզ խոյզ խնդրոյս առաջի
արկանել երկար և շահաւոր գործով»։ ա. 3։ Դար-
ձեալ. «Յայտ է ուրեմն, թէ ամենեցուն քան զքեզ
նախադասնիցն ձեռնասունս մեհագոյն, և բարձրագունից ար-
ժանաւոր գովութեանց, և յայսպիսիս պատականաւոր գտնիլ
յարձանագրութիւնս բանից»։ ա. 1։

## ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

### ԴԱՐ Ե • Զ

Համանման գտեալ Սահակայ առաքելոյ. Նա զընդհանուր պատմութիւն ազգին խնդրեալ՝ որ պահպանէր ամենեւին, և սա զպատմութիւն իւրում ժամանակի. զոր և բանիւ Ղազարայ պատմեսցուք. «Արթնամիտ խորհրդականութեան ուշադրեալ այսմ ամենայնի մտաւոր և քաջ այրն Վահան տէրն Մամիկոնէից, զօրավարն Հայոց և մարզպանն... Սա որպէս և այլ ամենայն բարւոյ՝ իրօք հոգացեալ զհայաստան աշխարհի իւրս, առաւել ևս զայս, ՚ի դէպ և պատշաճ համարեցաւ ՚ի մնացեալ տեղւոյ պատմութեան երկրորդ գրոցն աճեցուցանել յառաջ[1], և գրել յայնմհետէ զեղեալս յաշխարհիս Հայոց, բազում զգուշութեամբ գրել և կարգել մի ըստ միոջէ զամենայն զհոգեւորացն զառաքինութիւնս, և զարանց քաջաց զկատարութիւնս». 11։

## ՀԱՄԱԶԱՍՊ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

### ԴԱՐ Է

Յովհաննէս կաթողիկոս յետ գրելոյ զմահ Թէոդորոսի Ռշտունւոյ, ասէ զմանէ. «Իսկ միախոհ ապա լեալ ընդ նախարարացն՝ իշխան ՚ի վերայ հայաստանեայցս կացուցանեն զՀամազասպ Մամիկոնեան, որ էր այր ընթերցասէր, և վարժ ՚ի բոլոր հրահանգս. և զնախնական քաջութեանն պայման միշտ ջանայր լրութեամբ կատարել մրցանաց կրթութեամբ»։ Եղև կուրապաղատ ՚ի Կոստանդինի կայսերէ յաւուրս Գ. Ներսէսի կաթողիկոսի։

## ԱՇՈՏ ՊԱՏՐԻԿ

Յետ մահուանն Գրիգորի՝ Աշոտ այս բագրատունի եղև հրամանատար Հայոց. զորմէ գրէ Ղևոնդ. «Այր երևելի և նախամեծար ՚ի մէջ նախարարացն Հայոց... զգաստ և առաքինասէր... հոգաբարձու ամենայն բա-

[1] Այսինքն է, յաւելուլ զպատմութիւն զկնի Բուզանդայ. զոր ինքն կոչէ երկրորդ պատմագրութիւն ազգին։

ըեգործութեան, փոյթ յուսումնասիրութեան. և զարդարեր զեկեղեցիս վարդապետական արուեստիւք». Գլ. Է: Ասո-ղիկ կոչէ զնա «Այր երևելի ուսումնասէր»:

## ՎԱՀԱՆ ԿԱՄՍԱՐԱԿԱՆ

Որ և Պատրիկ անուանեալ. որոյ ընթերցասէր գոլով պատճառ եղև Գրիգորիսի Արշարունեաց քորեպիսկոպոսի յօրինել զմեկնութիւն ընթերցուածոց. զի 'ի խնդրոյ սորին Վահանայ¹ արար, որպէս գրէ նոյն ինքն Գրիգորիս 'ի կանխաբանութեան մեկնութեան ընթերցուածոցն. «Զհարկ բանիս զոր պահանջեցեր յինէն փութապէս յաղագս աստուածային ընթերցուածոցն, ով կամսարականդ Վահան պատրիկ, հատուցի քեզ... Բայց վասն զի այր ես դու մեծ և ողջախոհ մտօք, պատկեալ ծերութեամբ և իմաստութեամբ իբրև Թագաւոր յԱստուծոյ 'ի ժամանակիս 'ի մէջի մերում, յորդորական հրաման տէրութեանդ քո մշտամտրակեաց զթրաւացի հեղգ երկչոտութիւն մտաց իմոց... Իսկ այժմ վերստին հասելոյ հրամանիս քո ոչ կարացեալ 'ի գլուխ հանել... 'ի նոյն դարձեալ դիմեցի»:

## ՆԵՐՍԷՀ ԿԱՄՍԱՐԱԿԱՆ

Պատրիկ, որդի Նախագրեալ Վահանայ. հետամուտ գոլով գրոց՝ խնդրեաց 'ի վարդապետէ ումեմնէ Շիրակացւոյ Փիլոն անուն՝ թարգմանել 'ի Յունաց զպատմագրութիւն Սոկրատայ:

## ԳԱԳԻԿ ԱՐԾՐՈՒՆԻ

### ԴԱՐ Ժ

Թագաւոր Վասպուրականի. զորմէ գրէ Թովմա Արծրունի Է. 3. Թէ Յուսուփ ոստիկան ընդ տեսանելն զնա զարմացեալ մնաց որպէս ընդ գեղ երեսացն՝ այնպէս և ընդ խորին իմաստութիւն նորա և ընդ բազմահմուտ տեղեկութիւն զոր ունէր զզանազան ազգաց. որ է ասել տեղեակ պատմութեան ազգաց: Ունի և Թուղթ առ Ռոման-

¹ Ասողիկ Բ. 2. 'ի խնդրոյ Ներսէհի կամ Ներսէհի կամսարականի զարգաբեաց, ասէ, Գրիգորիս Արշարունեաց քորեպիսկոպոս զընթերցուածոց մեկնութիւն:

Նոս կայսր և առ պատրիարգն Յունաց 'ի վերայ դաւանու-
թեան Հայոց ։

## ԳՐԻԳՈՐ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ

Որդի Վասակայ . զորմէ Թոմա արծրունի . «Իսկ եղև յելանել նախարարացն Հայոց յերեսաց ամիրային՝ մնայ առ նմա միայն Մուշեղ Մոկաց իշխեցողն, այր քաջայայտ և բարձրագահ . և ընդ նմա Գրիգոր որդի Վասակայ . և սա նմանապէս ... իմաստութեամբ առլցեալ խոյակայ և ա-նուանի 'ի մէջ հայկականաց , և ցանկալի լսողաց , և ու-րախարար տեսողաց ։ Սա առաւելեալ յամենայն հոգա-ծութիւն , 'ի գիտս իմաստութեան , ուսումնասիրութեան , և յայլն ամենայնի քան զհարս և զհաւս իւր » . Դ. Յ ։ Իսկ Մատթէոս գրէ . «Գրիգոր պահլաւունին որդին Վա-սակայ՝ էր անպարտելի շնորհօք լցեալ . և զարմանալի էր սա յամենայն պատասխանիս ընդդէմ Հոռոմոց . այր քա-ջակիրթ , և ամենայն հմտութեանց հետևեալ . և բովան-դակ հասեալ սորա 'ի վերայ հին և նոր կտակարանացն Աստուծոյ ։ Եւ սա ընդ իմաստասէրսն նստէր 'ի յամբիոնն 'ի մէջ որդւոյն Սոփէի , և խօսէր ընդ վարդապետացն Հո-ռոմոց . և 'ի կարգի վարդապետացն էր սա յազգս Հայ-ոց » . ՃԻԲ ։

## ՎԱՀՐԱՄ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ

### ԴԱՐ ԺԱ

Որդի նախընթացին՝ նահապետական , և հօրեղբայր Գրիգորի մագիստրոսի . զոր ինքն Մագիստրոս ներբողելով գրէ 'ի պատասխանին որ առ Յոհաննէս արքեպիսկոպոս Սիւնեաց , թէ գրաւածք կամ ողջունագիրք նորա 'ի մեծի համարի էին յոյժ . «Զգիր գեղեցիկ տառի քո (ասէ , առ Վահրամ նահապետականն խօսելով ,) մարգարէական մա-տենից համեմատեալ համբուրէին , և հայցէին այնմ ա-ժանանալ միայն . և այս յաշխարհին քաղդէացւոց և Մարաց և Պարթևաց » . վասն որոյ կոչէ զՎահրամ «Քա-ջահանճար և ուշեղ , իմաստուն և խոհեմ » ։

### ԳԱԳԻԿ Ա

Շահնշահ անուանեալ. զորմէ ասէ Լաստիվերտցի. «Յայնմ ժամանակի էր և Հայոց աշխարհին թագաւոր Գագիկ որդի Աշոտոյ (ողորմածի), եղբայր Սմբատայ, (որ է Ժ. Սմբատ թագաւոր,) և Գուրգենայ, 'ի ցեղէն բագրատունւոյ, այր հզօր և յաղթօղ 'ի պատերազմի: Սա 'ի խաղաղութեան կալաւ զաշխարհս Հայոց. 'ի սորա ժամանակս պայծառացան կարգք եկեղեցւոյ, և լուսաւորեցան մանկունք ուխտի սրբութեան. 'ի սորա աւուրս լցաւ երկիր գիտութեամբ տեառն » . Ժ:

### ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ

Նշանաւոր եղաւ յոյժ քան զնախագրեալսն գրաւորական աշխատութեամբ. զորմէ Լաստիվերտցի Ժ. «Այր իմաստուն էր և խելամուտ յոյժ աստուածայինն գրոց, որպէս ոչ այլ ոք » գտանէր նմա հաւասար: Այր բազմահմուտ և մեծահանճար յաջողեալ 'ի պէսպէս ուսմունս. զի քերականութեան եղև ծաղկեցուցիչ, ատենաւոր չափմանց սկզբ-նաւորիչ, և իւրով բազմաթիւ թարգմանութեամբ բազմաց գիտութեանց սերմանիչ: Միայն թէ առ Յոյնս ուսեալ գոլով պակասի առ նմա ընտիր հայկաբանութիւն և յստակութիւն ոճոյ բացատրութեան: Նորին այսպէս ծաղկեալ գոլով զանազան դպրութեամբ և գրականութեամբ, նաև այլոց ուսուցիչ լեալ երևի, զի յիշատակին աշակերտք նորա Բարսեղ և Եղիակ:

### ԳԱԳԻԿ Բ

Սա և եղև վերջին թագաւոր Բագրատունեաց, ուսումնասէր և յոյժ տեղեակ գրոց. զորմէ գրէ Սամուէլ 'ի նշղ. թուին. « Սա՝ զի 'ի մանկութենէ զպրութիւն գրոց վարժեալ էր, 'ի նմանէ զբօսնոյր և 'ի ծերութեան աւուրս ». զոր և երկրորդէ Կիրակոս: Այլ Մատթէոս 'ի թուին ձիա. այսպէս նկարագրէ. «Այր հզօր էր յիմաստասիրական ջոկմն, և անյաղթ 'ի պատերազմի (վիճմանց). զի նա 'ի սուրբ Սոփի 'ի յամբիոնն նստէր ընդ ամենայն վարդապետսն Հոռոմոց »: Եւ զկնի գրէ. «Եւ այսպէս խօսեցաւ Գագիկ արքայ Հայոց դէմ յանդիման թագաւորին Տուկ-ծին, և 'ի մէջ ամենայն հաւատոր վարդապետաց ասմն

Յունաց 'ի քաղաքն Կոստանդնուպօլիս. և յոյժ հաճեալ Թագաւորն Տուկիծ և ամենայն իմաստասէրքն որ նստէ-
լին 'ի ճեմարանին, և հիանային ընդ կորովուն բանիցն,,։ Ի Թիւն ճիէ. Նման սմին գրէ և վասն Գագկայ արքային կարսացոյ. և Թուի Թէ շփոթեալ իցէ զսա ընդ նմա ։

## ԹՈՐՈՍ Բ

### ԴԱՐ ԺԲ

Պարոն Կիլիկիոյ, գովելի գտեալ 'ի բազում իրս. բայց Վահրամ գովէ զնա նաև 'ի գրաւորական մասին մեծաւ ներբողիւ, ասելով 'ի Թիւն մՂ.

«Աստուածային գըրով վարժեալ,
Եւ յիմաստից արուեստ մտեալ.
Ամեն հոգի սա ընկալեալ,
Մարգարէի հաւասարեալ.
Որոյ դժուար բանքս լուծեալ,
Որ գրտանի այժըմ գըրեալ,,։

## ՋԱԼԱԼ

### ԴԱՐ ԺԳ

Զորմէ Կիրակոս. «Զոգան (Թաթարք) և 'ի վերայ բարեպաշտ իշխանին Հասանայ, զոր Ջալալն կոչէին. քեռ-
որդի էր սա մեծամեծ իշխանացն Զաքարէի և Իւանէի. այր բարեպաշտ և աստուածասէր... յոյժ քահանայասէր և ուսումնասէր և ընթերցօղ աստուածային կտակարա-
նացն ... և ընթերցասիրութիւն խոկայր զպատուիրանս տեառն 'ի տուէ և 'ի գիշերի,,։ Նահատակեցաւ 'ի 1261։

## ԼԵՒՈՆ

Որդի ա̅. Հեթմոյ. որ 'ի կարգս իշխանաց Կիլիկիոյ է Լևոն երրորդ. իսկ 'ի կարգս Թագաւորաց նորա՝ երկրորդ. զորմէ գրէ Վահրամ 'ի Թիւն ռ.

«Վարդապետաց տուն յարմարեալ,
Զուսումնականսն յոյժ պատուեալ.

Եւ առանձին պարզէ տուեալ,
Զոր վարդապետն էր ծանուցեալ „։

Վարդապետաց տուն ասելով իմանայ զՄեծ Քարն զորմէ ասէ ’ի կարգս դպրոցաց յերես 91։ Իսկ Մինաս Համթեցին գրէ ’ի Թղթ. 50. վասն սորին Լեւոնի. “Սա գրասէր կոչեցաւ՝ հաստատեալ դպրոցս և դպրատունս. տառացաւ գրաւորկս. յաղթեաց հանճարոյն Արապին, Քրդին, Թուրքմանին և Մորցուն, և յաւել ուխտ սիրոյ ընդ Թաթարս։ Ի պարտէզս ’ի ծաղկոցս զբօսնեալ, ընթերցմամբ գրոց շատանայր „։

ՀԵԹՈՒՄ Բ

Որդի նախագրեալ Լեւոնի, որ ըստ գրասէր բարուցն նաև զայս Հեթում զորդի իւր ’ի սէր գրոց վարժեաց. զորմէ գրէ Վահրամ ’ի Թիւն ոձ.

“Որ և երկս որդիս ծընեալ,
Նախ ըզՀեթում անդրանկացեալ.
Զայն որ յիմաստ գըրոց կրթեալ,
Եւ ’ի մարտից գործըս վարժեալ„։

Այլ զսորա զովութիւն ’ի բերանոյ Յոհաննու Երզնկացւոյ արժան է լսել, որ ’ի յիշատակարանի մեկնութեան քերականին կոչէ “Վարժ աստուածային գրոց որբոց. և պատուօղ ուսումնականաց և գիտուն հմտականաց. բարեպաշտ առ ամենեսին և խնամածու. յորմէ և ես նուաստ Յոհաննէս Երզնկայեցի բազում խնամ սիրոյ և առատութիւն գթոյ վայելեցի։ Եւ զի յոյժ գրասէր և ուսումնասէր ունէր բարս բարեմիտ թագաւորն, որ և ’ի զաման ժամանակիս յորում աշխարհ ամենայն իբրև զծով անդնդական խորովք խռովեալ և ամբոխեալ ծփէր... Իսկ բարեսէր թագաւորն Հեթում իբրև զաստղ նշանաւոր լուսանշոյլ փայլէր, և զաղքատութիւն եկեղեցւոյ մօր զարդարեալ ծածկէր, և ոչ դադարէր ’ի գիրս ստանալոյ, և յեկեղեցւոյ զանձս յաւելլուն տանելոյ։ Վասն որոյ և ես նուաստ Յոհաննէս Երզնկայեցի բիւր բարեաց պարտականս՝ խոհեմամիտ և իմաստութեան պատուօղ արքայի ընծայեցի զփոքր զայս գրքուկ, որ կոչի Քերական „։ Զայսչափ զովութիւն արժանաւորեալ ’ի սորա սրտէ գրէ Երզնկացին ըզՆմանէ. զի յայնմ ժամանակի յազգի մերում բոլորովին բարձեալ էր և այն ուսումնականաց ուսումնասիրութիւն,

որչափ մինչ հնացեալ կայր յառաջինսն ։ Որպէս նաև մինչ 'ի նմին նախադրութեան քերականին 'ի վեր հանէ փոքր 'ի շատէ այսպէս ասելով. «Յոյժ սրտաբեկեալ խոցիմ յորժամ տեսանեմ զազգս մեր անփոյթ արարեալ զիմաստասիրական ուսմանց և զհմտութեան արհեստից քանակա-նաց. մինչ զի զհանգամանս ստուգանց իմաստասիրացն գրոց անտեղեակ գոլով (ոչ իմանամ), զորս յայտնեալ են հարքն մեր 'ի գիրս իւրեանց զոր ընթեռնումք ։ Զոր այժմ երկարութեան համարիմ յիշել զանուանսն, և կամ զպատ-ճառ հեղգութեան ազգիս »։ Թող զի և նախ քան զնա այսպէս գրէ Շնորհալին 'ի պատասխանին առաջին Թըղ-թոյն Մանուէլի. «Ո՛ւր մեր վարժարանք 'ի Թագաւորական պատրաստեալ հրամանաց, և կամ յոյս փառաց և պար-գևաց յառաջացելոցն յիմաստս. որ մանաւանդ մանկա-բարոյիցն են առաւելագունի պատճառ փութոյ կրթութեան »։

Զ. Եկեղեցական ուսումնասէրք, և նոյն յառաջադիմութիւնք ուսմանց և դպրութեանց ։

ՍՈՒՐԲՆ ԳՐԻԳՈՐ

ԴԱՐ Դ

Սորա գոլով լուսաւորիչ և հիմնադիր քրիստոնէական դպրութեանց, փոյթ մեծ եղև նմա դպրոցս սահմանել, որ-պէս գրեցաք 'ի վերոյ, ուր բանք եղեն յաղագս դպրոցաց ։

ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ

Իսկ իւրում աշխարհաշէն եռանդեանն որպէս զայլ հասարակաց կենցաղօգուտ շինուածս՝ նոյնպէս և դպրոցս կառոյց. զորմէ խօսեցաք յառաջն ։

ՍՈՒՐԲ ՄԵՍՐՈՊ

ԴԱՐ Ե

Ոչ ոք հաւասար զտառս սորին փութոյ և եռանդեան 'ի ծաղկեցուցանել զդպրութիւն, ոչ յառաջ և ոչ յետոյ ։ Վախ-ճան նորա էր սփռել զհոգևորական ուսումն և զծանօ-

թուն սուրբ գրոց, զոր հետահետեալ թարգմանեալքն. «Ընդ այն ժամանակս, ասէ Խորենացին, եկեալ Մեսրոպայ և ըն-կալեալ զնշանագիր մերոյ լեզուիս. և հրամանաւ Վռամշապ-հոյ և մեծին Սահակայ ժողովեալ մանկունս ընտրեալս, ուշեղս և քաղցրաձայնս, փափկաձայնս և երկարոգիս, և դպրոցս կարգեաց յամենայն գաւառս, և ուսոյց զնոսա կողմանս բաժնոյն Պարսից». Է. 54։ Թէ քանի առաւել էր փոյթ Մեսրոպայ 'ի յառաջացուցանել զդպրութիւն զոր սկսաւ հիմնել՝ երևի յայնմանէ, զի յետ հաստատելոյ դպրոցս յամենայն կողմանս Հայոց մեծաց՝ և դասաւորելոյ, «Այսպէս դարձեալ ելանէր, ասէ Կորիւն, շրջէր զաւեղեօք կարգելեօք, և զգաւառօքն աշակերտելովք աշխարհին Հայոց, զուարթացուցանել, նորոգել, հաստատել»։ Այս չեղև բաւական փութոյ եռանդեան նորա, այլ «խորհուրդ առնէր, ասէ, այնուհետև վասն կէս ազգին Հայոց, որ էր ընդ իշխանութեամբ Թագաւորին Յունաց», որ էր փոքր Հայք և մասն ինչ մեծին Հայոց. ուր Յոյնք ոչ թոյլ տային ուսանելոյ զհայերէն դպրութիւն, այլ միայն զյունականն. Յայս սակս յանձն առ զաշխատութիւն ճանապարհ առնե-լոյ մինչև 'ի Բիւզանդիոն. և երևեալ առաջի Ատտիկոսի պատրիարգին և Թէոդոսի կայսեր՝ էառ 'ի նոցանէ գիր հրամանի. «Ցուցեալ կայսերն զպիտոյից զհանգամանս, և առեալ զանընդդիմակաց հրամանն հանդերձ սակերօք կայսերագիր նշանակելովք՝ վասն մանկտւոյն յաշակեր-տութիւն, առ 'ի կէս ազգին Հայոց ժողովելոյ»։ Սովին հրամանագրով դարձ արարեալ Մեսրոպ 'ի Բիւզանդիոյ՝ եկն երևեցաւ առաջի սպարապետին որ կարգեալ էր 'ի վերայ փոքուն Հայոց. իսկ սպարապետին, ասէ, «առեալ սակերս կայսերական նշանօք՝ փութայր վաղվաղակի զհրա-մանն կատարել. և հրեշտակս արձակեալ այնուհետև 'ի գաւառս կէս ազգին Հայոց յիշխանութեան կայսեր, բազ-մութիւն մանկտւոյ ժողովել, և նոցին ռոճիկս կարգել 'ի պատեհագոյն տեղիս. յոր և երանելւոյն զվարդապետութիւն իւր 'ի գործ արկեալ, և ժողովելոցն քաղցրացուցանէր»։

Բազմադիմի են առաքինութիւնք առնս այսորիկ և աս-տուածահաճոյ ժրաջան վաստակք նորա 'ի գիւտ հայկա-կան տառիցն, 'ի փոյթ շինութեան դպրոցաց, 'ի սէր աշա-կերտելոյ զմանկունս և յեռանդն առհասարակ ամենայն ուրեք ծաւալելոյ զաստուածային գրոցն զվարդապետութիւն անխոնջ տաժանմամբ անընկճելի հոգւով կացեալ անաս-տան ընդդէմ ամենայն վշտաց որ ընդ առաջ ելին նմա

յայլ և այլ ճանապարհորդութիւնս իւր. և չէին ինչ զար-
մանք, զի և մասն Աստուծոյ էր որ գործէր 'ի նմա։ Յա-
ւել 'ի վերայ և զայլ բնական ձիրս նորա զոր Կորիւն հա-
րևանցի իմն նշանակեաց 'ի վերայ՝ քաղցրացուցանէր ամե-
լով. բայց Խորենացին առաւել բացայայտէ յասելն. «Քան-
զի ոչ որպէս արուեստ ուսուցանէր, այլ իբրև զհոգի առա-
քելաբար աշակերտելոցն տայր»։ Եւ այլ ձիրք էին նորա
յինքն յանկուցանելոյ զսիրտս այլոց. որով միանգամ երև-
ելոյն յանդիման կայսեր՝ այնպէս իմն հաւանեցոյց զսիրտ
նորա, զի ոչ միայն թոյլ ետ ուսուցանել մանկանց, այլ և
զծախս նոցա յարքունուստ կարգել[1]. նմին իրի ըստ ա-
սելոյ Խորենացւոյն՝ «Անյապաղաբար սկսեալ ուսու-
ցանել երագապէս վարդապետեցին զկողմն արևմտեայն
որպէս զարևելեայն». Գ. 58։ Արժան է կոչել զնա և առ
այլ ամենայն բարիս յօժարամիտ. զի ոչ միայն զհայաստան,
այլ նաև զշրջակայ ազգս զՎիրս և զԱղուանս ուսուցանել
փափագելով նոցա ևս գիր հնարեաց, և դպրոցս սահմա-
նեաց. ուստի նաև 'ի սահմանս այնց իշխանաց՝ որք թէ-
պէտ 'ի հայաստան էին՝ այլ իբր զատուցեալ իմն էին առ
'ի մէնջ, որք են Գուգարման և Տաշիր։ Բայց մեծ փոյթ
Մեսրոպայ որպէս և Սահակայ՝ եղև առաւել 'ի հայաս-
տան ծաղկեցուցանել. զի յետ դառնալոյ Մեսրոպայ 'ի
Վրաց և յԱղուանից, ասէ Կորիւն, «Յետ այնորիկ ուշ
եդեալ երկոցունց երանելեացն զիւրեանց ազգին զդպրու-
թիւն առաւել յարգել և դիւրացուցանել, ձեռն 'ի գործ
արկանէր 'ի թարգմանել և 'ի գրել մեծն Սահակ ըստ
յառաջագոյն սովորութեան»։

## ՄԵԾՆ ՍԱՀԱԿ

Պատմագիրք ուրեք ուրեք և զսա ևս կացուցանեն հիմ-
նադիր դպրոցաց. զոր օրինակ և Շնորհալին 'ի վէպան զեր-
կոցունց միանգամայն գրէ.

[1] Զի զոր Թէոդոս կայսր առ Խորե-
նացւոյն Գ. 57. գրէ՝ «Դարմանք և
ծախք յարքունուստ եղիցին», չէ
արդար իմանալ վասն Սահակայ կաթո-
ղիկոսի՝ ըստ որում խօսի անդէն, այլ
վասն ուսանողաց։ Այսպէս իմանայ
նաև Յոհաննէս կաթողիկոս, որ գրէ
վասն Թէոդոսի կայսեր. «Հրամայէ
փութով ուսանել, և զծախս դպրո-
ցացն յարքունուստ լինել»։ Նոյն-
պէս և Կիրակոս՝ յասելն վասն կայ-
սեր. «Հրաման ետ յիշխանութեան
իւրում ժողովել մանկունս ուսում-
ներս, ուսանել զգիրս. և դարմանք և
ծախք յարքունուստ կարգեաց»։

«Մանուկս ուշիմըս ժողովեալ,
Նոր դպրութեամբ այնու վարժեալ»։

Բայց զայս պարտ է իմանալ վասն Հրամանին նորուն, որպէս և ծանուցանէ Խորենացին. զի ամենայն ինչ Հրամանաւ Սահակայ լինէր, այլ գործադրութիւն և աշխատութիւն առաւելապէս 'ի ձեռն Մեսրոպայ վճարէր։ Արդիւնք մեծին Սահակայ 'ի դպրութեան մասին՝ եղև առաւել զբաւոր թարգմանութիւնն նորին, զորմէ տես առ Խորենացւոյն Գ. 54. մանաւանդ 'ի թարգմանել զսուրբ գիրս, զորմէ տես առ Ղազարայ 30 և 31. ուր պատմէ թէ ամենեքին զիարդ «տարակուսեալք կային յանհնարութեն գրոց սրբոց. քանզի ոչ գոյին գիրք և ոչ Հայերէն լեզուն սուրբ կտակարանք եկեղեցւոյ»։ Եւ թէ որպէս սուրբն Մեսրոպ և աւագ քահանայք և նախարարք և թագաւորն խնդրէին աղաչէին զսուրբն Սահակ բուռն հարկանել 'ի թարգմանութիւն կտակարանաց 'ի յոյն լեզուէ 'ի Հայ բարբառ. քանզի ոչ ոք հաւասարէր հմտութեան սորայն Սահակայ։ Նոյնպէս արդիւնաւոր գտաւ փոյթ մեծ ունելով 'ի մուծանել զուսումն. զոր ցուցանէ նաև յերկրորդ Ճառի ժողովական թղթոյ իւրոյ. ուր հրամայէ քահանայից մի լինել տգէտս, և ընդմանկունս իւրեանց տալ յուսումն։

## ԱՆԱՆԻԱ

Աշակերտ սրբոյն Մեսրոպայ. զորմէ գրէ Ստեփաննոս օրբելեան. «Ի վաղուց հետէ ոչ գոյր տեսուչ և ուսուցիչ այսմ աշխարհիս (Սիւնեաց) յաւերմանէն Անդոկայ մինչև ցտէրութիւն Վասակայ իշխանի. իսկ 'ի Հայրապետութեան Հայոց մեծին Սահակայ մինչև կրկին նորոգէր զՀայաստանեայս .... ձեռնադրեաց և զԱնանիա աշակերտ Մեսրոպայ թարգմանիչ և լի ամենայն առաքինութեամբ յեպիսկոպոսութիւն Սիւնեաց ... Իսկ 'ի բանալ դպրութեանս Հայոց վերին պարգևօքն 'ի ձեռն սրբոյն Սահակայ և Մեսրոպայ՝ եդ (Անանիա) դպրատունս աշխարհին Սիւնեաց. և կարգեաց 'ի վերայ զաշակերտակիցն իւր զԲենիամին. և փութապէս զամենեսեան ուսոյց Հայերէն դպրութ՟, և արար գիտողս աստուածային կտակարանաց». ԺԶ։

## ԳԻՒՏ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Զորմէ Ղազար այսպէս պատմէ 191. «Այր լի գի-տութեամբ հայոյս և առաւելեալ յունին, յորդառատ բանիւ և առատաբուղխ վարդապետութեամբ՝ զոր ոչ երբէք արգելոյր անգիտութիւն տկարութիւն, այլ զծածուկս ասացեալ հոգւոյն. նոյն սուրբ հոգւոյն շնորհ յայտ արարեալ նովաւ լուսա-ւորապէս ուսուցանէր բովանդակ ժողովրդոց. որոյ բանք իւր նման յորդառատ անձրևի՝ զամենայն լսողի ծաղկե-ցուցեալ պտղաբերէր զոգիս»: Ուսեալ էր յաշխարհին Հոռոմոց, որպէս ինքն իսկ ասէ առաջի դրան Պարսից ընդդէմ ամբաստանողին իւրոյ. «Այլ որ ասենդ՝ թէ երթեալ եք նորա 'ի Հոռոմս, ոչ ըստ դորա կարծեաց և խօ-սիցն այդպէս են իրքն, քանզի սուտ է. այլ վասն զի ըղ-դպրութեան գիտութեանս մերոյ և զիմաստ բանաւոր ուսմանց յաշխարհին Հոռոմոց ուսեալ եմ. և են իմ անդ ծանօթք բազում և ուսուցանողք». 197:

## ՄԱԹՈՒՍԱՂԱՅ

### ԴԱՐ Է

Վերթող անուանեալ. որ եղև ծաղկեցուցիչ դպրութեց 'ի Սիւնիս, և կարգեցաւ գլուխ վարդապետաց 'ի վար-ժարանին Սիւնեաց: Սա, որպէս և յառաջ քան զսա Պետ-րոս քերթող աշակերտ Խորենացւոյն, բաց յայլոց դըպ-րութեց ուսուցանէին նաև զարուեստ քերթողութե ուսեալ 'ի քերթողահօրէն Մովսիսէ. վասն որոյ և ընկալան զա-նուանս Քերթող[1]:

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ՍԻՒՆԵՑԻ

### ԴԱՐ Ը

Զսմանէ ասէ Ստեփաննոս Օրբելեան լա. «Դասատու յամբիոնին բաբունական (որ 'ի Սիւնիսն էր), և մեկնէր աստուածային գիրս աշակերտելոցն 'ի վարժարանին»:

1 Զորոյ զպատմութիւն և զայլ և այլ գործս: Իսկ վասն Մաթուսաղայի տես տեղեկութիւն տես 'ի յառաջաբանի և 'ի մեծ Հայոց 239:
Վերջին հատորոյ Դպրապատում

## ԳՐԻԳՈՐ ՎԿԱՅԱՍԷՐ

### ԴԱՐ ԺԱ

Արդիւնք սորա և ճանապարհորդութիւնք առատ և անոգ յայցելութիւն և յուսումն հօտին իւրոյ՝ ստիպեն զմեզ և զսա յիշել ընդ ծաղկեցուցիչս դպրութեանց[1], թէպէտ պատմագիրք միայն զգրաւորական զաշխատութիւնս նորա յիշեն. յորս և Մատթէոս 'ի Թուին ՃԺԸ. գրէ. «Սա լուսաւորեաց զհայաստան աշխարհս բազում և ազգի ազգի մեկնութեամբք. որ և ամենայն ազգաց թարգմանութիւնս արարեալ և լցեալ առհասարակ զեկեղեցի Աստուծոյ ամենայն աստուածային կտակարանօք»։

## ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏ

### ԴԱՐ ԺԲ

Սոյն ճոխացեալ և բանիբուն, քաջ վարժեալ 'ի դպրութեան, ստացեալ ունէր և բազում աշակերտս։

## ՄԽԻԹԱՐ ԳՈՇ

Զնմանէ գրէ Կիրակոս. «Բազումք էին որք աշակերտեցան 'ի նմանէ վարդապետական բանին, քանզի համբաւ իմաստութեան նորա հռչակեցաւ ընդ ամենայն տեղիս, և գային առ նա յամենայն կողմանց. քանզի էր սա անուանի իւրոյ մխիթարէր զամենեսին..... բանք նորա արդիւնականք և լի շնորհօք... վասն այսպիսի համբաւոյ բազումք որք էին 'ի կարգի վարդապետաց՝ ծածկէին զինքեանս, և գային 'ի կարգի աշակերտաց կալով. ուսանէին 'ի նմանէ, և առնուին վերստին հրաման։ Եւ բազումք յաշակերտաց նորա հասին 'ի պատիւ վարդապետական»։

1 Չէ 'ի կարգին զուսումնականն ազգային և եթ կարգակալ ևմք յեկեղեցականաց, որոց և ուսուցիչ գոլով ազգաց՝ պատճառք եղեն ծաղկելոյ դպրութեանց։ Նմին իրի որք գրաւորական երկասիրութեամբ և եթ փայլեցան՝ մանաւանդ 'ի հինգերորդ և 'ի վեցերորդ դարու, որք և զաւակին առաջ մասնաւորաց ուսմանց, զանց առնեմք զնոցայ։

## ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ

### ԴԱՐ ԺԳ

Աշակերտ յաշակերտաց Մխիթարայ Գօշի. զորմէ ասէ Կիրակոս. «Վարդապետական բանիւք քան զամենայն որ 'ի ժամանակին էին գերազանցեալ. ծննդական մտօք և յարմար բանիւք. վասն որոյ բազումք դեգերէին առ նա ուսման աղագաւ, ոչ միայն վարդապետական բանիւ, այլ և ամենայն կեանք նորա և շարժումն անդէր օրէնք էին տեսողաց: Եւ զայս ոչ եթէ ականջալուր միայն ասեմ, այլ և ականատես. զի բազում ժամանակս կացաք առ նմա 'ի վարժս կրթութեան 'ի սահմանս Տաւուշ բերդոյ... և աղբիւրաբար արբուցանէր զբանս վարդապետական»: Եւ զկնի ասէ. «Բազումք գային առ նա և ուսանէին բանս վարդապետական 'ի նմանէ... անդ էաք մեք 'ի վարժս կրթութեան գրոց սրբոց»:

## ԳՐԻԳՈՐԻՍ ՎԱՐԴԱՊԵՏ

Յետ մեռանելոյ Վանական վարդապետին՝ սա եղև յաջորդ նորա 'ի գպրուէ մասին. զորմէ ասէ Կիրակոս. «Եւ կալաւ զառաջնորդութիւն վանիցն եղբօրորդի նորա Պօղոս քահանայ, և զվարդապետական ուսումն Գրիգորիս վարդապետ՝ նորին աշակերտ և ազգական. և այս եղև ՜Չ. թուին»:

## Ա. ԿՈՍՏԱՆԴԻՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Փոյթ մեծ կալաւ սա 'ի յառաջադիմութիւն ուսման 'ի ժողովին զոր արար, զայս դնելով երրորդ կանոն ըստ գրելոյ Կիրակոսի. «Առաջին գործ եպիսկոպոսին՝ որ զուսուցիչս և զուսումնականս յուսումն եկեղեցւոյ՝ ինքն սահմանեսցէ մեծաւ հոգաբարձութեամբ... և գիտունք ուսուցիչք, և ուսումնականք ուսուցիչք լինիցին տղայոցն»: Իսկ 'ի տասներորդ կանոնն ասէ. «Դասատուացք բազմաց վկայութեամբ լիցին, որ լինին գիտունք, և ամենայն գրոց վարժք և տեղեակք և փորձ ամենայնիւ»:

## Ա. ՅԱԿՈԲ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Գրիմանական ձայնեալ․ որոյ և աշակերտս առաջնեալ՝ զՅոհան Երզնկացին կացոյց դասատու քերականութեան․ որպէս և յիշէ նա ինքն Երզնկացի 'ի նախադրութեան մեկնութեան քերականին․ "Եւ եղաք յերկիրն Հայոց 'ի Կիլիկէ ․․ առ կաթողիկոսն Հայոց տէր Յակոբ․․ հմուտ և գրոց բանից իմաստնոց աննախանձաբար սիրողն և պատուօղն ուսումնասիրաց, որ և հայր մեր հոգևոր, հրամայեաց մեզ առնել զքերականին դասս իւրոց աշակերտացս․ և ախորժելի և հաւանական եղև․ վասն որոյ խնդրեաց 'ի մէնջ պարզութիւն առնել մեկնութեան նորին„:

Յիշատակութեան Թաթարաց Մաղաքիայի նաև վասն Վարդանայ և Կիրակոսի և այլոց աշակերտացն Վանականն վարդապետի գրի աշակերտս առաջնեալ, որք էին 'ի սմին երեքտասաներորդ դարու, ասելով․ "Նոյնպէս և զոմեն աշակերտքն իւր Վարդան և Կիրակոս, Առաքեալն և Յովսէփ, խաչանման բաժանեալ զաշխարհն արևելից՝ լուսաւորեցին կենարար վարդապետութեամբ հոգւոյն սրբոյ․ այլ և բազում որդիս 'ի փառս ածին, ձրի բաշխելով զանիրական զխաչանիշ զդաւանութիւն, նմանեալ փառաւոր վարդապետին իւրեանց„: Որպէս և վասն այլոց ոմանց պատմի 'ի սմին դարու աշակերտս առաջնեալ․ զոր օրինակ վասն Յոհաննու Երզնկացւոյ, որ աշակերտս գոլով Վարդանայ՝ ինքն ևս ուսուցիչ եղև այլոց, որպէս պատմեցաք 'ի վերոյ, և յիշեցաք նաև 'ի գրեւլն զդպրոցէ սուրբ Մխիթարին: Եւ վասն Ներսէսի մշեցւոյ, որոյ երբեակ աշակերտք յանուանէ յիշատակին: Իսկ առ Թովմայի Մեծոփեցւոյ 'ի թուին պղ․ որ է ամ տեառն 1441․ 'ի ժողովն որ վասն ձեռնադրելոյ զԿիրակոս կաթողիկոս, յիշատակի "Յոհաննէս վարժապետն և ուսուցիչ 'ի սուրբ ուխտէն Հերմոնի վանից„: Որպէս և Սարգիս և Վարդան և այլ բազում վարժապետք 'ի չորեքտասան և 'ի հնգետասաներորդ դարու, զորոց իբր զյեանաւոգունեց ոմանց զանուց առնեմք:

### Է․ Կանոնք ուսումնականք:

Յայսմ վայրի կամիմք նշանակել և զկանոնս ուսումնականս, և կամ փութաջանս յուսուցանել այլոց,

զորս դասք յիշատակեալ 'ի գիրս ։ Ղազար 'ի Թղթ . 191 . 'ի պատմելն զհալածանս ժամանակի Վարդանանց , յիշէ զփոյթ պնդութեան կանանց նահատակեալ իշխանացն , թէ զիարդ փոյթ տանէին յանձն նեղութեան ժամանակի ուսուցանել տղայոց , մինչդեռ ինքեանք եւս ծփեալ ալէկոծէին 'ի նեղութիւն . « Եւ զմնացեալ , ասէ , դեռ եւս 'ի տղայութեան հասակի զորդիս նահատակելոցն՝ ընդ որբոյն Վարդանայ՝ որք 'ի նոյն տոհմէ Մամիկոնէիցն էին , և կամ որք 'ի տոհմէ կամսարականացն , և կամ յայլ ազգաց . կանայք նահատակելոցն արանց և կապելոց 'ի դրանն՝ թէպէտ և 'ի նեղութեան էին , սակայն ուսուցեալ և բազում հոգաբարձութեամբ ուսուցանել տուեալ և խրատեալ , ոչ իբրև զանփոյթ և զանպիտան կանայս , այլ իբրև զքաջայրս զառաջիկայ զօրաւորբ շքեղաբար հրահանգս մանկանցն հոգացեալ լինէին ։ Եւ մանաւանդ կին նահատակին Համայեկայ Մամիկոնէի՝ եղբօր որբոյն Վարդանայ , որ եղև կին անուանի , և առաւելեալ ամենայն լաւ և մաքուր մտօք յամենայն կանանց 'ի հայաստան աշխարհիս . որ մնաց և խրատեաց զորդիսն իւր յաշխարհին Վրաց 'ի տան Աշուշայի Վրաց բդեշխի . զորս բդեշխն Վրաց Աշուշայ խնդրեաց պարգեւս 'ի յարքայէն Պարսից Յազկերտէ ըստ առաջադրելոցն կարգի . և ածեալ ետ ցմայր իւրեանց , որում անուն էր Ձուիկ . վասն զի զքոյրն Ձուկայ ունէր 'ի կնութեան բդեշխն Վրաց Աշուշայ , որում անուն էր Անուշ Վռամ ։ Եւ մնացեալ անդ մանկունքն և սնեալ , յառաջադէմք էին յամենայնի և հռչակաւորք . որք մինչ դեռ եւս 'ի տիս մանկութեան էին՝ ամենայն տեսանօղ մարդոց երեւէին աջողակք և զարմանալիք . որում անունն էր առաջնոյն Վահան , և երկրորդին Վասակ , և երրորդին Արտաշէս » ։ Որով ըստ այսմ բանի Ղազարայ մնոյն զարմանալի ձիրս և զգնացս Վահանայ 'ի բարոյական մասին և 'ի կենցաղագիտութեան զորոց ուրեք ուրեք յիշատակեալ եմք , պարտ է տալ սոյն այս կրթութեան կանանց՝ զոր 'ի մանկական դեռաբոյս հասակի անդ եսուն , և ուսուցին նմա զամենայն հրահանգս քրիստոնէի և տան բարեպաշտի ։ Կարդասցուք արդ զկանայս յանուանէ յիշատակեալս ։

## ՍԱՀԱԿԱԴՈՒԽՏ

Քոյր Ստեփաննոսի սիւնեցւոյն , որ սահմանեաց զկարգ երաժշտութեան յութերորդ դարուն . զորմէ գրէ Ստեփաննոս

բարդ. խառնակիչք եղեն և զանազան հալածմունք 'ի պատճառս կրօնի զի 'ի հինգերորդ դարուն Պարսիկք ոչ թոյլ տային ումեք զյունականն ուսանել զդպրութիւն. վասն որոյ և մեծն Սահակ յետ գիւտի գրոյն՝ յասորւոյն սկսաւ թարգմանել. “Ի բաժանել զաշխարհս Հայոց, ասէ Խորենացին Գ. 54. չտային պարսիկ վերակացուքն յոյն ուսանել դպրութիւն ումեք յիւրեանց մասինն, այլ ասորի„: Իսկ Յոյնք ոչ տային թոյլ յիւրեանց բաժնին ուսանել դպրութիւն հայկական, բայց միայն զյունականն. որպէս գրէ մեծն Սահակ առ Թէոդոս կայսր՝ առ Խորենացւոյն Գ. 57. “Այնչափ ատեցեալ եղեւ, մինչև փոխանագիրս անգամ ոչ ընկալան„: Յետ բազում աղաչանաց հազիւ եղև այս հրաման 'ի կայսերէ: Իսկ երրորդ պատճառ եղեն գրեանք կորուսեալք, զորմէ փոքր 'ի շատէ գրեսցուք յառաջիկայդ:

## ԳՐԵԱՆՔ ԿՈՐՈՒՍԵԱԼՔ

Քերթողահայր մեր թէպէտ ողբայ զպակաս յօժարութիւն ազգին մերոյ առ դպրութիւն, բայց և 'ի Ա. 3. յիշատակէ անբաւ զրուցաց մատեանս լինել 'ի մեզ յոյն և պարսիկ գրովք 'ի մասին դատաստանաբանի. զոր օրինակ են մատեանք ժառանգութեց, տիրակալութեց գիւղից և գաւառաց, և մանաւանդ մատեանք վասն տոհմի նախարարաց, և մատեանք դաշանց թագաւորաց: Քանզի գտանէին, ասէ, գիր Պարսից և Յունաց, “որովք այժմ գիւղից և գաւառաց, եւս և իւրաքանչիւր տանց առանձնականութեց, և հանուրց հակառակութեց և դաշանց, այժմ առ մեզ գտանին անբաւ զրուցաց մատեանք. մանաւանդ որ 'ի սեփհական ազատութեանն պայազատութիւն„: Այլ որչափ և տակաւին համարեսցուք զգրեանս առ 'ի պէտս դպրութեց և պատմութեց յօրինեալս, սակայն յոյժ առաւել բազմութիւն գտանի կորուսիչք գրեանց թէ առ մեզ՝ և թէ առ օտար ազգս գրելոց, յորս գտանէին յիշատակարանք վասն ազգին մերոյ:

Յառաջին ժամանակս ըստ Մարիբասայ՝ Կատինայ եղև մի 'ի նոցանէ՝ որք առ նախանձու ետուն այրել զգրեանս. “Հրամայէ (ասէ, առ Խորենացւոյ Ա. 14. Կատինա) զբազում մատեանս և զգրոյցս առաջնոցն՝ ըստ տեղեաց տեղեաց և ոյր ուրուք գործոց քաղդութե այրել„: Նոյն որս այրեալ կործէ և զպատմութիւն քաղդութեց մերոյն Արամայ: Իսկ 'ի ժամանակս քրիստոնէութե նախ քան զգիւտ գրոյն

յարեաւ 'ի մեզ ուրացեալն Մերուժան, որ յայլմէ պատ-
ճառէ գրգռեալ պարսիկ զօրօք արշաւեալ յաշխարհ
մեր, զամենայն գիրս զոր եգիտ՝ 'ի հուր ծախեաց, որք էին
գրեանք մերոյ ազգին յայնչափ ժամանակաց հետէ յաճա-
խեալք. "Եւ զորս միանգամ գիրս գտանէր, ասէ Խորե-
նացին Գ. 36. այրէր. և հրամանս տայր մի ուսանել զգրչու-
թիւնն յունարէն, այլ պարսիկ. և մի ոք իշխեսցէ յոյն
խօսել կամ թարգմանել. այսպիսի ինչ պատճառաւ, զի
ամենեւին մի լիցի Հայոց ընդ Յունաց ծանօթութիւն և հա-
ղորդութիւն սիրոյ, այլ Ճշմարիտ՝ խափանել զքրիստոնէու-
թեան ուսումն„: Եւ զայս այնչափ՝ զի զամենայն յունականս
գիրս բնաջինջ արար յաշխարհէս. որպէս վկայէ 'ի Գ.
54: Մեսրոպ 'ի գաւառին, ասէ, 'ի Հայս՝ "գտանէ զմեծն
Սահակ թարգմանութեան պարապեալ յասորւոյն՝ յոչ
լինելոյ յունի, քանզի նախ 'ի Մերուժանայ այրեալ լի-
նէին ընդ հանուր աշխարհիս յոյն գիրք„:

Օկնի այսորիկ համապատասխանեալ հինահարութիւնք 'ի
ժամանակս արշաւանաց զանազան թշնամեաց՝ յայտ առ-
նեն ընդ այլոց ընչից և բազում գրեանց մերոց կորուսեալ.
որպէս և յիշատակութիւնք ինչ զորս ուրեք ուրեք ընթեռ-
նումք առ պատմագիրս մեր՝ յայտնի տան մեզ իմանա-
սիրել: Զոր օրինակ և առ Ստեփաննոսի օրպէլեան կմ.
պատմին՝ յամենայն վանորէից 'ի Բաղաբերդն անդ կու-
տեալ ամբարեալ առ ահի թշնամեաց սուրբ ոսկրքն և
գրեանք սակս ամրութեան բերդին. ուրանօր միայն թիւ
կտակարանաց աւելի եղեն քան զտասն հազարաց. բայց
'ի ռժթ. թուին պատրանօք առեալ խամայելացւոց զԲա-
ղաբերդն, գրեանք որ 'ի նմա և ոսկրք, ասէ, "առ հա-
սարակ գերի վարեցան, և ցան և ցիր եղեն ընդ երեսս
աշխարհի„: Յաւուրս Լէնկթէմուրին 'ի Սմըրղանդ վա-
րեալ առեն զբազմութ գրեանց: Իսկ իբր 'ի ռծե. թուին,
առ Աւագել պատմագրի 'ի Թղթ. 79. յիշատակի 'ի Յոհա-
նավանիցն 'ի դարանի գտեալ աւազակաց բազում ինչս,
"և գրեանք որք էին ամենեքեան պատուական գրեանք
վարդապետականք„ յաւարի առեալ: Իսկ վասն կորուսեալ
գրեանց յայլն Սանահնի՝ տես 'ի Նոր Հայաստան 'ի
թղթահամարն 279:

## ՅՕԴՈՒԱԾ Դ

### Ուսմունք յանուանէ յիշատակելեայք :

ՅՈՐԺԱՄ յաղագս ուսմանց նախնեաց նահապետաց բանք եղեն ՚ի վեր անդր՝ զգլխաւոր ուսումն նոցա՝ ասացաք լինել ՚ի վերայ ընթացից արևու և ժամանակի, նաև ՚ի վերայ բժշկութեան, ընդ որս պարտ է իմանալ և զաստեղեկութիւն բնութեան բուսոց: Այս ուսմունք նախնի դարուց թէ զինչ փոփոխութիւն ընկալան ՚ի Հայս, ուր սկզբնաւորեալ եղեն, մերթերօք մնացին ինչ, կամ թէ նորոգեցան երբէք, և յա-րում ժամանակի, քանզի ցանկալի է հնախօսաց գիտել զայս ամենայն, յառաջ բերցուք առաւանօք որչափ ինչ նշա-նակեալ գտանեմք ՚ի գիրս. որովհետև դժուարին է ըն-թերցողաց ՚ի միում վայրի ամփոփ գտանել: Այլ նախ քան զայսոսիկ յիշեցուք և զորս փիլիսոփայ անուամբ կոչեն մերքն, որով մարթ էր նոցա պէսպէս գիտութիւնս իմանալ:

### Ա. Փիլիսոփայութիւն :

#### ՏՐԴԱՏ

“ Յունական աշխարհական դպրութեանն՝ երկրաւոր իմաստութեանն՝ յառաջագոյն էր տեղեակ, առաւել փիլի-սոփայական մասանց համաճարպագիտութեան. զի ուսեալ էր զայս ”. Ագաթանգեղոս Ճձե :

#### ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ

“ Փիլիսոփայական արուեստիւն խնայր արկանէր հա-նապազ զամենայն զուր բացեալ զբերանս հերետիկոսացն . . . նա զանձն կարի ՚ի խոնարհութեան ունէր և անարժան համարէր. թէպէտ և ամենայն որ վասն գիտութեան ա-րուեստին կարօտ էր առ նա գայր. մանաւանդ արտաքինքն իսկ ճարտարապետք փիլիսոփայիցն առ նա ընթանային վասն իւրեանց արուեստին ”. Բուզանդ Դ. 7 :

## ՄԵԾՆ ՍԱՀԱԿ

"Յոյժ առլցեալ անսուցանէր վարժիւք զգաստացեալ գիտնովք Յունաց . . . եւ առաւել տեղեկացեալ փիլիսոփայական արուեստիցն ցուցանիւք ,, . Ղազար 3ա :

## ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹ

Կիրակոս՝ գրեաց , ասէ , "Դաւիթ փիլիսոփայ զգիրսն Սահմանաց եւ զէակաց , եւ զմեկնութիւն Արիստոտէլի , եւ Ներածութեանց Պորփիւրի ,, : Այլա գրէ . Գիւտ կաթողիկոս "խնդրեաց 'ի Դաւթէ փիլիսոփայէ զԲարձրացուցէքն ,, :

## ՅՈՀԱՆՆԷՍ Դ

Կաթողիկոս 'ի սկիզբն ութերորդ դարու , 'ի մէջ բազում կաթողիկոսաց մի միայն համբաւեալն յամենեցունց , որպէս յարդեանց գրոց իւրոց , Իմաստասէր անուամբ , որ է ասել փիլիսոփայ : Որպէս եւ Ասողիկ Է . 22 յայտնի կոչէ զնա ասելով . "Յովհաննէս փիլիսոփայն ,, :

## ՍՏԵՓԱՆՆՈՍ

Դրան երէց ձայնեալ 'ի Սամուէլէ 'ի Թուին միբ . որ է ամ տեառն 773 . "Յայսմ ժամանակի էր Ստեփաննոս դրան երէց , որ բանիբուն ճանաչէր . հաս 'ի կատարումն ամենայն իմաստասիրական եւ գրամատիկոս արհեստից ,, :

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ՍԻՒՆԵՑԻ

Սամուէլ 'ի միբ . Թուին յետ յիշելոյ զնախադրեալ զՍտեփաննոս դրան երէց , այլս 'ի կարգս վարդապետաց եւ զնա յիշեալ , ասէ . "Մեծ իմաստասէրն Ստեփաննոս Սիւնեցին , աշակերտ Մովսէսի ,, : Զորմէ գրէ եւ Ստեփաննոս Օրբելեան լա . "Ուսեալ անդ ('ի Բիւզանդիոն) զգիր եւ զլեզու հելլէն եւ լատին ազգին , վարժէր զնոյն եւ զերեւելի 'ի գիրս եւ յարհեստս նոցա ըստ փիլիսոփայական ոճոյն ,, :

## ՍՈՂՈՄՈՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Սա նստաւ 'ի կաթողիկոսութե յամին 791. «Սա... բազում առաքինաջան երկոց զանձն տուեալ 'ի մեծ ուխտն Մաքենոցաց. այլ և վարժեալ ևս էր 'ի փիլիսոփայական արուեստս». որպէս ասէ Յոհաննէս կաթողիկոս։

## ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ

Ի բազում խորագիրս գրուածոց իւրոց կոչի փիլիսոփայ՝ վասն բազմահմուտ տեղեկութեց իւրոց։ Իսկ Ասողիկ բազմաց տայ զայս անուն. զի 'ի Գ. 6. զԴանիէլ ասորին կոչէ փիլիսոփայ. առ որում գտան նախնի նշանագիրք։ Ի Գ. 2. կոչէ «զԳրիգորիս փիլիսոփայ քորեպիսկոպոս Արշարունեաց»։ Ի Գ. 7. զԱնանիա Նարեկացին անուանէ փիլիսոփայ. յոր անուն 'ի դէպ էր և զԱնանիա Շիրակացին կոչել։ Սոյնպէս փիլիսոփայ կոչէ յումպետս և զԴաւիթ բագրևանդացին, և զՔրիստափոր կաթողիկոս։

## Բ. Բժշկութիւն։

Վասնզի 'ի սկզբան անդ յաւուրս նախնի նահապետաց մոգութիւն 'ի Հայաստան սկզբնաւորեալ եղև, որպէս գրեցաք 'ի վերդ անդր, յայտնի է թէ և այս գիտութի և արուեստ բժշկութե 'ի Հայաստան գտաւ սկզբնաւորեալ. զի ընդ մոգութե անուանք իմանային յայնժամ և զբժըշկութիւն։ Այլ աստանօր յառաջ բերցուք և զբանս նախնեաց՝ որք յանուանէ խօսելով զբժշկութենէ՝ զսկզբնաւորութի նորա 'ի Հայաստան լինել յայտ առնեն։ Հրեայք է՛ զի զԱստուած, և է զի զԱդամ դնեն լինել գտիչ բժըշկութե. որով ըստ սոցա տեղի սկզբնաւորութե լինի 'ի Հայաստան. քանզի Ադամ կամ բնակէր 'ի դրախտին՝ որ էր 'ի Հայս, և կամ յետ արտաքս ելանելոյն՝ բնակէր յանդիման դրախտին, ուստի տեսանէր զդրախտն. որով նոյնպէս բնակութի նորա լինի 'ի Հայս։ Համաձայն Հրէից նաև հեթանոսք առհասարակ զաստուածս հաւատային լինել հնարիչս արուեստի բժշկութե. յոր վասն գրէ Կիկերոն վասն այսր արուեստի նուիրեալ լինել առ գիւտ աստուածոց. կամելով ասել՝ թէ սրբազան իմն էր համարեալ.

այնու զի 'ի ձեռն աստուածոց գտաւ ։ Եւ Պլինիոս իէ . 1 . զովելով զնախնեաց ճարտարութեն 'ի գիտաս դեղօրէից , զարմանայ թէ քանի ազգս ազգս խոտոց գտին 'ի դեղ մարդոյ . և առ զարմանալեացն' աստուածայնոց ասէ լինել զայս գիւտ և ոչ մարդկայնոց ։ Ցոյն հեթանոսք զգիւտ այսարինկ ընծայէին որդւոցն աստուածոց , կամ նոցին մերձաւոր ազգականաց ումանց' որք ուսեալ էին 'ի նոցունց ։ Այս ամենայն ցուցանեն զհնութիւն գիւտի բժշկութե յառաջին ժամանակս անդ նախահարեաց լեալ , յորում ժամանակի զնախահարսն մի մի աստուածս համարեցան յետագայքը ։ Իսկ ընտանութիք նախնի նախահարեացն' յայտ է թէ էին 'ի Հայաստան ։

Այլ թողեալ զդիւցաբանութիւնս , նաև զնոցին իսկ զընտանութիս զաւանեալք լինել 'ի Հայաստան , զորս յանուանէ յիշատակեն հեթանոսք իբրև զհեղինակս բժշկութե ։ Զի բազումք 'ի նախնեաց զգիւտ բժշկութե ընծայեն Հերմեայ կամ Մերքուրիոսի Տրիսմեգիստոսի . զոր եգիպտացիքն կոչեն Դաւդաւմ (Թօդ) . այլ զսա հնագիտք ասեն լինել Քանանու որդի Քամայ . որոց երկոցունց ևս նախնին ընտանութի էր 'ի Հայաստան ։ Եւքիդոս զգիւտ բժշկութե ընծայէ Պրոմեթեւսի . իսկ թէ ո էր սա , և զիարդ ընտանութի նորա եղև կամ 'ի Հայս և կամ 'ի շրջակայս , գրեցաք 'ի սկիզբն այսր գրոց ։ Բայց հաւատալի և ընդունելի կարծիք ամենեցուն' է Դիոդորայ սիկիլիացւոյն և Մանեթոնի [1] , որք զԻսիս ասեն գտիչ բժշկութե զդուստր Սատուռնոսի' այսինքն է Նոյի , որ եղև կատարեալ հմուտ բժշկութե , և բազում դեղօրէից հնարօղ . վասն որոյ ասէ Դիոդորոս վասն հեթանոսաց' զանուն Իսիսայ 'ի կարգըս աստուածոց դասեալ' զնորայն օգնութի խնդրէին ամենայն հիւանդք [2] ։ Արդ այս Իսիս , որպէս ցուցաք 'ի վերոյ , է Աստղիկ դուստր Նոյի , զոր և մերքն զկնի պաշտէին , որպէս ունիմք գրել 'ի գլուխն Կրօնի . նաև զնախատ նորան խնդրէին 'ի պէտս բժշկութե . զոր յայտնի ցուցանէ գործ ն . Արտաշէսին մերոյ . զի յորժամ անկեալ պարտէզ դեղօրէից բուսոց , զորմէ ստորև , առ ընթեր տաճարի կամ բագնի Աստղկան դից անկեալ ։ Ցայտնապէ բանից

1 Մանեթոն 'ի նախապատրաստութե թե Եւսեբեայ . գիրք Է ։

2 Զորմէ կարես տեսանել առ նորին Դիոդորոյ սիկիլիացւոյ Ճախաւոյն գրեալ վասն այսր . հատոր ա . Թղթ . 29 . ըստ տպագրութե Վէսսելինկայ ։

և 'ի նշանաց զորս հին յիշատակարանք ցուցանեն՝ յայտնի
է իմաստասիրել թէ Աստղիկ քոյրն Մեհրայ և Յաբեթի
և Քամայ առաւել խնամով քան զայլս զհետ եղև բժըշ-
կութեան, ուսեալ 'ի հօրէն իւրմէ 'ի Նոյէ և յեղբարց իւ-
րոց. որք, որպէս ես կարծեմ, բազում ինչ գիտէին ու-
սեալ կամ լուեալ 'ի նախահարեացն եղելոց յառաջ քան
զՋրհեղեղն. մանաւանդ ունելով 'ի հայաստան այնչափ
առատութիւն զանազան խոտոց, զորոց զզօրութեան տե-
ղեկութիւն քաջ գիտելով յայնժամ և ինքն Աստղիկ՝
կարէր քաջ յառաջադէմ լինել 'ի բժշկութեան, որպէս
ցուցանեն նաև յիշատակարանք: Տես զոր ինչ գրեցաք 'ի
վերայ վասն Խոփայ կամ Աստղկան, յերես 59: Այլ կամե-
լով միաբանել և զարտաքնոց պատմութիւն՝ պարտ է ասել վասն
Աստղկան զկնի ելեալ գնացեալ 'ի հայաստան աշխարհէ
յեգիպտոս. և անդանօր ևս ուսուցեալ զբժշկութի, մանա-
ւանդ որդւոյ իւրում անուանելոյ Հորոս կամ Ապողոն.
յորմէ բանաստեղծք Յունաց զԱպողոն համբաւեցին լի-
նել աստուած բժշկութե:

Բայց արուեստս այս բժշկութե քանզի կարևոր գտանի
է մարդոյ՝ պարտ է ասել թէ մնացեալ իցէ 'ի հայաստան
և ոչ վերջացեալ ընդ մեկնիլ անտի Աստղկանն, մինչև
տիրել նաև 'ի շրջակայս նորա. որպէս և 'ի հին յիշա-
տակարանս գտանեմք զքաղդէացիս լեալ ճարտարս 'ի
բժշկութե 'ի նախնի ժամանակս. զորս 'ի դէպ իսկ հա-
մարիմ իմանալ նախ վասն վերին Քաղդէայց՝ որք են խաղ-
տիք, և ապա վասն միւս քաղդէացւոց՝ որք են բաբիլոնա-
ցիք. զի ճշմարիտ պատմութիւն ուսուցանէ զկնի բնակութե
հայաստանեայց՝ 'ի շրջակայ սահմանս աշխարհիս մերոյ
բնակութի կալեալ մարդկան, որպէս նախնի Քաղդիք,
որք և կոչին կողքիսացիք, յորոց առաջնոց ուսմանէն
ապա զհետ եկեալ և Մեդեայ կնոջն երևելւոյն 'ի մոգու-
թե մանաւանդ թէ 'ի բժշկութե՝ յայտ առնեն հաւաստաւոր
անցք Արգոնաւորդաց: Զորոյ զգործս մոգութեան կամ
հմայութե, զորս պատմեն բանաստեղծք Յունաց, բժշկութե
գործ լինել մեկնեն քաջ հնագիրք. զի զոր ասեն զնմանէ
մանկացուցանել զծերացեալս՝ էին ասեն դեղորայք Մե-
դեայ 'ի սևացուցանել զհերս ծերոց, զոր մինչև ցայնժամ
ոչ գիտէին Յոյնք: Իսկ եփել յամանի զկենդանի մարդ՝
զոր նոյնպէս առասպելէին զնմանէ, էր նստուցանել 'ի ջեր-
մաջուր, կամ 'ի բաղանիս մուծանել, որ բազում ցաւոց
տայր առողջութի, նոյնպէս անծանօթ Յունաց մինչև ցայն-

ժամ [1]: Ի Մեդիայ աստի, որ զարկղ դեղորէից ընդ իւր շրջեցուցանէր, իմանամք զարուեստ բժշկութեանն մնացեալ յառաջնոց անտի մինչև ցայնժամ 'ի Խաղտիս. այս են առաւել կարեւմք առել մնացեալ և ունեալ 'ի Հայաստան. ուրանօր ծաղկեալ կինեն յայս ատենն և գործադրութիւք ուրեք ուրեք յիշատակեալ ք 'ի գիրս մեր, թեպէտ և չէր այնչափ խնչ փոյթ մերոց նշանագրել զայս պիտոյս. մանաւանդ զի բաց 'ի յունականէ աւանդութիւ յորդւոց յորդիս հասանելոյ առ յետագայս մերոց՝ նոյն իսկ և առատութի՛ն ազգի ազգի բուսոց և բանջարաց օգտակարաց 'ի դեղորայս՝ որք լի են 'ի Հայաստան՝ ինքնին ծաղկեցուցանէին անդանօր զայս գիտութի՛ն հարկաւոր: Ցոյց ասկս 'ի դէպ է մտադրութե՛ ընթեռնուլ զոր գրէ Ղազար 'ի Թղթ. 19. ուր միայն զԱյրարատ նահանգէն խօսելով յիշէ զնորա բոյս առողջարարս, և զճարտար բժիշկս այնր ժամանակին՝ որք ապեղանիս կազմեալ 'ի բուսոց անտի եթէ վասն ապեաց և եթէ առ 'ի տալ յորբուա, երագառողջացուցանէին զամենայն ախտս և ցաւս. "Անդ դտանէին, ասէ, և ազգի ազգի արմատք բուսոց 'ի պէտս օգտակարութե՛ դեղոց, ըստ ճարտարագէտ ճանաչողութե՛ ստուգահմուտ բժշկացն յօրինուածոց, երագահաս անտահալած ապեղանիք. և կամ արբմամբ յերկարելոցն 'ի ցաւս՝ պատահացուցանեն առողջութե՛ ":

Բնաղագրութե՛ հիւթոյ բուսոցս այսոցիկ էր՝ որ եռահնարել զթիւրակէս դեղթափ այնչափ վաղեմի և անուանի, գիւտ մեծին Միհրդատայ քեռաւոն մերոյն միջնոյ Տիգրանայ արքայի, որ և մինչև ցայժմ յանուն նորա Միհրդատեան անուանի. կամ թէ ասել գիւտ ճարտար բժշկաց միհրդատեան ժամանակի: Նոյն բազմութի՛ զանազան տեսակաց բուսոց և ծաղկանցն էր՝ որք եռաւն անկել մերոյն Արտաշէսի երկրորդի զայն պարտէզ կամ բուրաստան, զոր համարիմ իբր առաջին 'ի կարգի այսպիսի պարտիզաց կամ ծաղկոցաց՝ կարգեալ 'ի պէտս դեղորէից 'ի գիւրութե՛ բժշկաց, Փլոռա ճայնեալ յայժմեան բուսաբանից. զորմէ գրէ Թոմա արծրունի ա. 11. "Շուրջ զամրոցաւն (Արտամետ քաղաքի որ 'ի Տոսպ գաւառի Վասպուրականի, պատրաստեալ) անկախիտս բուրաստանս ծաղկաւէտս անուշահոտս 'ի զանազան ծաղկանց, ոչ մի-

1 Տես զՄէտէս 'ի բառաքարանին էջ. նուր պատմութե՛ գրեալ 'ի Կլարոյ: Տես և 'ի նկարծութե՛ ընդհա. այ.

այն 'ի տեսիլ խողովակաց աչաց և 'ի զուարճութիւն հոտոտելեաց, այլ և 'ի կազմութիւն դեղոց բժշկական հնարագիւտ իմաստասիրութեց կազմեալ Ասկղեպեայ վարժմամբն »։

Մնացորդ ճարտարութե նախնի բժշկաց հայաստանեայց համարիմք և զարդեաց զարմանալի բժշկութիս 'ի հայաստան յորդւոց յորդիս աւանդելով, պարզ դեղօրէիւք բուսականօք բուժեալ զախտս հնացեալս, զորս այլուր դժուարանան բժշկել, առընթեր ունելով պարտէզս բնականս ճոխացեալս բիւրազգի առողջարար բուժիչ բուսովք 'ի զանազան տեղիս, և յաւէտ 'ի վերայ Հաշտեանց լերանց՝ որք են լերինք Պինկէօլին. և գերագոյն ունելով ճանաչողութի բնութե իւրաքանչիւր բուսոց, անշուշտ 'ի նախնեաց ածանցեալ առ նոսա։ Զորոյ և զփորձ յայժմու ժամանակս էառ նաև բանակ Փասքևիչ զօրավարին Ռուսաց 'ի բժշկութի պէսպէս ցաւոց իւրոց զօրաց, մանաւանդ ճճեացն անուանելոց Տանս պուտնա. յորմէ բժշկեաց բժիշկ տեղւոյն զսիրելի հազարապետն Նորին. զոր ոչ ոք յեւրոպեան բժշկաց կարացեալ էր բժշկել. և այս բժշկութի եղև հիւթով մի միայն խոտոյ հայաստանեան աշխարհիս։ Այսպիսի քաջ հմտութի բժշկութե հայաստանեայց էր՝ որ նախ 'ի հայաստան եւս հնարել զգիւտ պատուաստելոյ զպատրուակըն ծաղկի անուանեալ հիւանդութե, և անտի առեալ այլուր. զորմէ գրեալ է մեր 'ի Տարեգրութեան, և 'ի Դարապատում գիրս։

Իսկ գրելոցս մինչև ցայս վայր յայտնի եղև առաջին բժիշկ հայաստանեայց՝ նոյն և համօրէն աշխարհիս լեալ Ասողիկ կամ Խոխս. զորմէ դարձեալ ունիմք գրել 'ի գըլուխն Կրօնի. որոյ ուսուցիչ լեալ յաշխարհիս 'ի ճանաչողութի բուսոց դեղօրէից՝ առեալ հնապազորդեալ մնաց նոյն ուսումն 'ի Հայս, որոյ և մնացորդ համարիմ զայն հմտութի և քաջ ճարտարութի զոր տեսանեմք և յայսմ ժամանակի յաւէտ 'ի կանայս հայաստանեան աշխարհիս, որք բաղադրութե հիւթոյ զանազան բուսոցն բժշկեն նաև զանբուժելի կարծեցեալ ցաւս։ Այլ յետ յիշելոյ զառաջինն բժիշկ աշխարհիս մերում, 'ի դէպ համարիմ յիշել աստանօր և զայլ ոմն համբաւեալ 'ի հին ժամանակս 'ի բժշկութե, և ապա զայլս ոմանս։

## ՄԻՀՐԴԱՏ[1]

Մեծ է գովութիւն առնու նա և ՚ի մասին բժշկութեան ՚ի գիրս Յունաց և Հռովմայեցւոց ։ Այն ինչ Պոմպէոսի յաղթեալ Միհրդատայ՝ և մտեալ յարքունիս նորա՝ տայր յուզել զարկեղսն, եգիտ մատեանս գրեալ ՚ի զանազան լեզու. և զայլ գրուած Յաղագս կողմնեաց ջաւոց. այս գրուած ՚ի հնութիւն համարեալ եղև իբր գանձարան գաղտնեաց անգիւտ դեղոց բժշկութեան ։ Պոմպէոս Լենէոս անչափ գովութիւն խօսի զգրուածոց գտելոց յարքունիս Միհրդատայ՝ մինչև ասել՝ եթէ յաղթութիւն Հռովմայեցւոց ՚ի վերայ Միհրդատայ եղև օգտակար Հռովմայեցւոց ոչ միայն առնս ընդարձակելոյ զսահմանս իւրեանց, այլ և վասն օգտին զոր ունէին յաղագս բժշկութեան ։ Այս գովեստ ցուցանէ յայտնի բազում տեղեկութիւն ունել Միհրդատայ ՚ի նախնեաց և ՚ի շրջակայ բժշկաց ժամանակին. որպէս և Պլինիոս լէ. 10. յայտնի յիշէ զոմն մատենագիր Զաքարիաս բաբիլոնացի՝ գրեալ գիրս առ Թագաւորն Միհրդատ զբժշկականս իրաց. և Ասկլիպիադէս զերկուս բժիշկս յիշէ յարքունիս Միհրդատայ զՏիմոթէոս և զՏրիփոն ։ Արդ՝ որ ՚ի զանազան տեղեաց բժիշկս տայր բերել, ՚ի զանազան բժշկաց խորհուրդ և գիր առնոյր, զիարդ մոռանայր և զանց առնէր զբժշկօք դրակից աշխարհիս հայաստանեայց, ուրանօր բազում երթևեկս առնէր, և տեսանէր անչափ առատութիւն ազգի ազգի խոտոց, որոց նման ոչ ՚ի Կողքիս և ոչ ՚ի Պոնտոս գտանէր. ուր և տեսանէր զնոյն խոտս ՚ի բազում բաղադրութիւնս դեղորէից ՚ի վար արկեալ ՚ի բժշկաց հայաստանեայց, ընդ որս և բազում անգամ կենակցէր ։ Ձեռագիր նորին Միհրդատայ յաղագս դեղորէից՝ յիշատակէ և Պլինիոս իե. 15 ։

Նշանաւոր է և դեղթափն իւր Թերիակէս՝ յանուն նորա Միհրդատեան յորջորջեալ. զորոյ և զձեռագիր նորին իսկ Միհրդատայ ՚ի պէտս բաղադրութեան նոյն դեղթափին եգիտ Պոմպէոս յարքունիս նորա, որպէս յիշէ Պլինիոս իգ. 8. այլ Սերենոս Սամմոնիքոս՝ որ հռչակաւոր բժիշկ էր յաւուրս Կարակալլայ կայսեր, գրէ ՚ի գլուխն ծ. թէ ընդ գտանելն Պոմպէոսի զայն ձեռագիր՝ մնաց զարմացեալ,

[1] Թէ զիարդ զսա մի ՚ի մերայնոցն համարիմք՝ տես ՚ի գլուխն Պատմութ. հատոր Ա. երես 383 ։

զի 'ի սակաւուց իրաց եգիտ զայն բաղադրութի. բայց գուցէ ոչ զամենայնն նշանագրեալ էր Միհրդատ յայն ձեռագիր: Միայն թէ բազում գովութի յիշատակի այս Թիւրակէս առ Գաղենոսի, թէ իցէ դեղ վաղեմի յոյժ և պատուական, զոր և բազում երևելի բժիշկք աշխատեցան 'ի կատարելագործել. որոց վերջինն եղև Անդրոմաքոս բժիշկ, յաւելլով յայն և զիժ: Պէսպէս բաղադրութիք յիշատակին առ նորին Գաղենոսի 'ի պէտս պեղթափի, գիրք Ա. գլ. 1. 2. և 9: Պլինիոս ԻԹ. 1. զմիհրդատեան Թիւրակէսն 'ի 54 իրաց բաղադրեալ ասէ. իսկ Կելսոս, գիրք Ե. գլ. 23. 'ի 36 իրաց:

Իսկ վասն այլոց բժշկաց մերոց զկնի եկելոց Թէպէտ 'ի դատաստանագիրս Մխիթարայ Գօշի անսանեմք 'ի պատուի լեալ՝ յասելն, "Օգնական բնութեան մարմնոյ և հարկաւոր յարուեստս՝ է բնական բժշկութիւն. պատուեսցի և սա. և Թէպէտ ամենայն կարծեաւքն նուազունք յոյժ հարկաւորք, այլ որոց սակաւ գիւտն է յարքունուստ առեալ 'ի պէտս հասարակաց պատուիցի", բայց յանուանէ յիշատակութի զնոցունց հազիւ ուրեք գտանեմք առ պատմագիրս մեր. զի չէր սովորութի մերոց փոյթ ունել զայսպիսեաց: Առաւել յիշատակութի գտանեմք 'ի ձեռագիր բժշկարանս ըստ մասին Թարգմանեալս, և ըստ մասին յաւելեալս 'ի նոցունց: Զոմանս 'ի յիշատակելոցն յառաջ բերցուք աստանօր:

### ՅՈՎՀԱՆՆԷՍ

Բժիշկ լեզուագէտ յիններորդ դարուն յաւուրս տ̃. Զաքարիայ կաթողիկոսի. բայց Թարգմանութիւնք ինչ նորին յիշատակին 'ի հին ձեռագիրս, այլ զբժշկական գործոց նորա ինչ ոչ:

### ՄԽԻԹԱՐ

Բժիշկ լեզուագէտ 'ի Հեր գաւառէ յելս երկոտասաներորդ դարուն. բարեկամ Շնորհալւոյն. բժշկարան նորա գտաւ յաւուրս մեր և տպագրեցաւ. յորում ըստ մեծի մասին են վարդապետութիք զտենդական ախտից:

դպրութեանց գանձգատ բառնայ, ուստի յիշէ վասն այսորիկ։ Եղբայր թագաւոր որ ընդ հռոմայեցիս և ընդ այլ թա-գաւորս թղթակցէր, 'ի հարկէ նշանագրեալ ունէր զժա-մանակին. Հարկն զոր յաւուրց անտի Արշամայ տալ սկսան մերքն հռոմայեցւոց, 'ի հարկէ սահմանեալ ունէին տալ յորոշեալ ինչ ժամանակի, կամ ամսական և կամ տարե-կան. Նոյն իսկ անուանք այժմեան ամսոց յառաջ քան զերկիրորդն Արտաշէս 'ի վաղուց անտի անուանեալ լինել վկայեն 'ի հին յիշատակարանաց։ Պարտ է ևս զայս ագիտու-թ՞ի իմանալ վասն միջնաշխարհիս, ուր նստէին թագաւորք մեր և մեծամեծ նախարարք. զոր օրինակ էր Այրարատ նահանգ և շրջակայք նորին. այլ 'ի բացակայ սահմանս՝ այսինքն է 'ի Մոկս, 'ի Հեր և 'ի Զարևանդ գաւառ, որ-պէս և 'ի շրջակայս Միջագետաց, պարտ է ընդունել թէ իցէ մնացեալ այսր ուսմանն 'ի պատճառս յայտնի նշանաց զորս 'ի վերոյ յիշեցաք 'ի խօսելն զՋօրօաստր և զՄոգ նա-հապետաց։

Այլ թողեալ որ ինչ անցք անցին յայսմ ուսման յանչափ հնումն ժամանակի՝ և որ 'ի ժամանակս կռապաշտութե՛ն, պատմեսցուք զորս եղեն 'ի ժամանակս քրիստոնէութե՛ն. յորում ժամանակի պատճառ արծարծելոյ այսր գիտու-թեան յաշխարհիս մերում՝ եղև աւարտումն աղիւսակին՝ որով վարէին Հայք 'ի տօնել զտօնս. զորմէ գրէ Կիրակոս յետ Սամուէլի. "Բովանդակեցաւ կանոնք երկհարիւրե-կին՝ զոր կարգեաց իմաստասէրն Անդրէաս, եղբայր Մանդ-նայի եպիսկոպոսի հրամանաւ Կոստանդնի կայսեր վասն լրմանց զատկաց"։ Եւ ապա գրէ. "Յետ վճարելոյ եր-կերիւրեկին Անդրէասին՝ զկնի ամ խանգարեցան տօնքն ամենայն, զի ոչ կարացին ուղղապէս վարել զարուեստն նորա յետ վճարելոյն։ Ապա իմաստասէր ոմն (որ էր աղէք-սանդրացի) Էաս անուն, ձայնարկեալ առ ինքն կոչել յամենայն ազգաց զիմաստունս, զՓենեհէս հրեայ, զԳի-գան ասորոյ, զԱզդէ 'ի Գամրաց, զԵլոգս 'ի Յունաց, և այլս յոլովս։ Եւ սկսեալ ներքուստ 'ի վեր թուել զամս, և գտեալ հաստատութ՞՝ կարգեցին զհինգհարիւրեակ բոլորն, անտարակուսելի օրինակ յաւիտեան"։ Թէ յորոյ աւուրս եղև այս, և զիարդ՝ ասէ Յովհաննէս կաթողիկոս. "Յամի հնգետասաներորդի հայրապետութե՛ն նորա (Յ. Մով-սէսի կաթողիկոսի, որ նստաւ 'ի 551.) և յերեսներորդ ա-ռաջներորդ ամին Խոսրովու որդւոյ Կաւատայ արքայի Պար-սից՝ լցեալ բովանդակեալ շրջանակ բոլորակի հինգհա-

ընդ երեսուն և երկու ամաց, ապա 'ի հրամանէ մեծին Մովսիսի (կաթողիկոսի) քերթողք և գիտունք արուեստին եդին զկարգ թուականութեան թորգոմեանս համարոյ, որ է շարժունն յառաջախաղաց, և հինն զանազանի մնացանց արուեստին: Եւ այսպէս ըստ հայկական լեզուի տուեալ տումար տօնից տարեկանացս՝ յախմհեալ ոչ կարօտանային մուրացիկ լինել առնլով յայլոց ազգաց զաւ-սանի խորհրդոցն արարողութիւն ,,: Սկզբնաւորութեան այսր շրջանին՝ ինքնին բերէր 'ի մեզ զսկզբնաւորութիւն նոր թուականի. զի 'ի թուէն հեռահեալ Ա. Բ. կամ Գ. ամ շրջանին, և այն՝ էր սահմանել 'ի մեզ 'ի թուել զնոր թիւ ամաց, այս է ասելն Յոհաննու կաթողիկոսի. "Եդին զկարգ թուականութեան թորգոմեանս համարոյ, որ է շարժունն յառաջախաղաց,,: Նոքա եդին զկարգ յառաջախաղաց, այսինքն միշտանջենաւոր շրջանի, բայց ոչ կարգ եդև միանգամայն կարգ կամ թիւ թուականիս մերոյ: Ըստ այսմ պարտ է իմանալ և զբանն Սամուէլի երիցու, որ ասէ. "Կարգեցին թուական Հայոց, որով ուղղեցին զզատիկն,,: Այսինքն կարգեցին զշրջանն ուղղելոյ զզատիկն. և պատճառաւ շրջանին սկսաւ և թուականն [1]:

Որպէս պակասութիւն աղիւսակին որ վասն տօնելոյ զզատիկն՝ պատճառ եղև հեռամուտ լինելոյ տոմարագիտութեան, նոյնպէս և շարժականութիւն տումարին պատճառ եղև անդրէն հեռամուտ լինելոյ յաւուրս Անաստասայ կաթողիկոսի. որոյ ընդ նստելն յաթոռ հայրապետութեան յամին 661. կամեցաւ անշարժութիւն մուծանել 'ի տումարս մեր, թէպէտև ոչ գլխաւորեցաւ. զորմէ ասէ Յովհաննէս կաթողիկոս. "Անաստասայ հայրապետի հոգացեալ վասն հայկականս տումարի, զի թերևս անշարժ զնա ըստ այլոց ազգաց մարթասցէ յօրինել. զի միշտ անշարժ լիցին տօնք տարեկանաց, կամ յեղափոխ եղանակ ժամանակաց. վասն որոյ և առ ինքն զԱնանիա անեցի կոչեալ, որ քանիբուն այնմ արուեստի էր հմուտ, հրամայէ նմա սահմանագործել զխնդրելին իւր. իսկ նորա ջանն 'ի վերայ եդեալ, և ըստ բոլոր ազգաց պայմանի անշուշտ յօրինեալ

1 Ֆօումալէեն 'ի պատմութեան Սեաւ ծովու հատոր Բ. Թղթահամար 282. 'ի ճառան որ յաղագս աշխարհագրական վիճակաց նախնեաց գլ. Է. գրէ. "Յամենայն նուագս յորժամ նախնի ազգք ընդհանուր նորոգութիւն ինչ առնէին տումարին իւրեանց, կամ թէ ասել աստեղաբաշխութեան, այն լինէր սկիզբն նորոյ թուականի, ուստի սկսանէր նոր պատմութիւն իւրեանց. ըստ որում օրինակի թուական Նաբոնասարայ եղև սկիզբն նորոյ ժամանակագրութեան յասորեստանս ,,:

ղկարգ Հայկականս տումարի ,, ։ Բայց պատմէ զմնի թէ 'ի կամելն ժողովել հաստատել զայն՝ Անաստասայ վախճան մահու 'ի վերայ հասեալ, ոչինչ փոյթ լինէր վասն այսր զմնի եկեղեցն [1] ։

Ի պատճառս ժողովոց , որ վասն տումարի կամ վասն թուականի , յիշատակին սովորագէտք ոմանք . որպէս 'ի Յովհաննէս կաթողիկոսէ Անանիա անեցի , որ է հաշակաւորն Շիրակացի յեօթներորդ դարու ։ Սոյնպէս և յԱսողկայ Բ. 2. յիշատակին Գեորգ քերթող Սիւնեաց, և Ներշապուհ 'ի Տարօնոյ , կամ մամիկոնեան . երկոքին եւ եպիսկոպոսունք . Թէպէտ և նոյն ինքն Ասողիկ ժողովեալ ասէ զոսա յաւուրս Ներսէսի աշտարակեցւոյն , զի 'ի նորին աւուրս սահմանեալ ասէ զթուականն ։ Իսկ 'ի Կիրակոսէ յիշատակի Աթանաս 'ի վանաց սուրբ Կարապետի ։ Յետս երկոտասան և 'ի սկիզբն երեքտասաներորդ դարուն Յակոբ ղրիմեցի աշակերտ Գէորգ վարդապետին գտաւ , որ ուսոյց քննիւ և գրով զտոմարագիտութիւն . որպէս և ինքն պատմէ 'ի յառաջաբանութեան իւրում ։

## ՅՕԴՈՒԱԾ Ե

[illegible] յանուանէ յիշատակելոց ։

ՈՐՊԷՍ զծագումն և զսկզբնաւորութիւն դպրութեանց 'ի Հայաստան լեալ ցուցաք ըստ բաւականին 'ի վերոյ , զհետ գայ մեզ խօսել և վասն սկզբնաւորութեան արուեստից . այլ յանուանէ յիշատակուի միայն վասն երկրագործուե արուեստին զտանելք յիշատակեալ 'ի գիրս Ծննդոց ։ Մարթ էր ասել նաև զարուեստէ դարբնութե և երաժշտութե 'ի Հայաստան սկզբնաւորեալ , որոց նախկին գտիչք յիշատակին 'ի գիրս Ծննդոց Դ. 21. 22. եթէ յայտնի լինէր բնակութիւն առաջին նահապետացն այնոցիկ լեալ 'ի Հայաստան , որպէս կարծէ Պօշար վասն բնակութեան նա-

1 Ասողիկ Բ. 2. գրէ վասն Անաստասայ կաթողիկոսի . " Հրամայէ Անանիայի շիրակացւոյ կարգել զգնդկանն հրաշալի , յորում զտոմարս մեր կարգեսցէ անշարժ ,, ։ Այլ Կիրակոս վասն Յովհաննու ասէկաւորք՝ որ 'ի սկիզբն երկոտասաներորդ դարու , գրէ կարգեալ զայս անշարժութի . " Զհաստատ և զանշարժ տոմարն կարգեաց Հայոց փոխանակ շարժականին և անհաստատութեան ,, ։

հապետին Նոյի, նաև նախ քան զՋրհեղեղն դնելով 'ի հարաւակողմանս աշխարհիս Հայոց. զորմէ տես 'ի գլուխն Բնակութե̃ :

Ոչ թողեալ այժմ խօսել զարուեստից այնչափ հնաւուն ժամանակի՝ յառաջ բերցուք աստանօր զոր ինչ յիշեն պատմութիւնք ազգիս վասն արուեստից յաւուրս թագաւորաց մերոց : Յորս առաջին մեծն Տիգրան 'ի հայկազունիս՝ որպէս զանազան բարեկարգութիւնս՝ նոյնպէս և զարուեստս ծաղկեցոյց, զոր 'ի համառօտ բանից աստի Խորենացւոյն է իմանալ. "Մթերս ոսկւոյ և արծաթոյ և քարանց պատուականաց և զգեստուց և պէսպէս գունոց և անգուածոց՝ արանց հասակաց և կանանց միանգամայն բազմացոյց. որով տգեղագոյնքն իբրև գեղեցկուքն երևէին պաճուճելովք, և գեղեցկագոյնքն ըստ ժամանակին առհասարակ դիւցազնացեալք „. ա. 24 : Յարշակունի թագաւորս թէպէտ Վաղարշակ բազում բարեկարգութիւնս եմոյծ, բայց ոչ և արուեստս. իսկ յաւուրս Արշամայ արքայի յիշատակին միայն առ Խորենացւոյն գործաւորք 'ի յատակել, զորս Հերովդէսի "խնդրեալ, ասէ, 'ի յԱրշամայ բազմութիւն արանց անարուեստից գործաւորաց, որովք զԱսորւոց զԱնտիոքայ զանանց և զանկոյս հրապարակին 'ի խոհերացն և 'ի տղմոցն՝ լցցէ... Տալով (ասա Արշամ) զոր խնդրէրն (Հերովդէս) գործաւորս. որովք լցեալ զհրապարակս անտիոքացւոց քսան վտաւանաւ երկայնութե̃, յատակեաց սպիտակ կճաւ, զի ուխտաւորք յատակացն դիւրագոյնս կարգեսցեն առ ոչինչ վնաս առնել քաղաքին „. բ. 25 : Մնացորդք այսր սալայատակ Ճանապարհին Անտիոքայ յաւերակսն անդ նորին երևին մինչև ցայժմ ըստ պատմելոյ մերոց Ճանապարհորդաց :

Բայց գերագոյն քան զամենայն թագաւորս մեր արուեստից և գիտութեանց պայծառացուցանօղ՝ գտաւ բ. Արտաշէս թագաւոր. զորմէ Խորենացին առանձին գլուխ կարգեալ "Արուեստից գիտուն որ ինչ յաւուրս Արտաշիսի „, սկսանի ասելով. "Բազում ինչ գործք յաւուրս Արտաշիսի գործեցան.. զի թէպէտ... կարգք և օրէնքք գեղեցիկք հաստատեցան 'ի Վաղարշակայ և յայլոց առաջնոց թագաւորացն, այլ 'ի մեծամեծ արուեստից և 'ի գիտութեանց ունայնացեալք էին „ : Արդ յիշէ զքանի մի արհեստս յանուանէ, որք են Նաւագնացութիւն 'ի ծավալս հայաստանեայց. Ճանապարհորդութիւն 'ի վերայ

գետոց. Ձկնորսութ, և Երկրագործութ, ասելով. «Այս ամենայն յօրինի յաւուրս Արտաշիսի», Է. 59:

## Ա. Երկրագործութիւն:

՚Իան զամենայն արուեստս՝ որ կարևոր են մարդկային կենաց, ըստ Խորենացւոյ յամենեցուն առաջին, ուսեալ մարդոյ յարարչէն ընդ ստեղծմանն իւր իւր սեփական արուեստ, թէ 'ի ժամանակին յորժամ էր 'ի դրախտին, որպէս ասի Ծննդոց Բ. 15. «Եդ զնա 'ի դրախտին փափկութեն գոր- ծել զնա և պահել», և թէ յետ արտաքսելոյն. «Եհան արձակեաց զնա տէր Աստուած 'ի դրախտէ անտի փափ- կութ գործել զերկիր ուստի առաւ». Գ. 23: Սոյնպէս և յորժամ սկսաւ երկրորդ անգամ սերունդ մարդոյ յետ ջրհեղեղին՝ առաջին յիշատակութիւն արուեստի այս է. «Եւ սկսաւ Նոյ այր հողագործ զերկիր գործել, և տնկեաց այգի». Ծննդոց Թ. 20: Իսկ տեղին սկզբնաւորութեան յերկուս ես Նուագս՝ է աշխարհս հայաստան. ուր և զսկզբնաւորութեն տեղի զերկրորդին և զյիշատակ մինչև ցայսօր տեսանեմք, այն է տեղին Ակոռի 'ի վերայ Մա- սեաց լերին[1], ուրանոր Նոյ նահապետ զառաջինն բրելով տնկեաց այգի[2]. առ որ և որպէս 'ի դէպ է պատշա- ճել զճահագրութիւն վիրգիլեան, նախ առաջին ուսուցեալ մահկանացուաց երկաթեօք բանալ զարգաւանդ երկրի. զոր նա տարեալ համէ յիւրեանց հեթանոսական աստուա- ծուհին Ջերէս, Դեմետր ձայնեալ 'ի Յունաց: Ի դէպ էր և մերոց քերթողաց արօրադրական քերթուածովքն իւրեանց ստորագրել զայս ընիկ տեղի հողագործութեան առաջին մարդոյն, ուր մերձեցան գործիք առաջին եր- կրագործին աշխարհի, և հաշակել զնոր զայն պտուղ ա- ռաջին այգւոյն աշխարհի, որ 'ի խորհրդաւոր թմրութ եարկ զնախնիսն այգեգործն: Որպէս Վիրգիլիոս, նոյնպէս և այլք 'ի հեթանոսաց այլ և այլ անձանց ընծայեն զգը- կիւղն երկրագործութեն. և ոմանք ես դից, մանաւանդ Դիոնիսեայ կամ Բագոսի. զոր Դիոդորոս սիկիլիացի հաս. Ա. Թղթ. 232. յերիս Բագոսս որոշեալ՝ զմին հա-

1 Զորմէ կարես տեսանել 'ի գլուխն Բնակութ. և 'ի մեծ Հայս 'ի Թղթս. համարն 445:

2 Վասն որոյ և յՈգիգիոս բանաս- նա:

տեսցէ Մանգաղաչիր տարած կոչի Սատուրնոս, որ է Նոյ: Եւ 'ի Վիրգի- լիոսէ Արեադամնի ծերունին Սատուր-

մարի երկրագործութեան եւ այգեգործութեան հնարիչ. եւ
զի որթ եւ խաղող 'ի Ջրհեղեղին Դեւկալիոնի կորուսեալ
էր առ է ըստ այլ պտուղս, Դիոս չաստուած վերստին բու-
սոյց. որք են առհասարակ գործք Նոյի 'ի պատմութե
սուրբ գրոց առեալ աղճատեալ այլայլութե:

Նաեւ այլ եւ այլ ազգք իւրեանց ազգի սեփականեն. մա-
նաւանդ Եգիպտացիք, որք յամենայնի զինքեանս կարծե-
լով հնագոյնս[1], զնա Օսիրիս անուն լեալ յերկրին իւրեանց.
սկզբնաւորող երկրագործութեան: Որպէս եւ Տիբուղղոս 'ի
հանգձներգութիւնս իւր զՕսիրիսն համարելով լինել Բա-
գոս, նմին տայ զառաջին երկրագործութիւն եւ զայգեգոր-
ծութիւն: Բայց կամ չէր պարտ այնչափ հին առնել զՕսի-
րիսն իւրեանց, կամ ըստ առնելն հին եւ որդի Սատուր-
նոսի, որ է Նոյ, զանեղի սկզբնաւորութե նորա ոչ յեգիպ-
տոս՝ այլ 'ի հայաստան պարտ է խնդրել, առաջնորդ ու-
նելով զսուրբ գիրս՝ յոյժ հաւաստարմագոյն քան զիւրեանց
հին կարծեցեալ մատեանս. զորոյ եւ զանեղին յանուն իւր
կոչեցեալ Որսիր կամ Որսիրանք, յայտնի ցուցաք 'ի վե-
րոյ: Նորին աղագաւ առ 'ի միաբանել եւ զպատմութիւն
եգիպտացւոց, ասեմք՝ թէ որպէս Նոյ 'ի կողմն Մասեաց՝
նոյնպէս եւ այլ ոմն 'ի նախնեացն նահապետաց յորդւոց Նոյի,
որպէս ասեն, յայլ կողմն հայաստան աշխարհիս 'ի կիր
էարկ զայս արուեստ երկրագործութե եւ ուսոյց այլոց. իսկ
այն կողմն էր Որսիրանք գաւառ Կորճէից, որ յանուն նո-
րին կոչեցաւ: Զայս հաստատէ նաեւ Եւստաթէոս 'ի լուծ-
մունս Դիոնիսեայ Բերիեսի. ուր ասէ թէ Օսիրիս արօ-
րադրել ուսոյց տօրոսացւոց. արդ տօրոսացիք եւ Տօրոս են
'ի հայաստան. զի որպէս գրեալ է մեր 'ի գլուխն Արարատ՝
Տօրոս լեառն 'ի նախնի մատենագրաց անուն առորադրի՝
լեառն զհարաւակողմամբ հայաստանեայց քերեալ անց-
ցեալ, նաեւ 'ի ներքս 'ի Հայս մտեալ, 'ի Տարօն, 'ի Մոկս,
նաեւ 'ի սահմանակիցն իւր 'ի Կորճայս, ուր էր Որսիր ան-
ղին. զի եւ այն է 'ի հարաւակողմն աշխարհիս որպէս միւսն.

1 Արկադիացիք հաւանեալ եւ Ցիւթք եւս մտացածին ինչ պատճառաւք եղեն. զի որպէս հնաւ ... լինելոյ զամենայն ինչ յեգիպ- տացւոց առնէ եւ 'ի նոցանէ սուսան, այնպէս կարծեցին թէ նաեւ այլ ամե- նայն ազգք յեգիպտացւոց ուսեալ են. եւ եգիպտացիք իշխեն հնագոյնք քան զամենայն ազգս, ոչ գիտելով զսուրբ գիրս: Այլ գիտեմք մերթ եր առաջին նախահայրերոյ ընտանեաց 'ի Հայս, որք զամենայն կարգաւոր մարդ- կային կենաց հնարեալս, զերկրագոր- ծութիւնն որ առաջին է 'ի տիեզերս մարդոյ՝ չհնարել ցուցանէ ժամանակս ընտանեաց կային 'ի Հայաստան, այլ անդադար ուսուցին յետ ցրուելոյն աշխարհ յեգիպտոս հնարել, որպէս ասեն:

նմին իրի և Եւստաթէոս կոչէ տարօնացիս. որպէս տարօնացիք կոչին երբեմն և սասունցիք[1]:

Այս ամենայն որ վասն առաջին երկրագործութեան աշխարհիս՝ յիշատակարանք են հաւաստիք, գոլով առեալ կամ 'ի պատմութենէ սուրբ գրոց, և կամ 'ի նոյն իսկ 'ի տեղեաց հայաստան աշխարհիս իբր 'ի կենդանի արձանագրութեանց: Իսկ 'ի պատմութեանց ազգին՝ միայն վասն յետագայ ժամանակաց կարեմք առնուլ դոյզն ինչ տեղեկութիւն զերկրագործութենէ աշխարհիս. յորս առաջին թէպէտ վասն Վաղարշակայ Թագաւորի գտանեմք ինչ յիշատակութիւն առ Խորենացւոյն՝ հարթել նորա զերկիր և ուղղել, բայց այն էր առաւել 'ի պէտս շինութէ, և յառանձին ինչ տեղւոջ. "Դաւանայ, ասէ, առ ստորոտովն Պարխարայ ընդ մէջ Տայոց 'ի գիջին և 'ի մառախլուտ տեղիս մայրեացն և 'ի լոռաւէտս. գեղեցիկ իմն կարգելով զերկիրն, հաւասարելով զլեռնայինսն... գտմն զերկուս տափարակմն ամենառատախոտս հանդերձ լերամբքն կազմելով, և որսոց տեղիս. և զջերմութիւն Կողայ 'ի մարմանդս այգեաց և բուրաստանեաց,,. Բ. 6:

Այլ որչափ ինչ բարգաւաճեաց արհեստս այս յաւուրս երկրորդի Արտաշիսի, գերազանցեաց յոյժ քան զառաջնոց ժամանակացն. զի սա նախ բազմութիւն բնակչաց ելից զամենայն կողմանս աշխարհիս. ապա նոյն բնակչաց ետ գործել զամենայն երկիրն. "Յետ ամենայն առաքինութեանց և գործոց ուղղութեանց Արտաշիսի, ասէ Խորենացին Բ. 56. հրամայէ զսահմանս գիւղից և ագարակաց որոշել... Բայց առ 'ի ժամանակս Արտաշիսի ոչ գտանել երկիր անգործ յաշխարհիս Հայոց, ոչ լեռնային և ոչ դաշտային յաղագս շինութեան երկրիս,,: Իսկ թուի թէ նախ քան զսա մերքն զհետ վաճառականութեան կրթեալ, այնուհետև աղագաւ արտաքոյ հայաստանեայց յածեալ շրջէին, առ կաւաքնակ թողեալ զհայաստան, միայն վաճառականութի համարելով գտանել զհարստութի. բայց Արտաշէս թա

[1] Իսկ զի սկիւթացիս կոչէ զնոսա Եւստաթէոս՝ այն է առ անտեղեակ գոլոյ նորա հարաւային կողմանց աշխարհիս մերոյ. որ քանզի բազում անգամ ընդ տէրութբ բարբարոս ազգաց յածէր՝ սկիւթացիս կոչէ զնոսա, առաւել ևս գոլոյ 'ի Սկիւթիա. որպէս և առ այլս կոչեցեալ գտանեմք ուրեք ուրեք: Այն զի՝ որպէս գրեալ նեա 'ի գլուխն Սիսուան, 'ի սկզբան անդ ժամանակին՝ և զհայս զգեթէ ըստ մեծի մասին ընդ սկիւթացիս գաւառել և Սկիւթիա կոչեցեալ գտանեմք առ նախնիս. մատենագիրս, յորժամ խօսին զաղգաց վաղեմի ժամանակաց: Բայց զՑօրոս 'ի Սկիւթիա համարել՝ ոչ գտանեմք:

գաւառ՝ այր կենցաղագէտ և աշխարհաշէն՝ եցոյց թէ 'ի բարեբեր երկրի, զոր օրինակ է Հայաստան, յորժամ չիցեն բռնութիւնք և երկիւղ հարստահարողաց, երկրագործութիւն է մի միայն յարհեստս՝ հարստութեան առիթ, նուազ աշխատանօք քան զաշխատանս վաճառականութեան. և առանց հողոց և երկիւղի, զոր վասն ակնալից վտանգաց ածէ ընդ իւր արուեստն վաճառականութեան.

Յաւուրս Բագրատունեաց վասն առաջին թագաւորին Աշոտոյ պատմի ծաղկեցուցեալ զերկրագործութիւն. որ ըստ իւրում աշխարհաշէն բարուց, ասէ Յովհաննէս կաթողիկոս, "զամենայն տափարակ տեղիս՝ ագարակս և գունս գնէր, և զմարմանդս՝ յայգիս և 'ի բուրաստանս զարդարէր": Իսկ յետ այնորիկ թէպէտ ոչ գտանեմք ինչ յիշատակութիւն, բայց 'ի բանից Մխիթարայ Գօշի երևի 'ի պատուի լեալ նախնեաց երկրագործութիւն. զի 'ի դատաստանագիրս իւր 'ի գլուխն որ յաղագս դատաստանաց թագաւորաց և որք ընդ ձեռամբ նոցա, գրէ. "Հարկաւորք և օգտակարք յարուեստս հողագործութիւն է և դարբնութիւն և հիւսնութիւն, և բազմաց է հողագործել. առաւել պատուելի երկաթագործ և փայտագործ":

Նոյն արուեստ և այժմ ևս ուրոյն իմն ճարտարութեամբ 'ի գործ ածի 'ի Հայաստան 'ի մերոց, ուր չիք բռնութիւն. զորոց և զզանազան գործիս և զանուանս նոցա՝ արժան էր ումեմն բանասիրի արձանագրել 'ի պղինձս, և ընծայել առաջի եւրոպական ճեմարանաց երկրագործութեան. զոր օրինակ զՔութանն համալերձ չորոց և վեցոց արջառօք լծելովք, և իւր խոփովն և սամիւք և հօտաղաւն, և այլն: Եւ այս ճարտարութիւն զանազան գործեաց և յաջողակութեան մերոց գործավարաց և մշակաց է՝. որք յայսմ առաւել անդրադառնին 'ի սկզբանէ առանց 'ի ճարտար արուեստաւորաց մուծեալ յաշխարհի մերում երկրագործութեան արուեստիս: Բայց քանզի մերքն ոչ գրեցին ինչ զայսմանէ, և զարձեալ ոչ ծովեզերեայք էին, որով ծանօթ լինէին օտար ազգաց երթևեկաց, մնացին յանծանօթս. և ծանօթ գտան եգիպտացիքն, զորոց և գրոցք եղեն բազումք 'ի Յունաց, և երթևեկք օտար ազգաց առ նոսա բազումք 'ի պատճառս ծովեզերեայ գոլոյ նոցա:

### Բ. Որսորդութիւն։

Սոյն այս է մի յարուեստից վաղեմի ժամանակաց, որ որպէս յայլ ազգս ասիացւոց՝ նոյնպէս և 'ի մերում ազգի յաճախեալ էր. զի գոլով 'ի մերոց թագաւորաց և իշխանաց ընթեռնումք 'ի պատմութիւնս յորսորդութեան պարապեալ։ Այլ անուամբ որսորդութեան չէ պարտ իմանալ սոսկ զփոյթ նոցա յորս՝ երէոց առ 'ի զուարճութիւն, կամ 'ի վայելս կերակրոց, այլ զկրթութիւն՝ որով կամէին կըրթել զմարմինս իւրեանց յերագութիւն, 'ի զինաշարժութիւն և 'ի ձիավարութիւն, կարի հարկաւոր 'ի պատերազմունս. մանաւանդ մերոցն՝ որոց հարկ էր հանապազ կազմ ունել զինքեանս 'ի մրցմունս առ բազմութեան զանազան թշնամեաց շրջակայ ազգաց խուռն արշաւելոց 'ի Հայս։ Ցայտնի նշան այսմ զայս տեսանեմք, զի Ղազար յորսորդութէ նախարարաց և որդւոց և մանկանց նոցա որք ուսային յԱյրարատ նահանգի, ստորագրէ զվարժութիւն և զյաջողութիւն նոցա 'ի շարժմունս և 'ի գործածութիւն զանազան զինուց. ասէ. " Ոմանք զհետ ցռուցն և այծեմանցն արշաւելով զխիզախական և զաղեղնայինն եւեթ բարբառեցին. և այլք զհետ քուլից եղջերուացն և եղանց ձիարձակ եղեալ՝ զգործ կորովաձիգ արանցն ցուցանէին. կէսք սուսերօք իբրև զմենամարտիկս զասատկանդամ երամս վարազացն գլորեցուցեալ սպանանէին։ Եւ շատք 'ի մանր մանկանց նախարարաց որդւոցն՝ դաստիարակօք և ծառայիւք զայլ և այլ սեռս 'ի թռչնոցն որսացեալ բազմայիւք բարձեալ բերիցեն 'ի յաճախումն ընթրեացն ուրախութեան„. 21։ Նոյնպէս և զպատերազմականն քաջավարժութիւն Մամիկոնեանց՝ 'ի յաջողութէ որսորդութեան նոցա գովէ ասելով. "Ի նետաձգութեան գեղեցկաձիգք և դիպեցուցօղք. յորս թեթևաշարժք և նախասպանք. յերկոցունց ձեռաց յաջողակք, և յամենայն կողմանս ուղղակիք և չնորհալիցք. զորոց ձանձրացուցանէին բազմածառայքն զամծառայիցն զդուրսն, խնդրելով հանապազ զմիս այլ և այլ որսոց, և կամ այլ պատուական և մեծագին գիւտից խնդրովք ըստ իւրաքանչիւր աշխարհաց. նոքօք շքեղանային ընթրիք ամենայն տանուտերանց Հայոց„. 193։ Սակս այսպիսի կրթութե համարիմ կառուցեալ Երուանդայ թագաւորի զանտառն ծննդոց.

և փոքուն Խոսրովաւ երկրորդի զանուանն Խոսրովակերտ առ Տիկնունի ապարանաւ, որոյ մի մասն կոչէր Տաճար մայրի, և միւսն Խոսրովակերտ, ճանապարհ պողոտային ընդ մէջ հատանելով զերկոսին։ Այսպիսի Թագաւորական անտառք և մայրիք որմովք պատեալք և երէովք լցեալք 'ի պէտս որսորդութեան՝ էին միանգամայն իբր մի մի մարզարանք կամ կրթարանք 'ի պէտս կրթութեան մարմնոյ շարժման, որ կարի հարկաւոր էր վասն պատերազմականացն, մանաւանդ մերոյն. առ որ պէտս ունէին առաւել մանկունք նախարարաց մերոց սակս անդադար 'ի վերայ կալոյ պատերազմաց։ Նմին իրի Երուանդ և Խոսրով շինեցին զսոսա ոչ միայն 'ի զուարճութիւն իւրեանց, այլ միանգամայն, որպէս ասացաք, 'ի կրթութիւն մարմնոյ անձանց և ամենայն արքայորդւոց և արքունականաց [1]։

Գործիք որսորդութեան էին զանազանք. յորոց ոմանք յիշատակին առ Ագաթանգեղոսի յասելն վասն Տրդատայ. “ Այս յետ այսորիկ ժամ տուեալ որսոյ ամենայն զօրացն, ածել կուտել զպատրաստականն, խուճապական սփռեալ, երագագ տուեալ, թակարդ ձգեալ. կամեցեալ որս առնել ,,. Թղթահամար ձր։ Եւ առ Բուզանդայ. “ Որսոցն պատրաստականօք, և ռահվիրայ մարդկանն ,,. Գ. 20։ Սոյնպէս և առ Ղազարայ. “ Թակարդացն շրջափակութեամբք երագագիւքն և գահողովքն եկեալ 'ի յորս գունդք նախարարացն որդւովքն ազատացն ,,. 21։ Իսկ 'ի շամբս նաև հուր արկանելով որսային, որ յիշատակի առ Խորենացւոյն Գ. 55. “ Դիպեցաւ 'ի շամբս կինձս որսալ հրով. և Շապհոյ ոչ համարձակեալ 'ի թաւուտ քաջ արշաւ լինել մինչև շրջապատէր հուրն ,,։ Էին և այլ պատրաստութիւնք որսոյ՝ յորս յոյժ գերազանց զատու Գնելայն. զորմէ նոյն մատենագիր. “ Իբրև ետես (Ա. Արշակ Թագաւոր) զոր չէր երբէք տեսեալ զայնպիսի պատրաստութիւն որսոց և բազմութիւն էրէոց, խոցեալ խորհըր-

[1] Զայս ամենայն հաստատել ծանիցես, եթէ ընթերցցես զպատմութիւն Քսենոփոնեայ զկրթութիւն սահմանեալ վասն մանկանց նախարարացն Պարսից, թէ որպէս Թագաւորք Պարսից զորսորդութիւն համարեալ իբրև պատկեր իմն պատերազմի, բազում անգամ յամենայն ելանէին յորս, ընդ իւրեանս առեալ զնոյն մանկունս նախարարաց առ 'ի կրթել զնոսա նովին որսորդութեան արուեստիւն 'ի զինուշարժութիւն, յերագութիւն և 'ի ձիավարութիւն։ Եւ այսպէս Յոյնք առ կըրթութիւն առոյգ մարմնոյ՝ պէսպէս որսորդական խաղս սահմանեցին, որոց փորձ էր զօրուն. իսկ առաջինք առաւել կրթութեան համարեալ զորսորդութիւն, 'ի նոյն փութացուցանէին զմանկունս իւրեանց։

դովքն նախանձու և կասկածանաց, հրամայեաց նոյն Վարդանայ 'ի նոյն որսին սպանանել զԳնէլ. որպէս թէ ընդ խոզս ինչ վրիպակաւ ,, . Գ. 23 : Եւ արդարև այս արուեստ որսորդութեան 'ի բազում աղետալի պատահարս եւս մատնեալ զմարդիկ. և եղև արուեստ ինչ՝ մանաւանդ թէ որոգայթ սպանանելոյ զայս երևելիս. զոր օրինակ եղև և 'ի մահուն Ա. Խոսրովայ արքայի և Սանատրկոյ արքայի. թէպէտ և սորայս եղև դիպուածով. "Մեռաւ յորսի նետիւ ուրուք դիպեալ փորոտեացն. իբր թէ վրէժս հատուցեալ ընդ չարչարմանն սրբոյ դստերն ,, , ասէ Խորենացին Բ. 36 :

Տեղիք որսոյ 'ի հայաստան աշխարհի՝ զառաջինն վասն Վաղարշակայ յիշատակի առ Խորենացւոյն Բ. 6. ապա վասն Բ. Արշակայ յաւելն Գ. 23. "Ելանէ արքայ զթիկամբք Մասեաց առնել որս յիւրում սիրեցեալ դաստակերտին 'ի Կոգայովիտ. և եղեալ որս առատիկ՝ որ ոչ այլոյ ուրուք 'ի թագաւորաց նախ քան զնա այնչափ բազմութիւն երէոց 'ի միում ժամու ,,: Բայց և թշնամիք Գնելայ անդէն 'ի նմին ժամու ասացին առ արքայ. "Գնելայ բազում երէո քան զայն առնել ընդ նոյն աւուրս յիւրում լերինն՝ որ Շահապիվանն անուանի ,,: Յիշատակի և առ Բուզանդայ վասն Տիրանայ արքայի, զի յորժամ Վարազշապուհ պարսիկ գալոց էր 'ի Հայս 'ի կողմանէ թագաւորին Պարսից իբր զբօսանաց աղագաւ, ասաց Տիրան առ իւրսն. "Արժան է մեզ, այր որ գայ առ մեզ՝ զբօսուցանել և ուրախ առնել որսովք և բազմականօք, և ամենայն պէսպէս մեծարելութեամբք : Այլ ոչ եթէ այնչափ ինչ արժան է զմեծ ինչ որսոյ տեղիս 'ի մերում երկրի առաջնում առնել... մի որսացուք զառաւօտ ինչ որսոց զտեղիս, և զի մի մեծ ինչ նախճիրս որսոց կատարեալ առ 'ի ցոյց առնելոյ... Այլ յերկրին Ապահունեաց, յառաջին մեծի լերինն Մասեաց, անդէն զայն որսացուք. անդուստ՝ որում անուն կոչի քաղաք Աղիորսք ,, . Գ. 20 :

Գ. Ճարտարապետութիւն և Քանդակագործութիւն :

Ոչ հին յիշատակութիւն վասն այսր առ Սարաբանի ժԷ. 747. գտանեմք, ուրանօր վասն Կորդուաց գրէ. "Ջկորդիս գերագոյն է տեսանել 'ի ճարտարապետութիւն և քաջահմուտ յարուեստս գործեաց, որովք զքաղաքս

հարկանեն։ Վասն որոյ և Տիգրան յայսպիսիս փոխեցին 'ի կիր առնոյր զգործած„։ Արդ՝ Կորդիք կամ Կորդուք են նոյն իսկ հայկազունք բնակեալք 'ի Կորդուաց գաւառին աշխարհին Հայոց։ Դիցուք աստանօր յանուանէ զճարտարապետս որք յիշատակին առ մատենագիրս մեր։

## ՏՐԴԱՏ

Առ պատմագիրս մեր 'ի տասներորդ դարուն գտանեմք յիշատակութիւն առ Ասողկայ, որ յիշէ զճարտարապետութիւն առնս այսորիկ, այնչափ քաջ յայսմ արուեստի՝ մինչև անուանի լինել նաև 'ի Բիւզանդիա 'ի մէջ Յունաց սակս իւրոյ ճարտարութեան։ Սուրբն Սոփի, ասէ, պատահմամբ հերձեալ լինէր վերուստ 'ի վայր յերկրաշարժութենէ 'ի նմին. Թուականին յաւուրս Վասիլի կայսեր. "վասն որոյ քաղաքն ջան եդեալ արհեստաւոր ճարտարացն Յունաց առ 'ի վերստին նորոգել. այլ անդ գտեալ ճարտարապետին Հայոց Տրդատայ քարագործի՝ տայ զօրինակ շինուածոյն իմաստուն հանճարով, պատրաստեալ զկաղապար կաղմածոյն, և սկզբնաւորեալ զշէնսն. որ և գեղեցկապէս շինեցաւ պայծառ քան զառաջինն„. Գ. 27։

## ՄԱՆՈՒԷԼ

Ի սկիզբն տասներորդ դարուն յիշատակի առ Թովմայի արծրունւոյ Մանուէլս այս ճարտարապետ, ընդ նմին և կրօնաւոր ոմն քանդակագործ անանուն. զորոց զճարտարութիւն մեծապէս գովէ, մանաւանդ զերկոսին. "Եւ քանզի ճարտարապետ արուեստին (ասէ վասն շինութեան Աղթամարայ) էր Մանուէլն զոր 'ի վեր անդր ցուցաք, այր լի իմաստութեամբ և զօրաւոր 'ի գործս իւր, հրաշակերտէ զեկեղեցին զարմանագործ արուեստիւ. և զոր վերագոյն ցուցաք կրօնաւորն՝ ձեռն տայ նկարագրել (իմա քանդակագործել) զքարինսն ճշգրտագործ նմանահանութեամբ՝ սկսեալ յԱբրահամէ և 'ի Դաւթէ մինչև ցտէր մեր Յիսուս Քրիստոս, զդասս մարգարէից և առաքելոց յօրինեալ ըստ իւրաքանչիւր հանդիսի զարմանագործ տեսլեամբ առեղծագործեալ ջոկագրէ. և 'ի կարգս եկեղեցւոյն զլոլոմս երէոց և զերամս հաւուց միանգամայն և զդասս գազանաց խոզից և առիւծուց, ցլուց և արջուց ընդդէմ միմեանց զարգարեալս՝ զկենդանականին նոցա

յուշ առնելով զմարտ ... և շրջապատ բարունակ մի մանրամասն հատուածովք յօրինեալ կերպագրեալ որթս խաղողաբերս այգեգործովք և գազանօք և սողնովք հանդերձ համակեալք ... Իսկ 'ի չորից կողմանց 'ի վերայ գագաթան սրբութեցն ճշգրտեալ և գործեալ չորից աւետարանչացն պատկերս ... և զփրկչական պատկերն ... 'ի կամարս արևմտական խորանին. Նմանահան ճշգրտութբ յօրինեալ է ընդդէմ փրկչին և զփառաւորդ պատկեր արքային Գագկայ ,,. Ե. 8: Որոց մեծ մասն երևին մինչև ցայժմ քանդակեալ 'ի վէմս, զորմէ կարես տեսանել 'ի Նոր Հայաստան 'ի թղթ. 152. տես և 'ի հին մեծ Հայս 176. ուր պատմի և զպատկերէն Գագկայ թագաւորի:

Յիշատակի առ Լաստիվերտցոյն և շինուածք հին ճարտարացն 'ի նահանգին Տայոց կամ 'ի շրջակայս նորա. որք ցուցանեն թէ ծաղկեալ էր յայնժամ արուեստս այս. զի ասէ վասն կայսեր Վասլի. "Մեծ ուխտ հաստոց տանն Տայոց ... ապականէ գաւառս երկոտասան, յորս էր տեսանել տեսութի ողորմելի և բազում արտասուաց արժանի. քանզի բարձրաձեղուն ապարանք արքունաշէն տաճարաց, որք մեծամեծ ծախիւք և հնարագիտութբ ճարտարաց 'ի սքանչանս տեսողաց և 'ի վայելս ուրախութե բնակողացն շինեալ էին, հրայրեացք անկեալ կործանեցան ,,. գլ. Է:

Զարուեստ նախնի ճարտարապետաց աշխարհիս Հայոց յայտ առնեն նաև շինուածք ինչ՝ որք 'ի տեղիս տեղիս մնացեալ կան 'ի նախնեաց. յորոց մի է և Չօպանքէօփրիւսին 'ի Հասանղալայ, որ 'ի հնումն Յուստինիանուպօլիս. զի որպէս գրեցաք 'ի ստորագրութե Երասխ գետոյ՝ այս գետ բազում ուրեք ոչ ընդունէր կամուրջ 'ի վերայ իւր, որպէս գրեն նախնիք, առ բռնութե իւրոց ջուրցն ընթացից. այլ ոմն 'ի նախնեաց հայկազուն բնակչաց, արուեստիւ հովիւ բայց բնութբ ճարտարապետ, եցոյց զեղանակ ինչ շինելոյ, առ 'ի շեղ արկեալ զհիմն կամրջին առ ոչ այնչափ ընդդիմանալոյ յորձանաց ջրոյն 'ի զայրանալ գետոյն յաւուրս պղտորութե իւրոյ. որով տկարացեալ բռնութե ջրոյն՝ մնաց հաստատուն մինչև ցայժմ: Նոյն իսկ արդի համազգեաց բնաւորութի և յարմարութի առ այս արուեստ ազատական՝ որպէս երևի և այսօր 'ի Բիւզանդիա, 'ի Կեսարիա և այլուր, յորս տեսանեմք ճարտարապետս երևելիս, յայտ առնեն թէ նաև 'ի նախնումն բազմօք ծաղկեալ էր այս արուեստ 'ի Հայաստան:

## Դ. Երաժշտութիւն ։

Արուեստս այս՝ քանզի սիրելի էր յոյժ նախնեաց, զոր և հանապազ վարէին 'ի տօնս, 'ի խրախութիւնս, 'ի պաշտամունս, 'ի մրցմունս, նաև 'ի պէսպէս ուսմունս, որպէս կարեն ընթերցողք տեղեկանալ 'ի դրոց հնախօսաց, յայտ է թէ և յաշխարհի մերում 'ի գործ ածէր յառաջին նահապետաց անդստին բնակելոց. նաև զկնի 'ի սերնդոց հայկազանց ։ Նախնի պատմութիւնք և աւանդութիւնք հին ազգաց՝ էին, ասեն հնագէտք, երգանակաւոր երգք՝ ձայնիւ կամ նուագարանօք երգեալք. ահա սոյնպէս և 'ի մեզ տեսանեմք՝ երգեցիկ գողթնեայց երգօք պատմել զպատմութիւն ազգիս, և զգործս մերոց թագաւորաց[1]. զորոց ինչ ինչ հատուածս կարեն գտանել առ Խորենացւոյն, որ ոչ եգիտ պատմութիւն ինչ յաղագս մերում յօրինեալ բաց 'ի սմանէ վասն նախնի նահապետաց և թագաւորաց մերոց. զոր և ուրեք ուրեք 'ի վկայութիւն բերէ 'ի հաւաստարմացուցանել զբանս Մարիբասայ պատմագրի ։ Իսկ զգործի նուագարանաց գողթնեայց յիշէ Բուզանդ կոչելով. և Յոհաննէս կաթողիկոս զայլ գործի կիթառական աղեղան կոչելով ։ Բայց քանզի այլ ինչ յիշատակութիւն ոչ գտանեմք վասն երաժշտութեան ժամանակի նախնեաց մերոց, անցցուք 'ի գրել վասն յետագայ ժամանակի քրիստոնէութեան, յորում յիշատակին ուրեք ուրեք 'ի գիրս մեր երաժիշտք, և կարգաւորութիւնք ինչ վասն եկեղեցական երաժշտութեան, յորոց զերևելի արդիւնաւորսն յիշեսցուք ըստ կարգի ժամանակագրութեան ։

1 Որպէս և առ նախնի գաղղիացիս Դրուիդք անուանեալքն էին՝ որք զպատմական յիշատակարանս երգէին. և Պարտիկք անուանեալքն՝ առ նախնի գերմանացիս և առ սքովտիացիս. որոց քուրմք երգելով հաւաքէին զքաջութիւնս և զմեծամեծ անցս և զպատերաբութիւնս գէթ իւրեանց ։ Նմանապէս յայսմ Մովսէսի, որ երգովք հաւաքէր 'ի մէջ ժողովրդեան Հրէից զպատմութիւն հրաշալի անցից ընդ ծովն Կարմիր. իսկ քոյր նորա երգովք և թմբկօք 'ի մէջ կանանց Հրէից ։

## ՄԵԾՆ ՍԱՀԱԿ

### ԴԱՐ Ե

*Զսա այսպէս գովէ Ղազար 'ի 29. «Յոյժ առլցեալ անցուցանէր վարժիւք զլաւագոյն գիտնովք Յունաց, եղեալ կատարելապէս հմուտ Պարսկական տառիցն»:*

*Ի մէջն եօթներորդ դարու[1] յաւուրս Գ. Ներսէսի Շինողի ժողովով սահմանեցաւ կարգաւորութիւն ինչ յաղագս երգոց շարականաց 'ի պատճառս տարբերութեան շարականաց աւուրն վարդավառի, ըստ պատմելոյ Կիրակոսի որ ասէ. «Զի յամենայն եկեղեցիս յամենայն օր մի պաշտօն լիցի ըստ աւուրն խորհրդոյ». և վասն այսորիկ «ընտրեցին զայս իմաստունս, զի շրջեսցին ընդ ամենայն աշխարհս Հայոց, և զնոյն կարգաւորութիւն հաստատեսցեն»:*

## ՍԱՄՈՒԷԼ

### ԴԱՐ Ժ

*Երրորդ առաջնորդ ուխտին Կամրջաձորոյ. զորմէ Ասողիկ Գ. 7. «Զկնի նորա իմաստակն Սամուէլ, բազմաշնորհ 'ի գիտութիւն գրոց սրբոց և յերգս երաժշտութեան»: Զսմանէ համարիմ գրեալ և առ Մատթէոսի 'ի թիւն ՃԿԹ. ուր ասէ թէ 'ի շէնն. Թաղեցաւ Գէորգ վարդապետ ուռճեցի «'ի մեծ յանապատն 'ի Կարմնջաձոր, մօտ 'ի գերեզման Սամուէլի վարդապետին և խաչկաց, որ էր երաժիշտ 'ի վերայ ձայնաւոր եղանակաց»:*

## ԹԷՈԴՈՐՈՍ ԱԼԱԽՕՍԻԿ

### ԴԱՐ ԺԱ[2]

*Զսմանէ գրէ Մատթէոս ՃԽԷ. Նստուցանէին կաթողիկոս 'ի Հոնի «զտէր Թէոդորոս զդրան եպիսկոպոսն տեառն Սարգսի Հայոց կաթողիկոսի, զմեծ երաժիշտն ձայնա-*

1 Կան և Մովսէսի քերթողահօր Նեբէլ ոմն երաժիշտ, առ որ գրեաց բանք յաղագս երաժշտական ձայնից: Թուղթ Գրիգոր մագիստրոսի:

2 Ի սմին դարու յիշատակի և Դա-

ւորաց, որ մականուն ասի Ալախօսիկ »: Եւ 'ի թիւն ՇՀԴ. գրէ. «Ցայսմ ամի (չիք) մեռաւ մեծ 'երաժիշտն և սուրբն սրբոյ եկեղեցւոյ տէր Թորոս կաթողիկոսն Հայոց, և թաղեցաւ 'ի Հռոմկլն մօտ 'ի տէր Սարգիս »[1]:

Ի սմին մետասաներորդ դարու 'ի Սանահնին պայծառացեալ էր այս արուեստ. զոր յիշատակէ Գրիգոր մագիստրոս 'ի պատասխանին, որ առ թուղթն սանահնեցւոց. ուր գովելով զնոսա յայլ գործս՝ և զայս յաւելու ասել. «Եւ որք 'ի վարժարանսն հաւատոքական և երաժշտական, զնոցայն զմտաւ ածեալ հանգէս և զմրցումն և զգեղեցիկ մոլութիւս »:

Այլ որպէս ծանուցանէ նա ինքն Մագիստրոս 'ի մեկնութեան քերականին, յայսմ դարու կամ սուղ ինչ յառաջ լեալ էր նորոգութիւն ինչ 'ի հայկական չափաբերութիւն՝ թէ սակս չափոյ ոտից քերթածոց, և թէ սակս չափուց երգոց, առեալ յարաբացւոց կամ յիսմայելացւոց. «Եւ եթէ ուստի, ասէ, այսմ արուեստի եղեալ տեղեակ, (ասեմ) յիսմայելականացն գտեալ զսա. բազում ջանիւ կրթեցաք նախ զգրոյն և լեզուին, և ապա արուեստին »: Եւ ապա պատմելով թէ արաբացիք յայնմ ժամանակի զիարդ յօժարամիտք էին յուսմունս և զօրաւորք, տեղեակ էին, ասէ, «թուականութեան, երաժշտականութեան, երկրաչափութեան, աստեղաբաշխութեան ... բժշկութեան, ստոյգ անկութեան »:

Այլ որ զարմանալին է՝ իբր ընդ նոյն ժամանակս նմանապիսի նորոգութիւն լեալ տեսանեմք նաև առ Հրեայս, առեալ նմանապէս յարաբացւոց, որպէս գրէ ռաբբի Եէհուտահ Խալլէվի ծաղկեալն իբր 'ի 1140. 'ի գիրսն իւր անուանեալ Խուզրի. որոց և նախնի երաժշտութիւն զոր երգէին 'ի տաճարին, զԴօրիկեանն բերէր զեղանակ, ասէ Կղեմէս աղեքսանդրացին[2]. որ էր ազգ ինչ երաժշտութեան հին յոյժ, վսեմ և վայելչական Աստուծոյ:

1 Սարգիս և Թէոդորոս այս կաթողիկոսք 'ի Հռմկ, չեն գտանեալք 'ի կարգս հայրապետաց կաթողիկոսաց:

2 Ի Ցաճախապատում գիրս իւր 'ի Է: Անկ համարիմ յաւել աստանօր, զի նաև յոյժ մերումն երաժշտական կարգս ժողովրդականաց Հրէից. որպէս 'ի յուղարկաւորութիւնս բարեաց, մեծ ինչ նմանութիւն գտանի ընդ եղանակս երգոց մերոց:

## ԵՂԻԱ ՎԱՐԴԱՊԵՏ

### ԴԱՐ ԺԲ

Որ 'ի Հաւուց Թառէ · արար ինչ ինչ կարգաւորութիւն 'ի վանս իւր · զորմէ գրէ Կիրակոս · «Այն որ գեղեցիկ կարգաւորեաց զկարգ վանաց իւրոց, որպէս Թէ ամենեցուն ընդ մի բերան հնչել, եԹէ ցած և կամ բարձր · և ոչ հարստահարել ընկեր զընկեր»:

## ԽԱՉԱՏՈՒՐ ՎԱՐԴԱՊԵՏ

Առաւել արդիւնաւոր գտաւ յերաժշտութեան, զի զնոյն եղանակաց զարդէն հնարեալ՝ սփռեաց յարեւելեան կողմանս մեծին Հայոց · «Էր 'ի տնտեսութեան սուրբ եկեղեցւոյն (Գետկայ, ասէ Կիրակոս) և սուրբ վարդապետն Խաչատուր Տարօնացի, առաջնորդ սուրբ ուխտին որ կոչի Հաղարծին, այր սուրբ և առաքինի, և գիտութեամբ հռչակեալ, մանաւանդ երաժշտական արուեստիւ . . . Սա եբեր զնոյն 'ի կողմանս արեւելից, զանմարմին եղանակն 'ի մարմին ածել, զարարեալն իմաստնոց · որ ցայն ժամանակս չև էր սփռեալ ընդ աշխարհ · սա եկեալ գրեաց և ուսոյց բազմաց · և բազում հանդիսա եղև 'ի ծանր աշխատութեանց»:

## ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ

Ընդ արդիւնաւորս յերաժշտական արուեստին 'ի դէպ համարիմ դասել և զերանաշնորհ հայրապետս զայս ոչ սոսկ սակս առաւելութեան յօրինուածոց շարականաց և տաղից, որք յայտնի են ամենեցուն, և զորոց չէ մեր աստանօր բանս, այլ սակս նորագիւտ իմն մուծանելոյ նորա յարուեստ եղանակաց և չափմանց: Զի որովհետև նախայիշատակեալ բան Մագիստրոսին յայտ առնէ յայնմ ժամանակի յայսպիսի արուեստ ինչ ինչ առեալ մերոց յարաբացւոց, և քանզի 'ի նմին ժամանակի նաև Հրէից էր առեալ յարաբացւոց, զոր նշանագրէ Եէհուտահ Խալլէվի ռաբբին 'ի հռչակաւոր գիրսն իւր Խոզրի, տպագրեալ 'ի Պուքստորֆիոսէ, Թուի ինձ Շնորհալւոյն ընդհետ երԹեալ յերգսն իւր այսր օձոյ Խոզրի գրոց, որում

և էր ժամանակակից . և ըստ այնմ ոճոյ յօրինեալ զիւր շարականն . և յայս բերիմ կարծիս 'ի բանից Կիրակոսի, որոյ 'ի պատմելն զյօրինուածոյ շարականաց Նորին, "Բազում ինչ կարգեաց, ասէ, յեկեղեցիս քաղցր եղանակաւ խոսրովային ոճով շարականս": Կամելով ասել, թէ յօրինեաց ըստ ոճոյն՝ որպէս ցուցեալ էր 'ի խոսրովային գիրս, տարբեր 'ի կազմուածոյ այլոց շարականաց, որոց չէր ըստ այնմ ոճոյ: Եւ արդարև 'ի շարականսն Շնորհալւոյն տեսանի չափակցութիւն բառից ընդ եղանակին համեմատեալ, և միաձայնութիւն իմն դիւրացուցիչ և ախորժալուր, զոր ոչ գտանեմք 'ի շարականս [1] այլոց:

## ԿԱՆԱՅՔ ՅԻՇԱՏԱԿԵԱԼՔ ՅԱՐՈՒԵՍՏՍ

Յովհաննէս կաթողիկոս յիններորդ դարու յիշատակէ զսոցանէ . "Եւ նկարակերպ կանանց ոստայնանկունեց բազում բազմականս կազմեալ", . զորս տե՛ս . Սմբատ արքայ տարաւ յընծայ առ Յաւսուփ ոստիկան . որպէս և այլուր յիշէ . "Նկարակերպս կազմուածս բազմականաց կարմրութեամբ որդանից": Որք էին գործած հայատանեայց, զի ստորև զձեռագործս օտար ազգաց որոշէ, կոչելով գործ Հռոմէական ճարտարաց: Բայց Կիրակոս յետ երկոտասաներորդ դարուն յետ յիշելոյ զոստայնանկունի և զնկարակերտունի կանանց, յիշէ նաև գործած ինչ 'ի մազոյ այծից. զորմէ ասելովն՝ նոխզագոյն և զարմանալի տեսողաց, տայ իմանալ թէ նոքա գիտէին յայնժամ զայն արհեստ կակղացուցանելոյ՝ որ այժմ 'ի Հնդիկս ծանօթ է: Գիտէին և արհեստ գործելոյ անտի նիւթ ինչ ազնիւ և ճարտա-

1 Չէ մեր գործ յանդուգնել յիշել աստանօր և զյօրինօղս շարականաց. այլ զանուանս նոցա ընթերցօղք կարեն գտանել 'ի Շարակնոցի, յոր անուն կոչի առ մեզ այն երգարան՝ որոյ երգք ընդ սաղմոսաց ասին: Զի զայս տարբերութիւն գտանեմք ընդ մէջ շարականաց և այլ երգոց. շարականք երգին յետ ասելոյ կամ զողջոյն տունս սաղմոսին, որպէս այժմ երգեմք. և կամ յետ ասելոյ քանի մի տուն սաղմոսին կրկնելով, որպէս երգէին 'ի հնումն: Արդ՝ եթէ ըստ բանիցն Եղիշէ կոչուած 'ի մեկին . քերթող . 'ի շարիցն յարմարաւոր ասացուք զիւր անուն, "Եւ են եղանակքն, ասէ, որպէս զշարս ոգւոց շարամանեալ ընդ միմեանս", այս շարք կամ կարգ 'ի գէտ թուի ինձ առնուլ առ շարս կամ առ կարգս սաղմոսաց հայելով. այսինքն ասես կապեալ գոլոյ 'ի շարս սաղմոսաց, որպէս Ողորմեայքն, կամ Տէր երկնիցոյն և այլն՝ թէ շարականն յօրինողին, և թէ երգողին. զի յօրինողին պէտք են ըստ սաղմոսին զատուցանել զշարս իւր երգոյն, և երգողին պէտք են ստանալ առ շարս սաղմոսին, և յետ աւարտելոյն երգել: Բայց այլ անմանոյն երգք՝ քանզի չունեին զայս շարս կապակցութեան, ոչ ընդ շարս սաղմոսաց և ոչ ընդ շարս երգոյն, ոչ ասին շարականք:

րագործ. որպէս և Հնդիկք բազում աշխատութեամբ և ճարտարութեամբ կակղացուցանելով գործեն զայն շալ այնչափ ազնիւ և անուանի յայժմու ժամանակիս: Առ 'ի քաջ խելամուտ լինելոյ նաև ազգատոհմի տիկնոջն այնորիկ զորոյ զձեռագործսն պատմէ նա ինքն Կիրակոս՝ բերցուք զողջոյն զբան նորա: Եղև, ասէ, աւարտ եկեղեցւոյն Գետկայ "Ձեռնտուութեամբ Վաղթանկայ խաչենեցւոյ տեառն Հաթերքոյ և եղբարց իւրոց Գրիգորոյ և Գրիգորիսի և Խոյդանոյ և Վասակայ և այլոց իշխանաց բարեպաշտաց, որդւոց քրոջն Դաւթի և Սադունին: Նաև քոյր սոցա՝ որում անուն էր Արզու խաթուն, կին Վաղթանկայ Հաթերքոյ. սա բազում ինչ օժանդակ եղև. արար և վարագոյր գեղեցիկ՝ գառներօք իւրովք, ծածկոյթ սուրբ խորանին զարմանալի տեսողաց 'ի մազոյ այծեաց չոկչագործելոց ներկեալ պէսպէս և զանազան՝ գործ քանդակերպ և նկարեալ պատկերօք, ճշգրտագոյն անկուածովք տնօրինականօք փրկչին և այլ սրբոց, որ հիացուցանէր զտեսողսն: Եւ որք տեսանէին՝ օրհնութիւն տային Աստուծոյ, որ ետ կանանց իմաստութիւն ոստայնանկութեան, և համճար նկարակերտութեան, որպէս առ Յոբն ասացաւ":



# ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ

## ԿՐՕՆ

### ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ

ԲԱՆԶԻ 'ի գրելոցս յայսմիկ եղև սկիզբն բնակութեան առաջին նահապետաց աշխարհի լինել 'ի Հայաստան, յայտ անտի է թէ նաև սկիզբն ճշմարիտ կրօնի աստուածպաշտութեան եղև 'ի Հայաստան: Անդ կանգնեցաւ առաջին սեղան ճշմարտին Աստուծոյ, և մատուցաւ առաջին ողջակէզ զոր մատոյց Նոյ նահապետ իբրև ել նա 'ի տապանէն յետ համայնատարած հեղեղաց ջուրցն. ողջակէզ անուշահոտ հաճոյական արարչին, մինչև զգալի օրինակաւ բացատրել մեզ սուրբ գրոց ասելովն. «Եւ հոտոտեցաւ տէր Աստուած 'ի հոտ անուշից»: Լերինք և դաշտք Հայաստան աշխարհիս էին՝ որք լուան և ընկալան զառաջին զայն օրհնութիւն աստուածային փոխանակ առաջին անիծից. «Ոչ ևս յաւելից անիծանել զերկիր վասն գործոց մարդկան ... այսուհետև զամենայն աւուրս երկրի սերմն և հունձք»: Երկիր Հայաստան աշխարհիս եղև տեղի այնր մեծի դաշնադրութեան Աստուծոյ ընդ մարդոյ. և երկինք նորա նշան նոյն դաշնադրութեան զոր ցուցանէր Աստուած 'ի խօսելն ընդ Նոյի. «Այս է նշան ուխտին զոր ես տաց ընդ իս և ընդ ձեզ..... զաղեղն իմ եդից յամպս, և եղիցի 'ի նշանակ յաւիտենական ուխտին... երևեսցի աղեղն իմ յամպս, և յիշեցից զուխտ իմ որ ընդ իս և ընդ ձեզ»: Յետ այնորիկ մնաց նոյն ճշմարիտ աստուածպաշտութիւն 'ի Հայաստան յորդիս և 'ի թոռունս Նոյի հանդերձ բարեպաշտաց բարեկամութեամբ վարուց 'ի միջոցս իբր հարիւրամեան ժամանակի՝ արժանապէս ոսկի դար կոչեցելոյ:

Նաեւ յետ որոյ ցրուեցան բնակիչք 'ի Հայաստանէ 'ի

Սենաար, յաշտարակաշինութեան անդ 'ի նմին տեղւոջ 'ի Սենաար եղև սկիզբն կռապաշտութեան ըստ ամենայն քաջ հնախօսաց. ընդ որ ոչ խառնելով նախնին մեր Հայկ, անդրէն դարձաւ 'ի հայաստան[1]: Եւ դառնալովն անդ՝ ուր բնակէին մնացորդք առաջին նահապետաց՝ որք մնա-ցեալ կային յուրեանց յառաջին հաւատոյն, յայտնի ծա-նուցանէ թէ ինքն ևս Հայկ ունէր զառաջին ճշմարիտ աստուածպաշտութիւն: Զայս իսկ և ստոյգ և աներկեան նշանագրէ Վարդան 'ի ներբողեան Լուսաւորչին ասելով. «Ոչ պաշտեաց (Հայկ) ընդ եօթանասուն և մի նահապետս երկրի զպատկերն Բելայ, այլ խրախուսեալ յԱստուած՝ տապալեաց զնոյն ինքն զկենդանին (Բէլ) զառաջնորդն պատկերապաշտութեան»:

## ՅՕԴՈՒԱԾ Ա

### Ժամանակ կռապաշտութեան:

### ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆ

ՀԱՅԱՍՏԱՆ աշխարհ նախ առաջին ծաղկեալն աս-տուածպաշտութեամբ՝ զոր մոգութիւն կոչէին առաջինքն, և քանի մի գիտութիւք, որպէս ասացաք այլուր, վաղ կորոյս զայլ ամենայն ուսմունս և զփայլ առ գիտութիւնս, բայց զու-սումն ճշմարիտ աստուածպաշտութեան՝ անաղարտ: Զի սկսեալ 'ի Հայկայ մինչև ցԱնուշաւան նահապետ մեր, որ էր յաւուրս Յակոբայ նահապետին, ոչ գտանեմք 'ի մերում նշան ինչ կռապաշտութեան, այլ միայն վասն որոյն Անուշա-ւանայ գրէ Խորենացին Ա. 20. թէ «Ձօնեալ էր ըստ պաշտամանց 'ի սօսիսն Արամանեկայ որ յԱրմաւիր»: Բայց ձօնելս այս որդւոց ըստ սուտ թէ ըստ ճշմարիտ աստուածպաշտութեան էր՝ ոչ որոշէ ինչ. քանզի գիտեմք թէ 'ի սկզբան անդ յառաջին ժամանակս յորժամ ոչ գոյր տակաւին այնչափ ինչ շինութիւն՝ զանտառս 'ի կիր առնու-ին փոխանակ տաճարի. 'ի ծառախիտ տեղիս և յանտառս սեղանս կանգնէին և պաշտէին զԱստուած. յորոց սակս

1 Տես 'ի գլուխն Բնակչաց, հատոր Ա. երես 302:

համարին և պաշտամունքն 'ի գիրս Ծննդոց [1] առ ժամա-նակօք Աբրահամու ։ Ուստի և մարթ էր նոցա զԱնու-շաւան 'ի մանկութեան իւրում ձօնել նուիրել ճշմարտին Աստուծոյ, որոյ սրբազան կանգնեալ կայր 'ի սօսեաց ան-տառին զոր տնկեալ էր Արամանեակ յԱրմաւիր [2] ։ Իսկ զոր գրէ, զսօսափիւն սաղարթուցն առնուլ 'ի հմայս, զայն յետադայից տայ հայկազանց, զոր և տիրապէս ա-ռեալ՝ մարթ է կոչել աւելորդապաշտութիւն քան թէ կռա-պաշտութիւն ։

Նոյնպէս չէ պարտ կռապաշտութիւն տալ Հայկայ վասն բանին՝ որով Կադմոս կոչէ զնա «Ոմն մեծդ Դիւցազանց»․ Խորենացի Ա․ 11․ զի այս բան է Մարիբասայ կռա-պաշտի որ զայն պատմէ․ կամ բան քաղդէացւոց մատե-նին ուստի էառ Մարիբաս․ քանզի 'ի ժամանակի կործա-ման աշտարակին և ցրուելոյ մարդկան 'ի վերայ երկրի՝ ոչ միայն յաշխարհի մերում, այլ և ոչ յաշխարհս օտա-րաց գոյին դիք, այսինքն է մարդիկ աստուածացուցեալք, թող թէ սերունդք դից յորդւոց յորդիս, և անտի սե-րեալ ազն դից ։ Սոյնպէս և ոչ վասն բանիցն Շամիրամայ որ առ Խորենացւոյն Ա․ 15․ անկ է կռապաշտ համարել զՀայս․ զի միայն Շամիրամայ համբաւն էր թէ աստուածք կենդանացուցին զԱրայ, և նորա գործ էր դարձեալ կանգնել պատկեր յանուն դիւաց և զոհիւք պատուել ։ Իսկ հաւանել Հայոց բանից նորա և դադարել 'ի պատե-րազմէ՝ թուի առաւել վասն մեծի պատուոյն նորա զոր տայր Արայի յետ մահուանն, և վասն սիրոյն նորա 'ի շինութիւն աշխարհիս Հայոց՝ քան թէ վասն պատիր բանից նորա, թէ աստուածք լիզելով կենդանացուցեալ իցեն զԱրայ ։

Նոյնպէս և առ ժամանակօք Արայի և Անուշաւանայ մուծեալ համարեսցուք 'ի Հայս զկռապաշտութիւն ; լինի նոյնպէս անագան ուրեմն մուծեալ յաւուրս Խահակայ

1 Ծննդոց ժգ․ 3․ 4․ [illegible] վասն [illegible] Աբրահամու, թէ գնաց «մինչև յաւե-ղին, ուր էր խորան նորա զառաջինն ընդ Բեթէլ և ընդ Անգէէ․ 'ի տեղի սեղանոյն զոր արար անդ զառաջինն․ և կարդաց անդ Աբրամ զանուն տեառն Աստուծոյ»։ Եւ 'ի 18․ «Եկն բնա-կեցաւ առ կաղնեաւն Մամբրէի, որ է 'ի Քեբրոն․ և շինեաց անդ սեղան տեառն Աստուծոյ»։ Ցայլում Թարգ-մանութեան գնի առ [illegible] Մամբ-րէի, զի [illegible] մարթ է [illegible] կաղնեաց և [illegible] ։ Ցայլում հոմանի էր, [illegible] մեկ-նիչք, [illegible] կաղնեաց ուր շինեաց Աբրահամ սեղան․ այս [illegible] էր առ [illegible] յորոյ վերայ կա-ռուցեալ էր Քեբրոն քաղաք ։

2 Ըստ այսմ առասպելք և 'ի սուրբ գիրս զՍամուէլ ձօնեալ նուիրեալ Աս-տուծոյ 'ի մանկութեան իւրում 'ի մօ-րէն իւրմէ յԱննայէ ։

և Յակոբայ նահապետացն Հրէից. ընդ որ չէ պարտ զար-
մանալ, զի յայտ է 'ի սուրբ գրոց թէ նաև յայլ աշխարհս
ինչ չէր մուծեալ յախժամ կռապաշտութի. այլ սուտ և անդ-
գոյր տակաւին աստուածպաշտութի. որպէս յԵգիպտոս՝
յաւուրս Աբրահամու [1]. և յերկրին քանանացւոց, յո-
րոց էր Մելքիսեդեկ թագաւոր Սաղիմայ և քահանայ
Ճշմարտին Աստուծոյ [2]. և 'ի Գերարա [3]. որպէս նաև առ
Մադիանացիս [4] մինչև ցաւուրս Մովսէսի. և յերկրին՝ ու-
տի էր Բաղաամ:

Յետ մտանելոյ ևս կռապաշտութեն 'ի Հայս՝ պարտ է
ասել, թէ նաև յախժամ չսնէին մերքն այնչափ ինչ
սէր առ պաշտամունս նոցա. զի զաստուածացուցանելն
զՎահագն զորդին մեծին Տիգրանայ՝ խորհնացին Վրաց
ընծայէ յասելն. "Այլ ասէին զսա և աստուածացեալ.
և անդ յաշխարհին Վրաց զսորա չափ հասակի կանգ-
նեալ պատուէին զոհիւք". ա. 31: ԶՇամբայ Բագարատ
և զազգատոհմն նորա առ հասարակ թողեալ էին հայկա-
զունի թագաւորք մեր մնալ 'ի ճշմարիտ աստուածպաշ-
տութեան իւրեանց յորմէհետէ եկեալ էր նա 'ի Հայս.
զի Վաղարշակ արշակունի բռնադատեաց զնա "թողուլ
զօրէնս հրէութեան, և պաշտել զմեհեանս. զոր չառեալ
յանձն՝ ըստ կամաց թողու զնա արքայն Վաղարշակ".
բ. 8: Նոյն իսկ արքայն Վաղարշակ գանգատ գրէ առ
եղբայր իւր վասն այսր, թէ չիք աստ յաշխարհիս Հայոց
"և ոչ մեհենից պաշտամանք". ա. 9:

## Ա. Արևապաշտութիւն.

Նորահնար բան համարելի է զոր ասեն ոմանք, թէ
Ասորիք և արաբացիք յայն սակս սկսան պաշտել զաստեղս,
զի երկիր իւրեանց գոլով անապատ աւազուտ, 'ի տուըն-
ջեան ոչ տեսանէին ինչ արժանի տեսութե, իսկ 'ի գիշերի
միշտ պարզ գոլով տեսանէին զգեղեցիկ տեսիլ աստեղաց,

1 Ծննդ. ժբ. 17. 19.
2 Ծննդ. ժդ. 18.
3 Ծննդ. ի. 3. 6. 11: Եւ իա. 22. 23:
4 Մադիանացիք երկու ազգ էին, մին բնակեալ առ Կարմիր ծովու ոչ այնչափ հեռի յԵգիպտոսէ. սերեալ յԱբրահամէ, աստուածպաշտ, ուստի էր Յոթոր աներ Մովսէսի: Իսկ միւսն բնակեալ յարևելս հիւսիսոյ Պաղեստինու, մերձ 'ի ծովն մեռեալ և մերձ առ մովաբացիս, սերեալ 'ի Քետուրայ 'ի կրտսեր որդւոյ Նորին. որ պաշտէր զԲէլփեգորն զաստուած մո-վաբացւոց:

նմին իրի ընտանութեան պաշտել զնոսա։ Քանզի յԱրաբիա բաց 'ի յանապատից են և քաղաքաւ տեղիք բարեբերք և զուարճալիք որպէս յայլ աշխարհս. և յայն տեղիս է ընտակութիւն նոցա և ոչ 'ի ցամաքն անապատս. և զի արևապաշտութիւն ոչ սկսաւ յԱրաբիա և յԱսորիս. այլ նոքա այլուստ առին։ Այսպէս հարկ է ասել՝ թէ 'ի պատճառս ազդեցութեան երկնային մարմնոց 'ի բաղում ինչ իրս որ յերկրի տեսն, սկիզբն եղև 'ի պաշտօն առնուլ զարև և զաստեղս. որպէս յերկրագործութեն, յորում կարի պէտս ունէին մարդիկ գիտել զժամանակ սերմանելոյ և հնձելոյ, անկելոյ և քաղելոյ, որ կախեալ կայր առ հասարակ զընթացից արևու և լուսնի. սոյնպէս և զընթացից նոցուն կախեալ կայր փոփոխումն պարզութեն և պղտորութեն օդոյ, անձրևոյ և երաշտութեն։ Վասն որոյ որպէս առաջին ուսումն յաշխարհի եղև ուղիղ վարդապետութիւն զընթացից արևու և լուսնի, որ Մովսէսի ասացաւ, որպէս գրեալ եմք 'ի գլուխն Դպրութեն, սոյնպէս և առաջին աղխտութիւն, յորում անկան մարդիկ, եղև թիւր վարդապետութիւն կամ ճանաչումն զարևէ. որ սկսաւ գրեթէ 'ի սկզբան անդ. և յայնմանէ զհետ եկն պաշտօն տանել արևու և լուսաւորաց՝ որ կոչեցաւ Սաբայութիւն կամ Սաբէութիւն. Ելեալ 'ի բանէս սորա, որ առ եբրայեցիս նշանակէ սպայ, զօրք, գունդ, բազմութիւն աստեղացն նմանեցուցեալ բանակի զօրաց. վասն որոյ ուրանօր գրեալ կայ 'ի սուրբ գիրս "Տէր սաբաւօթ կամ զօրութեանց", անդ եբրայեցիք իմանան՝ տէր աստեղաց երկնից, առ 'ի ոչինչ ցուցանել զաստեղս՝ զորս հեթանոսք իբրև զաստուածս պաշտէին. և տէր և արարիչ նոցին ցուցանել զԱստուած՝ զոր ոչն ճանաչէին։ Ի սկզբան անդ սապայութիւն էր ասեն աստուածպաշտութիւն, երկրպագելով Աստուծոյ յարևն և 'ի լուսաւորս. ապա անցմամբ ժամանակաց փոխեցաւ և դարձաւ 'ի պաշտօն արևու։ Այլ այս է նոյնացուցանել զսաբէութիւն ընդ առաջին մոգութեն, որ էր ուղիղ աստուածպաշտութիւն։

Բայց 'ի գրելոցս և այլ իմն պատճառ սկզբնաւորութեն արևապաշտութեն յաւելուլ հաւանական երևի մեզ. այն է՝ զի ոչ սակաւք 'ի սրբոց հարց ասեն, թէ քրիստոնէից սովորութիւն է յաւանդութէ անտի առաքելոց՝ յաղօթելն դառնալ ընդ արևելս. մինչև զեկեղեցիս ևս ընդ արևելս կանգնել. և ածեն պատճառս՝ զդրախտին ընդ արևելս լինելն. որպէս զի յիշեսցեն զտեղի նորա, յորմէ զրկեցաքն. և դարձեալ զի զղջացեալ անձամբ աղաչեսցեն զԱս-

տուած, զի փոխանակ երկրաւորին՝ զերկնաւոր դրախտն
տացէ 'ի ժառանգութիւն։ Արդ զայս այսպէս գիտացեալ,
յոյժ հաւանական երևի առաւել հնագոյն ասել զայս սո-
վորութիւն, ոչ միայն յառաքելոց՝ այլ անդստին յառաջին նա-
խահարց սկսեալ. որոց յիշելով զաքսորիլն առաջին մար-
դոյն 'ի դրախտէն՝ 'ի հարկէ և ինքեանք ընդ կողմն դրախ-
տին դառնալով աղօթէին՝ որ ընդ արևելս նոցա անկա-
նէր յայնժամ, հառաչելով և բաղձալով առ այն։ Նա
մանաւանդ 'ի դէպ իսկ է զդոյն սովորութիւն յԱդամայ
անտի ասել սկիզբն կալեալ. և կարի իսկ քաջ. քանզի
բնակելով նորա յանդիման դրախտին՝ յաղօթել իւրում
'ի հարկէ միշտ դառնայր 'ի կողմն դրախտին ընդ արևելս.
յիշէր զտեղի իւրոյ կենակցութեան ընդ Աստուծոյ յիւրում
վիճակի անմեղութեան, հառաչէր և յոգւոց հանէր.
այլ ընդ արևելս երկիր պագանելով Աստուծոյ ըստ դրից
դրախտին, նոյն սովորութիւն 'ի հարկէ անցանէր հետ-
զհետէ և առ յետագայս յորդւոց յորդիս։ Այս և անտի
իսկ յայտ է՝ զի ռաբբի Մայմոնիտն զսկիզբն Սաբայութեան
հանէ մինչև 'ի Սէթ որդի Ադամայ. արդ Սեթայ մտացն
վախճան յայտ է թէ չէր պաշտել զարևն՝ այլ զԱս-
տուած. բայց քանզի ընդ արևելս դառնալով կատարէր
զաղօթս իւր և զերկրպագութիւն, կոչեցին զայն Սաբայու-
թիւն։ Նոյն սովորութիւն 'ի հարկէ էանց և առ յետագայս սե-
րունդս. մինչև անցմամբ ժամանակաց մոռացեալ զուղիղ
վախճանն՝ կարծեցին առ նոյն ինքն արևն աղօթել. որով
զայն երկրպագութիւն զոր նախնիքն տային Աստուծոյ ընդ
արևելս երկրպագելով վասն դրից դրախտին և վասն ա-
ղաչելոյ զճշմարիտն Աստուած, ինքեանք նմին իսկ արևու
մատուցին. յորմէ և իբր ինքնակամ ածան յարևապաշ-
տութիւն։ Եւ զոր ասեմս՝ անտի ևս յայտ է, զի նաև յառաջ
քան զՔրիստոս 'ի նախնի ազգաց հեթանոսաց գտանեմք
զայս սովորութիւն 'ի կիր արկեալ։ Երոդոտոս գիրք ա.
վասն Մեգուց ասէ աղօթել ընդ արևելս դառնալով. Վիտ-
րուվիոս 'ի Դ. գիրսն վասն բագնեաց գրէ կանգնեալ ընդ
արևելս[1]. նաև Վիրգիլիոս յիշէ զաղօթեսն ընդ արևելս։
Եւ այսպէս ընդհանուր տեսանեմք զսովորութիւն ընդ ա-

[1] Հրէից սեղանք և խորանք ոչ հայ-
էին ընդ արևելս. զի որպէս նշանա-
գրէ Սբէնչէր՝ ամենայն ծէսք զոր Աս-
տուած հրամայեաց Հրէից, կարգեալ
էին առաւել 'ի զատուցանել և 'ի յո-
րոշել յայլոց կռապաշտից՝ զի մի՛ նմա-
նեսցին նոցա։

ունել նոցա զայնոսիկ և ոչ յարարչէն ։ Ջնոյն յայտ առ-
նէ և այն, զի յորժամ Վաղարշակ տաճար կանգնեաց 'ի
Հայս արևու և լուսնի ըստ գրելոյ Խորենացւոյն Բ. 8.
“Իսկ յետ այսր ամենայնի մեհեան շինեալ յԱրմաւիր,
անդրիս հաստատէ արեգական և լուսնի „, ոչինչ ընդդի-
մութիւն, կամ շշնջիւն լուաւ 'ի Հայոց յաղագս այնորիկ.
յայտ է թէ արդէն իսկ ինքեանք պաշտէին, բայց ան-
փոյթ էին ամենևին 'ի պաշտամունս ։ Միայն մարթ է
ասել, թէ այն պաշտօն եւս եկամուտ էր 'ի Հայս յօտար
ազգաց 'ի զանազան ուսուցչաց Պարսից, որք Զօրոաստր
անուանեալք՝ յայլ և այլ տեղիս քարոզէին զարևապաշ-
տութի և զկրակապաշտութի. և հայկական բնաւորութե
յօժարամիտ լեալ յապականութիւն դրացի ազգաց՝ դիւ-
րաւ ըմբռնէր նոցա ։ Առ այս մարթ է բերել և զբան Սարա-
բանի. որոյ 'ի Ճառէն զհայաստանեայց ժա. 532. ասէ.
“Զամենայն զօր պաշտեն Պարսք, զնոյն մեծադիւր պաշտեն
և Մարք և Հայք „. Իսկ 'ի Պարսից առեալ ցուցանել կա-
մելով ։ Այլուստ ինչ տեղեկութի առեալ վասն սկզբնաւո-
րութե արևապաշտութե, գրեցուք աստ առանձին զպաշ-
տամանց արևու, և զայլ և այլ գիտելիս զնմանէ ։

## ԱՐԵՒ կամ ԱՐԱՄԱԶԴ

Արևապաշտութիւն այն զոր հաստատեալ կամ հանդի-
սացեալ ասացաք 'ի Վաղարշակայ պարթևէ 'ի Հայս,
տևեաց մինչև ցՏրդատ թագաւոր 'ի ժամանակս քրիստո-
նէութե. քանզի վասն Բագրաւանայ սպարապետին մեր-
նոյն Տիգրանայ ասէ Խորենացին. “Հիւրկանու եղբաւն
խնդրեալ 'ի Բագրաւանայ, երդնու նմա յարեգակն, և
յամենայն պաշտամունս իւրեանց երկնայինս և երկրայ-
ինս, և յարև Արտաշիսի և Տիգրանայ „. Բ. 19 ։ Յետ
այնորիկ յորժամ Արշամ թագաւոր մեր կամեցաւ զԵ-
նանոս բագրատունի յաստուածպաշտութե դարձուցանել
'ի կռապաշտութի, բռնադատեաց երկիրպագանել արե-
գական, որպէս ասէ նոյն մատենագիր Բ. 24 ։ Եւ թէ այս
արևապաշտութի 'ի Պարսից եկեալ իցէ առ մեզ, յայտ անտի
է՝ զի արևու և պարսկական անուն ետուն մերքն. այն է Ա-
րամազդ. որ է այլայլութի պարսկական բառիս Որմիզդ. զոր
քանզի նաև Օրօմազդ գրեն, յայտ անտի է՝ թէ և անունդ
Արամազդ նոյն է ։ Այլ ստոյգ է թէ Պարսիկք զարեւն
անուանեն Միհր. բայց քանզի և զՈրմիզդն համարին

ակիզըն կամ աստուած բարւոյ, զոր հրով շրջապատեալ լինել ասաց Զօրօաստրըն իւրեանց, նմին իրի և պատուի-րեաց հուր մշտավառ պահել և զարեւն պաշտել, յայտ է թէ նաև Որմիզդ կամ Օրօմազդ անուամբ իմանայցին և զարեւն. յորմէ և մերոց դէպ եղև Արամազդ կոչել ոչ միայն զԴիոսն՝ այլ նաև զարեւն։ Բայց զԱրամազդն փո-խանակ Դիոսի եւս առեալ, որպէս ունիմք առնել ասորե, մարթ է և յայնժամ վասն արեւու իմանալ. զի Մակրո-բիոս հեթանոս մատենագիր 'ի Սատուրնեան գիրս իւր գիրք Ա. գլ. 17. և 'ի հետեւեալսն՝ առ արեւն վերաբե-րեալ վկայէ գրեթէ զամենայն աստուածս՝ որք ընդ երկ-նիւք են, ասէ զօրեղ արեւուն առաջնորդ այլոց լուսա-ւորաց. ըստ այսմ առէ զարեւն կոչեցին Ապողոն. Օսիր. Պան կամ Յանոս. Սատուրնոս և Եօվիս, որ է Դիոս։

Այլ նաև պարտ է գիտել, զի բազում անուանք զոր զա-նազան ազգք եդուն արեւու՝ են անուանք պատուոյ. որ-պէս Բաւհաղ; Միհր, Համիլքաս, Մողոք, Մեղքոմ. և նշանակեն տէր, թագաւոր, սրբազան։ Նոյն իսկ զանուանս Իլէ՛ որով Յոյնք կոչեն զարև, ածանցեալ ասեն 'ի փիւնի-կեան բառէս Էէլ, որ աստուած նշանակէ առ նոսա, որպէս և գրէ Սերվիոս. «Ամենեքեան 'ի նոյն կողմանս զարև պաշտեն, որ 'ի նոցին բարբառ Հէլ ասի, ուստի ածան-ցեալ է և Հէլիօս, որ նոյն է Իլիոս»։ յորմէ և լատինն սոլ։ Ըստ այսմ և անուանքս Տիրոս, արամ, արամազդ, նշանակեն արև, տէր, աստուած։ Առ արտաքին մատենագիրս արեւն կոչեցաւ մականուամբ նաև Աստուած Օմանոս. յորոյ մե-հենին հուր պահեալ մշտավառ ասէ Ստրաբոն ԺԵ. 733. կոչեցաւ նաև Ապողոն Քաղէոս[1]։

Պաշտօն արեգական այնչափ ընդհանուր տարածեցաւ 'ի հնումն, մինչև գրեթէ հասարակ ամենայն ազգաց լինել կրօն, և 'ի նոցունց նաև 'ի յունաստանն անցանել. «Թուի ինձ (ասէ Պղատոն 'ի Կրատիլեանն) նախնեաց Յու-նաց միայն զնոսին պաշտել աստուածս՝ զորս այժմ նաև բազումք 'ի բարբարոսաց պաշտեն՝ զարև, զլուսին, զեր-կիր, զաստեղս և զերկին»։ Բայց գտան և ազգք, զոր օրինակ Մասագետք, որք ոչ այլ ինչ՝ բայց միայն զարև պաշտէին, որպէս գրէ Հերոդոտոս գիրք Ա. գլ. 216. ո-րում և երիվարս զոհէին։ Այլ 'ի զանազան ազգս այլ և

1 Տես 'ի ձեռն կալեալ յաղագս աստուածոց մոլորութեանց, եդեալ 'ի սկիզբն Թուոց։

այլ էր օրինակ պաշտամանս. զի զԲահաղ, որ է արև, 'ի բացի պաշտէին. միայն զի պարսպապատ էր տեղին, և հուր մշտավառ անդանոր. բայց ոչ յամենայն տեղիս արևելեայց էր հուր. որպէս և դրօշեալն իսկ արևու ոչ էր նոյն յամենայն տեղիս: Եգիպտացիք կոթողս և բուր-գունս կանգնէին և նուիրէին արևու. որոյ 'ի ձև սրածայր վերջանալով բերէ զօրինակ և զնշան ճառագայթից ա-րևու: Երբեմն դրօշեալն արևու ձևացեալ էր 'ի կերպարան մարդոյ, այլ եղջիւր խոյոյ 'ի գլուխն ունելով 'ի նշան ճա-ռագայթիցն. որպէս և երբեմն գլուխ քառադիմեան մարդոյ: Պարսք ըստ գրելոյ Ստրաբոնի՝ 'ի նախնումն ոչ բագինս ունէին և ոչ արձանս. այլ 'ի գլուխս լերանց առնէին զաղօթս, մինչև ապա շինեցան ատրուշանք նոցա. սոյնպէս գրէ վասն նոցա և Երոդոտոս, ոչ մեհեան ունել և ոչ պատկեր: Ըստ այսմ մարթ է իմանալ և վասն մերոց առաջին հայկազանց, բայց անեւալ մինչև 'ի ժամանակս Վաղարշակայ. զորոյ զգանգատանս վասն այսր նշանագրե-ցաք 'ի վերոյ: Որպէս այլ և այլ ազգք զանազան ծիսիւ պաշտէին[1] զարև, նոյնպէս և զանազան անուամբ տային նմա, յորոց զոմանս յիշէ և Աւսոնիոս յասելն 'ի դիմաց ա-րևու. "Ոգիգիա զիս կոչէ Բագոս. Եգիպտոս՝ Օսիրիս. արաբացիք՝ Ադոն": Այլ առ հմտութիւն ընթերցողացն ածեմ առ անդէտս 'ի մի վայր զամենայն անուանս ա-րևու զկոչեցեալսն յայլ և այլ ազգաց. զի և բանք մատենա-գրաց անտեղին բացայայտ:

Աբէլ: Հին բանաստեղծն յոյն գրէ, թէ առ Եգիպտա-ցիս այսպէս կոչեցաւ Բագոսն. իսկ Բագոս անուամբ եր-բեմն իմանային զարևն:

Ադոդ և Ադադ: Այսպէս կոչէր արևն առ Ասորիս:

Ադոն: Առ փիւնիկեցիս և քանանացիս էր արև. որ յԵզեկիէլ Ը. 3. 5. կոչի Պատկեր նախանձու, զանձն նո-րին յաւէժ առնելով, որպէս պատմէին արևապաշտք. և 'ի 14. կոչի Թամուզ. այլուր Բէլփեգոր, այլուր Մելքոմ կոչի:

Աբիոնա: Առ փռիւգացիս սոյին անուամբ պաշտիւր արև:

Ալիլատ: Երոդոտոս ասէ թէ արաբացիք սոյին անուամբ

[1] Երկրպագութեք արևու [illegible] ուղիղ կանգուն կալեալ 'ի բերան առ-նէին 'ի համբոյր. որպէս և մինչև ցայժմ առնեն Եզիտիքն: Տես 'ի Նոր Հայաստան 346: Սոյնպէս առնեն և կռապաշտ Պարսիկք մնացեալք 'ի Հնդիկս: Նաև վասն երկրպագութեան Վէնուս աստուածոյն այսպէս առնել գրէ Ապուլէոս 'ի Դ. այլակերպ":

Բ կամ Փ , որով կոչեն Թամուզ և Քամօս , ստար է յարմա-
տոյ այսր անուան ։

ՄԻՀՐ ։ Էր արև առ Պարսիկս . որոյ դրօշելոյն եօթն՝ըդ-
րունք էին ասեն յանուն եօթն մոլորակաց կոչեցեալք ։
Սովին անուամբ մեհեան և առ մեզ գտանէր՝ յիշատա-
կեալ առ Ագաթանգեղոսի յԾԴ . թէպէտ և որդի Արա-
մազդայ կոչի . «Գայր հասանէր 'ի Մրհական մեհեանն
անուանեալ որդւոյն Արամազդայ 'ի գիւղն զոր Բա-
գայառիճն կոչեն » ։ Այսպիսի նմանութեամբ դրօշեալ երևի
լինել և առ մերս 'ի գաւառն Փայտակարան նահանգին՝
որ գուցէ ասկս եօթն դրանցն կոչեցաւ Եօթնփորակեան
բագինք ։ Տես սուրբ և զՄոլոք ։

ՄՈԼՈՔ ։ Նշանակէ իշխան կամ թագաւոր . որ է մի 'ի
հին անուանց արևու , պաշտեալ առ Ամմոնացիս ։ Ըստ
ասելոյ Հրէից՝ 'ի դրօշելոյն Մոլոքայ եօթն սենեակք էին
փոքրիկք . հինգ վասն հնգից մոլորակաց . իսկ երկու մը-
նացեալքն վասն լուսնի և արևու , որում և տղայս զոհէ-
ին . այլ զայս անուն ընդ արևու և ընդ լուսնի միանգամայն
շփոթեցին ։ Իսկ ըստ ոմանց առ փիւնիկեցիս և առ կար-
թագինեցիս Մոլոք՝ է Սատուռնոսն ։

ՈՐՕՏԱԼ ։ Ոմանք գրեն և սովին անուամբ կոչեցեալ
յարաբացւոց զարևն . զոր մարթ է կարծել 'ի հոռ. բառէն
ածանցեալ ։

ՌԷՄՄՈՆ կամ ՌԷՄՆՈՆ ։ Պաշտեալ 'ի Դամասկոս . որ հա-
ւանական է թէ լիցի արևն . Ռէմ՝ նշանակելով բարձր . իսկ
Օն առ եգիպտացիս էր արև ։ Բայց ոմանք համարին լինել
Սատուռնոսն , որ է երևակ աստղն ։

ՌԷՄՓԱՆ , ըստ մեզ ՀՌԵՄՓԱ ։ Քիւան առ Հրեայս , Քէյ-
վան առ արաբացիս՝ է աստղն երևակ , զոր 'ի թարգմանու-
թեն եօթանասնից այլայլութեամբ ինչ ընթեռնուն Ռէմփան .
որպէս է տեսանել 'ի մարգարէութեան Ամովսայ և 'ի գործս
Առաքելոց . այսպէս համարին Սքէնչէր և այլք ։ Բայց
այլոց հաւանական երևի թէ Քէյուան , Քէյմն , Քէվան , Ռէ-
փան կամ Ռէմփան՝ են զանազան անուանք արևու . զի
ստոյգ է թէ արևն էր գլխաւոր աստուածն առ զանազան
արևելեան ժողովուրդս , որպէս Ցոյց ծանուցանէ . այլ աստ-
ղըն երևակ՝ որ և կոչի Սատուռնոս՝ չէր այնչափ ինչ ծա-
նուցեալ , բայց եթէ առ աստեղաբաշխս . որում չիք ինչ
ցոյց պաշտելոյ ։

ՍԱՏՈՒՌՆՈՍ ։ Փիւնիկեցիք , կարթագինեցիք , ըստ Սերվիո-
սի նաև ասորեստանեայք՝ արև համարեցան , և զՍատուռ-

նոս և զարև նովին անուամբ պաշտեցին արեւելեանք. այլ ըստ Մակրոբիոսի՝ նաև Յունաց Կռոնոսն և լատինացւոց Սատուրնոսն էր արև. ըստ որում որպէս արեւն զտարերս և զփոփոխութիւն տնօրինէ ասէին՝ յառաջ և յետս խաղալով ընթացիւք իւրովք, նոյնպէս և ժամանակն զոր նախնիք Սատուրնոս կոչեցին, ինչպէս և չափ ընթաց ժամանակի. զի յունարէն Քռօնոս՝ է ժամանակ: Յոյնք յետ աշակերտաց մեծին Աղեքսանդրի զԲահաղ փիւնիկեցւոց շփոթեալ 'ի մի ընդ Սատուրնոսի կամ Կռոնոսի՝ զԲահաղն համբաւեցին լինել Սատուրնոս. նաև ընդ Սատուրնոսի կարթագինեցւոց նոյնացուցին:

Քռոնոս: Աստուածն ամմոնացւոց և մովաբացւոց. որ և նմանութիւն ինչ ունի ըստ հնչմանն ընդ անուանս Շէմս, որ է արև:

Օսիրիս: Երոդոտոս գիրք Բ. գլուխ 44. ասէ թէ եգիպտացիք զԴիոնիսոսն՝ որ է Բագոս, համարէին լինել Օսիրիս. իսկ Օսիրիս նոքա կոչէին զարև, որպէս յայտ է ամենեցուն. և զորմէ գրէ Դիոդորոս սիկիլիացի հատ. Ա. թղթ. 14. թէ նախնիք եգիպտացւոց զերկուս աստուածս կացուցին, զարև և զլուսին. զարեւն կոչեցին Օսիրիս, որ թարգմանի բազմաչեայ. զի ճառագայթիւք իւրովք իբր աչօք տեսանէ և լուսաւորէ[1]: Այլ թէ ո էր սա որ ապա արև կոչեցաւ, գրեալ եմք յառաջին յերես 56:

Ի բազմութենէ այսչափ անուանցս արեւու պարտ է իմանալ թէ նաև զզանազան անձինս զորս յիշեցաք, Արև անուամբ պաշտեցին. որք են Բագոս կամ Դիոնիսոս. Նեբրովթ կամ Բէլ. Դիոս կամ Եօվիս. Ադամ կամ Թամուզ: Ապա ոչինչ ընդդէմ է՝ թէ նաև 'ի նախնիս Հայոց Արամազդ անուամբ դէպ եղև պաշտել. թէպէտ և զՈրմիզդն և զԴիոսն նովին անուամբ պաշտէին. որպէս յիշէն Եւսեբի և Իմաստասէրն, զոր ունիս տեսանել ստորև: Եւ զի տեսաք զբազմութիւն ազգաց արևապաշտից և զծաւալումն արևապաշտութեան յայնչափ զանազան աշխարհս, 'ի նոյն մոլորութիւն անկեալ երբեմն և զաշխարհ մեր՝ կնքնին լինի իմաստասիրել:

Օկնի թէպէտ բարձաւ այս ընդհանուր դենս յաշխարհ

1 Որ կամի առաւել ինչ գիտել վասն սորա կռապաշտութեան. 'ի Հիւտու՝ կռապաշտութեան նախնեաց՝ կայէ հայ- որ յաղագս կրօնից Պարսից. 'ի Պէաել. 'ի զանազան ճառս Կալմէտի՝ որ ժիէ, և յայլ մատենագիրս գիցաբա- 'ի մեկնութեան սուրբ գրոց. 'ի Ճիլոալ նութեանց, զորս 'ի ձեռին ունէաք 'ի սոսս. 'ի Վոսսին՝ որ յաղագս սկզբնա- գրեաց դայութեն:

հէս Հայոց յընդունելն զքրիստոնէութիւն 'ի ձեռն սրբոյն Գրի-
գորի, բայց զարմանք այն է՝ զի հետք ինչ նորա մնաց յազ-
գի մերում՝ յաւէտ 'ի Միջագետս. որ և երբեմն երբեմն
'ի վեր երևէր։ Որպէս յաւուրս սրբոյն Մեսրոպայ 'ի հին-
գերորդ դարուն. և յաւուրս Գրիգորի մագիստրոսին 'ի
մետասաներորդ դարուն. զորոց յիշատակէ 'ի Թուղթն որ
առ կաթողիկոսն Ասորւոց 'ի գիրսն զԹոնդրակեցւոց.
«Եւ այլ ամենք 'ի Ջրադաշտ մօտ են՝ մեզ պարսկականք. և
այժմ 'ի նոցունց դեռևս Արևփոխնապաշտք, զոր Արևորդիսն
անուանեն. և ահա են յայդմ գաւառի ('ի Միջագետս)
բազումք, և ինքեանք քրիստոնեայք զինքեանս յայտնապէս
կոչեն. բայց թէ որպիսի մոլորութ̃ և անառակութ̃ վարին,
գիտեմք՝ զի ոչ են անտեղեակ»։ Յիշատակին և յաւուրս
Շնորհալւոյն յերկոտասաներորդ դարուն նոյնպէս 'ի Միջա-
գետս 'ի Սամոստիա քաղաք. որոց դառնալ կամելով 'ի քրիս-
տոնէութիւն, գրեաց սուրբ հայրապետն առ Թորոս քորե-
պիսկոպոս ասելով. «Եհաս 'ի ձէնջ գիր առ մեզ յաղագս
Արևորդեացդ՝ որք 'ի քաղաքի ձերում բնակեն, եթէ կա-
մին և աղաչեն 'ի հօտն Քրիստոսի խառնել զինքեանս. զի որպէս
ազգաւ և լեզուաւ 'ի տոհմէ Հայոց են, յօժարին զի և
հաւատով և հոգւով 'ի նոյն միաբանութիւն հաւատարեա-
ցին ընդ նոսա»։ Վկայէ ապա 'ի ժամանակէ անտի կռա-
պաշտութեան մնացեալ նոցա. «Որպէս ազգն Հոռոմոց Պո-
գոմելոք անուանեալք մնացին խաւարեալք 'ի լուսոյ
աւետարանին . . . այսպէս և Արևորդիքդ յազգս մեր 'ի
'ի մնացին սատանայական խաւարին մնացեալք՝ ոչ կամե-
ցան լուսաւորիլ աստուածային լուսովն 'ի ձեռն լուսաւոր-
չին մերոյ սրբոյն Գրիգորի»։ Ստորև յիշատակէ ինչ և 'ի
պաշտամանց նոցա. «Այգ ծառ՝ որ բարտի անուանի, 'ի
կռապաշտութեն ժամանակին 'ի պաշտօն առեալ էր նոցա.
յորս և դեռ մնանէին, և 'ի մարդկանէ երկրպագութի
ընդունէին։

Այս ամենայն յիշատակութիւնք յայտնագոյնս հաստա-
տեն զբանն մեր զոր խօսեցաք 'ի գլուխն Դպրութ̃ յանուն
Մոգ, թէ նախնի մոգութին առաւել իմն օրինակաւ մնաց
'ի հարաւային սահմանս հայաստանեայց և 'ի Միջագետս
մինչև ցԲաղաամ, որ էր 'ի Միջագետաց, և մինչև 'ի
գալուստ Քրիստոսի. ուստի եկին մոգքն յերկրպագու-
թիւն նորա. և ապա 'ի յաջորդս նոցա ուղիղ վարդա-
պետութիւն այն աստեղաբաշխութե որ գայր 'ի սկզբանն
անտի՝ առ սակաւ սակաւ ապականեալ՝ փոխեցաւ 'ի մոլո-

յութիւն արեւապաշտութեան. և այնչափ ծաւալեալ տարրա-
ցաւ 'ի սիրտս ընակչաց, մինչև գտանի 'ի Միջագետս տեղիք
ինչ' որք և ոչ 'ի ժամանակս Լուսաւորչին Թողին զմոլորու-
թեան իւրեանց. զի ըստ մոլորութեան խառնեալ էր և ա-
ղիղ աստեղագաշտութեան. 'ի Թողուլն զայն' կարծեցին Թո-
ղուլ և զուղղուլն. և այս 'ի ժամանակէ անտի Լուսաւոր-
չին ունեալ հանապազորդեաց մինչև 'ի ժամանակս Շնոր-
հալւոյն: Այլ որ զարմանալին է' նաև զկնի այնորիկ մինչև
ցայսօր ուրեք ուրեք ծնցեալ տեսանեմք, այլ մեծս 'ի Մէ-
ջագետս և 'ի շրջակայս' իսկ 'ի ընկ իւրեանց տեղիս.
զորս և ոչ խոստանի Անկեթեմուրին կարգաց բառնալ. "Էին
'ի Մէրտին (որ է 'ի Միջագետս, ասէ Թոմա Մեծոփեցի
վասն Անկեթեմուրին,) աւերեաց զքաղաքն . . . . . և չորս
գեղ Արևորդի կապապաշտ, զՇօլն, զՇմըրշախ, զՍաֆարի,
զՄարաղի խարկա կործանեաց: Եւ յետոյ դարձեալ սա-
տանայի հնարիւք բազմացան 'ի Մէրտին և 'ի յԱմիթ":
Յորոց գտանին մինչև ցայժմ 'ի սահմանս երկուց գաւա-
ռացս որք են 'ի Միջագետս [1]. գտանի նաև հետք ինչ
արեւապաշտութեան և առ Եզիտիս [2], որք ըստ ամենայն' են
հին քաղդեացիք, և ըստ այլոց' ցեղ մի 'ի Քրդաց:

### Բ. Կրակապաշտութիւն:

Պաշտօն կրակին Թուի յարեւապաշտութենէ զհետ եկեալ.
իբր այն թէ հուրն օրինակ կամ նմանութիւն ինչ իցէ արեւու:
Ի գիրս մերոց ոչ պատահի ինչ որոշակի վասն պաշտելոյ հայ-
կազանց զհուր. բայց յիշատակութիւնք ինչ յայտնի ցուցանեն
զայս. զի Խորենացին Բ. 77. ասէ վասն Արտաշրի Պար-
սից Թագաւորի, թէ յորժամ խաղաղացոյց զաշխարհս
Հայոց, "Զմեհենիցն պաշտամունս աւելեալ եւս յորդո-
րէ. այլ և զհուրն որմզդական, որ 'ի վերայ բագնին' որ 'ի
Բագաւան, անշէջ հրամայէ լուցանել": Ուր այնպէս ցու-
ցանէ' թէ արդէն կայր 'ի Բագաւան բագին վասն պաշ-
տելոյ զհուր. այլ 'ի խառնակութեան ժամանակի' որ 'ի մա-
հուան մեծին Խոսրովու' քանզի շիջեալ էր, վասն որոյ և
Արտաշիր յետ տիրելոյ 'ի վերայ աշխարհիս' հրամայեաց
անդրէն վառել զնոյն հուր և անշէջ պահել: Զայս յայտ

1 Տես 'ի Նոր Հայաստան 'ի Թղթ. 353:
2 Տես 'ի Նոր Հայաստան 'ի Թղթ. 346:

տանէ և ճանապարհորդութիւն Հռիփսիմեանց գրեալ 'ի խորենացւոյն. որոց յետ գալոյ յերկրպագութիւն պատկերին աւրամօրն' որ էր յերկրին Անձևացեաց, "Գնացին, ասէ, 'ի գլուխ լերինն Պաղատոյ, զոր ասէին սատարիկ յայժ 'ի նման լեռալ գիւղացն, տուն Արամազդայ և Աստղկայ մեծարէին. և յաճախ պաշտամամբ տօն կարդային.... 'ի կողմն հարաւոյ 'ի կատար լերինն որ 'ի վայր իջանէ, տուն կրակի անյագ. Հրոյ անդադար տանն աստուածոց. և քարինս հատեալ յակն յորդաբուղխ աղբերն' որ բղխէ յատն լերինն' որ կոչի աւեղին Բուլթ. քանզի վառէին զկրակն քոյրն, և զաղեխուր եղբայրն,,[1]: Այս և 'ի պարթևաղեան կոչեցեալ դրամոցն յայտ է. որք և Թուլին մանաւանդ Թէ արշակունի Թագաւորաց մերոց դրամք իցեն, զի յայտնի անստնին 'ի վերայ նոցա Հայկական տառք, որպէս տեսցուք 'ի գլուխն Դպրութեան. քանզի 'ի մի կողմն դրամոցն այնոցիկ անուանի պատկեր Թագաւորի. իսկ 'ի միւս կողմն բագին կանգնեալ ընդ մէջ երկուց մարդուց, և 'ի վերայ նորա Հուր վառեալ: Այլ քան զամենայն ինչ յայտնի նշան այն է, զի ամենայն ազգք որք արևապաշտք էին' պաշտէին և զկրակն[2]: Արդ քանզի մերքն զարևապաշտութիւն յատարաց առին, որպէս յիշեցաք 'ի վերոյ, յայտ է Թէ և զկրակապաշտութիւն առին միանգամայն 'ի նոցանէ:

Այլ Հիւսուս զսկիզբն կրակապաշտութեան կամելով նշանակել 'ի պատմութեան կրօնի Պարսից 'ի Թղթ. 139. ասէ Թէ յետ որոյ աստուածային Հրամանաւ 'ի տաճարն Երուսաղէմի կանգնեցաւ խորան մշտավառ Հրոյ, 'ի նմանութեն

1 Պարծի ասել Թէ պաշտէին զկրակն և զՋուրն որպէս եղբայր և քոյր. որ է միաբանութիւն կրակապաշտից: Զի կրակապաշտք և զՋուր պաշտէին, որ ըստ Հիւսուսի ոչ էր պաշտօն տանել, այլ էր, ասէ, Հոգալ զարմանել զնորեալն տարբեր իւր օգտակարս. վասն որոյ և զգուշանային յապականել: Եւ այս բերէ զաւանդութիւն Պլինիոսի Լ. 11. "Տրդատ մոգն 'ի գալ իւրում առ Ներոն (կայսր), ոչ կամեցաւ նաւարկել, ոչ համարձակեալ արկանել Թուք 'ի ծովու, և այլ կարեւոր մարդկան ապականել զմաքրութիւն,,: Զոր Պլինիոս տատանեալ մոգ կոչէ, զնոյն Տրդատ' Թագաւոր Հայոց կոչէ Հիւսուս, նոյն համարեալ որ յիշատակի 'ի Լ. գիրս Տարեգրութեան Տակիտոսի: Սա մի 'ի Թագաւորաց անուանի է' զոր Հռոմայեցիք գնե-ին 'ի կողմանէ իւրեանց 'ի մասին ինչ աշխարհին Հայոց: Ըստ այսմ և Վեստեան կուսանք 'ի Հռոմ յաւուր կռապաշտութեան որպէս կարգեալ էին 'ի պաշտօն և 'ի պահպանութիւն Հրոյ, նոյնպէս կարգեալ էին, ասէ, և 'ի պահպանութիւն աղբերց և ամենայն ջրոց մաքրութեան. բայց յայտ է պաշտօնէին նոցա:

2 Յոյնք պաշտէին զհուրն Եփեստոս անուամբ, իսկ Լատինք Վեստա անուամբ: Նուման, ըստ գրելոյ Պլուտարքոսի, զմեհեանն Վեստայի կանգնեաց 'ի Հռոմ բոլորակաձև 'ի նմանութիւն աշխարհիս, և 'ի մէջ նորա Հուր մշտավառ 'ի նշան տիեզերականին Հրոյ:

այնմ և հեթանոսք փոյթ տանին հուր մշտավառ պա-
ծել. զայս նոր ծես յաւելլին 'ի վերայ իւրեանց հին Սա-
պայութեան, որ էր պաշտել զարև, զմոլորակս և զաստե-
ղըս։ Բայց որպէս այլք գրեն՝ յոյժ սխալլի յայսմ Հիտաւս.
զի հուրն 'ի մեհեանս հեթանոսաց վառէր պաշտելոյ ա-
ղագաւ. իսկ հուրն 'ի տաճարն Երուսաղէմի վառէր անշէջ
առ 'ի պէտս պաշտամանն Ճշմարտին Աստուծոյ։ Զի յոր
ժամ Աստուած եցոյց և հրամայեաց զօրինակ մատու-
ցանելոյ զողջակէզն, և Ահարոն քահանայապետ սկիզբն
արար կատարել զնոյն, յառաջնում նուագի անդ մա-
տուցանելոյ՝ էջ հուր երկնաւորեալ յատուածուստ, որ
ծախեաց զամենայն ողջակէզն, որպէս գրեալ կայ 'ի գիրս
Ղևտացւոց Թ. 24. զայն հուր աստուածառաք՝ արժա-
նի համարեցան պահել խնամով անշէջ 'ի կրակարան խո-
րանին, զի 'ի նոյն պէտս վարեսցեն։ Տես թէ որպիսի
մեծ խտիր կայ ընդ այս և ընդ պաշտօն կրակին առ հե-
թանոսս. և թէ որչափ այսու անապական լինի սկզբնաւո-
րութի կրակապաշտութե, զոր պատմութիւնք բազմօք նախնա-
գոյն լինել ցուցանեն քան զժամանակ Մովսէսի, յորոյ
աւուրս էջ այս հուր երկնաւորեալ։

Բոշէնսինէ Սիւալ անուն ոմն՝ աւանդեալ կանոնագրոյն 'ի
սկզբանն անտի ժամանակաց բերելով զսկիզբն և զպատճառ
պատուելոյ մարդկան զհուրն, նորայլուր իմն պատմէ մատ-
ցանելն։ Նախ քան զջրազմանալ, ասէ, մարդկան 'ի վերայ
երկրի՝ համօրէն աշխարհ անդարձ թողեալ անաստուա-
ծեալ իմն էր առ հասարակ մեղսասածխտ խնջոյս մո-
լախտաւք և ծառովք խիտ առ խիտ վարակեալ։ Այլ
յանկարծ յաւուր միում յիջանել կայծականց յերկնից
էարկ հուր յանտառս, որ եգիտ իւր ճարակ զաշխարհ
ամենայն։ Մարդիկ որք տեսանէին զհուրն անտպառ ծը-
գեալ ծաւալեալ ընդ ամենայն երկիր, այնպէս համա-
րեցան յաղթողութեամբ ժամանակաց՝ թէ հուրն էական
մասն է աշխարհի, սկիզբն և պատճառ ամենայնի. վասն
որոյ և պատուել սկսան։ Բայց ապացոյցք նորա և հիմունք
այսր խնչնաստեղծ պատմութեան՝ են անուանք անդգաց,
տեղեաց, քաղաքաց և զանազան ցեղուց մարդկան, զորս
նա ածանցեալս ասէ զամենայն 'ի բառէս հուր. զոր օրի-
նակ են՝ անուն Ուր քաղաքի 'ի Միջագետս. անուն երկ-
նից, որ առ Յոյնս կոչեցաւ Ուրանոս. անուն հին քրմաց
ազգի 'ի Գաղղիա, որք կոչեցան Դրուիդք. և այլք բազումք.
մինչև զողջոյն մատեանն զայն լնուլ այսպիսի անուամբք,

ծիգն եղեալ անորոշական և անհարազատ մեկնաբանութե̃ 'ի վրայ ածանցեալս ասելով առ հասարակ. որով և զընթեր-ցօղն 'ի գերև հանէ բովանդակին 'ի յուսոյն զոր խոստանայ գեղեցիկ խորագրաւն մատենին. որ է "Սկզբնաւորութի-ւն աշխին ընկերութեց, ժողովրդոց, գիտութեց, արուես-տից և լեզուաց նախնեաց և արդեաց". տպագրեալ գաղ-ղիարէն 'ի Փարէզ 1769: Ի գրեալսն սորա սոսկ է Ուր քա-ղաքին Միջագետաց 'ի վրայ առնուլ զհուր անուն, քանզի գտանեմք նախնի և վաւերական վկայութիւն որք զայս ցուցանեն. որովհետև աշխին անուն քաղաքիս 'ի ժա-մանակաց անտի Աբրահամու նահապետին՝ կոչէր Ուրհայ. զկնի ընկալաւ զանուանս Եդեսիա: Հրեայք 'ի բառարանին Թալմուտայ՝ 'ի հուր արկեալ, ասեն, Ներրովթայ զհայր երբեմնց զԱբրահամ յայն քաղաք՝ որ Հուր կոչեցաւ: Ապուլֆարաճ զԱռանն զեղբայր Աբրահամու ասէ այրեալ 'ի յՈւր քաղաքի: Եւ 'ի գիրս Ծննդոց ժա. 31. ըստ այլ թարգ. ասի՝ "Եհան զնոսա 'ի Հուր (կամ Ուր քաղաքէն) քաղդէացւոց"[2]: Այլ վասն պատճառաւն Հուր կոչելոյ քաղաքիս՝ թէ զայս գիտաք պատճառ և թէ զայլ ինչ՝ զոր սորա ունիմք յիշել, հաւաստի է 'ի վրայ առնուլ զհուր անուն. արդ՝ քանզի դիւրին լինէր անգուստ յՈւր-հայ քաղաքէն Միջագետաց մտանել կրակապաշտութե̃ն յաշխարհ մեր 'ի Հայաստան, որ էր իբր մի սահման հա-մարեալ ընդ Միջագետս:

Այս այսպէս պարտ է ասել, թէ մերքն յորժամ ընկալան զարևապաշտութիւն՝ ընկալան և զկրակապաշտութիւն 'ի սահմա-նակցաց իւրեանց. զոր օրինակ 'ի Պարսից. վասն որոյ և

1 Անուն Աբրահամու նահապետին այնչափ սեփականեալ է այսր քաղա-քին Ուրհայոյ՝ զի մինչև ցայժմ զը-տանի յիշատակ նորա յայս քաղաք: Տես 'ի նոր Հայաստան զՈւրֆա քա-ղաք 'ի Թղթահամարն 332. անս և 'ի հին Միջագետս:

2 Որպէս առ մեզ, նոյնպէս և առ եբրայեցիս բառս հուր կամ ուր՝ նշա-նակէ հրատ: Տես վասն այսր զոր ինչ գրեցաք 'ի գլուխն Դպրութ̃ կերպս 38: Փոշար և Կլերիկոս զայս բառ Ծննդ-ոց՝ առնուլ համարին վասն Ուր-հայ քաղաքին որ 'ի Միջագետս էր. իսկ զոր առաջ գիրք 'ի քաղդէացւոց աշխարհի գնեն, ընդարձակ առնու-ասեն, զաշխարհ քաղդէացւոց, որպէս առնուլն բառդամ անգամ, 'ի նմա իմանալով և զհամօրէն Միջագետս: Յայտ է այս և 'ի Գործոց է. 2. ուր նախ զելանելն Աբրահամու 'ի Խառա-նէ, ասէ՝ եթէ Աստուած երևեցաւ Աբրահամու մինչդեռ էր 'ի Միջա-գետս նախ քան զբնակել նորա 'ի Խառ-ռան. այսպ սոսրև վասն Աբրահամու ասի ելեալ ոչ 'ի Միջագետաց, այլ յերկրէն քաղդէացւոց, և այսպ եկեալ բնակել 'ի Խառան: Նաև Փոկնոսիոս 'ի խօսելն զաշխարհէն քաղդէացւոց՝ ցուցանէ լինել առհասարակ Հայոց. յորմէ յայտ է թէ յուսաբս նորա Մի-ջագետք և աշխարհ քաղդէացւոց նոյն էր համարեալ: Տես և 'ի մեկնու-թիւն Կալմետի. Ծննդ. ժա. 31:

հուրն որմզդական կոչի պարսկական անուամբ. որ է ասել արամազդական, այսինքն արեգակնային. ընկալան նաև 'ի Միջագետաց յՈւրհայ քաղաքէն, ուր 'ի վաղուց անտի գոյր կրակապաշտութիւն. ընկալան գուցէ և 'ի կապադովկացւոց. ուր ըստ գրելոյ Ստրաբոնի ժե. 733. բազմութիւն կային կրակապաշտ մոգուց, և բազում մեհեանք պարսկական աստուածոց, տրուշանք պարապապատք, և 'ի մէջ նոցա բագին լի մոխրով և հուր մշտավառ. ուր և յիշէ զգլխաւորս մոգուց՝ յերկուց կողմանց առկախեալ ունելով աւելն պատեալ զշրթամբք և զծնօտիւք: Այս լինէր առէ 'ի մեհեանս Անահտայ և Օմանայ, զորոյ և զարձանն շուրջ ածէին [1]: Իսկ վասն տրուշանաց զորս կանգնեցին Պարթևք յաշխարհի մերում 'ի ժամանակս քրիստոնէութեան, որք և փութով քանդեցան, յիշեսցուք զնին:

## ԼՈՒՍԻՆ

Լուսինն 'ի կարգի պաշտամանց հեթանոսաց դնի երբեմն որպէս Արտեմիս յաստուածուհի, որ ըստ Հայոց Անահիտ, և ըստ հռովմայեցւոց Դիանա. զոր ոմանք համարեցան և Աստղիկ կոչել, որ է Ափրոդիտէ՝ այլ չաստուածուհի: Յայտ է թէ և զլուսինն պաշտէին 'ի հայաստան. զայս ցուցանէ բան Խորենացւոյն 'ի յիշելն Բ. 19. զամենայն պաշտամունս երկնայինս. զոր չէր մարթ ասել՝ եթէ մի միայն զարև պաշտէին. նոյն յայտ առնէ և 'ի Ճանապարհորդութ. Հռիփսիմեանց. ուր յԱնձևացեաց երկրին, առէ, "տուն Արամազդայ և Աստղկայ մեհեանքն": Արդ որպէս Արամազդ էր արև, այնպէս և Աստղիկ կարծի լինել երբեմն լուսին: Այլ քան զամենայն ինչ տուեալ անտի իսկ յայտ է՝ զի ամենայն ազգ որ զարև պաշտէր, նոյն և զլուսին պաշտէր: Ուր էր կուռք Բահաղու՝ որ է արև, անդ լինէր և կուռք Աստարոտայ՝ որ է լուսին: Տաճարքն նուիրեալ էին Բահաղու. իսկ անտառքն, որ առ արևելեանս փոխանակ տաճարի 'ի կիր առեալ լինէր, նուիրեալ

[1] Հեթանոսք համարէին մեղքելոյ սակս սրբութե., կամ 'ի խորհրդոց և քաւութեան զանել յարժամ ստոնոսին ընդ բոց հրոյ վառելոյ 'ի պատիւ աստուածոց սորոց: Այս սովորութեան մնացեալ սեաւին առ Յոյնս 'ի կրակավառութեանն՝ զոր առնէին 'ի տանի Յոհաննու մկրտչի. այլ այս 'ի բանից Քրիստոսի վասն Յոհաննու՝ թէ "Նա էր ճրագն՝ որ լուցեալ էր և ծագէր. և դուք կամեցարուք ցնծալ առ ժամանակ մի 'ի լոյս նորա": Յով. Ե. 35.

էին լուսնի ։ Բահաղու կամ արեւու բագինք միշտ 'ի բար-
ձունս 'ի բացի 'ի պարապապատ տեղւոջ. իսկ Աստարտայ
կամ լուսնի միշտ յանտառս 'ի մթանն ընդ վարսաւոր
ծառովք. բայց այս անտառ կից լինէր ընդ պարիսպն Բա-
հաղու ։ Նաեւ սուրբ գիրք 'ի յիշելն զԲահաղ՝ ընդ նմին
յիշեն եւ զԱստարտէս, նաեւ զզօրութիս երկնից. կամելով
յայտնել զմիտս հեթանոսաց, որք պաշտէին զարեւ եւ զլ-
լուսինն իբրեւ թագաւոր եւ թագուհի 'ի վերայ աստեղաց
որպէս 'ի վերայ զօրաց. վասն որոյ եւ զօրութիւնք կոչէին.
այսպէս պատմի վասն Մանասէի բ̃. մնաց. լգ̃. 3. 5. "Շի-
նեաց զբարձրաւանդակս. կանգնեաց արձանս Բահաղի-
մայ, եւ արար անտառս, եւ երկիր եպագ ամենայն զօրուն
երկնից. շինեաց անդ սեղան ամենայն զօրուն երկնի"։
Եւ 'ի դ̃. թագ. իգ̃. 4. եւ 5. ասի վասն Յովսիայ արքայի.
"Զամենայն անօթ գործեալ Բահաղու եւ անտառացն եւ
զօրուն երկնից ... զխնկարկուսն զարեգական եւ զլուսնի
եւ զաստեղաց եւ զամենայն զօրուն երկնից եւ զանտառն"
այրեաց։ Եւ քանզի նաեւ ազգք մեր սահմանակիցք այսպէս
զարեւ եւ զլուսին միանգամայն պաշտէին, որպէս են Պար-
սիկք եւ Աղուանք, զորոց գրէ Ստրաբոն ժա̃. 503. Ա-
ղուանք "աստուածս պաշտեն զարեւ, զԴիոս, եւ զլուսինն
առաւել, որոյ եւ տաճար մօտ է առ Վիրս", յայտ է
թէ եւ մերքն ընդ արեւու պաշտէին եւ զլուսինն։ Տաճար
լուսնի յիշատակի եւ առ նորին մատենագրի ժբ̃. 557.
ուր պատմէ զտեղիս տէրութեան Միհրդատայ. եւ 'ի յիշելն
զԳամիրս ('ի Կապադովկիա) զոր Պոմպէոս քաղաք կազ-
մեալ՝ կոչեաց Դիոսպոլիս եւ Օգոստա, "Ունի, ասէ, նաեւ տա-
ճար ամոյ՝ որ Փառնակիս ասի... թագաւորք այնչափ 'ի
պատուի ունէին զայն մեհեան, մինչեւ երդուանս արքայա-
կան առնել յանուն բաղդի արքայի եւ ամոյն որ 'ի Փառ-
նակիս։ Սա եւ է տաճար լուսնի, որպէս որ յԱղուանս
է եւ 'ի Փռիւգիա"։ Զայս մեհեան լուսնի կարծեմք լի-
նել 'ի փոքր Հայս, որ ունէր մասն ինչ 'ի Կապադովկիոյ։

Իսկ վասն անուանն թէ ընդէր Աստղիկ կամ Անահիտ
եւ Արտեմիս կոչեցաւ լուսինն, (ուրոյն յԱստղկանէ անուն,
որ ըստ Յունաց Ափրոդիտէ), որովհետեւ մեք սուղ ինչ
յառաջ գրեցաք լինել անձն, այն ինքն է քոյր Սեմայ,
պարտ է գիտել՝ զի եւ առ այլ ազգս կոչեցաւ աստղ. զոր
օրինակ առ փղշտացիս՝ նոյն եւ առ սիդոնացիս Աստարոթ
կամ Աստարտա կոչի լուսինն, ածանցեալ 'ի բառէս աս-
տղ, որ յարեւելեան լեզուս նշանակէ աստղ, որպէս ասէ

զործէին ։ Ի բանս մատենագրաց հայելով համարիմ թէ բաց յԱփրոդիտեայ՝ որ է փայլածու, Աստղիկ կոչէր և լուսինն, որպէս 'ի Ճանապարհորդութեան Հաւփտուիմեանց Արամազդայ և Աստղկան մի և նոյն տուն դնի. և քանզի Արամազդն էր արև, երևի թէ ըստ Հայոց Աստղիկն էր և լուսին. որպէս և 'ի սուրբ գիրս բազում ուրեք միանգամայն յիշատակին Բահաղ և Աստարոտ, որք էին արև և լուսին նոցա պաշտամանց. իսկ պատկերն որ յաշտից տեղիսն՝ Ափրոդիտեայ պատկեր էր. այլ Ագաթանգեղոս ոսկեմայրի գոլով գուցէ յիւրմէ նախնացուցանէ ընդ Աստղկան, բայց և ոչ սխալի ։ Զի որպէս զարեւն կոչեցին նաև Բագոս, Բէլ և Դիոս, զորս յիշեցաք 'ի վերոյ, նոյնպէս և զլուսինն նաև այլ բազում ազգք կոչեցին Ափրոդիտէ [1], կամ որ նոյն է Վէնուս, և սովին անուամբ պաշտեցին ։ Այսպէս ապա զոր փիւնիկեցիք Աստարոտ անուամբ պաշտէին՝ որ էր լուսինն, որպէս և եգիպտացիք Իսիս անուամբ, զնոյն Լակեդեմոնացիք Վէնուս անուամբ պաշտէին, որ է Ափրոդիտէ. զորմէ գրեն Կիկերոն 'ի Գ. գիրս բնութեան աստուածոց. և Ամբրոսիոս ։ Բայց Հերոդիանոս գիրք Ե. Երկնային Վէնուս կոչեցեալ համարի զլուսինն. և բազումք սովին անուամբ պաշտէին. որ յունարէն ասի Ուրանիա, և հեռի է 'ի պղծութեանց [2] ։ Ստրաբոն ժԱ. 732. 'ի գրելն զպաշտամանց Պարսից՝ միանգամայն յիշէ զլուսինն և զՎէնուսն կամ զԱփրոդիտէն պաշտեալ նոցա. ապա չէ ինչ ընդդէմ և 'ի մերումս լինել նոյն պաշտաման լուսնի և Ափրոդիտեայ միանգամայն [3] ։

Զանազան անուանք՝ զոր տան լուսնի այլ և այլ ազգք,

[1] Ափրոդիտէ էր մականուն Վէնուսի, որ նշանակէ փրփուր. զի յորժամ զարձան և զօրինակ պաշտամանցն Վէնուսի բերին յարևելից նաւու 'ի Կիթերա՝ որ 'ի յունաստան, Յոյնք քանզի մերա հրաշալիս համարին, 'ի փրփրոյ ալեացն ասելով՝ որ 'ի Ճանապարհին յընթացից նաւուն և 'ի բախելոյ ջուրցն միմեանց երևէր, համբաւեցին 'ի փրփրոյ ծնեալ զՎէնուս ։ Թէպէտ և Արիստոտէլ 'ի նմանութէ խորոյ զզգուածն ասելով՝ այսպէս փրփուր յորջորջեալ համարի զնա ։

[2] Ոմանք գրեն թէ լուսեալ Յունաց վասն արևելեայց՝ թէ 'ի պաշտօն աստուածոյ ուրուք յանձնեալին 'ի պղծութիւն, համբաւեցին լինել զՎէնուսն կամ զԱփրոդիտէն խաբեբայից. այլ յերկեմ զատանալն արևելեայց, և յայտնելն թէ նմին ծխուծ զլուսինն պաշտեալք, յետ այնորիկ զԵրկնային Վէնուսն կարծեցին լինել, զոր կոչեն Ուրանիա ։

[3] Զանուն Վէնուսի Պարսիկք կոչեն Վոֆարայի և Պիտոսուլ ըստ գրելոյ Հեսիքոսի. այլ հատուածոյ անուն սանաւտ է, աստ, Նահիդ, կամ Անահիդ. աւելով՝ որպէս թէ կոյս 'ի չարէ հանեալ. զոր Յոյնք գրեն Անահիտիս և Նէիտիս. այս անուն է աստ որ ազդմասնանքս սա Աստղիս կոչի Նահի, կամ Նանոյ ։ Այլ առաւել գրելոց եմք՝ թէ առ Հայս այլ անուն է Ափրոդիտէ կամ Վէնուս, և այլ Անահիտ ։

են ողքա. Աստարտա. յոր անուն կոչէին և պաշտէին փիւնիկեցիք և սիդոնացիք, զոր պաշտէր և Սողոմոն. և Յովսիաս արքայ՝ ասի 'ի չորրորդ Թագաւորութեանն իգ. 13. կործանեաց զբագինն, "զոր շինեաց Սողոմոն արքայ Իսրայէլի Աստարտայ գարշելւոյ սիդոնացւոց, և Քամովսայ զազրութեան Մովաբայ, և Մելքոմայ գարշելւոյ որդւոցն Ամոնայ": Երկու յետինքդ են անուանք արուս: Իսիս. յայս անուն պաշտեալ լինէր լուսինն առ եգիպտացիս. որ է ըստ իս անուն մեր Աստղկանն, և կամ Անահտայ, որ և Արտեմիս կոչի: Անիտդա. յայս անուն կոչէր և պաշտեալ լինէր լուսինն առ արաբացիս: Մելիտդա առ ասորեստանեայս: Մենէ առ Պարսիկս: Արտեմիս առ Յոյնս: Տեանա առ Լատինս: Եւ ըստ լեզուաց զանազան ժողովրդոց կոչէր նաև Միլիտդա, Էտադէ, Դոռկետ, Փեդէ, Ատէրգէ, և այլն:

Զանազան աստղք այլ և այլ նմանութեամբ կանգնէին զքանդակ լուսնի. եգիպտացիք՝ որք Իսիս անուամբ պաշտէին զլուսինն, դնէ Դիոդորոս սիկիլիացի համ. Ա. Թղթ. 15. Թէ եղջիւր դնէին 'ի գլուխն որպէս զնմանիկ լուսնի. "Զի այսպէս է, ասէ, հայեցուած լուսնի՝ յորժամ մանգաղաձև աճէ և նուազի. և զի առ եգիպտացիս արջառ ձօնեալ էր նմա". որ ունի զեղջիւր: Պորփիւր՝ գլուխ արջառոյ ունել ասէ զնա լուսնի, սակս բերելոյն զնմանութիւն եղջերաց 'ի քառորդս իւր: Ըստ այսմ դնէ և Երոդոտոս Ժա. 41. զԻսիսն յեգիպտոս. որպէս և Եղիանոս: Վասն որոյ և 'ի սուրբ գիրս Ոսկի որթք կոչեցեալքն՝ էին պատկերքն Բահաղու և Աստարտայ, կամ Օսիրիսի և Իսիսի, որք են արև և լուսին. զի զոր դնէին 'ի գլուխս նոցա առ 'ի բերել զնմանութիւն ճառագայթից արևու և լուսնի՝ եղջիւր համարելով կոչէին որթ կամ կով: Առ արաբացիս քառակուսի բուրգն նշանակէր զլուսինն: Ի Լիբանան ըստ գրելոյ Մակրոբիոսի՝ արձան արքիդեան Վենուսի՝ էր կին քողարկեալ, տխուր դիմօք և արտասուագին, որ էր նշան կծոյն Աստարտայ կամ Իսիսայ վասն մահուան Ադոնայ, որք էին առ հասարակ նմանութիւնք նուազման լուսնի, և մտից և խոնարհելոյն արևու հնարեալք 'ի նախնեաց այլաբանօրէն. զորոց կարեն տեսանել առ զանազան քննիչս: Այլուր այլով օրինակաւ ձևացուցանէին [1], Ի ծառոց՝ մրտենին էր ձօնեալ Վենուս աս-

1 Մեծ նշան համարէր պաշտելոյ զծառոց տակաւ կամ զնշանն կերպ 'ի զլուսինն, եթէ որ յանտառաց նորա մարմնի: Գուցէ 'ի սոցա սակի էին և

## Գ. Դիցապաշտութիւն։

Յայս անուն կոչի այն ազգ կռապաշտութեան՝ որով զմարդիկ աստուածացուցեալ պաշտեն ընծայիւ նոցա։ Ամենեքին գիտեն թէ արեւապաշտութիւն կամ պաշտել զլուսաւորս յառաջ է յոյժ քան զպաշտելն զմարդիկ, և սոյգ է. բայց յայտ է 'ի պատմութեանց՝ թէ նաև նահապետք որք 'ի սկզբան անդ 'ի նոյեան ժամանակի բնակեալ էին յաշխարհի մերում, յետ ցրուելոյ նոցա աստ և անդ՝ 'ի կարգս աստուածոց դասեալ պաշտեցան. յայսմանէ արժան համարիմ յերկուս բաժանել զժամանակ դիցապաշտութեան։ Առաջինն՝ որ սկսաւ ընդ արևապաշտութե, կամ սուղ ինչ զկնի։ Երկրորդ՝ որ բազմօք զկնի. յորում 'ի կարգ աստուածոց դասեցան այլք երևելիք 'ի քաջութեան, և կամ յաւէտ ըստ ոմանց ասելոյ՝ 'ի չարագործութե։ Ցաղագս առաջնոյն պարզ է ասել, թէ վարդապետութիւն կամ ուսումն արևու յառաջ է յոյժ քան զարևապաշտութի. զի ծանեաք 'ի գրելոցս՝ թէ ուսկս երկրագործութե և բժշկութե, որք էին հարկաւոր արուեստք մարդոյ, յոյժ պէտս ունէին մարդիկ տեղեկութե ընթացից արևու և լուսնի. վասն որոյ եղեալքն 'ի տապանէ, որպէս և այլ նախնիքն նահապետք, զուսումն արևու կամ զաստեղագաշխութի ուսուցին զառաջինս սերնդոց իւրեանց և փոյթ տարան և եւ ուսանելոյ. ծանեաք եւս թէ որք ուսուցին զայս ուսումն՝ 'ի մեծի պատուի եղեն. մինչև յետագայքն որպէս մոլորեալք իւրեանց պաշտել սկսան զարև և զլուսին, ընդ նմին պաշտեցին և զուսուցիչսն. նա՝ զնոյն իսկ զանուն արևու և լուսնի և ժամանակի ետուն նոցա ուսուցչաց։ Զի այսպէս գտանեմ զՍատուրնոսն, որ է Նոյ, պաշտեալ յանուն Բահաղու՝ որ է արև, և յանուն Կռոնոսի՝ որ է ժամանակ, վասն ծանօթացուցանելոյ նորա և ուսուցանելոյ զընթացս արևու և զժամանակի։ ԶՍեմ, որ է առաջին Զրադաշտ և վարդապետող 'ի վերայ արևու, մինչև անդուստ յայնմանէ կոչիլ Զարևանդ, զկնի աստուածացուցեալ պատմէ Խորենացին ա. 6. "Տիրէ 'ի վերայ երկոցունցն եւ Զրուանն (Սեմ), զոր ասէ ուրեմն Զրադաշտ մոգ արքայ բակտրիացւոց, որ է Մեդաց[1], սկիզբն և հայր աստուա

[1] Այսինքն է՝ Զրադաշտ մոգն, որ զկնի է ժամանակաւ, և եղև արքայ

յունականն ծիսիւք պաշտել, կամ զիւրեանց կրօնն մոռծանել 'ի նոսա։ Այսպէս արարին նաև փիւնիկեցւոց. որպէս զի մի գտցի աստուած ինչ, որոյ ծագումն չիցէ 'ի Յունաց. կամ թէ զի զամենայն ազգս 'ի մի միայն կրօն իւրեանց դարձուցանիցեն։ Բայց ոչ ծանեան թէ աստուածք Յունաց ըստ մեծի մասին առեալ էին յեգիպտացւոց, որպէս ասէ Հերոդոտոս, և չգոյր ինչ մերձաւորութիւն աստուածոց օտար ազգաց ընդ աստուածս Յունաց. զոր օրինակ պատմութիւն կամ նշանք Բահաղու փիւնիկեանց՝ ոչ նմանէր ոչ Սատուռնոսի Յունաց, ոչ Ապողոնի և ոչ Դիոսի, այլ միայն արևելեան մերձաւոր ազգաց։

Արդ զմերոյ աշխարհէն խօսելով, մեք չունիմք ինչ յիշատակութիւն վասն ժամանակի մեծին Աղեքսանդրի թէ զինչ արարին Յոյնք 'ի մեզ. այլ միայն վասն մերոյն ա̃. Արտաշէսի գտանեմք յիշատակութիւն, որ զկուռս Յունաց եբեր յաշխարհս մեր. զի ասէ Խորենացին վասն նորա. "Գտեալ յԱսիա (իմա 'ի փոքրն Ասիա) պղնձաձոյլ ոսկեզօծ պատկերս զԱրտեմիդեայ և զՀերակլեայ և զԱպողոնի, տայ բերել յաշխարհս մեր, զի կանգնեսցեն յԱրմաւիր". Բ. 12. և ապա. "Բայց և յԵլլադայ առեալ պատկերս ըզԴիոսի, զԱրտեմիդեայ, զԱթենայ, զՀեփեստոս, զԱփրոդիտեայ, տայ բերել 'ի Հայս ... ընկենուն զպատկերսն յաւրացն յԱնի"։ Եւ զկնի գալոյ կռոցս 'ի Յունաց 'ի Հայաստան՝ գտանեմք յիշատակութիւն զպաշտամանց նոցա. նա զի ինքն իսկ Տրդատ վկայէ վասն իւր 'ի Յունաց աշխարհին ուսեալ "Զերմեռանդն եռալ զեռալ" 'ի դիցպաշտութեան՝ մինչդեռ անդէն դեգերէր [1]։ Այլ մեք աստէն յիշեսցուք միայն զերևելի կուռսն պաշտեալս 'ի Հայս։

## ԱՆԱՀԻՏ

Ոսմանէ գրէ Ստրաբոն ժա̃. 532. "Քան զայլսն առաւել Հայք (պաշտեն) զԱնահիտն. որում և այլուր մեհեան կանգնեցին, և 'ի յԱկիլիսինի". այսինքն է յԵկեղեաց։ Որով կամի նշանագրել զմեհեանն կանգնեալ յԵրէզ աւանի յԵկեղեաց գաւառի. յոր սակս կրեաց սուրբն Գրիգոր զայնչափ չարչարանս։ Տեսցուք արդ եթէ զինչ ինչ կարևոր գիտելիք կան յաղագս այսր յիշատակեալ մեհենին Անահտայ, և ապա այլոց մեհենից նորա։

[1] Տես յԱգաթանգեղոս ծա և ծբ.

Պաշտօն Անահտայ ամենայն հաւաստեաւ էր յայսմ մե-հենի, զի Պլինիոս Է. 24. 'ի ստորագրելն զընթացս Եփ-րատայ, յորժամ յանուանէ յիշէ զերկուս գաւառս հայ-աստանեայց ընդ որս անցանէր գետն, այսինքն նախ ընդ Դերջան, զոր կոչէ Ցէրքսէնէ. ապա 'ի յիշելն զերկրորդն՝ փոխանակ գրելոյ ընդ Եկեղեաց, կամ որպէս նոքա կոչեն՝ ընդ Ակիլիսենի, զայս գաւառ կոչէ Անահտական. յայտ է թէ առ հռչակաւոր գոլոյ մեհենին Անահտայ որ անդ՝ 'ի նորին անուն կոչէին հեթանոսք զայն գաւառ. զորոյ զմեծութիւն և զհամբաւ նաև Տրդատ 'ի կռապաշտութեան իւրում ծանուցանէր սրբոյն Գրիգորի ասելով. "Եթէ ոչ առնուցուս յանձն պաշտօն մատուցանել դիցն, մանա-ւանդ այս մեծի Անահտայ տիկնոջ, որ է փառք ազգիս մե-րոյ և կեցուցիչ, զոր և թագաւորք պատուեն, մանաւանդ թագաւորն Յունաց,,. Ագաթանգեղոս ԺԷ: Պատճառ այս-պէս հռչակաւոր լինելոյն թուի նախ այն, զի Անահիտն՝ որ է Արտեմիս ըստ Յունաց, և Տիանա ըստ Հռոմայեցւոց, էր հռչակաւոր աստուածուհի առ ամենայն թագաւո-րութիւն. յայտ է և յԱրտեմեայ մեծագանձ տաճարէն՝ յԵ-փեսոս: Եւ երկրորդ՝ վասն ճոխաշխարհիկ արձանին. զի Պլինիոս գիրք ԼԳ. գլ. 4. կամ յօդ. 24. աւանդէ՝ թէ ոսկի արձան առաջին քան զամենայն՝ եղև Անահտայն. "Ոսկի արձան, ասէ, առաջին քան զամենեսեան ամենևին անդաստարիկ (կամի ասել՝ ձոյլ).. եղեալ պատմի 'ի մեհենին Անահտայ, կարի իմն սրբազան համարեալ յազգացն այ-նոցիկ. իսկ թէ յորում վայրի աշխարհիս իցէ այս անուն՝ նշանագրեցաք,,: Արդ՝ նշանագրեալն է գիրք Է. գլուխ 24. կամ յօդ. 20. որպէս և իմանայ նաև Հարտուին մեկնիչ Պլինիոսի, զոր 'ի վերոյ յիշեցաք. այսինքն է 'ի մեհենին՝ որ յԵկեղեաց գաւառի յԵրեզ աւանին. զորմէ տես 'ի մեծ Հայս 15: Այլ զայս արձան Անահտայ թէ-պէտ Պլինիոս յարշաւանս Անտոնիոսի որ ընդդէմ Պար-թևաց՝ փշրեալ ասէ, բայց պատմութիւն Ագաթանգեղոսի որ վասն Լուսաւորչին և Տրդատայ գրէ փշրել զոսկի պատ-կերսն Անահտական դիցն և նուիրել եկեղեցւոյ, յայտ առնէ մնացեալ մինչև 'ի ժամանակս Տրդատայ թագա-ւորի, և յայնժամ փշրեալ. նմին իրի և զասացեալսն Պլի-նիոսի անկ է վասն այլոյ իրիք արձանի իմանալ: Այս մեհեան Անահտայ է յԵկեղեաց գաւառի՝ զոր յիշել կամի Բուզանդ 'ի գրելն վասն Եպիփանու, որ եստես ըն-վերանալ հոգւոյ մեծին Ներսէսի յերկինս. "Նստէր առ

դեռ ինքն Ստրաբոն անդ էր . և 'ի վերայ ամենեցուն Նա-ցառ տէր և իշխօղ քրմապետն էր՝ մեծապէս պատուեալ առ կապադովկացիս : Նախագրեալ բանք մատենագրիս ցուցանեն՝ թէ և այս երրորդ յիշատակեալն իւր՝ էր մի և նոյն մեհեան Անահտայ : Ի պաշտամունս Անահտայ նաև հուր վառեալ ասէ նոյն մատենագիր, որպէս լինէր 'ի մեհեանս արևու . քանզի 'ի ԺԵ . 733 . 'ի խօսելն զմեհենից Կապադովկիոյ և Պարսից՝ յետ յիշելոյ զատրուշանս և զկրակապաշտութիւն, ասէ . "Այս լինի 'ի մեհեանս Անահտայ և Օմանայ . զի և սոցա մեհեանք գտանին անդէն . և զարձանն Օմանայ շուրջ ածեն, զոր և մեք տեսաք " : Օմանն էր պատուանուն արևու :

Այլ յաղագս Անահտայ հարկ է գիտել, զի թէ զսա նոյն համարեսցուք ընդ Տիանայի, լինի դուստր Դիոսի, այսինքն է Արամազդայ և Լատոնայի, և քոյր Ապողոնի . այսպէս գնեն բանաստեղծք և այլ նախնիք ըստ մեծի մասին[1] . որում համաձայնի և բան Տրդատայ, զոր ասէ առ սուրբն Գրիգոր վասն Անահտայ տիկնոջ . "Է փառք ազգիս մերոյ և կեցուցիչ . . բարերար ամենայն բնութեան մարդկան, և ծնունդ մեծին արին Արամազդայ " . Ագաթանգեղոս ԺԶ : Եւ զոր ասէ 'ի Թղթ . ԻԶ . "Թշնամանեաց զմեծըն Անահիտ, որով կեայ և զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց " : Տիանա անուանեալ, ասեն, զերկունս կանանց 'ի ծննդեանն՝ ատելութիւն կալեալ ընդդէմ ամուսնութեան, և շնորհս ընկալեալ կուսութեան 'ի Դիոսէ կամ յԱրամազդայ ընդ քեռ իւրոյ Աթենասայ . վասն որոյ և 'ի պատգամէ Ապողոնի կոչեցան երկոքին սոքա Կուսանք սպիտակափառք : Զայս կամի ծանուցանել և Տրդատ յասելն 'ի Թղթ . ԺԶ . "Մեծի Անահտայ տիկնոջ . . . որ է մայր ամենայն զգաստութեանց " : Զայս եդեալ՝ զարմանք են տեսանել զներհակն պատմեալ 'ի Ստրաբոնէ ԺԱ . 532 . որպէս թէ օրէնք լեալ 'ի Հայս՝ զդստերս իւրեանց ձօնել Անահտայ առ 'ի պղծութիւն տալ 'ի մեհենի նորա : Այլ քանզի զվարուց Տիանայ (կամ Անահտայ) պատմեն նախնիք այնչափ սիրօղ լեալ զգաստութեան և մաքրութեան, մինչև կուսանս ընտրեալս առնուլ յիւր ընկերութիւն, որոց և դաստիարակ կարգեալ լինէր խնամով 'ի պահպանութիւն, առաւել մարթ է կարծել թէ դուցէ սովին մտօք ձօնէին զդստերս իւ-

1 Որպէս և գրէ թէ յամենայն գիրս՝ լատինացւոց Տիանա, 'ի մեզ թարգմանուի ըստ Յունաց գրի Արտեմիս, և ըստ ՆՓ Անահիտ :

րեանց 'ի Նորին մեհեան Անահտայ 'ի դաստիարակութիւն և 'ի կրթութիւն ։ Իսկ զպղծութիւնս եթէ տօնոյդ համարեսցուք , առնուել անկ է տալ դիցն Ափրոդիտեայ ․ որոյ բագինն յայնըմ վայրի գոլով 'ի Վահէվահեան մեհենին՝ անտի շփոթեալ առեալ զնոսա մատենագրին ․ քանզի վասն մեհենիցն Ափրոդիտեայ Նաև առ օտար ազգս առհասարակ կարգեալ պատմեն տեղի անառակութեան ․ որպէս և Երոդոտոս վասն լիւդացւոց պատմէ ․ և 'ի գիրսն Քլիոն՝ պատմէ զանառակութիւնս զոր գործէին առ տաճարաւ Վէնուսի՝ որ է Ափրոդիտէ , և զանառակութիւնս բաբիլոնացւոց ։

Տիրանայն առեալ լինի և փոխանակ լուսնի ․ վասն որոյ բազում անգամ 'ի գլուխ նորա նկարագրեն կամ կիսալուսին , և կամ քօղ աստղանիշ ։ Անահտայ տան մերքն զանազան անուանս ․ որք են , Խնամակալ ․ զի Տրդատ 'ի սկիզբն հրովարտակին իւրոյ ողջոյն և շնորհս մաղթելով վասն ամենայն ժողովրդեան , ասէ ․ "Լիութիւն պարարտութիւն յարւոյն Արամազդայ ․ խնամակալութիւն յԱնահիտ տիկնոջէ ․ և քաջութիւն հասցէ ձեզ 'ի քաջէն Վահագնէ ամենայն Հայոց աշխարհիս " ․ Ագաթ․ ծա ։ Ի բանից աստի երևի երեցունց այսոցիկ դից լինել գլխաւորս 'ի Հայաստան աշխարհիս ․ և երեցունց ևս ընծայել գործս սեփականս , զորոց զպաշտպանութիւն խնդրէ 'ի նոյն գործս ։ Ի խնամակալութիւն Անահտայ հայի և այն բան Տրդատայ 'ի վերոյ բերեալ , որով զկենդանութիւն երկրիս Հայոց տայ Անահտայ ։ Տային սմա և անուանս Ոսկեմայր , Ոսկեծին , Ոսկեհատ ․ որպէս է տեսանել առ Ագաթանգեղոսի յկէ ․ այսպէս անուանեալ՝ գուցէ վասն ոսկի արձանին իւրոյ զոր 'ի վերոյ յիշեցաք , և յայնմանէ պաշտպան կարծեցեալ 'ի վերայ հանքաց ոսկւոյ , յարմար ոսկիածին և ոսկիահատ անուանն ․ զի հանք ոսկւոյ որ առ Եփրատաւ՝ ուստի հատանէին զոսկին և ուր ծնանէր ոսկին՝ այժմ ձայնեալ Կապան մադէն , չէր այնչափ հեռի 'ի մեհենէն , ուր էր այն արձան յԵրէզն աւանի ։

## ԱՐԱՄԱԶԴ կամ ԴԻՈՍ

Ի վեր անդր յիշեցաք զԱրամազդ՝ որով իմանային զարև ․ իսկ աստ յիշեսցուք զմարդն Արամազդ անուանեալ ։ Տրդատ 'ի կռապաշտութեան իւրում առ Ագաթանգեղոսի կէ ․ կոչէ " զարին Արամազդ զարարիչ երկնի և երկրի " ։ Զայս 'ի դէպ է առնուլ փոխանակ Դիոսի՝ որ 'ի Յունաց էանց

ժամղ. յորոց մի է և կունդ ոմն Արամազդ „[1]: Միայն թէ և Որմիզդ անուամբ դիք յիշատակին առ մեզ. որպէս յԱգաթանգեղոսէ յեմք. "Դիւան գրչի Որմզդի ուսմանն ճարտարութեան մեհեան „: Զորմէ տես 'ի մեծ Հայս 498: Սոյնպէս և անուն միոյ 'ի գաւառացն Փայտակարան նահանգին Որմզդպերոժ անուանեալ՝ ցուցանէ անդանօր ևս բազում հանդիսիւ պաշտեալ Որմիզդն:

Յիշատակին և այլ պէսպէս կուռք, զորոց մի ըստ միոջէ գրել չէ տեղւոյս. այլ զմեհենից նոցա յիշատակութիւն կարեմ տեսանել և 'ի մեծ Հայս. բայց յամենեսին 'ի նոսա եօթանց միայն երևելի լինել 'ի Հայս՝ ցուցանէ այս բան Ագաթանգեղոսի ՃԷ. յասելն վասն մեհենին Խաւրոմու. "Այս հրաման տայր ընդ կողմանս կողմանս դեսպանս արձակել, հրովարտակս առնել. յեօթն բագինս մեհենիցն ուխտաւոր լինել պատկերաց կռոց դիցն պաշտաման: Սպիտակ ցլուք և սպիտակ նոխազօք, սպիտակ ձիովք և սպիտակ ջորովք, ոսկեղէն և արծաթեղէն զարդիւք, և վերջաւորս փողփողեալս, նշանակայ պալարակայ մետաքսիւքն, և ոսկովք պսակօք, և արծաթի զոհարանօք յանօթս ցանկալիս ակամբք պատուականօք, ոսկով և արծաթով, 'ի հանդերձս պայծառս . . . զիւր ազգին արշակունեաց զհայրենեացն պաշտամանց տեղիսն մեծարէր „:

Եւ թէպէտ զայսչափ սէր տեսանեմք առ մնոտի պաշտամունս կռոց յաւուրս Արշակունեաց, այլ ոչ գտանեմք յիշատակութի մարդազոհի առ կուռս, բայց միայն 'ի Ճանապարհորդութե Հռիփսիմեանց, ուր գրի. "Ցայրս քարին որջացեալ կային վիշապք երկու դիւացեալք և սնուցեալք, որոց աղջիկ կոյս և պատանիս անմեղս զենուին. այնոցիկ արեամբն զուարձացեալ դևքն և բագնօքն, հրովն և աղբերքն „: Արդարև կամաւոր մահունք պատմին լեալ առ Խորենացւոյն Գ. 60. բայց առ սէր Գ. Արտաշէսի 'ի թաղմանն նորա, և ոչ մարդազոհք 'ի պաշտօն կռոց:

Կախարդութեց հաւատալ պատմի առ Խորենացւոյն Գ. 61: Իսկ զաւելորդապաշտութի ծնացեալ տեսանեմք նաև 'ի ժամանակս քրիստոնէութե 'ի բանից Բուզանդայ. զի գրէ՝ թէ ընտանիք Մուշեղայ զոր Վարազդատ արքայ սպանեալ էր, եդին զմարմինն և զգլուխ նորա 'ի տանիսն աշ-

1 Կամի ասել. Թէպէտ և Արամազդն որ և կամեր՝ զոմն առ 'ի պատուել մի էր, այլ չերևի մի ոք. զի 'ի ձեռս կոչէր Արամազդ, մինչև չորից ևս այլ կամեցողաց երևել լինել Արամազդ. ս և այլ դից անուանել Արամազդ:

տարակի ասելով, «Թէ վասն զի այր քաջ էր, Արալեզք ի-
ջանէին և յարուցանէին զդա. պահապան կային, և ակն ու-
նէին յառնելոյ մինչև նեխեցաւ մարմինն». Ե. 36 :

Ի դիցաբանութեան հայաստան աշխարհիս, զորմէ մինչև ցայժմ գրեցաք, տեսանել մարթիր ընթերցողդ՝ զի յայնչափ բազմութեան միջի ոչ գտանի ոք աստուածացուցեալ 'ի Հայս : Ոչ Զօրօաստրն առաջին, որ է Սեմ : Ոչ Աստղիկն. զի թէ փոխանակ քեռն Սեմայ իմացուք, որ ուսուցիչ եղև բժշկութեան, և որպէս լուսինն պաշտեալ, այն պաշտօն ոկիզն էառ յեգիպտացւոց. իսկ թէ փոխանակ Աֆրոդի-տեայ, այլ 'ի միւսմէն, այն էր 'ի Յունաց, և 'ի նոցանէ առ մեզ անցեալ : Ոչ Վահագն, զի 'ի Վիրս էր աստուածացու-ցեալ և ոչ 'ի Հայս. իսկ պաշտեալն 'ի Հայոց 'ի Վահէվա-հեան մեհենին՝ էր պատկերն Հերակլեայ Յունաց. և նոյն իսկ արձան նորին 'ի յունաստանէ անդր բերեալ. միայն Վա-հեւանի քուրմք Հայոց էին՝ որք վասն հայկազուն Վահագ-նի եւսուն համբաւել զայն արձան, որպէս գրէ Խորենա-ցին : Ըստ այսմ յունական Հերակլեայ արձան պարտ է համարել և զայն, զոր յիշէ Թովմա Արծրունի Ա. 11. յա-ռաջն վասն Բ. Արտաշիսի. « Հրամայէ շինել անդ ('ի Վասպուրական) մեհեան զՀերակլեայ և զԴիոնիսեայ» : Այսպէս ըստ գրելոցս՝ անապական ուրեմն եմուտ կռապաշ-տութիւն 'ի հայաստան, և այն՝ յայլոց ազգաց :

## ՅՕԴՈՒԱԾ Բ

### Ժամանակ Քրիստոնէութեան :

ՈՐՊԷՍ առաջին տեղի աստուածպաշտութեան յաւուրս Նոյի եղև հայաստան, նոյնպէս և առաջին տեղի ընդու-նելոյ զքարոզութիւն քրիստոնէական հաւատոյ եղև 'ի նմա : Եւ որպէս անապական ուրեմն տեղի եւս և մեկնեցաւ լոյսն աստուածպաշտութեան յաշխարհէս հայաստանեայց, և փո-խանակ եմուտ խաւար կռապաշտութեան, նոյնպէս և փու-թով ծագեաց 'ի նմա լոյսն քրիստոնէութեան կրկին քարո-զութ՟. նախ՝ յաւուրս Աբգարու քարոզութ՟ Թադէոսի և Բարթողոմէոսի. և երկրորդ՝ յաւուրս Տրդատայ քա-րոզութ՟ Լուսաւորչին. զորոց խօսեսցուք յառաջիկայդ :

### Ա. Առաջին քարոզութիւն յառաջ Աբգարու.

Հրաշալի և օտարացուցիչ իմն լսելեաց թուի դարձ Աբ գարու թագաւորի. որպէս թէ կռապաշտի ուրուք ոչ տե֊ սեալ և ոչ կենակցեալ ընդ Քրիստոսի, այլ միայն 'ի հե֊ ռաստանէ զգքանչելիս նորա լուեալ՝ իսկ և իսկ հաւա֊ տալ 'ի նա, միանգամայն և ընդունել զնա Աստուած։ Բայց 'ի յիշելն զոր ինչ գրեցաք սուղ ինչ յառաջ վասն վիճակի Մոկաց նահանգին Հայոց և վասն վիճակի Միջագետաց՝ ոչ այնչափ օտար թուեսցի լսելեաց, այլ զի գաղտնի խոր֊ հուրդն Աստուծոյ 'ի յայտ եկեսցէ, որ 'ի յաւիտենից պատրաստեաց զԱբգար առ սոյն հաւատս։ Վասն որոյ և առ առաւել բացատրութիւն բանիս որ կարևոր է՝ հարկ է մեզ սատանոր միւսանգամ խօսել, և յայտ առնել զաշ֊ խարհն՝ ուստի եկին մոգքն 'ի ծնունդն Քրիստոսի.

Պարտ է ընթերցողին յուշ ածել սատանոր զոր ինչ գրեցաք 'ի գլուխն Անուանն, թէ Հրեայք չունին անուն ինչ սեփական վասն համօրէն հայաստանեայց. զի անունս Ամենիա կամ Արամեան, որ է հասարակ անուն աշխար֊ հիս և ազգիս առ ամենայն օտար ազգս, ոչ 'ի գործ ածէր առ Հրեայս. քանզի նոքա Արամեան անուամբ կոչէին մի֊ այն զԱսորիս, սակս Արամ կոչելոյ նահապետին Ասորւոց, որ էր այլ Արամ որդի Սեմայ։ Նմին իրի առ 'ի չշփոթել զՀայս ընդ Ասորիս, ուր բանն էր զմիջնաշխարհէն Հայոց՝ կոչէին յանուն Արարատայ. որովհետև Այրարատեան նահանգ կոչէր միջնաշխարհ մեր. ուր և եղեն բնիկ բնա֊ կարանք նախնի նահապետաց մերոց, ապա և թագաւորաց մերոց. իսկ ուր բանն էր զհամօրէն հայաստանեայց կամ զեզերաց նորա, զայլ և այլ անուանս տային[1]։ Բայց առա֊ ւել հասարակ եղև առ նոսա կոչել Արևելք անուամբ. ըստ այսմ զտեղի դրախտին կամելով ցուցանել Մովսէս՝ եդ ընդ Արևելս, այն է ասել 'ի Հայս։ Սոյնպէս և յոր֊ ժամ որդիք և սերունդք Նոյի բազմացեալք 'ի Հայս՝ ե֊ լեալ 'ի համօրէն հայաստանեայց խաղացին 'ի Սենաար, Մովսէս ոչ կարաց տալ զայլ անուն, բայց եթէ զանունս

[1] Նմին իրի և յայլ անգաս սուրբ Հրեայք էր անուն Ասորւոց. կոչեցեալ գրոց զՀայս և զաշխարհս Հայոց զի մի զանունն յանուն այլոց նախահա֊ յանուն Արամայ կոչեսցի, որ առ նուաղ մերոց Թորգոմայ և Ասքանազայ։

Արևելք. «Եւ 'ի խաղաղն նոցա յԱրևելից»։ Զօրօք և
զպատճառն սոյն 'ի ստորագրութեան դրախտին։

Այսմ 'ի վերայ հաւատալ՝ դիւրին լինի այժմ իմանալ
թէ վասն այր և Աւետարանիչն զտեղի մոգուցն եկելոց
կոչէ Արևելք. զի եթէ լինէին նոքա 'ի Պարսից և յարա-
բացւոց՝ անշուշտ սայր զանուանս նոցա, որք ծանօթ էին
Հրէից. և եթէ բան սաղմոսին զմոգուցն էր՝ արդարև
նոյին իսկ Աւետարանիչն յուշ առնէր. որպէս և զայլոց
ամենեցուն զմարգարէական բանս յուշ առնէ, մանաւանդ
'ի սկզբան անդ վարուց փրկչին։ Այլ քանզի կամէր ասել
թէ 'ի հարաւային արևելեան սահմանաց Հայոց եկին
մոգքն, զայս սահման չմարթ էր այլ անուամբ բացատրել
առ Հրեայս, ոչ անուամբ Ասմէնիա, զի ոչ 'ի գործ ա-
ծէին վասն Հայոց, որպէս ասացաք. ոչ Արարատեան՝ զի
կարի հեռաւոր սահման էր 'ի ենիկ Արարատայ. ոչ զանիկ
երկրին անուամբ տալով, որ էր նահանգն Մոկք, զի քան
զամենայն ամենևին իսկ անծանօթ էր Հրէից անուն
Մոկաց նահանգ։ Այսպա պատշաճագոյն անուն այն էր՝ զոր
և Մովսէս էր տուեալ վասն հայաստանեայց, այն նոյն է
Արևելք։ Եթէ մոգքն միայն 'ի Միջագետաց լինէին,
Աւետարանիչն դնէր զայն անուն, որ առ Հրեայս ծանօթ
էր. այլ զի յԱրևելից եկեալ ասէ, որ էր անուն իբր սե-
փական հայաստանեայց առ նոսա, յայտ է թէ էին նոքա
'ի կողմանց հինչ աշխարհիս Հայոց, այն է 'ի Մոկք նա-
հանգէ, զոր Արևելք անուանելով՝ մարթ էր ընդ նմին
անուամբ իմանալ և զՄիջագետս. զի սուրբ գիրք զտեղին՝
ուստի էր Բաղաամ՝ երկոքումբք անուամբք բացատրեն, 'ի
Միջագետաց և 'ի լերանց Արևելից եկեալ ասելով[1]։ Արդ
մի՞շ ապաքէն հակառակ է ճշմարտութեան, զտեղի մոգուցն
և յաջորդացն Բաղաամու՝ զոր և Աւետարանիչն ըստ
բաւականին յայտ առնէ յԱրևելից ասելով, առ որս և
պահեալ լինէր աւանդութիւն աստեղն երևելւոյ փրկչին՝
ստարացուցանել ամենևին 'ի ենիկ տեղւոջէն, և ասել
թէ իցէ աշխարհ արտաքացւոց, որ ոչ իւիք յարմարի Արև-
ելք անուան՝ որով ցուցանէ Աւետարանիչն զտեղին. և
զայդ յայն սակս ասեմ, զի զբան սաղմոսին ածեն 'ի վկայ-
ութիւն որ վասն գալստեան թագաւորացն Արաբայ և Սա-

1 Տես զոր ինչ գրեալ եմք զայսմանէ 'ի գլուխն Բաղաամու զանուանեա Մոգ., յերես 51։

բայ ։ Այլ որպէս գրեցաք յառաջագոյն, այն է տացեալ վասն աղագայ ժամանակի եկեղեցւոյն Քրիստոսի ։

Արդ յետ ցուցանելոյ զաշխարհն մոգուց եկելոց 'ի ծնունդն Քրիստոսի լինել Մոկաց աշխարհն արեւելեան եւ Միջագետաց, ուստի էր Բաղդասար գուշակող աստեղն, տեսցուք այժմ զհաւատալն Աբգարու թագաւորին թէ զիարդ այնպէս դիւրաւ հաւատաց 'ի Քրիստոս ։ Մտադիր ընթերցողն ինքնին իմաստասիրէ ածեալ զմտաւ՝ թէ այս մոգք 'ի դառնալն իւրեանց 'ի Բեթղեհեմէ յարեւելս 'ի նահանգն Մոկաց եւ 'ի Միջագետս՝ 'ի հարկէ ամենեցուն պատմէին եւ հռչակէին յայն կողմանս զոր ինչ տեսին ըստ գուշակելոյ աստեղն զփրկիչն տիեզերաց նորոգ ծնեալ. այն համբաւ ծաւալէր առ հասարակ 'ի Մոկաց նահանգին եւ 'ի Միջագետս՝ զորմէ խօսէին ամենեքին ։ Ի ժամանակին յայնմիկ եւ յառանձին գթութեանցն Աստուծոյ լինէին շնորհք գալ Աբգարու 'ի Միջագետս, քաղաք շինել, եւ զնստակութիւն իւր անդ հաստատել. Թէպէտ եւ վախճան մտացն այլ ինչ էր ամենեւին ։ Յետ գալոյ նորա անդր՝ լսէր 'ի հարկէ մի ըստ միոջէ վասն աստեղն երեւելոյ, վասն մոգուցն գնալոյ եւ դառնալոյ, եւ զաստուածութենէ փրկչին վկայելոյ. գուցէ եւ զմին իսկ 'ի մոգուցն լինէր նմա տեսանել, եւ 'ի բերանոյ նորա լսել զամենայն ։ Արդ այսպիսի անձին պատրաստելոյ ամենայնիւ՝ քանի դիւրին լինէր այնուհետեւ հաւատալ եւ բանից երից նախարարաց իւրոց, եւ ընդունել զճշմարիտ հաւատս. որոց յԵրուսաղէմ գնացեալ, եւ սքանչելագործութեանցն Քրիստոսի ականատես եղեալ, ասէ Խորենացին, "պատմեցին Աբգարու. ընդ որ զարմացեալ Աբգարու՝ հաւատաց ճշմարտապէս իբրեւ յարդարեւ որդի Աստուծոյ, եւ ասէ. այն զօրութիւնք ոչ մարդոյ են, այլ Աստուծոյ. զի չիք ոք 'ի մարդկանէ որ կարէ զմեռեալս յարուցանել, բայց միայն Աստուած ։ Եւ քանզի ապականեալ էր մարմինն իւր 'ի չարաչար ցաւոց.. եւ տանել նմա թուղթ աղաչանաց գալ եւ բժշկել զնա ,,. Բ. 30 ։

Իսկ այսպէս 'ի ծագել ճշմարիտ լուսոյ աստուածգիտութեան աւետարանին 'ի Պաղեստին՝ մի միայն այս աշխարհ գտաւ 'ի հեռաւոր վայրս պատրաստական յընդունելութիւն հաւատոյ. որ 'ի հեռուստ անտի եւս աչօք հաւատոյ զլոյսն ճշմարիտ փայլեալ յԵրուսաղէմ. նախ քան զամենայն ընկալաւ, հաւատաց, եւ ինքնաշարժ 'ի ձեռն թագաւորին իւրոյ Աբգարու պատգամ առաքեաց, եւ պատգամ ընկալաւ 'ի Քրիստոսէ 'ի զարմացումն լսողաց ։

Այն պատգամ երկնաձիր բանիցն Քրիստոսի եղև 'ի սիրտ Աբգարու իբրև սերմն ինչ երկնային՝ անկեալ յերկիր պարարտ և բարի, որ անդէն բուսոյց զբոյսս ճշմարիտ հաւատոյ. մինչև ոչ միայն ինքեան դաւանել ճշմարտիւ, այլ և յետ մկրտելոյն 'ի Թադէոսէ՝ լինել նաև քարոզիչ առ Թագաւորս, գրելով առ կայսրն Տիբերիոս, առ Ներսեհ արքայ Ասորեստանեայց, առ Արտաշէս արքայ Պարսից. և թէ հնար էր՝ գրէր առ ամենայն Թագաւորս երկրի, ինքն գոլով 'ի մէջ Թագաւորացն այնոցիկ անդրանիկ ըստ հաւատոյն: Որով աշխարհ մեր եղև սկիզբն քրիստոնեայ Թագաւորութե. և է առաջին սահման քրիստոնէութե յարևելեան ծագաց Ասիոյ ընդ արևմուտս.

Քարոզութի Աբգարու եղև ոչ միայն առ Թագաւորս այլ և այլ ազգաց, այլ նաև առ ժողովուրդ իւր. յորում և տեսանի աստուածային իմն զօրութի. զի «ոչ զօք ածէր բռնութե 'ի հաւատս, բայց որ ըստ օրէ յաւելեալ 'ի հաւատացեալսն բազմանային», ասէ Խորենացին Բ. 33: Այլ այս քարոզութի և ջանք Աբգարու՝ էին գործակցութի քարոզութե Թադէոսի առաքելոյն. որոյ «առեալ հրովարտակ յԱբգարէ, ասէ, անդէն նոյն մատենագիր, զի ամենեքեան լուիցեն աւետարանին Քրիստոսի».

Չէ անկ զանց առնել 'ի յիշելոյ և զՀեղինէ զառաջին քրիստոնեայ Թագուհին, զկին Աբգարու՝ զտիկինն Միջագետաց, որոյ յետ հաւատալոյն՝ յԵրուսաղէմ չուեալ գնայր 'ի տաճարն, ուր գնային յայնժամ և առաքեալքն. զաշտանակ տաճարին ոսկեղէն տայր գործել յիւրոց գանձուց, որպէս վկայէ Դալմուտն Հրէից և Յովսեպոս, որ վասն գնալոյ նորա 'ի տաճարն և ընծայս պարգևելոյ՝ հրէացեալ կարծէ զնա: Նախ քան զՀեղինէ Թէպէտ վասն Սաթինկայ տիկնոջ պատմի լուեալ զքարոզութի աւետարանին 'ի Սուքիասանց, այլ վասն ընդունելոյ նորա զքրիստոնէութիւն՝ կեղակարծ Թողու Թովմա Արծրունի յասեղն. «Իսկ սրբոցն որ 'ի Սուկաւէտ լերինն՝ քանզի էին համաշխարհիկք և հաւատարիմք Սաթինկայ՝ եկեալ զկնի նորա՝ յղեն զոմն 'ի ճգնաւորացն առ տիկինն, զկռոցն յանդիմանելով զմնոտի և զանօգուտ պաշտօնն, որպէս և առուրն Քուիւսի առ Արտաշէս. իսկ Սաթինիկ ունկնդիր եղեալ խրատու սրբոցն (տակաւին) ոչ 'ի բաց մերժեցաւ 'ի կռոցն Աստղկայ անուանեալ պատկերին. քանզի կասկածանս ունելով 'ի Թագաւորէն և յորդւոցն, մանաւանդ զի և Թագաւորին նախ ունէր զդառնալն 'ի

կռոցն 'ի յերկրպագուԹի Քրիստոսի Ճշմարտին Աստուծոյ ։ Բայց Թէ որպէս եղեւ կատարումն իրացն, մեզ չէ յայտ »։ ա. 11 ։

Այլ կողմանս ինչ հայաստանեայց եղեւ և այլ քարոզուԹի աւետարանի 'ի ձեռն որդոյն ԲարԹողոմեայ առաքելոյն, որ է Հեր և Զարեւանդ գաւառ. ուր նախ առաջին սկիզբն առեալ էր ուսումն ուղիղ մոգուԹեան 'ի ձեռն Սեմայ, որ ուսուցանէր զաստուածպաշտուԹի և զաստեղաբաշխուԹի, որպէս գրեալ եմք յառաջն, անդ այժմ սկիզբն առնու վարդապետուԹի աւետարանական ։ Քարոզեաց սուրբն ԲարԹողոմէոս նաեւ յԱնձեւացիս, ուր եԹող զպատկեր տիրամօրն. քարոզեաց և 'ի Սիւնիս և 'ի ԳողԹն գաւառ Սիւնեաց, զորմէ պատմէ Ստեփաննոս օրպելեան Եպ. « Քան զհայաստանեայսս, ասէ, նախահաւատ երեւեցան սոքա և եկին 'ի հնազանդուԹի սրբոյ աւետարանին 'ի ձեռն սուրբ առաքելոյն ԲարԹողոմէոսի..... (որոյ) անցեալ ընդ Արտազականն գայ իւրովք աշակերտօքն, և անցեալ ընդ գետն Երասխ՝ մտանէ 'ի սահմանս Սիսականս. և սկիզբն արարեալ քարոզուԹեան յՈրԹվատ գիւղ և յԱրեւելս գաւառ և 'ի տունն Բաղաց և 'ի ԳողԹն, ոյք ընկալան զքարոզուԹի աւետարանին 'ի ձեռն սուրբ առաքելոյն ԲարԹողոմէի ։ Իսկ սուրբ առաքեալն շինէ եկեղեցի 'ի ԳողԹն յարեւմտից եզերն 'ի վերայ վիմի միոյ յիւրեանց հանգստեան տեղւոյն՝ ուր վանքն էին կալեալ. և անուն կոչեցին Տեառն ընդ առաջ... Եւ էր իշխան գաւառին Շաբ, և որդի իւր Խոսրով, և Թոռն իւր Վահան, և կին իշխանին Նշխա. ապա կացուցանէ նոցա տեսուչ, զի մի վերստին մոլորեսցին 'ի կռապաշտուԹի, զոմն յաշակերտաց իւրոց Կումսի անուն, ձեռնադրեալ զնա եպիսկոպոս. և ինքն յանձն արարեալ զնա սուրբ Հոգւոյն՝ գայ 'ի Վանանդ գիւղ. և մի յաշակերտացն անդ վախճանեցաւ Լուսիկ անուն.. Իսկ սուրբ առաքեալն ելեալ անտի գնաց 'ի մայրաքաղաքն Հայոց Դուին ։ Յետ այսորիկ վախճանեցաւ Կումսի ... ապա կացուցանեն իւրեանց առաջնորդ զխուժիկ ոմն Բաբիլաս անուն »։ Եւ այսպէս աստ և անդ շրջելով սուրբ առաքեալն 'ի հայաստան քարոզէր զաւետարանն մինչև 'ի կատարումն իւր նահատակուԹե յԱրեբանոս քաղաքի յԱղբակ[1]. յորում աւուր

1 Ի պատճառս անուան գաւառիս տարցին ըստ զքարոզուԹի և զկատարածութիւն մատենագիրք յԱղուանս տարածումն ԲարԹողոմեայ. տե՛ս զԱղբակն

հաւատացեալքն միայն եղեն երկու հազարք. վասն որոյ և արժանապէս անուանեալ Հայաստանեայց հայր հոգևոր։ Զերկուց առաքելոցն զԹադէոսի և զԲարթողոմեայ քարոզութիւն յիշէ և սուրբն Գրիգոր յառաջին թուղթն իւր առ Ղևոնդ. «Յորում այսմ աշխարհի (Հայոց) կարի առաւել մասն պարծանաց եհաս։ Զի երկոքեան ամոլքըն աստ եկեալք, և սորին սահմանի վիճակի՝ հոգւոյն բանիւ 'ի ձեռն նորին շնորհաց»։ Վասն որոյ չերևի 'ի գործ եղեալ այն հալածումն և արշաւանք հռոմայեցւոց 'ի մեր աշխարհս, զոր բերէ Մաքսիմինեաւք յԵւսեբիոսէ։

Իսկ թէպէտ յետ առաքելոցն ոչ մնացին բնակիչքն 'ի քրիստոնէութե, այլ առաջին կռապաշտութիւն ծառայեցաւ 'ի թագաւորս, 'ի նախարարս և 'ի մեծ մասն ժողովրդեանն, բայց և ոչ բարձաւ իսպառ 'ի հայաստան աշխարհէս սերմն քրիստոնէութե զոր սերմանեցին երկոքին ամոլքն այնոքիկ. այլ աստ և անդ մնացին քրիստոնեայք, թէպէտ և միշտ ընդ հալածանօք և օր ըստ օրէ նուազելով։ Զայս յայտ առնէ պատմութիւն ճանապարհորդութե Հռիփսիմեանց. զորոց ասէ Խորենացին՝ թէ յորժամ 'ի կողմանս Անձևացեաց «հասին 'ի տեղի մի, և գտին սակաւ ինչ քրիստոնեայս՝ ձեռնաչափ ունելով զպատկեր տիրամօրն»։ Յայտ առնէ և Ստեփաննոս Օրպէլեանն Դ. յասելն վասն քրիստոնէից Սիւնեաց նահանգին. «Անդ կացին և մնացին անտերունչք բնակեալ այսր անդր. և ոմանք զօղեալք 'ի լերինն Գարբուայ՝ միայնաւորութե զկեանս իւրեանց վարէին, զպաղումն սնուցանելով յոլով ժամանակօք մինչ 'ի գալ մեծի Լուսաւորչին 'ի Հայս, և լուսաւորելոյ զամենայն աշխարհս Հայոց»։ Անչափ յաջողեալ էր անդէն քրիստոնէութիւն, մինչև կարող լինել քրիստոնէից ժամանակին Սիւնեաց նահանգին շինել զեկեղեցի Թանահատին յանուն սրբոյն Ստեփաննոսի՝ 400 ամօք յառաջ քան զԹուականն Հայոց. որ է ասել յերկրորդ դարուն Քրիստոսի. որպէս աւանդէ Մաշտոց առ Ստեփաննոսի Օրպէլեան, զորմէ կարես տեսանել 'ի Մեծ Հայս 261։ Զնոյն յաջողութե քրիստոնէութե լինել իմաստասիրեմք նաև յայլ կողմանս հայաստան աշխարհիս մինչև 'ի ժամանակս Խոսրովու թագաւորի հօր Տրդատայ 'ի հալածանացն՝ զոր եհան նոյն ինքն Խոսրով, յորմէ նահատակեալքն բազումք եղեն. որպէս է տեսանել առ Խորենացւոյն՝ հաստատեալ

դրեցին Աղուանիա. իսկ Աղուանիա անուանեն նոքա զԱղուանս կոչեն։

վկայութիւնք Երևելի առն. «Փերմելիանոս եպիսկոպոս Կեսարու կապադովկացւոց . . . գրէ բազում վկայեալս և 'ի խոստովանութիւն 'ի մերում աշխարհիս». Է. 75: Ի քրիստոնէից աստի որք մնացին զկողմամբ Անի բերդին' եղև 'ի հարկէ և այն կիսամահանեայ լուսաւորութիւն Օտայ նախարարին' զորմէ գրէ նոյն մատենագիր. «Գտանէ զՕտայ մնացեալ զքոյր իւր խոստովանողութեամբ. և պահեալ զգանձս ամրոցաւն հանդերձ յոյժ երկայնմտութեամբ. քանզի էր արդար և համբեր, ժուժկալ և առաւել իմաստուն. զի թէպէտ և ոչ ծանեաւ զճշմարտութիւն յաղագս Աստուծոյ, սակայն զսնոտութիւն կռոցն գիտաց. նոյնպէս էր և սանն նորա խոստովանողութեամբ». Է. 82: Այս վերջին բան ակնարկէ և վասն խոստովանողխառոյն ծանուցեալ զսնոտութիւն կռոցն:

Երևելի նահատակեալքն յայնմ միջոցի 'ի մերում աշխարհի յանուանէ յիշատակեալքն յետ Թադէոսի և Բարթողոմէոսի' եղեն Ոսկեանք և Սուքիասեանք. որք խմբովին վկայեալք: Իսկ յառանձին վկայեալս երևելի եղեն սրբուհին Սանդուխտ դուստր Սանատրկոյ, և Ոգոհի քոյր Սանատրկոյ, մին աշակերտեալ Թադէոսի, և միւսն Բարթողոմէոսի. որպէս և հազարապետն Սանատրկոյ:

Բ. Երկրորդ քարոզութիւն յաւուրս Տրդատայ:

Բողոք անպարտ արեանցն բազմաց վկայից' զոր եհեղ յաշխարհիս մերում մեծն Խոսրով, լսելի եղեն զօգցեալ առ Աստուած, որ զնոյն աստուածգիտութեան զաւհմանեալն 'ի յաւիտենից վասն համօրէն հայաստանեայցս' ծագեաց մեծապայծառ և անշէջ երկրորդաւս այսու քարոզութեամբ յետ անցելոց ամաց իբրև երկերիւր և յիսնից առաջնոյ քարոզութեան առաքելոցն: Եւ լինէր այս յետ զօրանայն Անակայ պարթևի յաշխարհս մեր:

Սակայն կարևոր զննուլիք կան առաջնոր, զոր չկամիմ թէ անյիշատակ մնասցէ: Քանզի կրկին անգամ տեսանեմք յաշխարհի մերում լեալ զդարձ 'ի քրիստոնէութիւն. և 'ի կրկին եւս նուագս նմին գործակից' զգալ հռոմայեցւոց յաշխարհս մեր. յառաջինումն' զգալուստ Ոսկեանց իշխանաց հռոմայեցւոց, որք և իւրեանց վարդապետութեամբ զայլս աշակերտեցին 'ի քրիստոնէութիւն. իսկ յերկրորդումն' զգալուստ Հռիփսիմեանց կուսանաց հռոմայեցւոց, որք զուարթն Գրիգոր 'ի լոյս հանեին 'ի քարոզել իբր 'ի մեռե-

լոց յարուցանելով ։ Որով և ստուգեալ տեսանեմք 'ի մեզ զայն՝ զոր բազումք 'ի վարդապետաց ասեն, թէ քանզի գլխաւոր հալածող եկեղեցւոյն Քրիստոսի Հռոմ քաղաքն էր, նմին իրի և Քրիստոս զնոյն մայրաքաղաքն Հռոմ ընտրեաց 'ի գահ իւրում եկեղեցւոյ. որով և լրումն եղև մարգարէութեան Դանիէլի՝ վիմին հատանելոյ 'ի լեռնէն 'ի վերայ արձանին, որ ցուցանէր զտէրութիւն հռոմայեցւոց. փշրել զարձանն, և ինքն նստել 'ի տեղի արձանին ։ Եւ զի հռոմայեցիք եղեն գործակալք նոյն հալածմանց, վասն որոյ և Քրիստոս 'ի հռոմայեցւոց եղև գործակալս 'ի քարոզել զքրիստոնէութիւն և 'ի հեռաւոր աշխարհս ։ Մեծ զարմանք են արդարև լսել Հայոց զայնչափ լուսաւոր քարոզութի սրբոյն Գրիգորի յաւուրս չարչարանաց իւրոց, տեսանել զայնչափ հրաշս 'ի կրել զայնպիսի տանջանս, և բալորովքն անպտուղ ելանել. իսկ 'ի գալ խմբովքն այսոցիկ տեսար աղջկանց հռոմայեցւոց սրբոց կուսանաց յաշխարհ մեր, և 'ի հեղուլն անդ զարիւնս իւրեանց վկայական մահուամբ, յայնժամ 'ի գթութիւն Աստուծոյ լուսաւորեցին. որոյ հանեալ զսուրբն Գրիգոր 'ի խաւարայինն վիրապէն Արտաշատու, զկարգաւորս բնակիչս հայաստանեայց անսացողս և հլուս գործէր յունկնդրութի քարոզութե նորա. իսկ զբնակիչս Վրաց՝ նոցին իսկ սրբոց կուսանացն քարոզելով դարձուցանէր 'ի քրիստոնէութի, և աշակերտս առնէր սրբոյն Գրիգորի ։ Որով դստերք հռոմայեցւոց հալածչացն Քրիստոսի 'ի հեռաւոր աշխարհէ անկարծելի իմն ճանապարհ հատանելով՝ դարձուցիչք եղեն հայաստան աշխարհիս արեամբն իւրեանց. իսկ Վրաց՝ քարոզութբ իւրեանց ։

Երկրորդս այս քարոզութե և դարձ հայաստանեայց հրաշալի իմն օրինակաւ լինէր, ոչ յանկեան ուրեք աշխարհին, կամ 'ի քաղաքս ամենայն և 'ի գաւառս եւեթ, այլ 'ի համօրէն աշխարհին ծագաց 'ի ծագս. զորոյ զնմանն չտեսանեմք ուրեք յամենայն եկեղեցական պատմութիւնս. որում և մեծապէս սատարիչ գտաւ թագաւորն սուրբն Տրդատ՝ գործակից լինելով սրբոյն Գրիգորի. որպէս և Աբգար թագաւոր յառաջնումն՝ սրբոյն Թադէի. զոր օրինակ վկայէ և Խորենացին Բ. 92. " Այլ զառաւելուն ասեմ ասա զթագաւորին ... նուաճել հաւանեցուցանողականաւ կամ բռնաւորականաւ բանիւ՝ առաւել էր թագաւորին ձեռն. քանզի լսա հաւատոյս ոչինչ կասեցուցանէր զգործն. այնր աղագաւ կոչեմ և զսա (զՏրդատ) նախաշաւիղ Ճանապարհ, և լուսաւորութեցն մերոց հայր եր-

կրօրդ »: Եւ 'ի գ. 3. «Մեծաւ պնդութեամբ առնէր վրէժ-
խնդրութիւն հաւատոց և վարուց երանելւոյն Տրդատ. ա-
ռաւել այնոցիկ՝ որ բացակողմանքն էին յիւրում իշխա-
նութեանն »: Եւ Ագաթանգեղոս գրէ յծգ. «Արքայն
(Տրդատ) մեծապատ իշխանութեամբ տայր հրաման...:
հնազանդել ամենահեշտ լծոյ ծառայութեանն Քրիստոսի
... ինքն թագաւորն լինէր քարոզ խոստովանելով զիւր
ամբարշտութիւնն, և պատմէր զամենայն արարեալ սքան-
չելիսն Աստուծոյ որ անցեալ էին ընդ նա, և զողորմութիւն
բժշկութեանն. և զայն ցուցանէր բարձրաձայն աղաղակաւ
յայտ յանդիման առաջի ամենեցուն »: Զայսպիսի ունե-
լով իւր գործակից սրբոյն Գրիգորի՝ կարօղ եղև զհաստ-
րէին աշխարհն միանգամայն դարձուցանել 'ի քրիստոնէ-
ութիւն: Այլ 'ի վերայ այսր ամենայնի 'ի տեղիս տեղիս
մնաց կռապաշտութիւն. զոր օրինակ 'ի Գողթն, 'ի Գարդ-
մանս և 'ի Տաշիր [1], զոր տապա եբարձ սուրբն Մեսրոպ.
զորոց կարես տեսանել 'ի մեծ Հայս: Մնաց նաև 'ի Տա-
րօն. ուր սուրբն Վրթանէս զանեալ իբրև երկուս հազարս
դարձոյց 'ի հաւատս և մկրտեաց, զորմէ պատմէ Բուզանդ
գ. 3. որ և 'ի ծածուկ ասէ մնացեալ հեթանոսութիւն, յա-
ղագս վասն սրբոյն Եպիփանու աշակերտին ծերունւոյն
Դանիէլի՝ թէ բնակէր յանապատին ծածուկ, «և առ-
նէր սա մեծամեծ նշանս և սքանչելիս. և դարձուցանէր
զբազումս մոլորեալս 'ի հեթանոսութենէ 'ի քրիստոնէութիւն »:
Յետ այնորիկ և վասն երկրին Աղձնեաց գրէ՝ թէ «լու-
սաւորէր և զնոսա մեծապէս ». առանց զայլ ինչ յիշելոյ:

1 Այլ 'ի բանից Բուզանդայ երևի. բազում տեղիս Հայոց կուռս կանգ-
թէ յաւուրս Պապայ դարձեալ իցեն նոցին 'ի համարձակութէ թագաւո-
րաց 'ի կռապաշտութիւն, և ոչ թէ 'ի բնէ Պապայ. զի ոչ գոյր յանդիմանիչ
ժամանակաց անտի սրբոյն Գրիգորի և ոչ ոք էր այն՝ յորմէ խիթային. զնոյն
մնացեալ. զի ասէ. «Բազում գա- և կամէին գործել, համարձակութեամբ
ամբ Հայոց և բազում մարդիկ 'ի գործէին. բազումք պատկերս կանգ-
նեցին դիւապաշտութեան գործոն, և ընդ նոսա՝ երկիր պագանէին »: Ե. 31:

իսկ 'ի յՃԳ. ասէ. «Եւ երանելոյն Գրիգորի զվարդապետութիւն իւր 'ի գործ արկեալ... հաստատեալ նմա բովանդակ 'ի վերայ ամենայն երկրին սահմանացն Հայոց մեծութե աշխարհին, շինել եկեղեցիս յամենայն աշխարհս և 'ի գաւառս և 'ի կողմանս, 'ի քաղաքս, յաւանս և 'ի շէնս, 'ի գիւղս, յագարակս»: Ըստ բազմութե եկեղեցեաց՝ նոյնպէս բազմացոյց փութով և զքահանայս. «Իսկ զկարգս երիցանց, ասէ, և սարկաւագաց կամ անագանորդաց, և որ այլ ես 'ի պաշտօն տեառն կային՝ անթիւք էին 'ի բազմութէն»: յՃԶ: Ի բնաբարձ քանդմանէ ասորի ամենայն մեհենից և կռոց՝ և 'ի շինուէ նոր եկեղեցեաց ընդ ամենայն տեղիս՝ յաջողեցաւ արագ ծաւալել քրիստոնէութեն 'ի Հայաստան. զի անշուշտ խափանումն լինէր այնքանոյ յաջողութեն՝ եթէ չքանդէր զոմանս 'ի մեհենից և 'ի կռոց:

Իսկ Տրդատ զհետ լինէր զեկամուտս եկեղեցեաց և քահանայից հոգալ. վասն որոյ ասէ Ագաթանգեղոս յՃԳ. «Յամենայն իշխանութե իւրում առհասարակ կարգեաց չորս չորս հողս երդոյ յամենայն ագարակ տեղիս. իսկ յաւանս՝ եօթն եօթն հողս երդոց'ի ծառայութե սպասաւորութե քահանայութեն նուէրք պտղոց»: Յիշէ զայս Վարդան 'ի Ներբողեան Լուսաւորչին, այլ նմին Գրիգորի տալով. «Եկեղեցիս հաստատէր ապարանօք պիտոյից. չորս չորս հողս եկեղեցւոյ ագարակին. և եօթն՝ մեծացն գիւղից և աւանից»: Այսպէս արարեալ տեսանեմք և ոմանց 'ի յետագայ թագաւորաց. զի յորժամ Վաչէ զօրավար հրամանաւ Խոսրովու արքայի եբարձ զմնացեալ ցեղն Մանաւազեան և զՈրդունին, զերկիր նոցա ետ եկեղեցւոյ ըստ գրելոյ Բուզանդայ Գ. Կ: Սովորութի էր լեալ նաև տալ տասանորդս, զոր յիշէ նա Է. 31. «Եւ զկարգս պտղոյն և զտասանորդացն, որ 'ի նախնեաց կարգեալ սովորուի էր տալ յեկեղեցին»: Զայս ամենայն հասս եկեղեցւոյ հատեալ յարքունիս էառ Պապ արքայ, որպէս պատմի 'ի նոյն 31. գլ. «Եւ հատ ես յարքունիս Պապ թագաւոր զհող եկեղեցւոյն՝ զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ 'ի սպաս պաշտամանն եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց. զի յեօթն հողոյն ըզհինգն հատանէր (Պապ) յարքունիս, և զերկուսն միայն թողոյր երկուս հողս. և ըստ հողոյն թողոյր երկուս երկուս առ գիւղ մի երէց և սարկաւագ. և զայն 'ի սպա-

սու կացուցանէր յիւր 'ի ծառայութեան զեղջերս և զորդիս երիցանցն և սարկաւագացն „ ։

Բ. Անապատական կեանք ։

Ի սկզբան անդ չորրորդ դարու ընդ հաստատիլ քրիստոնէութեան 'ի Հայս՝ սկզբն էառ և այս կեանք անապատական 'ի նոյն իսկ 'ի սրբոյն Գրիգորէ. "Ցետ լուսաւորելոյ զաշխարհս Հայոց, ասէ Խորենացին Բ. 91 . . . սիրեցեալ զլեռնս և զամայութիւն և զհանդարտութիւն մնաց յինքեան կեալ, որպէս զի խօսեսցի ընդ Աստուծոյ անզբաղապէս „ ։ Եւ ոչ միայն ինքն՝ այլ նաև զայլս 'ի նոյն կրթէր, որպէս պատմէ Ագաթանգեղոս. "Եւ ինքն ընդ ժամանակս ժամանակս յանապատ լերինս ելանէր, որ իւքեամբ իսկ և իւրով անձամբն օրինակ ցուցանէր. առեալ զամենս ոմանս յաշակերտացն իւրաքանչիւր մենաստանաց, երթեալ լեռնակեաց միայնակեաց սորամուտ ծակախիթ եղեալ, և զաւուրէական զկերակուրն խոտաբուտ ճարակօք մճարեալ . . ասուրս բազումս յանապատ տեղիս, յակումս եփրատական գետոյն, յայլս և 'ի քարածերպս երկրին բնակեալ լինէր և 'ի կատարս լերանց „. ՃՀԷ ։ Սիրեաց Լուսաւորիչն զանապատական կեանս, որպէս զի "ամենայնիւ պատկեսցի առաքելականաւ, հայրապետականաւ և միայնաւորականաւ առաւել ընտանեցուցանել զմարդն ընդ Աստուծոյ „. որպէս ասէ Կիրակոս ։ Օրինակ եւս և յորդոր նաև Տրդատայ թագաւորին, որ "սիրեաց զվարս միայնաւորութեան որպէս ըզսուրբն Գրիգոր. այնուհետև ընդ ժամանակս ժամանակս յանյայտս լինէր 'ի զօրաց իւրոց, քառասնօրեայ ժամանակս ձգեալ պահօք և աղօթիւք „, ասէ նոյն մատենագիր ։ Զնոյն վիճակ ճգնաւորական կենաց մուծին և 'ի Տարօն՝ Անտոն և Կրօնիդէս, զորս ընդ իւր էած սուրբն Գրիգոր 'ի Կեսարիոյ ։

Այնուհետև ոչ պակասեցաւ անապատական կեանքս այս յաշխարհէս մերմէ. զի ոչ միայն զեկեղեցականաց՝ այլ նաև զմեծամեծ իշխանաւորաց ոմանց գտանեմք յիշատակութիւն առանձնանալոյ նոցա յանապատս. զոր օրինակ եղև Պարգև անուն իշխանն, զորմէ գրէ Մեսրոպ 'ի թիւն Է. "Այսպա մի ամն 'ի մեծ նախարարացն 'ի գաւառէն Շի-

րակայ, որ էր միանձնացեալ 'ի լերինս յազգէն գնունեաց, որում անուն էր Պարգև, յառաջ մատուցեալ իբրև 'ի տեսչութիւն Աստուծոյ և ասէ. Ես տեսի 'ի տան Թագաւորին յազգէն սրբոյն Գրիգորի՝ որում անուն էր Ներսէս՝ կատարեալ հաւատով և լի իմաստութեամբ և շնորհօքն Աստուծոյ,,: Սոյն այս մեծն Ներսէս է, որ 'ի մէջն անդ չորրորդ դարու որպէս վասն կրօնաւորաց շինէր մենաստանս, նոյնպէս և վասն ձգնաւորաց, ասէ Խորենացին. "Շինէ և յանապատ և յանմարդ տեղիս.. յառանձնակաց խրճիթս,,. Գ. 20: Նոյնպէս և Գինդ 'ի մէջն անդ չորրորդ դարուն, զորմէ գրէ Բուզանդ. "Եւ էր Գինդս այս 'ի Տարօն գաւառէ, և լեալ սա աշակերտ մեծին Դանիէլի. և յետ նորա էր գլուխ աբեղայից, և վարդապետ միանձանց, և առաջնորդ մենակեցաց, և վերակացու վանորայից, և ուսուցիչ ամենայն անապատակաց. և տեսուչ ամենեցուն՝ որք միանգամ վասն սիրոյն Աստուծոյ յաշխարհէ էին մեկնեալ, 'ի յանապատս բնակեալ, 'ի քարանձաւս ամրացեալք յայրս և 'ի քարածերպս երկրի, և միահանդերձք բոկագնացք գգաստացեալք խոտաճարակք ընդաբուտք արմատակերք, զօրէն գազանաց 'ի լերինս շրջէին լեշկամաշկօք... զօրէն երամոյ թռչնոց բնակեալ էին սոքա 'ի ծակս վիմաց, 'ի սորս քարանձաւաց, անինչք անստացուածք անխնամք, առանց դարմանոց՝ ամենևին չտանել մարմնոց: Եւ էր նոցա բուն գլխաւոր սուրբն Գինդ,,. Գ. 16: Նոյնպէս և 'ի սկիզբն հինգերորդ դարուն սուրբն Մեսրոպ՝ նախ եղեալ վանական, ապա անապատական. "Տենչացեալ, ասէ Ղազար, կարգի վանականութեան, երթայ 'ի վանս բազմութեան եղբարց.... ապա յանապատական կրօնս փոխեալ՝ զարմանալի երևէր և հռչակաւոր. և կայր յանապատս 'ի բազում տեղիս քարանձաւաց մեծաւ առաքինութեամբ և խստամբեր վարուք,,. 25: Եւ ոչ միայն նոքին՝ այլ նաև զայլս 'ի կրօնաւորաց 'ի նոյն կեանս անոյր. "Ընդ ժամանակս ժամանակս իւրով մարմնովն իսկ օրինակ ցուցեալ, ասէ Կորիւն, առեալ զոմանս յաշակերտաց յիւրաքանչիւր մենաստանացն՝ և երթեալ լեռնակեաց սովորութեամբ ծակախիթ եղեալ զառօրէական զկերակուրն խոտաբուտ ճաշակօքն վճարէին,,: Ի մէջն անդ հինգերորդ դարուն՝ սոցա հետևօղք եղեն և Թաթուլ և Վարոս. զորոց գրէ Ասողիկ. "Եւ ճգնազգեացն Անտոն, որ և Թաթուլ, առ սոքօք (առ Գիւտ կաթողի-

կոսիւ և առ Մովսէս փիլիսոփայիւ և Ճարտասանաւ) առի թողեալ զամենայն վասն Քրիստոսի հանդերձ Վարդանիւ եղբարբ իւրով երիցաւ. և երթեալ 'ի վայրս դժնդակս, ընդ գազանաց և ընդ վիշապաց բնակեցանայր, 'ի տեղի' որ այժմ առի Գազանածակք կամ Թաթլոյ վանք„. Է. 2։ Յեղս վեցերորդ դարուն անուանի Ճգնաւորքն խոտաճարակք եկեալք 'ի բաժնէն Յունաց 'ի Տարօն մօտ յԻննակնեան վանսն բնակեցան յանտառի 'ի Ճգնարանս, խոտաբուտ կենօք շատացեալք։ Իսկ յիններորդ դարուն յիշատակին առ Յոհաննու կաթողիկոսի բազմութիւնք դասուց անապատականաց առ ստորոտով Սեպուհ լերին. "Տեսի անդ, ասէ, 'ի ծործորս և յամուրս քարանձաւացն բնակեալ արս կուսակրօնս, խարազնազգեացս, գետնախշտիս, բոկաքնացս, խոշորաճաշակս ... Եւ առ․ քա ոչ թերևս միախուռն 'ի միասին բնակեալք, այլ ցան և ցիր առ ստորոտով լերին կալեալ կայեանս. որք և բազմաշխատ քրտամբք երկոց իւրաքանչիւրաք զհարկաւոր պէտս մարմնոյն վճարէին„։ Զայսոսիկ անապատականս տեսեալ հանապազորդեալ առաւանեմք մինչև յերեքտասաներորդ դար. զի զնոյն անապատն յիշէ 'ի նախադրութեան մեկնութեան քերականին նաև Յոհան Երզնկացի, որ եկաց յերեքտասաներորդ դարուն։

### Գ. Միաբանական կեանք։

Այս կեանք կրօնաւորական' որ է միաբանութիւն. 'ի մենաստանս բնակել' յոյժ սաստիկ յաճախեաց յաշխարհիս Հայոց. զորս թէպէտ յաւուրս հալածանաց Յազկերտի կամեցեալ ուրացելոյն Վասակայ ջնջել զնոսա յերկրէս' "հալածեաց և փախոյց զամենայն միայնակեացս աշխարհին„, որպէս ասէ Եղիշէ 166. բայց վկնի անցանել Պարսից' թէ 'ի պատճառս հալածանաց հաւատոյ' աշխարհն աւերի և 'ի վնաս իւրեանց դառնայ, յետ նահատակութեան Վարդանանց հազարապետն Պարսից ետ առժամանակ մի թոյլտուութիւն. "Ըստ առաջին սովորութեան պաշտել յայտնութեամբ, ասէ Եղիշէ 231 .... Եւ միայնակեացք որք ելեալ և կորուսեալ էին' հրամայէր գալ և ունել զիւրաքանչիւր տեղիս. և զամենայն կարգս աստուածպաշտութեանն որպէս զառաջ և ունէին յառաջ ժամանակաւ առ նախնեօքն, նոյնպէս և այժմ ասէ կալցին„։

Յետ աշխարհիկ միշտ ուսմամբք հանապազորդեալ 'ի Հայս բազմութեան միայնակեցաց, որք և ազատ էին 'ի հարկաց և 'ի տուրց, որպէս նշանագրեցաք 'ի գլուխն Պատմութեան 'ի հարկապահանջութեան. և որպէս յայտ առնէ նաև այս բան նորին մատենագրի որ 'ի Ճառն խրատու միանձանց. «Ազատեցաք 'ի հարկաց արքունի՝ զորս առանց մեղաց էր հարկիլն, և մնաք ընդ հարկաւ ստացուածոց»:

Եկեղեցականք ծաղկեցուցիչք գրաբանական կենաց:

## ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

### ԴԱՐ Դ

Ի սկզբան անդ միանգամայն ընդ լուսաւորութեն հաւատոյ՝ եղև առաջին հիմնադրող այսր վանական կենաց. «Եւ դարձեալ, ասէ Ագաթանգեղոս յՃզ. բազում և անհամար գունդս գունդս վանականաց 'ի շէնս և յանշէնս, շինականս, դաշտականս, լեռնականս, քարանձաւամուտս և արգելականս հաստատէր»: Այլ որ գրեալ էր Ղևոնդ հայրապետ 'ի պատասխանին ՃԺ. Թղթոյ. «Այլ և խրատ բարեաց տամ ձեզ. զՄիանձնակեան ուխտ... շինեսջիր զշա բնակութի դառուց կրօնաւորաց: Եւ կացուցանես զշատս ըստ օրինակի այսր կրօնաւորացս, զոր տեսեր 'ի մերում վիճակիս. զոր և 'ի սրբոյն Անտոնէ ուսցիս զկարգ ճգնութեն, որ ոչ ինչ պակաս է քան զառաջինն Անտոն: Զոր և ես քեզ օգնութի համարիմ լայն. զի զեպիփանն աշակերտ սրբոյն Անտոնի յօժարեցուցի գալ 'ի նոյն Միանձնակեան ուխտն, ուսելով ընդ նոքեան ընտիրս արս քառասուն՝ ճգնաւորս խարազնազգեստս»: Եւ սուրբ նոյն գրէ. «Ժողովեցաւ 'ի նոյն ուխտի հարիւր արանց չափ, որոշեցաւ 'ի նոսա գեօղս և աւանս մեծամեծս, որպէս զի պէտք վանացն 'ի նոցանէ վճարեսցի, և նոքեանք միայն աղօթից և ճգնութե պարապեսցին»: Վասն որոյ և Վարդան գրէ 'ի ներբողեանն Լուսաւորչին. «Վանօրայս շինէր, անապատս բնակեցուցանէր, աղքատանոցս և հիւրանոցս պատրաստէր ըստ աշխարհաց, գաւառաց, գիւղից և ագարակաց»:

## ՍՈՒՐԲՆ ԵՊԻՓԱՆ

Աշակերտ ծերունւոյն Դանիէլի. զորմէ գրէ Բու-զանդ. "Նորա զերկիրն Ծոփաց վանիւք. և դնէր վար-ժեար ընդ ամենայն երկիրն Ծոփաց, և լինէր սուրբն Ե-պիփան լոյս երկրին Ծոփաց... Անցանէր և յերկիրն Աղձնեաց, լուսաւորէր և գնայր. և նորա զերկիրն... վանօքն. և շինէր վկայանոց մի յաւանին 'ի քաղաքին Տիգրանակերտի". Ե. 27: Թէ որքան բազմացեալ էր ըղ-ղասէս կրօնաւորաց՝ յայտ առնէ անդ նորին մատենագիրն. զի ասէ. "Իսկ նա էառ ընդ իւր զաշակերտսն իւր արս միանձունս լեռնականս անապատականս, արս հինգ հարիւր, երթալ գնալ յերկիրն Ծոփաց": Դարձեալ. "Այս իբրև գնայր սուրբն Եպիփան 'ի գաւառէն Ծոփաց յիւրմէ միանձնանոցէն՝ որ անուանեալ կոչի Մամբրէ, եթող անդ բազում եղբարս միաբանս միահաւանս հաս-տատեալս կրօնաւորս քրիստոնէից, լեռնականս ճըղ-նաւորս միանձունս. և 'ի վերայ նոցա եդեաց մի գլխաւոր: Բայց էին 'ի նոցանէ ամանք, որ ընդ ամենևին այլ ինչ կերակուր չէր ճաշակել նոցա 'ի մանկութենէ իւրեանց, բայց լոկ բանջար և ջուր. և զհամ գինւոյ գիտէին ոչ գի-տէր լինել". Ե. 28:

## ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ

Որմէ Բուզանդ. "Յաւուրսն Ներսիսի ընդ ամենայն երկիրն Հայոց կարգք պաշտամանն եկեղեցւոյն մեծապէս պայծառացեալ էր... և կարգք վանականաց և 'ի շէնս և յանշէնս առհասարակ ծաղկեալ". Ե. 31: Զոր յիշա-տակեն և Խորենացին և Յովհաննէս կաթողիկոս՝ եղբայրա-նոցս և մենաստանս միանձանց շինեալ ասելով:

## ՍՈՒՐԲՆ ԳԻՆԴ

Սա որպէս գլուխ եղև անապատականաց՝ զոր յա-ռաջն յիշեցաք, նոյնպէս եղև և վանականաց. "Սուրբն Գինդ նոյն զամենայն անապատս մենակեցօք, և զամե-նայն շէնս վանօրէաւ, և բազում յաշխարհի ուղղեալ կացուցանէր կարգս մարդկան զաստուածեղէն կրօնիցն". որպէս ասէ Բուզանդ Զ. 16:

## ՍՈՒՐԲ ՍԱՀԱԿ

Զորմէ Խորենացին. «Սա ամենայն առաքինութեանց հարցըն նմանեալ, աղօթիցն մասամբ առաւելեալ. քանզի ստացաւ աշակերտս վաթսուն ըստ նմանութեան մայրաքաղաքացն սպուդեից, արք կրօնաւորք, խարազնազգեստք, երկաթապատք, բոկագնացք, որ յար ընդ նմա շրջէին. որովք մշտնջենաւոր պաշտամամբ կատարէր զկանոնսն». Գ. 49: Սոքա առաւել բազմացան յետ մահուան սրբոյն Սահակայ. քանզի ասէ. «Ցրուեալ աշակերտաց նորա, կրօնաւորաց սպուդեից 'ի գաւառս իւրաքանչիւր, վանորայս շինեցին՝ ժողովեալ եղբարս». Գ. 67:

## ՍՈՒՐԲ ՄԵՍՐՈՊ

### ԴԱՐ Ե

Զորմէ գրէ Կորիւն. «Եւ գտեալ եւս զոմանս յինքն յարեցուցանէր աշակերտեալ նմին սովորական աւետարանութեան»: Իսկ թէ զինչ էին վարք եւ ճգնութիւն սրբոյն Մեսրոպայ՝ գրէ անդէն. «Հոգեւորացն զանձն տուեալ միաւորութեամբ լեռնակեցութեան, քաղցի եւ ծարաւոյ եւ բանջարաճաշակութեանց, արգելանաց անլուսից, խարազնազգեստ եւ գետնատարած անկողնոց. եւ բազում անգամ զհեշտական հանգիստ գիշերոյն եւ զհարկ քնոյ յոտնաւոր տքնութեան 'ի թօթափել ական վճարէր. եւ զայս ամենայն առնէր ոչ սակաւ ժամանակս»: Ահա այսպիսի խստամբեր վարուց աշակերտս արար զայլս, այնչափ բազում՝ մինչեւ առնել նորին պատմագրի. «Անհամար գունդս վանականաց 'ի շէնս եւ յանշէնս, դաշտականս եւ լեռնականս, անձաւամուտս եւ արգելականս բնակեցուցեալ հաստատէր»:

## ԹԱԴԷՈՍ կամ ԹՈԴԻԿ

### ԴԱՐ Զ

Որ յետս անոր վեցերորդ դարուն եւ 'ի սկիզբն եօթներորդին գոլով քաններորդ վանահայր Գլակայ՝ յոյժ պայծառացոյց զայն մենաստան, որպէս ասէ Յովհան Մամի-

կոչեցան 'ի գլուխն ա․ "Բազում կրօնաւորս կարգեաց 'ի Գլակայ վանսն, միաճաշակս և ճգնաւորս՝ առանձինն բնակել, անձինս երեք հարիւր ութսուն և ութ,,։ Յաւուրս սորա փայլեցան եօթն խոտաճարակքն։

## ՔՐԻՍՏԱՓՈՐ Գ․ ԿԱԹՈՂԻԿՈՍ

## ԴԱՐ Է

"Ունէր միայնարան մեծ մերձ 'ի գիւղն Ուղեաց, որ 'ի Մանեաց անուն․ և բազում միանձունս առ ինքն գումարեալ՝ առաքինաջան երկօք և բազմաշխատ քրտամբք փայլէր, պահոց անդադարմունք և աղօթից պաշտպանութք և ամենագիշեր տքնութք,,․ Յովհաննէս կաթողիկոս։

## ՍՏԵՓԱՆՆՈՍ ՎԱՆԱՀԱՅՐ ԳԼԱԿԱՅ

Զորմէ ասէ Յոհան Մամիկոնեան 'ի գլուխն է․ "Նստաւ յաթոռ նորա մանկունն Ստեփաննոս, որդի իշխանին Արծրունեաց, որոյ մայրն հերձեաւ․ և կան 'ի թաղման ծնօղք նորա 'ի նոյն վանսն․ և բազում ուղղութիւն գործեաց 'ի գաւառն Տարօնոյ, զի վերագոյն ունէին զնա քան զեպիսկոպոսն․ զի հայր էր վանացն, և ընդ ձեռամբ իւրով ունէր երեքհարիւր իննսուն և ութ կրօնաւորս․ զի այնչափ առաքինի էր, որ ամենեքեան իբրև զՅոհաննէս կարապետն համարէին զնա։ Սա խնդրեաց 'ի սուրբ Կարապետէն կապել զբերանս գազանացն՝ որք բեկանէին զլուսաւորան եկեղեցւոյն։ Եւ բազում պարկեշտ վարուք իւրովք ... զիշխանն Հայոց ... ածեալ 'ի հաւատս ... և արարեալ կրօնաւոր, եւս նմա շինել զեկեղեցին՝ որ 'ի Թիլն աւանի յեկեղեաց գաւառի,,։

Ի սկիզբն տասներորդ դարու 'ի Հայս նորոգ ծաղկեցաւ կատարեալ կարգաւորութիւն միաբանական կենաց։ Պատճառ այսր կարգաւորութեան և բազմանալոյ մենաստանաց եղեն հայկազուն կրօնաւորքն փախուցեալք 'ի հալածելոյ Յունաց․ զի 'ի սահմանաց փոքուն Հայոց և մասին ինչ մեծին Հայոց, որ ընդ տէրութեամբ Յունաց էր յայնժամ, եկեալ 'ի մեծ Հայս՝ զանազան վանորայս կառուցին յաւուրս ա․ Աշոտոյ թագաւորին Անւոյ։

## ԳՐԻԳՈՐ ՎԿԱՅԱՍԷՐ

### ԴԱՐ ԺԱ

*Օսմանէ առաւել քան զնախագրելոցն ունիմք վկայութիւն, ոչ նիւթական վանօրէից՝ այլ բնիկ կրօնաւորական կարգի նորոգօղ լեալ. զի գրէ Մատթէոս. «Սա պայծառացոյց զկարգ կրօնաւորութեան յազգս Հայոց... վասն զի փայլեաց սրբութեամբ և ամենայն պարկեշտութեամբ, և պարապեալ կայր պահօք և աղօթիւք». Ճժը: Դարձեալ. «Սա եղև սքանչելագործ 'ի մէջ հայաստանեայց, և պայծառ առաքինութեամբ կայր յամենայն ճգնողական վարս... և կայր 'ի պաշտօնն Աստուծոյ անդադար սաղմոսերգութեամբ... Եղև օրինակ դասուց կրօնաւորաց ամենայն քաջակիրթ առաքինութեամբ». մժգ:*

Իշխանաւորք ծաղկեցուցին զմիաբանական կենաց:

## ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

### ԴԱՐ Ե

*Սա կարգեցաւ մարզպան յետ հինգերորդ դարուն. զորմէ գրէ Ասողիկ. «Վահան... զմեծն կաթուղիկէ եկեղեցին որ 'ի Հայս՝ վերստին մեծապէս նորոգեաց՝ ընդ դասս կրօնաւորացն բազմացուցանելով, որ Սուրբնոյ անապատն ասի, վերակացու նորա կարգեալ զՂազար փարպեցին Ճարտասան և պատմագիր». Է. 2:*

## ԳԱԳԻԿ Ա. ԹԱԳԱՒՈՐ

### ԴԱՐ Ժ

*Սա՝ քանզի 'ի խաղաղութեան պահեաց զաշխարհս, պատճառ եղև այնու և ինչ ինչ կարգաւորութեան առնել յեկեղեցականս. այսպէս ցուցանէ բան Լաստիվերտցւոյն, որ ասէ. Գագիկ «այր հզօր և յաղթօղ 'ի պատերազմի. սա 'ի խաղաղութեան կալաւ զաշխարհս Հայոց. 'ի սորա ժամանակս պայծառացան կարգք եկեղեցւոյ, և լուսաւորեցան մանկունք ուխտի սրբութեան». Է:*

### ԳՐԻԳՈՐ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ. ԵՒ ՇՈՒՇԱՆ ՏԻԿԻՆ ՆՈՐԱ

Սոքա էին ծնօղք Վահրամայ նահատակելոյն, զորմէ ասորև. առ որ խօսելով Գրիգոր մագիստրոս 'ի Ներբո֊ղեանն իւր, զոր գրեաց 'ի Թղթին որ առ Յոհաննէս արք֊եպիսկոպոս Սիւնեաց, ասէ. "Մինչև 'ի սոսա ոչ վանս այսպիսիս (շինեալ էին) 'ի մայրաքաղաքս, և ոչ ուսում֊նասիրութիւն, և ոչ ազատութիւն քահանայական, և ոչ շինութիւն եկեղեցեաց. քանզի սոքա արծարծեցին ըզ֊կարգ և զօրէնադրութիւն մեծին Սահակայ քոյին նախնոյն. և վանս նորագոյնս շինեալ բազումս, և զաւերեալսն նո֊րոգեալ, և այլս անթիւս":

### ՎԱՀՐԱՄ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ

#### ԴԱՐ ԺԱ

Որդի նախագրելոցդ. հօրեղբայր Գրիգորի մագիստրո֊սի, որ 'ի նախայիշեալ Ներբողեանն կոչէ զսա "Ամա֊պատաւէր և կրօնաւորաւէր, և ամենայն բոլոր բարեաց օթևան. քանզի քո յօրինիչ ձեռամբ և կերպագօղ, և ա֊ռատաձիր գանձուց բաշխումն՝ յոգնադրուն վկայից կող֊մեաց խորան, և աստուածային խորհրդոյն կանգնեալ սեղան, և միանձանց բնակութիւն, և կենդանի վկայից և խաչակրօն գասուց և անմարմնոցն համեմատեալ": Իսկ բա֊նից սորին յայտ է՝ թէ սոքա պահլաւունիք եղեն սատա֊րիչք և յառաջացուցիչք շինութեան այնչափ վանօրէից, զորս շինեցին և կարգաւորեցին յայնժամ 'ի Յունաց փախուցեալ կրօնաւորքն: Ի շինեալ մենաստանս Վահ֊րամայ յելս անդ տասներորդ դարուն յանուանէ յի֊շատակին Սամուէլ և Կիրակոս և զհուշակաւոր մենա֊ստանն Մարմարաշէն, զորմէ տես 'ի մեծ Հայս 430:

### ՍՄԲԱՏ ՄԱԳԻՍՏՐՈՍ

"Շինեաց զհրեշտակաբնակն և զփափաքատենչ վանքն որ Բագնայր կոչի, ժողովեալ արանց աստուածայնոց". Սամուէլ 'ի ՆԾԹ. (1010):

## ՎԵՍՏ ՍԱՐԳԻՍ

«Մեծապատիւ Վեստն Սարգիս զկնի բազում շինուա-
ծոց եկեղեցեց և եկեղեցեաց զհրաշալի զվանս զԽծկոնս
շինեաց պայծառ պատկառ զարդարեալ զսուրբ քառա-
բանն, որ է սուրբ Սարգիս. նաև զԾառաքար վանքն
եբրդ. արարեալ պարսպեալ հաստահեղյս բրգամբք». 
Սամուէլ Անեց. (1024).

## ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ

Զսմանէ Շնորհալին 'ի վէպսն իւր.

«Եկեղեցիս վայելչացեալ,
Եւ հայաստան աշխարհ շինեալ.
Ըզկրօնաստանս յարդարեալ,
Ըզվանականս յանձանձեալ.
Զարգիւնականս անձն ընկալեալ,
Զվարդապետաց հոյլ ժողովեալ»:

## ՄԵԾՆ ԼԵՒՈՆ

Առաջին պատկաւոր կամ Թագաւոր 'ի Կիլիկիա. զոր-
մէ գրէ Վահրամ յոտանաւորսն յէ.

«Եւ զոր նախնեացըն պարգեւեալ,
Վանորէիցըն զոր շինեալ,
Սա յաճախակի առաւելեալ,
Եւ մեծապէս առատացեալ»:

Որ և զմենաստանն Ակներ՝ նորին Լևոնի ասէ շինեալ:
Ցորոյ աւուրս գումարեալ ժողովն Սսոյ՝ 'ի վեցերորդ և
յութերորդ կանոնի սահմանեաց «կրօնաւորաց մեզ ոչ
ունել. միայն կալ 'ի վանս, և առանձին իրս ոչ ստա-
նալ». որպէս ասէ Կիրակոս:

Յիշատակին 'ի գիրս և այլ կառուցողք մենաստանաց,
զորոց անխտիր յիշել զկնի: Իսկ Ասողիկ Գ. 7. յիշատակէ
և զայլ միաբանութս երեւելիս. զոր օրինակ ետն Վարդուէ.
Կարմիր Հայր. զորովք զանց առնեմք, քանզի ոչ պատմի
ընդդանէ աշակերտս առացեալ.

## Դ. Մենաստանք:

Մենաստանական կեանք կրօնաւորաց թէ քանի առա-
ւելութեամբ յաճախեալ էր յաշխարհին մերում՝ յայտ-
նի երևի 'ի բազմութենէ մենաստանաց, զորս աստանօր
յիշեցուք. նախ ըստ դասուց զանազանութեան պաշտա-
մանց նոցա, և ապա ըստ կարգի ժամանակագրութեան:

Մենաստանք 'ի գիրս մեր պէսպէս անուամբք կոչին,
որպէս յայտ է, Մենաստանք. Վանք. և յոլովակի Ուխտք.
բայց այլաբանութեամբ որպէս զեկեղեցին՝ նոյնպէս և զմե-
նաստանսն կոչեցին ուրեք ուրեք փարախ, Քաւարան. որ-
պէս տեղի քաւելոյ և ապաշխարելոյ: Իսկ երևելի մե-
նաստանաց եդաւն զպատուանունս Մայրաքաղաք. զոր օ-
րինակ Մագիստրոս 'ի թղթին զոր գրեաց առ սանահ-
նեցիս, ասէ վասն մենաստանին Սանահնի. "Իսկ զի՞նչ ա-
րուեստ և կարգաւորութեան Մայրաքաղաքիդ„: Ի թղթին
որ առ Սոսթենէս. "Ուխտիդ սուրբ և Մայրաքաղաքիդ
Մարմաշինոյ„: Դարձեալ անդ. "Գրեա զայս ընդ ամե-
նայն Մայրաքաղաքս սրբոց„. այսինքն է՝ ընդ ամենայն
մենաստանս կրօնաւորաց: Եւ 'ի թուղթն առ կրօնաւորս
Խնատի վանից. "Զի մի՛ երբէք յայլում ժամանակի
դղրդեսցին, և լիցի աւերումն այսպիսի Մայրաքաղա-
քաց„. որ է մենաստանաց: Ըստ այսմ է իմանալ և
զբանն Խորենացւոյն Գ. 49. ուր ասէ. "Ըստ նմանութեան
Մայրաքաղաքացն սպուդէից„: Սոյնպէս կոչի և Հաղբատ
և Գլակ և այլ մենաստանք ինչ՝ զորս յիշեալ է մեր 'ի
մեծ Հայս: Իսկ թէ ընդէր այսպէս կոչեցան՝ տես 'ի Հա-
սարակախօսութեան աշխարհագրութեան 'ի թղթահա-
մարն 392:

Սկզբնաւորութիւն շինութեան մենաստանաց. սկիզբն առ-
նու 'ի Բարթողոմեայ առաքելոյն, այլ յաւէտ 'ի ժա-
մանակաց անտի սրբոյն Գրիգորի. որք քանզի ըստ բաւա-
կանին բազմացեալ էին յաւուրս իւր, վասն նոցին կրօ-
նաւորաց յօրինեաց զայն սահմանադրութիւն և կանոն, որ
գտանի տպագրեալ 'ի Յաճախապատում գիրս իւր: Այլ
քանզի և յետ այնորիկ մուծան ինչ ինչ փոփոխութիւնք,
մեծն Ներսէս առաջին եղև 'ի բարեկարգել. զի գրէ
Մեսրոպ ժե. "Յառաջ քան զձեռնադրութիւն Ներսիսի
վանականք և եպիսկոպոսք և միանձնականք 'ի քաղաքս

և 'ի գետօս բնակէին. զորս ոչ հաւանեալ մեծին Ներսէ-
սի . . տայր հրաման շինել եպիսկոպոսանոցս և եղբայրա-
նոցս (մենաստանս) մեծամեծս և փոքունս, երկու հա-
զար և քառասուն . . . և բաշխեաց յեղբայրանոցս գիւղս
և դաստակերտս 'ի մխիթարութիւն նոցա „: Յաւուրս
Բագրատունեաց Թէպէտ անդադար էին արշաւանք արա-
բացւոց, այլ 'ի վերայ այսր ամենայնի բազմուն մենաս-
տանաց կամ նորոգ կառուցան և կամ նորոգեցան, մա-
նաւանդ 'ի տասներորդ դարուն: Առաջին պատճառ յայ-
նըմ դարու բազմանալոյ մենաստանաց՝ եղև հալածումն
Ռոմանոսի կայսեր, զորմէ գրէ Կիրակոս. "Զկնի նորա
(Աղեքսի կայսեր նստաւ) Ռոմանոս. սա հալածեաց
զամենայն կրօնաւորս և զքահանայս Հայոց, որք էին
յաշխարհս Հոռոմոց . . . և եկեալ յաշխարհս Հայոց
յաւուրս Աշոտոյ որդւոյ Սմբատայ՝ հաստատեցին վանո-
րայս զԿամրջաձոր և զԿապուտքար 'ի գաւառին Արշա-
րունեաց հռչականուն, և զՀոռոմոսին կոչեցեալ վանք,
և զԴպրէվանք 'ի Շիրակ գաւառին „: Երկրորդ պատ-
ճառն էր՝ ընդ ժամանակս ինչ խաղաղանալն աշխարհիս
Հայոց յաւուրս նորին Աշոտոյ Թագաւորին Անւոյ: Թէ
որչափ բազմացեալ էին յաւուրս Բագրատունեաց մե-
նաստանք և կրօնաւորք՝ Լաստիվերտցի 'ի գլուխ Ժ. յող-
բալ իւրում զկործանումն Բագրատունեաց՝ յիշէ ասե-
լով. "Նաև անապատաւորացն վայրքն լցեալ և խճողեալ
էին կրօնաւորական դասուք. մինչ զի զգետօս և զագա-
րակս առ բարի նախանձ քահեալ ատանէին բնակութե̃
կրօնաւորաց „: Իսկ 'ի պատմութե̃ Օրպէլեանին գլուխ Թ.
Թիւ այնց մենաստանաց միայն զորս Տարսայիճ օրպէլեան
ետ ազատ առնել 'ի հարկաց Թաթարաց յելս երեքտա-
սաներորդ դարուն, եղեն աւելի քան զ150. որք և
չէին համօրէն աշխարհիս Հայոց, այլ որպէս յայտ է՝
միայն սահմանացն՝ յորոց վերայ Տարսայիճ կարգեցաւ
աթաբէկ կամ հայրիշխան 'ի Դեմետրեայ Վրաց ար-
քայէ: Արդ 'ի մենաստանաց յիշատակելոց 'ի գիրս՝ նշա-
նագրեսցուք յառաջիկայս զերևելիսն ըստ իւրաքանչիւր
պաշտամանց իւրեանց՝ յորս աւելի պայծառացան.

Մենաստանք տօնախմբելոյ յաղօթաւորութեան ։

Ի գիրս մեր յիշատակին ոչ սակաւ մենաստանք Մըշ-տապաշտօն անուանեալք․ զոր օրինակ 'ի Սիւնիս՝ առ Սան-փանեանսի Օրբելեան, որք են Թանահատի վանք․ Վաղա-գնին վանք․ Երիցավանք․ Շատանեաց վանք ։ Եւ 'ի գլուխ նց․ Խոտակերից վանք, որ և Քարկոփ ։ Զսոսա զամե-նեսին հանճարեալ՝ 'ի կարգի Անհանգստից կոչեաց․ որք փոխփոխ կարգադրութե՝ մի զամն զկնի միւսոյ դասուն փոխանակե-լով միշտ կատարէին զպաշտօն Աստուծոյ․ նախն իրի և կոչեցան Մշտապաշտօնք․ զի զայլ խումբ չգտանեմ ընդ-դասս և ընդ միւս վանորայս, որք թէպէտ յաղօթս պարա-պէին և զամբողջական պաշտօնսն կատարէին, այլ ոչ կոչե-ցան Մշտապաշտօնք ։ Այս կարգ սկիզբն էառ 'ի Հայս 'ի դարուն Սահակայ․ զի զայս ցուցանէ բանն Խորենացւոյն Գ․ 49․ յասելն վասն նորին․ "Սա անձնային առաքինութեանց հարցն նմանեալ՝ աղօթիցն մասամբ առաւելեաց․ քանզի սոսացաւ աշակերտաց վաթսունն ըստ նմանութեան մայրա-քաղաքացն սպուդեից․ արք կրօնաւորք . . . որովք միշ-տընջենաւոր պաշտամամբ կատարէր զեկեղեցին „․ զոր բա-ցայայտ ևս ասէ Յոհաննէս կաթողիկոս․ "Մշտնջենամբ-տունչ աղօթիւք հանդերձ իւրովք աշակերտօքն կատա-րեալ զպաշտօն բարեկարգութեան „ ։ Եթէ սուրբն Սահակ սովորական պաշտամամբ ժամակարգութեան կատարէր զեկե-ղեցին, ոչ առաւելոյր արդարև քան զհարս իւր, զոր Խորենացին վկայէ վասն նորին․ ուր թողցուք զի նմանե-ցուցանէ վանաց սպուդեից, որ յունարէն նշանակէ ժրա-ջան, անխոնջ․ և սովին անուամբ ցուցանեն կամք զԱն-հանգստից վանս ։ Սոյն այս անուն Սպուդէ յիշատակի և 'ի դատաստանագիրս Մխիթարայ Գօշի․ զոր Յոյնք այլով անուամբ կոչեն Ἀκοίμητοι, ըստ մեզ Անքնիք, որ է անքուն ։

Մենաստանք տօնախմբելոյ ըստ ծանին անընդհատութեան, հասարակաց տանելով կանոնաց ։

## ԿԱՄՐՋԱՁՈՐՈՅՆ ՎԱՆՔ

Օայսմ մենաստանէս գրէ Ասողիկ․ "Ցայսմ ժամա-նակի՝ ('ի ժամանակս Անանիայ կաթողիկոսին և Ա-

բաստայ (Թագաւորին Աշոտոյ 'ի տասներորդ դարուն) ծաղկեալ պայծառանայր կարգ կրօնաւորական հանդիսից աշխարհիս Հայոց. եւ 'ի յոլով տեղիս շինեցան եղբայրանոցք (Մենաստանք), միաբանականք, հաւատաւորականք ուրեմն Քրիստոսի: Նախ առաջին մեծահռչակ ուխտն Կամրջաձոր 'ի գաւառին Արշարունեաց. որոյ առաջնորդ հայր Յովհաննէս. որ հաւաքեալ յարեւմտեայ աշխարհէն յեգերացւոց գաւառէն... կանոն կարգի ունելով զսահմանադրութիւն սրբոյն Բարսղի հայրապետին մեծի 'ի վերայ առաքելական հիմանն՝ Թէ էր նոցա ամենայն ինչ հասարակաց. յոր ժողովեալ արք ճգնազգեացք թուով երեքհարիւր»։ Գ. Դ.։

## ԹԵՂԵՆԵԱՑ ՎԱՆՔ

Յերկոտասաներորդ դարուն. զորմէ Կիրակոս. Երեւելի վարդապետն, ասէ, եւ «Տուրքեկին 'ի Թեղենեաց, որ բարիոք կարգաւորեաց զվանքն, զամենայն ինչ հասարակաց լինել, եւ առանձինն ոչինչ ստանալ»։

## ՀՆՁՈՒՑ ՎԱՆՔ

Ի կարին գաւառի 'ի ձեռն հօրն Սարգսի ամենայն օրինօք լցեալ։

ԿԱԳՈՒՏՔԱՐ. ՅԱրշարունեաց գաւառի։
ԴԳՐԷՎԱՆՔ. Ի Շիրակ գաւառի։
ՑԱԽԱՑ ՔԱՐ. Ի Վայոց ձոր 'ի ձեռն հօր Ստեփաննոսի։

Զայսոսիկ յիշատակեալ Ասողկայ 'ի Գ. Դ. 'ի նոյն ժամանակի Աբասայ 'ի տասներորդ դարուն, այսպէս ասէ. «Սոքա ամենեքին եւ այլք յետ սոցա 'ի սոցանէ ուսեալք, միաբանական ճգնութ՛ք, անզբաղ յամենայն ինքնասիրութենէ հոգւոյ, ոչ ստանալ մարդոյ ինքեան եւ ոչ խնդրել մի, ոչ ճաշակեալ ուրուք քան զհասարակաց սեղանն, ոչ 'ի մրգոց եւ ոչ 'ի գալար խոտոց. այլ զհրամայեալսն 'ի պատուիրանսն տեառն գործել, եւ զգրութեանն նուագան հնչեցուցանել 'ի գիշերի եւ 'ի տունջեան համապազորդեան փառաբանութ՛ք»։

Մենաստան հռչակեալ ՚ի բարեկարգ կարգաւորութեան ։

## ՄՈՎՍԻՍՆՈՑԻ ՎԱՆՔ

Զորմէ գրէ Ասողիկ. « Ի սոյն ժամանակս (յաւուրս Աբասայ Թագաւորին ՚ի տասներորդ դարուն) և ՚ի Լիկանդան աշխարհին, ՚ի Նահրներ տեղին, ՚ի Կարբերդ գաւառի, ՚ի ձեռն հօրն Մովսիսի շինեցաւ վանքն՝ որ անուամբ նորա կոչի. բարեկարգ կարգադրութեամբ, բազմութեամբ եղբարց, բազմապայծառ բանական իմաստնովք ։ Եւ էր Մովսէս այրն Աստուծոյ ՚ի Տարօն գաւառէ ազգաւ. որ ամենայն արևմտեայ աշխարհին պատճառ բարեաց եղև ՚ի բազմացուցանել զգաստ կրօնաւորաց. և իբրև աւանդապահ կրօնիցս մեր եղեալ ». Գ. 7 ։

Մենաստանք անուանիք ընդ ճոխն օտարասիրութեան և ողորմածութեան ։

## ԱԿՈՌՈՑ ՎԱՆՔ

Շինեալ յԱնաստաս կաթողիկոսէ յեօթներորդ դարուն. զորմէ գրէ Յոհաննէս կաթողիկոս. « Կացոյց զնա յարդարեալ քահանայական ուխտի միակրօնից և այլոց ևս գղերց եկեղեցւոյ ՚ի պաշտօն աստուածային խորանին և ՚ի ծառայութիւն հանգստեան հիւրոց և տնանկաց և աղքատաց »։

## ՀՈՌՈՄՈՍԻՆ ՎԱՆՔ

« Իսկ ՚ի գաւառին Շիրակայ Հոռոմոսին կոչեցեալ վանք, շինեցաւ ՚ի ձեռն Յովհաննիսի (՚ի տասներորդ դարուն), որ էր զարդարեալ յամենայն առաքինութիւնս, ևս առաւել յողորմածութիւն զարդս. վասն զի ողորմածութեամբ և առաքինութեամբ բաշխէր՝ մինչև ՚ի զգեստուցն իւրոց մերկանայր զամենայն ՚ի բաց յորժամ աղքատաց հանդիպէր. և անցաւորաց և ճանապարհորդաց հանգստարան պատրաստէր զտեղին, մինչ հանգչել իբր յիւրեանց տան ամենայն օտարաց, որ մինչև ցայսօր երևի նոյն նշան ողորմածութեան ՚ի տանն յայնմ ». Ասողիկ. Գ. 7 ։

բազմութեան պաշտօնէից կարգեալ դարման անպակաս պարող 'ի հանգիստ առաւելեալ եղբայրութեանն »[1]։

Սոփանիս ։ Ստեփաննոս Օրբելեան ասէ զմանէ. « Եւ էր 'ի տեղին . . . եկեղեցի . . . յորժ 'ի հին ժամանակաց, յաւուրց անտի որդոյն Ներսիսի և Սահակայ, և ուխտ կրօնաւորք միջավայրան ճգնութեան բնակէին 'ի նմա »․ ԼԹ ։ Զկնի եղև աթոռ մետրապօլտի Սիւնեաց։

Սուրէնայ մենաստան ։ Զորմէ գրեցաք 'ի վերոյ 'ի յիշելն զՎահան մամիկոնեան մարզպան ։

## ԴԱՐ Զ

Որստասուան մարտիրոսի ։ Մերձ 'ի Թէոդոսուպօլիս որ 'ի Կարին գաւառի, նորոգեալ 'ի Յուստինիանոս կայսերէ. զորմէ Պրոկոպիոս. շին. Գ. Կ ։

## ԴԱՐ Է

Մարագ ։ Ուր եկեղեցին շինեալ կայր 'ի սուրբ Լուսաւորչէն. իսկ յեօթներորդ դարու 'ի յայտնել սուրբ խաչին աղօթիւք Թոդիկ ճգնաւորին՝ շինեցին վանս ։

Դպրեվանք ։ Բարսեղ Ճոն յեօթներորդ դարուն առաջնորդ էր մենաստանիս, որպէս ասէ Վարդան. յորմէ մարթ է կարծել թէ շինութիւն նորին յառաջ էր քան զդարն եօթներորդ. իսկ 'ի տասներորդ դարուն հալածեալ կրօնաւորքն նորոգեցին ։

Արուճավանք ։ Գրիգոր իշխանն մամիկոնեան շինեաց, ասէ Յոհաննէս կաթողիկոս, « նուիրանաց ուխտի կրօնաւորական դասուց, յորում և եկեղեցի պայծառապաճոյճ 'ի նմա յարդարեալ ըստ արեւելից կուսէ դաստակերտին մեծի Եղիվարդայ. ուր բնակութիւն կուսակրօնից փոյթ հաստատէ »։

## ԴԱՐ Ը

Մաքենիս ։ Ի Գեղարքունի գաւառին Սիւնեաց, ծաղկեալ յութերորդ դարու. յորմէ յայտ է թէ շինութիւն նորա յառաջ է քան զայս դար ։

[1] Թէպէտ և Յոհան մամիկոնեան զԱշտից վանս հիմնարկեալ 'ի սորոյն յառաջ քան զշինութիւն նորա յիշէ Գրիգորէ ։

## ԴԱՐ Թ

Շողագոյ: Շինեալ 'ի Մարիամայ տիկնոջէն Սիւնեաց 'ի Գեղարքունիս:

Սեւանայ: Շինեալ 'ի Գեղարքունիս 'ի Մարիամայ, որ էր քոյր Շապհոյ բագրատունւոյ:

Սեւան: Մի 'ի հռչակաւոր մենաստանաց 'ի Գեղարքունիս 'ի Սեւան կղզւոջ:

## ԴԱՐ Ժ

Հաղբատ. Սանահին: Կրկին մենաստանք հռչակաւորք 'ի նախնեաց շինեալք. այլ 'ի մէջն անդ տասներորդ դարուն նորոգ հիմնարկութիւն ընդարձակեալք:

Նարեկ: Շինեալ 'ի սմին դարու 'ի կրօնաւորացն հալածելոց. բազում բանաստեղծ գրաւորօք փայլեալ. յորոց մեզ յայտնի է միայն սուրբն Գրիգոր և Անանիա:

## ԴԱՐ ԺԲ

Գետիկ: Հռչակաւոր վանս Մխիթարայ Գօշի, որ նորոգ կառոյց:

## ԴԱՐ ԺԲ. ԺԳ

Սեւ լեառն: Թէպէտ արտաքոյ է բնիկ աշխարհիս մերոյ, բայց լի վանորէիւք և բազմութիւն կրօնաւորաց յազգէս մերմէ:

## ԴԱՐ ԺԳ

Խորանաշատ: Երևելի 'ի վանորայս Արցախ նահանգին. երևելի և վասն շինողին, որ էր Վանական վարդապետ:

Գանձասար: Յիշեալ 'ի Կիրակոսէ 'ի սկիզբն երեքտասաներորդ դարուն 'ի կողմանս Գանձակայ, որ ոչ յիշատակի առ նախնիս:

Սէւն: Մենարան 'ի Սիւնիս, որ անուանի էր յաւուրս Ստեփաննոսի օրպէլեան, « Որ պայծառանայր ճգնաւորամբք յայնմ ժամանակի քան զՍինայն և զՍկիւթայն յեգիպտոս », ասէ նա ինքն 'ի գլուխն կա. ուր թաղեցաւ Ստեփաննոս Սիւնեաց եպիսկոպոս:

Յաւուրս ժողովոյն, զոր արար ա. Կոստանդին կաթողիկոս, որ նստաւ 'ի 1220—1268. յիշատակին առ Կի-

Զքայլն Որմզդայ և Մաքովորայ,
Եւ զայլ կանայսն յետ նոցա „:

Յաւուրս սորին Գրիգորի լուսաւորչին կուսաստան հաստատեալ գտանեմք յիշատակութիւն 'ի գիրսն[1] վասն քաղաքին Երուսաղեմի, ուր գրեալ կայ՝ թէ նախարարք Ամատունեաց կառուցին վանս յԵրուսաղէմ. "ուր Հաւատաւորքն[2] բնակէին 'ի կողմն Սիոնի „: Այլ բազմացուցանել զկուսաստանս ընդ համօրէն Հայաստան՝ վասն մեծին Ներսիսի գտանեմք յիշատակեալ առ Բուզանդայ Ե. 31. 'ի չորրորդ դարուն, 'ի պատմելն զաւերումն գործոց մեծին Ներսիսի՝ զոր աւերեաց Պապ թագաւոր յետ մահուան նորա. Սկսաւ, ասէ, "աւերել զկուսաստանսն 'ի գաւառս գաւառս և յաւանս յաւանս պարսպեալս և ամրացեալս՝ որ նորին Ներսիսի էր շինեալ վասն ամրապահ առանձնոցն զգուշութեան: Քանզի յիւրում կենդանութեան երանելւոյն Ներսիսի էր շինեալ. շինեաց զայս կուսաստանս յամենայն գաւառս, զի որ միանգամ կուսանքն և հաւատացեալք իցեն՝ անդր ժողովեսցին 'ի պահս և յաղօթս, և (կարգեաց) կերակրել յաշխարհէ և յիւրաքանչիւր ընտանեաց: Զայն (ամենայն) աւերել հրամայէր Պապ թագաւորն. և զկուսանսն հաւատացեալսն տայր հրաման 'ի խառնակութիւն պղծութեան „:

Ի գործս սորայ հայրապետիս այն է զարմանալի՝ զի զոր ինչ շինէր գործ կենցաղօգուտ կամ հոգեկան՝ ոչ էր 'ի միում քաղաքի կամ 'ի միում գաւառի շինեալ, այլ առհասարակ ընդ ամենայն գաւառս Հայաստանեայց, ընդ որս և զայսոսիկ կուսաստանս շինեաց, որպէս ասէ, յամենայն գաւառս: Աւերեալ ասէ Բուզանդ զայսոսիկ կուսաստանս 'ի հրամայելոյ Պապայ, բայց յաւուրս Եղիշէի դարձեալ գտանեմք յիշատակութիւն զկուսանաց. յորմէ իմաստասիրեմք նաև զկնի Պապայ հանապազորդեալ այս ընտիր միաձակ կենաց, յաճախեալն յամենայն տեղիս քրիստոնէից. զի 'ի Թղթ. 88. յորում յառաջ բերէ զպատուէրս մոգուց պարսկական դենին, խառն յառաջ բերէ արանց և կանանց միանգամայն պատուիրելով. "Արք և կանայք որ բնակեալ են յիւրաքանչիւր մենանոցս, փոխեա

[1] Ցես վասն այսր գրոց 'ի գլուխն Կառավարութե, ուր խօսեցաք զշինուածոց նախարարաց մերոց յԵրուսաղէմ. էջ 199. հատ. Բ:

[2] Կուսանքն կոչին առ մեզ նաև Հաւատաւորք. որոց և յայս է ընկեալ յազգէս Հայոց:

ցեն զհանդերձս խուրեանց ըստ աշխարհական կարգաց „ ։ Ուր ցուցանէ թէ էին և յայնժամ 'ի մէջն անդ հինգերորդ դարուն միանձնեայք կամ միանձնարանք և վանք վասն կանանց ։ Իսկ 'ի թղթ . 110 . առաւել որոշակի յիշատակէ նաև զգգեստս նոցա սեփականեալս կուսանաց կամ հաւատաւոր կանանց, որ ոչ նմանէր աշխարհական կանանց . " Ցանդգնեցան, ասէ, և են կանայք փշախպանացն ... պատառել զհանդերձս հաւատաւոր կանանցն „ ։

Յետ իններորդ դարուն յիշատակին և առ Յոհաննու կաթողիկոսի կանայք կրօնաւորեալք, յասելն թէ յամուրն Կարուց " դադարեալ կային խարազնազգեաց կրօնաւորեալք՝ տիկինն Հայոց կին Սմբատայ (արքայի), և նու նորին իսկ, որ էր դուստր արքային եգերացւոց . և այլ ևս կանայք ազատազգունք արանց „ ։ Որով բանիւ յայանի ցուցանէ՝ թէ նաև վասն կանանց գոյր յայնժամ կրօնաւորական վիճակ կենաց, նաև որոշեալ տեղի 'ի հարկէ, ուր միկնեալ դադարեցան յայնժամ այս տիկնայք, փոխելն կրօնաւորական կարգ յանձին կալեալք ։

Ի տասներորդ դարուն երևելի գտաւ 'ի կրօնաւորեալ կանայս Շուշան կին Գրիգորի պահլաւունւոյ, որք եղեն ծնօղք մեծանուն Վահրամայ նահատակելոյ . զորս 'ի ներբողեանն Գրիգորի մագիստրոսի՝ որ էր հօրեղբայր իւր, ներբողէ և զծնօղս նորա ասելով . Հայր քո " պահօվք և աղօթիւք վերադոյն քան զմնապատականսն երևեալ, և քաջութե̄ա սքանչելի և հեզութե̄ա զարմանալի և գեղով չքնաղ, քառամենից եղեալ ամաց ուղղափառ խոստովանութեամբ փոխեալ առ Աստուած ։ Թողեալ զմայրն քո (զՇուշան) ամաց երեսնից, որ 'ի նմին իսկ կրօնից արժանացեալ խարազնազգեստ և անսուաղ ճգնութե̄, բազմամեայ խաչակցութ̄ կեցեալ և ժուժկալեալ ննջեաց ։ Զորոց ո՞ ոք կարասցէ զբոլորն ասել առաքինութեցն ծայրուն „ ։

Յետ անդ տասներորդ դարուն յանուանէ յիշատակի Թրլին վանք . որ 'ի բանից Ասողկայ երևի լինել վանք կանանց . զի ասէ թէ մայր Աբասայ թագաւորին Կարուց " զվարս կրօնաւորութե̄ յանձն առեալ՝ երթեալ բնակէ 'ի տեղին, որ Թրլին վանք անուանի „ . Գ̃ . 17 ։

Յերկոտասաներորդ դարու յիշատակի և Քօբայր վանք առ Վարդանայ . " Էին, ասէ, և կանայք թագաւորազունք կրօնաւորեալք կուսութե̄ 'ի Քօբայրն, Խոշաւու և Մարիամ . առ որս գրէր սուրբ վարդապետն Սարկաւագ զգուշական խրատս „ ։ Քօբայր վանք կրօնաւորաց 'ի Տա-

չէր զաւառ Գուգարաց յիշատակի առ Կիրակոսի. իսկ այս վանք յիշատակեալ 'ի Վարդանայ՝ էր 'ի հարկէ այլ վանք կրօնաւորեալ կանանց:

Գտանեմք նաև 'ի կուսանաց հիմնադիր եղեալ կուսաստանի. այն է Շահանդուխտ դուստր Վարազդրդատայ Աղուանից գահերէց իշխանի. որ յայտ է թէ էր 'ի հայկազնեայց, անհամեմատ 'ի գեղեցկութեան. զոր յորժամ տանէին 'ի հարսնութիւն 'ի տուն թագաւորաց, 'ի հասանելն 'ի սահմանս Բաղաց որ 'ի Սիւնիս, խուսափեցաւ զօրքն որ ընդ զօղեալ գարանեալ կային 'ի յափշտակել զկոյսն անուանի, յանկարծ 'ի վերայ յարձակեալ՝ սուր 'ի վերայ եդեալ կոտորէին զհեծելազօրսն որ ընդ նմա: Յայնժամ Շահանդուխտ յօգնութիւն կոչեալ զսուրբ Աստուածածինն և զսուրբն Հռիփսիմէ, մերժեալ զերիվարսն իւր ընկէց զինքն երիվարաւն հանդերձ յահագին բարձրութենէ քարակատար լերինն 'ի վայր, որով աներևոյթ զօրութեամբ էջ անվնաս մինչ 'ի գետին: Անդ ուխտ եդեալ՝ կուսութեամբ եկաց մինչ 'ի վախճան իւր. և զինչս իւր բաշխեալ աղքատաց 'ի ձեռն եպիսկոպոսին Սիւնեաց, "անդէն այլ ևս կուսանս ժողովեաց առ ինքն, և մեծամեծ ճգնութեամբ կեցեալ ամս երեսուն,,, որպէս գրէ Ստեփաննոս օրպէլեան, որ ընդարձակ պատմէ զայս 'ի գլուխ ԼԷ. հանեալ 'ի հնացեալ նամակէ զոր ինքն Շահանդուխտ իւրով ձեռամբն էր գրեալ: Աստի յայտ է թէ նաև այլք յառաջ քան զինքն այսպէս արարեալ էին՝ ժողովել զկուսանս և դաստիարակել 'ի հոգևոր կրթութիւնս, յորմէ և ինքն օրինակ առեալ հրամանաւ եպիսկոպոսին զնոյն արար յայնմ անապատի:

## ՅՕԴՈՒԱԾ Դ

### Հալածումն քրիստոնէութեան 'ի զանազան ազգաց:

### Ա. Հալածումն 'ի Պարսից:

### ԴԱՐ Դ

Սկիզբն հալածմանց Պարսից եղև 'ի ժամանակս Է. Շապհոյ Պարսից արքայի մերձ յելս չորրորդ դարուն.

որ եղեւ դժնդակ և համաշխարհական, որպէս վկայէ Թովմա արծրունի յասելն վասն նորին Շապհոյ. «Անչափ չարիս հասուցանէր 'ի վերայ Հայոց աշխարհիս և ասորեստանեայց և պաղեստինացւոց . . . բազում աւուրբք 'ի Քրիստոս վկայեցան. և որպէս ասի՝ աւելի քան զքսանաւան հազար արանց [1], արք վկայեցին վասն Քրիստոսի. բազումք յեպիսկոպոսաց, 'ի քահանայից և յայլ կարգէ եկեղեցական գնդէ, բազմագոյնք և յազատաց աշխարհիս և 'ի տիկնանց նոցա անհնարին և դառն տանջանօք զոր սատրապեմ, և հիացմամբ մեծաւ յապուշ կրթին միտք իմ ընդ ժուժկալութի՛ այնքանեաց բազմահնար մեքենաւոր չարչարանաց». Թ. 14:

Զպատճառս այսր ընդհանուր հալածանաց Շապհոյ այսպէս պատմէ Բուզանդ Դ. 16: Ի սկզբան անդ, ասէ, սէր մեծ գոյր 'ի մէջ Շապհոյ՝ և 'ի մէջ արքային մերոյ Արշակայ մինչդեռ առ նմա կայր Արշակ. բայց Շապուհ երկուացեալ թէ գուցէ փախիցէ երբէք Արշակ և միաբանեսցի ընդ կայսերն Յունաց, երդումն պահանջէր 'ի նմանէ. նմին իրի քահանայս եւ բերել յեկեղեցւոյն Տիզբոնի. և առաջի նոցա երդումն առեալ 'ի վերայ աւետարանին անփոփոխ պահելոյ զդաշն սիրոյ ընդ նմա՝ այնպէս արձակեաց: Այլ քանզի այս ամենայն եղեւ 'ի ձեռն Վարդանայ մամիկոնէի, որով և Վարդան յոյժ սիրելի գոլով յաչս Շապհոյ, Վասակ եղբայր նորա որ սպարապետն էր՝ նախանձեցեալ ընդ այն, առ 'ի սատելի կացուցանել զեղբայր իւր առաջի Շապհոյ, փախստական անցեալ գնաց առ Յոյնս [2]: Շապուհ կարծելով թէ 'ի հրամայելոյ Արշակայ լեալ իցէ այս ամենայն, յոյժ սրտմտեալ՝ երդմնազանց դատեաց զԱրշակ, և զամենայն քրիստոնեայս՝ խաբեբայս. և իբր թէ սովին ստուգեաց զայն՝ զոր միշտ կասկածէրն 'ի սրտի՝ թէ Հայք հանապազ խորհրդակից են ընդ Յոյնս իբր ընդ հաւատակիցս իւրեանց. և նոքօք կամէին զօրանալ, և զթագաւորութիւն պարսկական բառնալ 'ի տոհմէն սասանեանց և անցուցանել դարձեալ 'ի պարթեւացեան ցեղն յազգականիցն իւրեանց: Յայսմանէ ատելութի՛ կալեալ Շապհոյ ընդ ամենայն քրիստոնեայս, նախ զքահանայս Տիզբոնի և զարկաւագունս սպան՝

1 Սողոմոնեան Բ. 8. 9. 12. յիշէ զմահ Սիմէոնի ընդ բազմաց այլոց, որոց ոչ կամելով երկրպագել արեգական, նահատակեցան հրամանաւ Շապհոյ մեծաման հազարք: Ամենայն նահատակեալքն 'ի հալածման Շապհոյ պատմին լեալ երկերիւր հազարք:

2 Տես վասն այսր և 'ի գլուխն կառավարութե, 'ի դաշնագրութե որ ընդ Պարսկս. հատ. Բ. էջ 210:

ոգիս առաւել քան զեօթանասուն. “Ցետ այսորիկ հրա-
մանն տայր, ասէ, ընդ ամենայն տեղիս իշխանութեան իւրոյ,
թէ որ միաբանեալ զանուն քրիստոնէութեան ունիցի յիշխա-
նութեան իմում, զամենայն մարդ միաբանեամայն հանցեն
ընդ սուր սատակեսցեն. զի մի գտցի յիշխանութեան իմում,
որ քրիստոնեայ անուն անուանեսցէ զանձն իւր: Այլա
բիւրս բիւրոց կոտորէին, և հազարս հազարաց. զի այն-
պէս տուաւ հրաման ՚ի Թագաւորէն, զի ամենեքին քրիս-
տոնեայ անուն ՚ի սահմանս նորա մի գտցի”. Դ. 17:

Եթէ յայնժամ ուրացեալքն յազգէն մերմէ ոչ միա-
բանէին ընդ Շապհոյ, գուցէ ոչ լինէին այն չարիք. բայց
պատմութիւն Բուզանդայ ցուցանէ, թէ Մերուժան ան
արծրունի և Վահան մամիկոնեան՝ այրք անօրէնք ուրա-
ցեալք ՚ի հաւատոյ՝ առաւել ևս գրգռէին զՇապուհ. որ
այն լինչ ՚ի կալանս ունէր զԹագաւորն մեր զԱրշակ, տըա
առ հաճոյանալոյ և փառս և իշխանութիւն յանձին բե-
րելոյ՝ զօրօք Պարսից արշաւեալ ՚ի Հայս, “սկսան, ասէ, այ-
նուհետև յերկրին Հայոց աւերել զեկեղեցիս՝ զտեղիս
աղօթից քրիստոնէից յամենայն կողմանս Հայոց՝ գաւա-
ռաց գաւառաց և կողմանց կողմանց: Եւ նեղէին զքա-
ղաքամարդիկ՝ զոր ՚ի բռունն արկանէին, թողուլ զաս-
տուածպաշտութի, և ՚ի պաշտօն դառնալ մազդեզանցն”.
Դ. 59: Եւ ոչ այսչափ միայն՝ այլ և “ատրուշանս շինէին,
ասէ, ՚ի բազում տեղիս, և զմարդիկ հնազանդէին օրի-
նացն մազդեզանց. և բազում յիւրեանց սեփհականսն
( յերկիրս ) շինէին ատրուշանս, և զորդիս և զազգայինս
իւրեանց տային յուսումն մազդեզանցն”: Ցետ այնորիկ
զամենայն կանայս փախուցեալ նախարարացն սկսան նե-
ղել առ ՚ի դարձուցանել յօրէնս մազդեզանց. “Այլա իւ-
րև ոչ մի ոք յանձն առնուին, ասէ, ուրանալ ՚ի քրիս-
տոնէութէն՝ չարաչար սպանանէին զամենեսեան”: Մին
՚ի սոցանէ եղև տիկինն Համազասպուհի քոյր Վարդա-
նայ մամիկոնէի, կին Գարեգնի տեառն Ռշտունեաց, զոր
սպանին ՚ի Վան:

Այս Շապհոյ հալածումն է՝ զորմէ պատմէ մոգպետն
առ Եղիշէի յերրորդ յեղանակին. ընդ որ յուսահա-
տեալ, ասէ, Շապուհ, և տեսեալ թէ տանջանօք և հա-
լածանօք օր քան զօր երկիրն աճէր, իսկ թիւ քրիստո-
նէից ևս առաւել աճեցեալ բազմանայ, “արգել և կար-
ձեաց ՚ի նոցանէ զհարուածս տանջանացն, և հրաման
ետ մոգուց և մոգպետացն՝ զի մի ամենեքին ոք խուեսցէ

փնտաս . այլ հաստատեալ կայցեն աներկիւղութեամբ յիւրա-
քանչիւր ուսմունս ,,: Յախուռն խաղաղացաւ սուղ ինչ
երկիրս Հայոց 'ի պատերազմաց և 'ի հալածանաց Շապ-
հոյ՝ յորժամ արքային Քուշանաց պատերազմ յարոյց 'ի վե-
րայ Շապհոյ յաւուրս մերոյ արքային Պապայ . զի յայն-
ժամ Շապուհ զամենայն զօրս Պարսից տարաւ 'ի պատե-
րազմ, նաև զգերեալսն 'ի Հայոց, զոր պատմէ Բուզանդ
Ե . Դ . մինչև բոլորովին դադարեցաւ հալածումն 'ի ձեռն
քաջին Մուշեղայ՝ որ սպարապետ էր Պապայ . " Մուշեղ
զօրավարն հայաստանեայց, ասէ, շրջէր ընդ երկիրն, և
աւերէր զատրուշանսն մազդեզանցն . իսկ զմազդեզունսն
որ միանգամ 'ի բուռն արկնէր, զամենեսեան տայր հրաման
սպարապետն Մուշեղ ունել և հրով խորովել . . . Եւ շի-
նէին զամենայն աւերեալսն 'ի թշնամեացն, և զեկեղե-
ցիսն նորոգեցին ,, . Ե . 1 : Զայս նորոգութիւն եկեղեցեաց
և հոգետանց այլուր մեծին Ներսէսի տայ :

## ԴԱՐ Ե

Թէպէտ հալածումն Շապհոյ դադարեցաւ, բայց Պար-
սիկք ոչ փոխեցան 'ի խորհրդոց իւրեանց դարձուցանելոյ զա-
մենայն Հայս 'ի դենս իւրեանց . սովին մտօք ա̄ . Յազկերտ
արքայ նոցա՝ թագաւորեցոյց 'ի վերայ Հայոց զՇապուհ
զորդի իւր 'ի սկիզբն հինգերորդ դարուն . " Զի մարթ-
լիցի, ասէ խորհեսցին, փնտաս և 'ի դենս մազդեզանց սա-
դապեցուցանել . որով ամենեքին զատչիցին 'ի Յունաց ,, Փ .
55 : Բայց ոչ կարաց առնել ինչ . այլ զայն 'ի գործ եդ Ե̄ .
Յազկերտ յերկրորդ ամի թագաւորելոյ իւրոյ . որոյ պատ-
ճառն ևս նախապէս եղև 'ի մերոց անտի : Զի չարաչար ա-
տելութիւն երկուց մերոց հայկազանց գրգռեաց զայս հա-
լածանս առ 'ի վրէժ առնուլ յիւրեանց, որպէս եղև և յա-
ւուրս Շապհոյ . զոր այսպէս պատմէ Ղազար Թղթ . 65 .
և 'ի հետևեալս, թէ Վարազվաղան սեպուհ սիւնի առեալ
'ի կնութիւն զդուստր Վասակայ իշխանին Սիւնեաց՝ միշտ
կռուով կեայր ընդ կնոջ իւրում, մինչև Վասակ հայր աղջ-
կանն հնարէր սպանմամբ հանել զվրէժ իւր 'ի փեսայէն
իւրմէ . այլ չյաջողեալ սպանութեանն՝ հալածեաց ևեթ
փնաս յաշխարհէս Հայոց : Վարազվաղան ոչ կարելով զդէմ
ունել բռնութեան իշխանին Վասակայ՝ որ զօրաւոր էր, փա-
խուցեալ գնաց յերկիրն Պարսից, և ապաւինեալ անկա-
ւա Միհրներսեհ, որ հազարապետն էր արքունի, բայց

կարի իմն յարեալ 'ի դէմս մոլորապաշտութեան ։ Ողջէն վրէժ-
խնդրութե այնչափ մոլորեցոյց զՎարազվաղան՝ մինչև ու-
րացեալ զքրիստոնէութիւն՝ ընկալաւ զմոլորապաշտութիւն,
և ջանայր մոլորեցուցանել և զայլս առ 'ի հաճոյանալ Միհ-
րներսեհի, և 'ի ձեռն նորա առնուլ զվրէժ իւր 'ի Վա-
սակայ՝ այսպէս խորհելով 'ի միտ ․ "Իմ ջանս և արարուած
երկուց իրաց առիթ է ինձ բարւոյ ․ կամ հաւանել աշխար-
հըն Հայոց և ուրանալ, (յայնժամ) մեծաց պարգևաց
և պատուոյ արժանի լինիմ յԱրեաց որպէս հաւատարիմ
նախարար և օգնական այսպիսի կարևոր և մեծ իրաց,
և կամ չհաւանելին յանձն առնուլ և ընդդիմանալ՝ չկարա-
ցեալ կալ առաջի այսպիսի մեծի ուժոյ՝ կորնչին ամենե-
քին տունք և կարասեաւ, կորնչի թերևս և իմ թշնամին
(Վասակ) յիւրս յայսմիկ ։ Եւ եթէ թէպէտ և ոչ միոյ այլ
իմիք չհանդիպիմ բարւոյ, սակայն շատ իսկ է ինձ և բաւա-
կան լուրն և տես կորստեան թշնամւոյ իմոյ քան զամենայն
օգուտս և մեծութիս որ են յաշխարհի"։ Եւ այսպէս "այն այր
'ի սահմէն Սիւնեաց եղև, ասէ, պատճառ կորստեան բազ-
մաց և կոտորածի աշխարհիս Հայոց"․ 70 ։ Ահա որպէս
տեսցեալ է մեզ և այլուր՝ անմիտ շահախնդրութն և անմիտ
վրէժխնդրութին ոմանց եղեն միշտ պատճառ կործանմանս
համաշխարհական թշուառութե ազգին մերոյ ․ քանզի
և Վասակ առ 'ի դերև հանել զխորհուրդ վրիժու փեսայ-
ին իւրոյ Վարազվաղանայ՝ ինքն ևս ուրացաւ ․ և ուրաց-
մամբն առաւել քան զնա ջանաց զնոսա հաւատացանել աշ-
խարհիս մերոյ ․ որպէս զի հաճոյանալով դրանն Պարսից
առաւել ևս մեծութիւն 'ի ձեռս բերցէ ․ բայց ոչ եհաս
մեծութեանն, այլ չարաչար անարգանօք և աղքատու-
թեամբ մեռաւ ․․ նոյնպէս և Վարազվաղան ոչ կարաց ոչ
վրէժ առնուլ, և ոչ մեծանալ, այլ "մահճեալ ամս բա-
զումս առաջի ամենեցուն հանապազօր նշաւակօք դդեա-
նեալ փրփրէր անզգայութբ ․․․ մինչ 'ի բազում ժամանակս
չարաչարեալ կատաղօք զարկուցեալ հեղձոյց"․ 69 ։ Սոքա
երկոքեան իբր թէ ոչ բաւէին, յաւելաւ և այլ ոմն Վա-
սակ "յազգէ մամիկոնէից, ասէ Եղիշէ 162 ․ որ կայր 'ի
ծառայութե Յունաց ։ Եւ 'ի թշուառութե ժամանակին
այնմ այն սպարապետ էր տոհմին Հայոց, և հաւատարիմ
զօրացն Հոռոմոց 'ի սահմանին Պարսից ․ և արտաքոյ էր
օրինացն Աստուծոյ գործովք իւրովք ։ Եգիտ այս Վասակ
զայն Վասակ իւր գործակից 'ի մեծամեծ չարիսն, զոր մի-
աբանեցին երկոքեանն"։ Ի սոսա յաւելաւ և այլ ոմն Հա-

ւասայ. որոյ նախնին անուն փառաւորութեան մեծ ուրացեալ՝ չարիս հասոյց աշխարհիս մերոյ, որպէս գրէ Թովմա Արծրունի Գ. 1։

Յազկերտ զի զքրիստոնեայս ընդ իւրև նուաճեսցէ, որում ցանկայրն ըստ պատմութեան Եղիշէի, զորոյ զբանս հալածանացն Յազկերտի կարգաւ ածեմ 'ի մէջ, նախ «յարձակեցաւ 'ի վերայ աշխարհին Յունաց. եհար մինչ 'ի քաղաքն Մծբին, և զբազում գաւառս Հոռոմոց աւերեաց աւարառութեամբ, և զամենայն եկեղեցիս հրձիգ արար». 13։ Թէպէտ կայսրն գոլով, ասէ, խաղաղասէր՝ ոչ ել ընդդէմ նորա. այլ բազում գանձս առաքեալ 'ի ձեռն Անատոլեայ սպարապետին արևելից՝ խաղաղութիւն կալաւ ընդ նմա։ Բայց քանզի Անատոլիս զքրիստոնեայս որք 'ի սահմանէն Պարսից փախուցեալ՝ կային 'ի քաղաքին կայսեր, որ է Կարնոյ քաղաքն՝ որպէս Թուէ, կալաւ, ասէ, և ետ 'ի ձեռս նորա։ Այս գործ բազում համարձակութիւն ետ Յազկերտի հալածել զքրիստոնեայս. որով զրգռեցոյց զբազումս 'ի սուրբ ուխտէն քրիստոնէից. զոմանս չարչարելով և զինչսն յափշտակելով, և զոմանս սպանանելով. յորմէ և բազմութիւն քրիստոնէից ցրուեցան յայլ և այլ տեղիս։

Բայց քանզի Յազկերտ ոչ կամէր զզուել բնակչաց, խորհուրդ կալաւ վասն այսր ընդ մոգս իւր. նոքա խորհուրդ ետուն նմա պատերազմ յարուցանել 'ի վերայ Քուշանաց, որով հարկ լիցի առ ինքն ժողովել զիշխանս ամենայն քրիստոնէից զօրօք իւրեանց և տանել անդ. «Յորժամ արգելցուս և փակես, ասեն, զամենեսեան 'ի հեռաւոր օտարութեան, կատարին խորհուրդք կամաց քոց. և որպէս երևիս մեզ 'ի գիտութիւն մերում, տիրես դու և երկրին Քուշանաց, և Յոյնք իսկ ոչ ելանեն ընդ քոյ իշխանութիւն». 17։ Այսմ խորհրդոյ հաւանութիւն տուեալ Յազկերտ՝ խաղաց 'ի վերայ Հոնաց և 'ի նոյն երկիր գնաց. և յետ յաղթանակելոյն 'ի գործ դնել սկսաւ զխորհուրդն մոգուց, սկիզբն եդեալ հալածել զքրիստոնեայս. «Ետ և հրաման, ասէ, յափշտակել զքրիստոնէից ինչս և զստացուածս, որք էին 'ի մէջ Պարսկաց աշխարհին.. Թէպէտ և ընդ ամենայն ազգս առնէր զանկարգութիւն զայս, (բայց) առաւել ընդ Հայոց աշխարհին մաքառէր. քանզի տեսանէր զնոսա ջերմագոյնս յաստուածպաշտութեան. մանաւանդ որք էին յազգէ նախարարացն Հայոց». 22. 29։ Յայնմ ժամանակի եղև չարչարել զԳարեգին զեր-

նոյն երկիր իշխանութեան տէրութեան իւրոյ վասն քրիստոնէից „. 147 ։ Բայց Հայք ոչ հաւանեցին, գիտելով զյեղյեղուկ բանս նորա, որպէս և եղև. զի ընդ առաւելուն թէ Մարկիանոս կայսր չունէր բնաւ ձեռնհաս լինել արևելեան քրիստոնէից, դարձեալ 'ի նոյն միտս շղթեցաւ՝ դարձուցանել զամենայն քրիստոնեայս 'ի կրօնս իւր ։ Ղազար այնպէս ցուցանէ՝ թէ Միհրներսեհ էր, որ լուեալ 'ի բերանոյ Վարազվաղանայ զբանս ընդ հաճոյից իւրոց, յոյժ ուրախ լեալ՝ սկսաւ յորդոր մատուցանել թագաւորին Յազկերտի հալածանս յարուցանել յաշխարհին Հայոց. զի ընդ դատանաւն, ասէր, Հայոց՝ Վիրք և Աղուանք այնուհետև մեր են, երկուս պատճառս 'ի մէջ բերելով, մի՝ առ 'ի առնել գործ հաճոյ դիցն իւրեանց. և երկրորդ՝ առ 'ի հեռացուցանել զՀայս 'ի կայսերէ, և սորա սիրով նուաճել ընդ տէրութեամբ Պարսից ։ Յայսմ ամենայնի նպաստամատոյց լինէր Միհրներսեհի գործակցութիւն ուրացելոյն Վասակայ. զի զայն միտս զոր խորհէր ոչ գիտէր, և ոչ կարէր առնել աշխարհին Հայոց, արքայութեան նորան Վասակ կատարէր զամենայն, որ և բաղձալով իշխանաց պատճառ եղև ուրանալոյ՝ զորս մի առ մի թուէ Եղիշէ. բայց 'ի սոցունց՝ նաև "բովանդակ զիւր բոլոր աշխարհն (Սիւնեաց) ապստամբեցոյց յուրացութիւն, ոչ միայն ընդ աշխարհին բազմութեան, այլ և զբազումս յուխտէ եկեղեցւոյն... հալածեաց և փախոյց զամենայն միաբանեալս աշխարհին (Սիւնեաց), որք հայհոյէին զանդարձ ամբարշտութիւն նորա „. 160. 166 ։ Իսկ զմիտս ընդհանուր ամենայն աշխարհիս Հայոց՝ բազմօք առաւել արար նաև յառաջ քան զգործակցին ընդ Միհրներսեհի, և առաւել յետ մահուան Վարդանայ. զի որովհետև բազմութիւնք ցրուեալ ամրացեալ կային աստ և անդ, Վասակ "սկսաւ, ասէ, այնուհետև 'ի բազում տեղիս արձակել զպատուիրակութիւնս, և զոր արտաքոյ քան զամուրսն գտանէր զբազմութիւն մարդկանն՝ վարեցին 'ի գերութիւն. և զամենայն 'ի ձեռն առեալ՝ հրձիգ առնէին զբազում տեղիս „. 223 ։ Այնպէս զի զոր ինչ չարիս արար յաշխարհս Մուշկան Նիւսալաւուրտ՝ 'ի դրդռելոյ Վասակայ արար. վասն որոյ Սահակ եպիսկոպոս Ռշտունեաց յամբաստանելն զՎասակայ առաջի Յազկերտի՝ ասէ. "Արարէք դդա մարդկան Հայոց. զոր նախնեացն ձերոց մեծաւ աշխատութեամբ գտեալ էր, դա 'ի միում ամի կորոյս զերկիրն ամենայն „. 239 ։

Դադարումն հալածանաց Բ. Յազկերտի ։

Այս համաշխարհական հալածումն Պարսից՝ որ ընդ-
հանուր փոփոխութի և աւերումն եած 'ի վերայ աշխար-
հիս մերոյ 'ի պատճառս այլ և այլ արշաւանաց և բռն-
նալոյ մահուամբ և տարաշխարհիկ լինելոյ արանց երևե-
լեաց և տիկնանց, հանապազորդեալ տևեաց ընդ ամե-
նայն աւուրս Բ. Յազկերտի, նաև Ե. Պերոզի՝ մինչև թա-
գաւորեաց Վաղարշ Ը. 'ի վերայ Պարսից յետ հինգերորդ
դարուն, որ և դադարեցոյց իսկ[1] ։ Պատճառ այսր դադար-
ման եղև մի՝ չարաչար կոտորումն Պարսից 'ի Հեփթա-
ղաց. զի յայնժամ քաջ ծանեան Պարսիկք՝ թէ յայլ պա-
տերազմունս քաջութի նախարարացն Հայոց էր՝ որ զնո-
սա յաղթականս կացուցանէր 'ի վերայ այնպիսի բարբարո-
սաց. իսկ յայնժամ՝ քանզի ոչ գտան Հայք 'ի պատերազ-
մի ընդ նոսա, զայն հարուածս ընկալան 'ի Հեփթաղաց ։
Երկրորդ պատճառն եղև արշաւանք և կոտորած Վահա-
նայ՝ զոր հասուցանէր 'ի վերայ զօրացն Պարսից ։ Եւ եր-
րորդ եղեն կենցաղօգուտ խնդիրք նորուն Վահանայ 'ի
Պարսից ։ Զի յորում ժամանակի սաստիկ կոտորեցին Հեփ-
թաղք զՊարսիկս, և զՊերոզ թագաւոր նոցին սպանին,
յայնմ ժամանակի և Վահան 'ի միւս կողմանէ անլուր
քաջութիս գործէր ընդդէմ զօրացն Պարսից, մանաւանդ
'ի վերջին յարձակման անդ, ուր երեսուն եւթ արամբք
խորտակեաց զգունդն նոցա, և զարմացոյց զամենայն այր
պարսիկ ։ Զայն քաջութիւն տեսեալ մեծամեծաց նոցա
ասէին. եթէ 'ի մեր կոյս էր այրն այն քաջազօր, Հեփ-
թաղք չկարէին յաղթանակել 'ի վերայ մեր. ապա լաւ
է մեզ սիրով գնալ ընդ Հայս, և 'ի մեր գործ ծառայե-
ցուցանել զնոսա, քան թէ թշնամութբ վարելով զուրկ
մնալ 'ի ծառայութէ նոցա, մանաւանդ թէ և զնոսա եւս
կրել 'ի խորտակումն զօրաց մերոց ։

Արդէն իսկ յառաջ քան զայն վերջին քաջութի Վա-
հանայ՝ Միհրան զօրավարն Պարսից յորդոր մատուցեալ
էր Վահանայ գալ սիրով 'ի հաշտութի, և մտանել ընդ
հնազանդութբ, և ծառայել Պարսից. առ որ Վահան
խոստացաւ յանձնի հրաշալի պերճախօսութբ իբրև զմի 'ի

[1] Վասն որոյ աստի մատենագիրք դրեն վասն հալածանաց Բ. Յազկեր-
տի ոչ ընդ երկար տևեալ ։

պատասխանել Թղթոյն Կոստանդեայ Թոռին Հերակլեայ, որպէս պատմէ անգլէն Ասողիկ. «Անշարժելի հաւատով կացեալ մնացաք 'ի մէջ դառնաշունչ և դժնդակ և անօրէն Թագաւորացն Պարսից. զի յորժամ բարձին զԹագաւորութիւն՝ կորուսին զամենայն նախարարսն և զզօրսն աշխարհիս. կոտորեցին զարս և զկանայս սրով, և 'ի գերութի վարեցին զբազմութիւն քաղաքաց և գիւղից. իսկ 'ի մնացելոցն վերայ սուր շողացուցին: Բազում անգամ ջանացան դարձուցանել 'ի մոլորութի, բայց ոչ կարացին շարժել... մինչև հրամանն տալ անօրէն Թագաւորացն Կաւատայ, և յետ նորա որդւոյ նորին Խոսրովու, թէ իւրաքանչիւրոք զիւր հաւատս կալցի. և յայսմհետէ մի ոք իշխեսցէ նեղել զՀայս. ամենեքին մեր ծառայք են, մարմնով մեզ ծառայեսցեն, վասն հոգւոց՝ որ զհոգիսն դատէ՝ նա գիտէ»:

Յեօթներորդ դարուն յամին 637. քանզի բարձաւ տէրութիւն Պարսից, և արաբացիք տիրեցին նոցա, բարձաւ և հալածումն 'ի նոցանէ, և փոխանորդեաց հալածումն յարաբացւոց, զորմէ գրեսցուք յառաջիկայդ:

## Բ. Հալածումն յԱրաբացւոց:

Որ ինչ գրեցաք 'ի գլուխն Պատմութեան յաղագս արշաւանաց արաբացւոց, անտի իմանամք և զհալածանս սա 'ի նոցանէ. ուր որպէս տեսանես, նոքա 'ի սկզբան անդ յայն սակս հարկատու արարին զՀայս՝ որպէս և զայլ ազգս քրիստոնէից, որպէս զի յազատութէ Թողուցուն 'ի քրիստոնէական հաւատս. սակայն զոր խոստացանն, կամ զէթ այնպէս ցուցանէին, չկացին 'ի նմին. զի ոչ միայն հարկատու առնէին զքրիստոնեայս, այլ և իբրև զգերեալս սրոյ վարէին ընդ նոսա: Մեծ ինչ էր եթէ ուրեք երբեք փոքր մի խաղաղութի գտանէին հպատակեալքն ընդ նոքօք. զոր օրինակ յաւուրս Տ. Տրդատայ կաթողիկոսի որ նստաւ 'ի 741. քանզի գրէ Վարդան՝ թէ «եղև 'ի տագրելոյ սոթից սորա խաղաղութի առն քսան և երկու». բայց զկնի յաւելու. «Իսկ զՈւմարն փոխէ Իզիտ, այր չար և այսակիր, որ զխաչ և զպատկեր եբարձ յերկրէ. և զխոզն սպանանէր»:

Բայց քան զամենայն հալածանս արաբացւոց դժնդակ և համաշխարհական եղև հալածումն՝ զոր եհան Ջափր ամի-

բաղկեա. և եւ բերել զամենայն երևելի իշխանս առ ինքն, եղեալ 'ի մէջ՝ որպէս յիշատակեալ է մեր այլուր, կամ զամենեսեան դարձուցանել 'ի կրօնս իւրեանց, և կամ սպանանել. զորմէ ճոխագոյն գրէ Թովմա արծրունի, զոր մեք համառօտելով բերցուք զգրեալսն. "Իբրև օր մի լի-նէր պարապոյ, ասէ, մինչ կային 'ի բանտի իշխանքն (արծ-րունի) և որք ընդ նմա ազգատոհմիւք և այլովք օտար ազգօք, և ահա հնչեցին փողք ուժգին գոչմամբ ազդ առ-նել քաղաքին, եթէ ել նստաւ թագաւորն յատենի... ամենայն մեծամեծքն հանդերձ խառնաղանջ ամբոխիւն դադաթ առեալ... ընթանային ամենեքեան յաճխուռ տե-սանել զնոսա, և 'ի վերայ հատանել թէ զիարդ 'ի գլուխ ելանիցէ ատեանն: Եւ ելեալ թագաւորն (ամիրապետն) նստաւ յատենի 'ի բարձրաբերձ բեմի միոջ 'ի մէջ աշխար-հախոյս ամբոխի անհունն բազմութեան. և հրամայեաց ածել առաջի զկապեալսն, հարցանել և լսել 'ի նոցա-նէ... խօսել սկսաւ թագաւորն և ասէ. 'ի բազում ժա-մանակաց լեալ թագաւոր նախնեաց մերոց, և մինչ առ մեզ հասեալ, և բազում ազգք և թագաւորք զոր նուա-ճեալ ունիմք ընդ ձեռամբ մերոյ տէրութեան, և ոչ առ մի ոք այդչափ խնամ և հոգաբարձութիւն առնէաք՝ որչափ ընդ ձեզ և ընդ աշխարհ ձեր. դուք աւադիկ զընդդէմն ինձ խոկայիք միշտ... զզօրս մեր 'ի սատակումն որոյ մատ-նէիք.. և հարկացն.. խափանիչք լինէիք .: բայց քանզի արդ տեսանեմ զձեզ անձնեայս և գեղեցիկս, և գեղ երեսաց ձերոց պատշաճագոյնս և վայելուչս, և որդիք թագաւորացն այս աշխարհի լեալ էք դուք, և արք զօրու-էք դուք, և 'ի դիմաց ձերոց երևի՝ զի զօրութիւն բազում գոյ 'ի ձեզ... և իմ խնայեալ 'ի ձեզ՝ ոչ արարից զբաւ-կենաց ձերոց ըստ արժանի ապիրատ գործոց և վնասուցն զոր յանցեայքն առ իս... (Արդ) հաւանեալ մեզ՝ և օրինադրին մերոյ... ընկալջիք հաւատս և օրէնս մեր... և կեցջիք. և տիրեցէք աշխարհի և տանց ձերոց, դուք և որդիք ձեր... Այլ նոքա թէպէտ առ փոքր մի ոչ կա-մեցան զառնալ յերկրպագութէ Աստուածորդւոյն. զի անկեալ էր 'ի սիրտս նոցա հաւատ սուրբ առաքելոցն, բայց վասն զի ոչ ունէր արմատս՝ վաղվաղակի չորացաւ... անկաւ 'ի վերայ նոցա զարհուրումն մահու, մանաւանդ ոչ կամելով ելանել 'ի սնոտի կենացս դիւրափոխ աշխար-հիս, ասեն. յանձն առնումք զհրամանս արքունական. 'ի մէջ եղեալ՝ զի այն ինչ իբրև թէ 'ի վերին երեսս հա-

գոյրաւ, այլ միմեանց քահանայքն ապաստաւորէին. և կարծեմ թէ զայս սովորութիւն էին կալեալ 'ի բանութէ Տաճկաց. որ ոչ տային համարձակ պաշտել զպաշտամունս խուրեանց քրիստոնէից. այլ և ոչ զղրուանս եկեղեցեաց թողուլ 'ի բաց 'ի ժամ սոսկալի խորհրդոյն, զի մի օձիքս ինչ գործեսցեն այլազգիքն »:

## Գ. Հալածումն 'ի Թաթարաց:

Սոցա արշաւանք և հարկապահանջութիւնք թէպէտ սաստիկ էին քան զարաբացւոցն, բայց հալածումն վասն կրօնի քրիստոնէութեան չէր այնչափ ինչ դժնդակ որպէս նոցայն, բայց եթէ երբեմն. որպէս 'ի մեր հայկական պատմութեան Թաթարաց յիշատակի վասն գլխաւորի ուրուք 'ի նոցանէ և զօրաց նորա այսպէս. «Կոխեաց անողորմաբար զսրբազան քրիստոնեայս. և զփայտէ խաչն ուր և գտանէին 'ի ճանապարհս և 'ի լերինս կանգնեալ՝ զամենայնն այրէին, և ոչինչ իրք ոչ յագենային: Այլ զկանոնայսն որ կային յերկիրն, ուր և գտանէին՝ առաւել եւս կոխէին ուտելով և ըմպելով. և զպատուական քահանայսն կախէին և ծեծէին անողորմաբար »:

Նոյն սակայն դիւրութիւն հալածանաց առաւել 'ի ժամանակս Թաթարաց եղև՝ քան 'ի ժամանակս այլոց. մանաւանդ յորժամ ընդ ժամանակս ժամանակս եմուտ 'ի նոսա և ծանօթութիւն քրիստոնէութեան. զի որպէս է պատմել առ Սմբատայ, հաւր Դ. 'ի 1246. Ղայուկ խան և այլ գլխաւորք ընկալան զքրիստոնէութիւն, և առին կնունս քրիստոնէական: Այսպէս 'ի պատմութիւն Թաթարաց գրեալ յիշատակեցաւ՝ պատմի թէ 'ի 1249 Մանկու խան և այլ ոմն իշխան Սարդար անուն՝ եղեն քրիստոնեայ 'ի յորդորելոյ Հեթմոյ Թագաւորին Հայոց. մինչև չորրորդ Իննովկենտիոսի սրբազան քահանայապետի քարոզիչս առաքել առ նոսա 'ի յորդորելոյ որդւոյն Լուդովիկոսի գաղղիացւոց Թագաւորի, որ յանձնամ էր 'ի Պաղեստին, և Սարդարայ թուղթ դաւանութեան գրել առ Իննովկենտիոս և առ Լուդովիկոս: Եւ յորժամ եկն Հուլաւուն՝ յաղթութեան թողուր զքրիստոնեայս: Իսկ Աղաղա խան՝ որ զկնի Հուլաւունի պայազատեր, դեսպան առաքեաց ասէն առ սրբազան Գրիգոր սրբազան քահանայապետն՝ միաբանութեան ընդ դեսպանի Հայոց Թագաւո-

րեն 'ի խնդրել օգնութիւն ընդդէմ արաբացւոց։ Նաեւ յապա-գայ ժամանակս գտանին ոմանք 'ի նոցա քրիստոնեայք. վասն որոյ երբեմն հալածէին զքրիստոնեայս, եւ երբեմն ոչ. որպէս պատմի ինչ ինչ յարակցեալ առ ժամանակագրութիւն Սամուելի. "Ի չձգ. ամին (1334) մեռաւ Բուսայիտ ղանն, եւ նստաւ Արփա ղանն վեց ամիս. եւ եկեալ քեռի Բուսայիտին Ալի փաշայ Նուինն 'ի Բաղդատայ՝ զԱրփա ղանն սպան, վասն զի քրիստոնեայ էր. յառաջին ղանո-րաց զարմէն. եւ ինքն իւրովի այլ նոր ղան եդ 'ի Թաղթն՝ Մուսի անուն. որ ոչ եղաւ եւ ոչ զօրացաւ. եւ ինքն Ալի փաշայն վարէր զհուքմն օրդուին տարի եւ կէս։ Եւ արար հրաման քակել զեկեղեցիս. եւ քակեցին 'ի բազում տեղիս 'ի Մարայ մինչ 'ի Խլաթ եւ 'ի Սալամաստ, մինչ որ գնաց տէր Զաքարիա Աղթամարայ կաթողիկոսն (որ նստաւ յամին 1461.) պայազատն եւ աղքայազարմն. եւ ապա եբարձ պէար հուքմն"։ Տես եւ 'ի գլուխն Պատմութեան զչխրութիւն Թաթարաց. հատ. Ա. էջ 467։

Դ. Հալածումն արեւելեան եւ եղծանումն 'ի Յունաց։

ԴԱՐ Ե

Ի սկզբան այսր դարուն գտանեմք զյիշատակութիւն հա-լածանաց, կամ լաւ եւս ասել՝ ատելութեան Յունաց առ մերս որ ընկալեալ էին 'ի բաժնի նոցա անդստին յաւուրց անտի մեծին Սահակայ. որ յետ գիւտի նոր նշանագրացն եկաց 'ի բաժինն Յունաց, այլ "ոչ ըստ արժանեաց իւրոց եղեւ ընկալեալ"։ Եւ ինքն մեծն Սահակ բողոք բառնայ առ Թէոդոս Թագաւոր ասելով. "Ոչ հանդիպեցայ ընդ-ունելութեան յիմում միջնակին 'ի հրամանէ վերակացուա-ցըս նոցա. այնչափ ատեցեալ զմեզ՝ մինչեւ զնշանագիրս ան-դամ ոչ ընկալան"։ Խորենացի Գ. 57։

ԴԱՐ Զ

Զվերոյգրեալդ համարեցուք իբրեւ դիպուած ինչ. բայց սկզբնաւորութիւն հալածելոյ նոցա զազգս մեր՝ հա-մարի քաղաքական պատճառն. զի երկիւղն Տաճկաց կամ արաբացւոց՝ որ նորոգ 'ի վեր երեւեցան յեօթներորդ դա-րու՝ բռնադատեաց զմեր Թէոդորոս ռշտունի 'ի բաց

կալ 'ի Յունաց, և հպատակել Տաճկաց. "Ցայսմ ժամանա-կի, ասէ Ասողիկ, ամիրապետն Տաճկաց ել 'ի Մեծն անա-պատէն զօրու ծանու. և անցեալ ընդ ծովն 'ի հարաւա-կողմ յարևելս 'ի Սընդ, 'ի Պարս, 'ի Սագաստան, և 'ի Սըր-մանն և 'ի Հնդիկս, և աւերեալ գերեաց բառնալով զամե-նայն թագաւորութիւնս ազգաց բաց 'ի հռոմայեցւոցն: Զոր տեսեալ սպա Թէոդորոսի Ռշտունեաց տեառն՝ որ էր զօ-րավար Հայոց, և այլոց համախոհից, 'ի բաց կացեալ 'ի կայ-սերէ՝ հնազանդեցին Տաճկաց,,. Է. 2: Ցայսմանէ սըրտ-մտեալ յոյժ, ասէ, "կայսրն Կոստանդին Թոռն Հերակլի՝ մեծաւ ցասմամբ դիմէ 'ի Հայս, խորհրդայր ջնջել 'ի միջոյ. որում ընդ առաջ ելեալ հայրապետն Ներսէս Գ. համո-զէր 'ի խաղաղութիւն . . . իսկ գնացեալ կայսրն 'ի Կոստան-դնուպոլիս՝ թողու 'ի զօրաց իւրոց վերակացուս աշխար-հիս Հայոց,,: Եւ թէպէտ կայսրն հաշտեցաւ ընդ Հայս, բայց վերակացուքն զորս եթող, ցասուցեալ ընդ Հայս ռամիկ ոչ ընդունելոյ զնոսա 'ի հաղորդութիւն, գրեցին ըզ-Հայոց ամբաստանութիւնս ծանունս 'ի դուռն կայսեր: Ահա ւասիկ երևելի պատճառ՝ յորմէ կախեն 'ի քաղաքականէն փոխեցաւ 'ի կախս եկեղեցականն, պատճառ լեալ յետագայ հալածանաց և բազում վնասուց. զի յայնմհետէ սկսան բռնադատել զՀայս դաւանել ըստ ամենայնի 'ի ծէսս նոցա:

## ԴԱՐ Ժ

Յելս այսր դարուն մետրապօլիտն Սեբաստիոյ և այլք "եպիսկոպոսն, ասէ Ասողիկ, նեղել զազգն Հայոց վասն հաւա-տոյ. և զբռնութիւն 'ի ձեռն առեալ սկսաւ տանջել ըղ-քահանայս վասն հաւատոյ. և զգլխաւոր քահանայս Սե-բաստու քաղաքին երկաթեղէն կապանօք հասուցանեն 'ի դուռն թագաւորին. և 'ի բանտի չարչարեալ զաւագ երիցանցն զԳաբրիէլ սպանին,,. Է. 20: Իսկ 'ի գալ Վասլի կայսեր 'ի կողմանս Մելտինոյ՝ 'ի խնդրոյ քահանայից Հայոց ետ համարձակ կատարել զպաշտամունս Հայոց, և հնչե-ցուցանել զժամահար, զոր արգելեալ էր մետրապօլիտն:

## ԴԱՐ ԺԱ

Յամին 1059. նստաւ Կոստանդին Տուկիծ կամ Տու-քաս կայսր. "Ցայսմ ժամանակիս, ասէ Մատթէոս Ճժէ. թագաւորն Տուկիծ խորհեցաւ խորհուրդ չար, և կամե-

ցաւ բառնալ և խափանել զաթոռ հայրապետութեան սըր-
բոյն Գրիգորի 'ի տանէն Հայոց. և որպէս ասաց Քրիստոս,
յարուցանէր հալածանս... մանաւանդ յորժամ մեռաւ
տէր Պետրոս՝ յայնժամ յարեան Հոռոմք 'ի վերայ սուրբ
աթոռոյն, և կամեցան եղծանել զնա.. արարին Հոռոմք
խնդիր բազմութեան գանձուցն ոսկոյ և արծաթոյ տեառն
Պետրոսի Հայոց կաթողիկոսի. և զբազումս 'ի խոշտան-
գանս մատնեցին 'ի Սեբաստիա,,: Այս 'ի թուին Շէ.
պատմէ՝ թէ նա ինքն կայսրն կոչեաց 'ի Սեբաստիայ զոր-
դիսն Սենեքերիմայ թագաւորին Վասպուրականի զԱ-
տոմ և զԱպուսահլ 'ի Կոստանդնուպօլիս. և յետ քանի
մի աւուրց յայտնեաց զկամս իւր, թէ "Դուք և ամենայն
իշխանք Հայոց աշխարհին տանոյք յանձինս ձեր զկնունք
հաւատոյ ազգիս Հոռոմոց,,: Յայսմ ժամանակի երևի
հոռոմանալ Հայոց բնակելոցն 'ի փոքր Հայս՝ 'ի սահմանս
իշխանութեան սենեքերիմեանց, որք մինչև ցայժմ կան և
կոչին Հայհոռոմք. զի հալածումն տիրապէս էր 'ի վերայ
սենեքերիմեանց. իսկ այժմեան Հայհոռոմք յայնմ սահ-
մանի սենեքերիմեանց են բնակեալ.

Ի մեռանել Ը. Խաչիկ կաթողիկոսի Յոյնք ոչ թողուին
նստել կաթողիկոս Հայոց, որպէս զի ստիպեսցին գտանել
'ի ծէսս նոցա. վասն որոյ Գագիկ արքայ Կարուց յամին
1065. ետ առ Յոյնս զԿարս, և բազում ինչս ծախեաց 'ի
նստուցանել կաթողիկոս զԳրիգորիոս Վահրամ զորդի
Գրիգորի մագիստրոսի. միջնորդ լեալ վասն այսր և Մա-
րիամայ տիկնոջ դստեր նորին Գագկայ թագաւորի, զո-
րով տիրելի յաչս կայսրուհւոյն Եւդոքսիայ. Յիշէ զայս
Շնորհալին 'ի վէպսն յետ վախճանելոյ կաթողիկոսին,
ասելով.

"Որով Յունացն ընդ մեզ 'չարեալ,
Այլում լինել թոյլ ոչ տուեալ.
Զի անտերունչք՝ ասէն՝ եղեալ,
Լիցին 'ի կրօնըս մեր դարձեալ:
Յայնժամ արքայն մեր կոչեցեալ
Գագիկ անուն վերաձայնեալ...
Նաև ըզԿարս նախատացեալ
Այլըր խընդըրոյ փոխանակեալ,
Զի հովուապետ Հայոց դարձեալ,
Նստցի յաթոռն ունայնացեալ,,:

Սարգան յիշատակէ զպատանալիս Դ. Ռոմանոսի կայ-

ներ Դիօժէն կամ Դէուժան կոչեցելոյ 'ի մերոց, ասե-
լով. «Ջէնի Դէուժան (Նոտաս կայսր 'ի 1068.) որ եկն
'ի վերայ սուլտանին (Ալփասլանայ), սպառնալով Հայոց՝
հոռոմ առնել զնոսա. ըստ որում 'ի Կարս եկեալ այ-
րէր զփայտակերտ եկեղեցին Հայոց. և չոգաւ 'ի Մանծ-
կերտ, և առ զնա»[1]: Ցայսմ ժամանակի եղեն այն դի-
պուածք Թշնամութե Ցունաց՝ զորոց պատմէ Մաթէոս,
թէ 'ի շրջիլն ուրուք 'ի Հայոց Գէորգ անուն յԱնտիոք
քաղաքի՝ կալեալ հատին զմօրուս նորա, և այնպէս ա-
նարգանօք վարեցին արտաքոյ քաղաքին. որոյ առ վրէժ-
խնդրութե 'ի վարձու կալեալ 'ի Թուրքաց արս 500.
այրեաց զերկոտասան գիւղօրէս Ցունաց, և 60 այր խող-
խողեաց մերձ 'ի դուռն Անտիոքայ: Եւ այն միւս դիպուած.
եօթանասուն արանց յազգէս Հայոց բերել ձուկն ապըխ-
տեալ յԱնտիոք 'ի վաճառ, և յետ վաճառելոյն մինչդեռ
նստեալ էին յուտել և յըմպել՝ գոլով աւուրք բարեկեն-
դանի, Ցոյնք սկսան նախատանօք անարգել և ուրուք
հարկանել. յորմէ սոցա կատաղեալ և 'ի վերայ յարձա-
կեալ հալածեցին մինչև յեկեղեցի սրբոյն Պետրոսի, զբա-
զումս վիրաւորեցին և զոմանս սպանին. մինչև քահա-
նայք հազիւ կարացին զինջուցանել զցասումն նոցա՝ որք
էին արք կորովիք:

Իսկ 'ի դիպուածոցս՝ նաև զերկուս յերևելեաց Հայոց
պատմեն սպանեալ Ցունաց. յորոց մին էր իշխան հայկա-
զուն այր քաջ և հզօր պատերազմող 'ի տանէն Շիրակայ.
զոր Պիղա կոչէ Մատթէոս ձի. իսկ Վարդան՝ Բեխա
(վեստ), ասելով 'ի չիե. 1076. «Ի սոյն աւուրս սպանաւ
Բեխան իշխանն Շիրակունի. որ վասն յոյժ լաւութեն նե-
ղեալ սիրով 'ի կայսերէ՝ եղև հոռոմ. և տուաւ հայր
խոստովանութե նորա աբեղայ մի հոռոմ. և զի ոչ պա-
հէր զօրէնս Հոռոմոց՝ խեղդեաց զնա պիղծ կրօնաւորն 'ի
քուն գտեալ զնա միայն 'ի բերդն իւր յԱնդրիոնն. զոր
իմացեալ զօրաց նորա գահավէժ առնեն զպիղծն անօ-
րէն»: Թէ զիարդ խեղդեաց՝ պատմէ Մատթէոս, եթէ
զբարձ իշխանին առեալ աբեղային դնէր 'ի բերան նորա,

[1] Զայս գաղուտ և զապատմութիւն Դիոժէնի Մատթէոս ձկ. դնէ 'ի Թուին չի. (1071.) և ասէ թէ 'ի չարախօսելոյ Ցունաց զբնակչաց Սեբաստիոյ՝ արար զայն ապստամբութիւն. հրամայեաց յառաջ առնուլ զՍեբաստիա քաղաք. ընկեց յերեսաց զորդիս Սենեքերիմայ Թագաւորին զԱտոմ և զԱբուսահլ. խոկ 'ի յառաջ առնուլ Ցունաց զՍեբաստիա՝ զդադրումն աստանին:

« Եւ ուժգին անկեալ 'ի վերայ նորա եւ չարաչար սպանա-նէր զայր հզօր եւ քաջ »։ Խոկ վասն միւս իշխանին ասէ Ճլթ. լինել « Վասակ իշխանին Հայոց որդւոյ Գրիգորի մա-գիստրոսին, եւ եղբայր տէր Գրիգորիսի ». զոր եւս 'ի շխե. 1076։ սպանանին Յոյնք նենգութեամբ յԱնտիոք։

ԴԱՐ ԺԲ

Ալէքս Ա. որ մեռաւ, ասէ Մատթէոս 'ի շկը. 1119. Թէպէտ էր այր բարի եւ հզօր, « բայց 'ի վերայ ազգին Հայոց յոյժ ատեցող երեւեալ. ած զործեաց զործ որ ոչ էր ըստ կամացն Աստուծոյ. եւ հրամայեաց երկրորդ մկրտութիւն առնել »։ Գրէ եւ Վարդան. « Ի զալ տէրոյն մե-ռաւ Ալէքսն. եւ առ զԹագն որդին իւր Պերփիւռոժէն (Յոհաննէս Բ. Կոմնենոս), որ եղեւ բարեմիտ առ Հայս. եւ մեղադրէր հօր իւրում, որ մոլեալ 'ի սուտ առաջնոր-դաց՝ կրկին մկրտելով խաչէր կրկին զնոսին »։ Մի 'ի չարչարողաց ազգիս եղեւ Սահակ Բ. կայսրն Անկեղոս. զորմէ գրէ Վարդան յամ ոլե Թուին. 1186. « Ի վե-րայ Յունաց Թագաւորեաց Փիլիկէն, որ եւ Սահակ. եւ յորոյ հալածանս եւ չարչարանս հայադաւան ազգաց... Վասն որոյ գրէ առ նա աղերսանս պատրիարգն Գրիգոր խաղաղանալ ընդ ժողովրդեանն Աստուծոյ, եւ ոչ լուաւ նմա, այլ զյոլովս դարձոյց 'ի կրօնս իւր. եւ զայլս հալա-ծական արար, ուր կային երեք եպիսկոպոսի աԹոռք, եւ հազար վեց հարիւր քահանայք. զորս 'ի մի հաւաքեալ բանադատէր. յորոց ոմանք զերծան ամբողջ հաւա-տով։ Եւ զպատասխանի աղէտս գրեաց յարեւելս ('ի մեծ Հայս) տէր Գրիգոր. եւ խոշորեալ սրտիւ ոչինչ կարացին առնել. առաքէր եւ նոյն պատրիարգ եպիսկոպոս մի Գրի-գոր անուն 'ի դրանն Հռոմայ վասն վտանգին, որ 'ի Յու-նաց կրէին Հայք »։

Սոյն այսմ եւ Շնորհալին 'ի պատասխանատւութեանն իւր առաջին Թղթոյն Մանուէլի կայսեր բողոք բառնայ զատելութէ Յունաց առ հայաստան ժողովուրդս, յորոց բազմաւք ըն-նակէին յայնմ ժամանակի 'ի սահմանսին՝ որ ըստ տէ-րութեան կայսեր. « Չէ որ օրինակ, ասէ, եւ ձեզ է արժան առնել. ոչ Թագաւորական ահարկու զօրութեամբ, այլ քաղցրաբարոյն խոնարհութեան ձգել առ ձեզ զհեռացեալս... քանզի եԹէ հարիւր ամ աւելի եղելոց ժամանակաց բա-ժանման 'ի միմեանց անդամոցս Քրիստոսի, եւ 'ի մէջ յո-

դաւածոցն յոլովագունից մնանելով ախտից առելուն... կարօտ է բազում հոգևոր բժշկական իւղոց օծմանց. այսինքն սիրոյ, գթութեանց և ողորմութեանց.. Եւ այս լինի յորժամ միջնորդ խաղաղութեան նախ զերեելի խաղաղութիւն և փխութական սիրոյն ճառագայթ առ ժողովուրդ ազգի մերոյ՝ որ ըստ իշխանութեան սուրբ թագաւորութեան ձերոյ են՝ ծառայք. և ոչ միայն զձերն... այլ և ձերոցդ եկեղեցական դասուց՝ և ռամիկ ժողովրդոց՝ որ իբրև զարդարութիւն ունին,. և զաստուածային պատուիրանաց կատարումն, և զարքայութեան երկնից ժառանգելոյ բաւական պատճառ՝ զատեն զմեզ և զհայհոյեն, հրամայեցէք 'ի բաց յայնպիսի պատերազմասէր բարուց լինել. և սիրով և խաղաղութեամբ բերիլ առ նշդեհքս և պանդուխտքս, որք 'ի հակառակացն Քրիստոսի հալածեալք վասն արդարութեան՝ առ ձեզ որպէս յամուր ապաստանի դիմեալք են խաղաղանալ: Զի համբաւ այսպիսի բարեաց տարածելով յարեւելեայս ('ի մեծ Հայս), անաշխատ իւրաքանչիւր ոգի յօժարեսցին 'ի սէր միաբանութեան գալ խնքնակամ հաճութեամբ. և մի այլ լիցի՝ որպէս մինչև ցայժմ՝ պատճառ փախչելոյ մերոցն 'ի ձէնջ, աւերումն եկեղեցեաց և սեղանոյ Աստուծոյ կործանումն և նշանաց Քրիստոսի խորտակումն և բազում նեղութիւնք պաշտօնէից և պէսպէս զրպարտութիւնք »:



# ԳԼՈՒԽ ՎԱԹՍՈՒՆԵՐՈՐԴ ԵՕԹՆԵՐՈՐԴ

## ԵՊԻՍԿՈՊՈՍԱՐԱՆՔ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

Դասք քահանայապետութեան աշխարհիս ։

ՅԱՒՈՒՐՍ ժամանակաց մեծի հայրապետին մերոյ Ներսէսի՝ այն ինչ դեռ լինէր աստուածատուր յաջողուածն պաշտօնայն ինչ ըստ բարեկարգութեան մատուցանել, դեռ լինէր նաև զեկեղեցական կարգս քահանայապետական գաւառ 'ի նոր իմն կարգ վերածել. նախ զպատրիարքական աթոռն հանդիսացուցանելով, արդ և որ առ 'ի նմանէ էն այլ կարգք՝ յիմնեակ դասս որոշելով որպէս առ Յոյնս՝ նոյնպէս և առ մերս, 'ի խորհուրդ իմն դասուց երկնային քահանայապետութեց. զորոց զթիւ և զկարգ այսպէս գտանեմք յիշատակեալ առ Յոհաննու կաթողիկոսի. "Եւ այսպէս արդ նահապետութիւն խորհրդոյ եկեղեցւոյ 'ի մերումս աշխարհի լցաւ բովանդակաբար՝ իմն միանգամայն դասակարգութ պատուեալ: Զգլխաւորս Արքեպիսկոպոսացն Վրաց և Աղուանից՝ Արքեպիսկոպոս ըստ ձեռամբ նորա կարգեալ: Իսկ 'ի Սեբաստիա և 'ի Մելիտինէ և 'ի Մարտիրոսաց քաղաքին Մետրապոլիտս կացուցանէին: Իսկ Եպիսկոպոսունս արդ ըստ որոշեալ վիճակացն իւրաքանչիւրոցն հաստատէին. և Քահանայս, և Սարկաւագունս, և Կէս սարկաւագաց, և Վերծանօղս, և Սաղմոս երգուս: Այսպէս ցան և ցիր ըստ բոլոր եկեղեցիս հայաստանեայցս վայելչապէս յարդարեալ լինէին 'ի փառս Աստուծոյ ": Վարդան յանուանեն զդասս՝ տարաձայնի. "Յօրինեցին, ասէ, զինն դասուցն երկնից զխորհուրդն 'ի Հայս. այսինքն Պատրիարք, Մետրապոլիտ,

Եպիսկոպոս, Քահանայ, Սարկաւագ, Կիսասարկաւագ, Դպիր, Կրօնաւոր, Ժողովուրդ »: Ուր ոչ յիշէ և զԱրքեպիսկոպոս: Այլով օրինակաւ թուէ Ստեփաննոս Օրպելեան է. « Եւ զի հարկ է ամենայնիւ 'ի ներքոյ լինել Պատրիարգին Արքեպիսկոպոս և Մետրապոլիտ, զի լըրացեալ լինի հինն դաս եկեղեցւոյ՝ որ ըստ վերնոյն. ապա թագաւորն հրամայէ մեծաւ ժողովով սահմանել զբովանդակ կարգս եկեղեցւոյ անթերի: Կացուցանեն Պատրիարգ զսուրբն Ներսէս. և 'ի ներքոյ նորա Արքեպիսկոպոս զԱղուանիցն՝ որ է կաթողիկոս. և Մետրապոլիտ զՍիւնեաց եպիսկոպոսն, և զՎրացն, և զՄարդպետականն. և յետոյ այլ ես Մետրապոլիտք կացուցանեն զՄելիտինոյն և զՍեբաստիոյն »: Ջանացեալն զանց առնէ թուել. զի միտք նորա է պատմել զմետրապոլտութիւն Սիւնեաց: Ի դատաստանագիրս Մխիթարայ Գօշի 'ի վերջին միւ. գըլխոյն գտանի այլ ազգ դասակարգեալ, զորոյ զգանեն արժան համարիմ ածել առ տեղեաւս ըստ իւրաքանչիւր կարգի հանդերձ պաշտամամբքն իւրեանց և իշխանութիւնքն և զզգեստուցն այլևայլութիւնք.

« Առաջին դասք եկեղեցւոյ Պատրիարգք, որք թարգմանին Հայրապետք, որք ունին զաթոռ չորից աւետարանչացն ..... ունին զառաքելական զգեստ և զեմափորոն հինգ կրկին. և գործ է հայրապետին ձեռնադրել զարհիեպիսկոպոս, որք են ըստ Վիճակաւ ըստ չորս բաժնի տիեզերաց: Նա տայ հրաման վասն ժողով առնելոյ »:

« Երկրորդ դասք եկեղեցւոյ Արքեպիսկոպոսք. ոքեմ է նոցա աքական ու պճղնաւոր, և փիլոն և 'ի վերայ եմափոր չորեք կրկին. և գործ է նոցա ձեռնադրել Մետրապոլիտս, և օրհնել ձէթ կնքոյ՝ որք են արքեպիսկոպոսունս. և երեքն ունին իշխանութիւն ձեռնադրել պատրիարգս »:

« Երրորդ դասք եկեղեցւոյ Մետրապոլիտք, որք թարգմանին Մայրաքաղաքացիք. որք ունին զնոյն ոքեմ, բայց եմափոր երեքկին. գործ է նոցա ձեռնադրել եպիսկոպոսունս և օրհնել ձէթ կնքոյ վասն յաւելուածին արկանելոյ յառաքելական ձիթոյն՝ զոր պահէ եկեղեցի յաւելուածով. և երեք մետրապոլիտք ունին իշխանութիւն ձեռնադրել իւրեանց արքեպիսկոպոսք »:

« Չորրորդ դասք եկեղեցւոյ Եպիսկոպոսապետք են. որք ունին զնոյն ոքեմ, բայց եմափոր կրկին. գործ է նոցա ձեռնադրել զամենայն միճակաւորս. և երեք եպիսկոպոսունք

# ՅՕԴՈՒԱԾ Ա.

## Քորեպիսկոպոսք ։

Ի ՍԿԶԲԱՆՍ անտի լուսաւորութեան ազգիս յիշատակի 'ի գիրս Քորեպիսկոպոս յաշխարհի մերում․ զոր և Ղևոնդիոս Հայրապետ Կեսարու պատուիրեալ էր 'ի պատասխանին առաջին թղթոյն սրբոյն Գրիգորի․ ուր խօսելով զինենակնեան եկեղեաց և զմատրանէ , ասէ ըստ գրելոյ Զենոբայ․ "Կացուցեր 'ի նմա քահանայս և քորեպիսկոպոսս"։ Եւ ըստ պատուիրելոյ նորա կացոյց զԴանիէլ, զորմէ գրէ Բուզանդ Գ․ 14․ "Եւ էր սորա ընկալեալ զքորեպիսկոպոսութեան ձեռնադրութիւն աստիճանին 'ի ձեռաց մեծին Գրիգորի , յաւուրս յորում կործանեաց զբագինս մեհենիցն Հերակլեայ՝ այսինքն Վահագնի , որում տեղւոյ Աշտիշատն կարդացեալ․ որ նախ եղ զհիմունս եկեղեցւոյ սրբոյ"։ Ուրանօր յիշելով նաև զպաշտօն քորեպիսկոպոսութեան նորա ոչ միայն 'ի Տարօն, այլ և էր, ասէ, "Վերակացու և հրամանատար տեսուչ և հոգաբարձու ամենայն եկեղեցեացն Հայոց մեծաց ընդ ամենայն տեղիս"[1]։ Ըզնոյն վկայէ և Կիրակոս․ "Իսկ Տիրան կոչէ զմեծ քորեպիսկոպոսն Դանիէլ ազգաւ ասորի, զոր կացուցեալ էր սրբոյն Գրիգորի տեսուչ գաւառաց"։ Բազմութիւն քորեպիսկոպոսաց յիշատակի և 'ի ժամանակս Վարդանանց ըստ յիշելոյ Եղիշէի 47․ "Այս ամենայն եպիսկոպոսք և բազում քորեպիսկոպոսք ... միահամուռ ժողովեալք 'ի Թագաւորանիստ քաղաքն յԱրտաշատ"։ Եւ յորժամ եհաս, ասէ 'ի Թուղթ 97․ գուժկան 'ի բանակէն՝ թէ նախարարք ընկալան զդէն պարսկական, "Յայնժամ ժամանակի սփռեցան եպիսկոպոսքն յիւրաքանչիւր իշխանութիւն․ և առաքեցին զքորեպիսկոպոսս 'ի գեօղս և յագարակս, և 'ի բազում ամուրս լեռնային գաւառացն"։

[1] Բուզանդ Գ․ 14․ Նաև վարդապետս յիշէ առաքեալ ընդ զանազան նահանգս․ զի 'ի յիշելն զՇաղիտա զաշակերտ նորին Դանիէլի՝ ասէ․ "Որ 'ի նմանէ իսկ աշխարհին Կորդուաց վարդապետս առեալ էր"։ Գրելով և զերկրորդ աշակերտակն՝ որ էր Եպիփան, ասէ․ "Եւ երկրորդն անուն Եպիփան, յոր գաւառին Աղձնեաց և մեծաց Ծոփաց 'ի նմանէ իսկ վարդապետեալ էր"։ Որպէս թէ և սորա գործ քորեպիսկոպոսութեան լինէին 'ի տեղիսն յայնոսիկ։

Յիշատակին և քորեպիսկոպոսք յանուն գաւառաց. որպէս 'ի վեցերորդ դարուն յիշատակի Այրարատայն. Մովսէս կաթողիկոս, առ Վարդան, "կացոյց զնա (զԿիւրիոն) վանաց երէց սրբոյ կաթուղիկէին, և յետոյ քորեպիսկոպոս Այրարատեան գաւառի ամս եօթն,,: Յեօթներորդ դարուն յիշատակի առ Ասողկայ Բ. 2. Արշարունեաց. "Ի սորա աւուրսն պայծառանայր Գրիգորիս Արշարունեաց քորեպիսկոպոս,,: Իսկ առ Սամփսոնի լԹ. յարձանագրութեան զոր բերէ՝ յիշատակի "Աստ-երեց Մանկիրկ ծղկաց քորեպիսկոպոս,,. որ է գաւառ Սիւնեաց: Որպէս և առ Մատթէոսի Ճա. առանց գաւառի յիշատակի Դաւթակ քորեպիսկոպոս: Նաև յերեքտասաներորդ դարուն յիշատակեալ գտանեմք 'ի ժողովն Կոստանդնի կաթողիկոսի. որոց՝ միաբանադամայն և եպիսկոպոսաց պատուէրք կան եդեալք 'ի կանոնն ժե:

Զեկեղեցական իշխանութիւն քորեպիսկոպոսին և զզգեստս նորա տես 'ի վերոյ 'ի բանս Մխիթարայ յեօթներորդ գաւոն, յերես 240:

## ՅՕԴՈՒԱԾ Բ

### Եպիսկոպոսք:

ՍՈՒՐԲՆ Գրիգոր ընդ դարձուցանելն զաշխարհս մեր 'ի քրիստոնէութիւն, որպէս փոյթ կալաւ 'ի շինութիւն եկեղեցեաց՝ նոյնպէս և 'ի սահմանել եպիսկոպոսապետս. որոց միտք և կամք էին յամենայն գաւառս իշխանութեան Տրդատայ կարգել մի մի եպիսկոպոսութիւն. որպէս և անուանել կարգեալ 'ի սահմանս հռոմէական տէրութեան: Զայս յայտ առնէ բանն Թղթոյն առ Զենոբայ, էջ 13. զոր գրեցին սուրբն Գրիգոր և Տրդատ հանդերձ նախարարօք առ եպիսկոպոսունս Եղիազար և Տիմոթէոս, ուր ասեն. "Մանաւանդ զի գիտէիք, եթէ ամենայն գաւառաց եպիսկոպոս պիտոյ են և քահանայս. զի Թէպէտ ոմանք որք ուսանք ուսեալք եկեալ են ժողովեալ, բայց զի՞նչ են այսոքիկ առ վեցհարիւր և քսան գաւառս Հայոց. որ և գաւառին մէն մի քահանայ կամ երկու լուկ Թէ հանդիպի. զի գտամանկունք երկրիս 'ի դպրոց են. և ոչ ոք 'ի նոցանէ բաւական քահանայութեան,,:

Այլ 'ի ջերմ և յեռանդագին աստուածպաշտութենէ որոց հայրապետին անդատին 'ի ժամանակաց իւրոց ամենայն Հայաստան լցաւ եպիսկոպոսարանօք. զայս յայտ առնէ Խորենացին յասելն վասն նորա. «Յետ լուսաւորելոյ զամենայն Հայս . . . և լնլոյ զամենայն կողմանս եպիսկոպոսօք և վարդապետօք». Բ. 91: Այսպէս գտանեմք և առ Ագաթանգեղոսի, որ յետ գրելոյ զնմանէ թէ յամենայն տեղիս եկեղեցիս կանգնէր, ապա ասէ յետ. «Սոյնպէս և զեպիսկոպոսունս վիճակեցուցանէր 'ի գլխաւորութիւն ժողովրդոցն տեառն»: Ուր յետ յիշատակելոյ յանուանէ ոման եպիսկոպոսունս զորս ձեռնադրեաց յորդւոցն քրմաց, ապա դնէ զթիւ եպիսկոպոսարանաց, ասելով. «Եւ բազմացոյց կացոյց տեսուչս և եպիսկոպոսս յամենայն գաւառս իշխանութեան իւրոյ. և որ յաստիճան եպիսկոպոսութեան ձեռնադրեցան 'ի նմանէ՝ աւելի քան չորեքհարիւր եպիսկոպոսս, որք կացցեն տեսուչք տեղեաց տեղեաց». յՃա: Զոր և կրկնեաց Վարդանայ 'ի Ներբող նորին, ասէ. «Եպիսկոպոս կացուցանէր իւրովք լուսաւորեալ աջովն չորեքհարիւր ոգիս, և քահանայս, և սարկաւագունս, և դպիրս, որոց ոչ գոյ թիւ»: Այլ Կիրակոս 'ի յիշելն զայս 'ի սկիզբն պատմութեան իւրոյ՝ առաւելութիւն դնէ զթիւ եպիսկոպոսարանաց ասելով. «Յետ լուսաւորելոյ նորա զՀայաստան աշխարհս աստուածգիտութեամբ, և ձեռնադրելոյ եպիսկոպոսս աւելի քան չորեքհարիւր և երեսուն, գնալ եղև նմա ընդ մեծի արքային Տըրդատայ 'ի Հռոմ»:

Իսկ թէ որքան բազմացան եպիսկոպոսարանք առ ժամանակօք Մեծին Ներսէսի և յետ այնորիկ, Բուզանդ վասն Մեծին Ներսէսի ասէ. «Բազմացոյց զկարգս պաշտօնէից յամենայն տեղիս իշխանութեանն 'ի սահմանացն Հայոց. և յամենայն գաւառս կացոյց տեսուչս եպիսկոպոսս». Ե. 21: Զորոց զթիւ նշանակէ Մեսրոպ հազար քան. բայց քանզի ընդ եղբայրանացս միանգամայն թուէ, չէ մարթ յայնմանէ զորոշ թիւ ինչ հանել: Իսկ Մատթէոս խօսելով զժամանակէ Պետրոսի գետադարձի՝ որոշակի նշանագրէ ասելով. «Յորժամ էր տէր Պետրոս յաթոռ հայրապետութեանն և 'ի հայաստան աշխարհին, ունէր կողմնութիւն հայրենեաց տուեալ 'ի թագաւորացն Հայոց . . . եպիսկոպոսք հինգհարիւր փառաւորք, և գաւառատեսուչս 'ի վերայ հինգհարիւր թեմի հանապազ». ՃԺէ: Բազմութիւն եպիսկոպոսարանաց ցուցանէ լինել 'ի Հայս

և այն բան ոսկին մատենագրի, ուր գրելով թէ յաւուրս Յոհաննու արքայի՝ յորժամ Աբլասուար Պարսից ամի-րայն իբր հարիւր յետուն հազարաւ եմուտ յաշխարհն Աղուանից, յայնժամ Անհողինն Դաւիթ, ասէ, «յու-ղարկեաց առ կաթողիկոսն Աղուանից և ասէր.. արդ ժո-ղովեա զամենայն եպիսկոպոսունս Հայոց աշխարհիդ որ յԱղուանսն են, և 'ի բանակ այսր հասցես, զի ընդ մեզ մի-աւորիջիք. զոր և արար իսկ. երկերիւր եպիսկոպոսօք գնայր տէր Յովսէփ (կաթողիկոս Աղուանից) 'ի բանակն քրիստո-նէից». Ծր: Յայտ է թէ այս եպիսկոպոսունք ըստ մեծի մասին էին եպիսկոպոսունք Հայոց աշխարհին, որպէս ասէ, որք փախուցեալ էին յայնժամ յԱղուանս, իմա 'ի հիւսիսային կողմանս մեծին Հայոց՝ որ Աղուանք կո-չէր յայնժամ. յայս թիւ չէին եպիսկոպոսունք Հայոց՝ որք փախուցեալ կային յայլ աշխարհս, և որք նստէին դեռ 'ի թեմս իւրեանց:

## Ա. Կարգ եպիսկոպոսարանաց:

Վասն կարգի եպիսկոպոսարանաց գոյզն յիշատակութիւնք կան առ մատենագիրս: Սամփաննոս օրհնեալն յեօթ-ներորդ գլուխ պատմութեանն գրէ վասն սրբոյն Գրիգորի այսպէս. «Կարգէ.... զեկեղեցական դասն՝ զդաս և զպատիւ եպիսկոպոսացն, և հրամայէ բաժանել ընդ ինքեան աթոռով և ոսկեհակար բարձու երեսուն և վեց եպիսկո-պոսաց՝ ութևտասն յաջմէ, և ութևտասն յահեկէ. առաջինն Բասենոյն. իսկ զՍիւնեցին յաջ կողմանն յեօթ-ներորդ գահուն նստուցանէ. և ցուցանէ զայս Սամուէլ կամրջաձորեցի»: Իսկ 'ի գլ. ժԳ. ասէ, թէ Սիւնեաց եպիսկոպոսն կոչեցաւ Նախաթոռ պատրիարգին: Մեծն Սահակ, ասէ, «ձեռնադրեաց և զԱնանիա աշակերտ Մեսրոպայ՝ թարգմանիչ և լի ամենայն առաքինութիւ յեպիսկոպոսութիւն Սիւնեաց, նստիլ 'ի գահ մետրապօլ-տութեան, և կոչիլ Նախաթոռ Հայոց պատրիարգին»: Բուզանդ վասն մեծին Ներսէսի ասէ, 'ի հայրապետանա-ցն լեալ «ընդ նորա ձեռամբ երկոտասան եպիսկոպոսք, աթոռակիցք իւր գործակիցք և խորհրդակիցք, թող զայլոց գաւառաց ամենայն եպիսկոպոսունսն որ ընդ նո-վաւ». Դ. 5:

Բ. Անհարկութիւնք 'ի գլխաւոր եպիսկոպոսաց և քահանայից։

Նշոյլք ինչ ուրեք ուրեք յիշատակին 'ի գիրս. որպէս Խորենացի յետ գովելոյ զեպիսկոպոսն զԽադ յամենայնի՝ ապա ասէ. «Եւ ոչ եղև 'ի նմա գանձագիւտ ստացուածոյ, բայց միայն վասն միոյ նուազի, զի էր պճնող առ հանդերձս և ձիասէր. զոր պարսաւելով այպանէին փոխանակ կարծանելն՝ որք 'ի նմանէ յանդիմանեալ լինէին։ Վասն որոյ թողեալ ախտահեան զպերճագոյն հանդերձն, խոնարհագոյնս եղեալ՝ իշխէր մինչև ցօր մահուան իւրոյ». Զ. 31։ Իսկ Բուզանդ վասն Զաւէնի ասէ. «Անձնային քահանայից ուսոյց առնել հանդերձ զինուորաց.. զի ոչ ըստ կրօնիցն ագանէին քահանայքն զպաշտօնսն՝ որպէս օրէն էր 'ի նմին, այլ սկսան զխոտորկութեան 'ի վերայ ծնգացն ունել։ Եւ զարդարէին զհանդերձս իւրեանց պէսպէս նարօտօք, և սիգային որպէս ոչ վայել էր. և զմորթ մեռելոտի գազանացն քահանայքն անխտիր ագանէին, որ ոչ վայել էր։ Եւ ինքն Զաւէնն աթինեալս և զտապակեալս զժապաւինեալս նարօտօք ագանէր, զգամուրենիս և զկնգմենիս և զգայլենիս ագանէր. և աղուեսենիս զանձամբ արկեալ՝ անխտիր 'ի բեմն ելեալ նստէին». Զ. 2։ Եւ վասն Ասպուրակէսի գրէ. «Բայց միայն վասն կրօնիցն հանդերձոյն զեղեալ կարգն՝ ըստ կրօնիցն Զաւենայ գնային սոքա». Զ. 4։ Իսկ յաղագս այլոց զգեստուցն և զայլ և այլ համազամանաց իշխանութեան եպիսկոպոսին տեսցես 'ի վերայ 'ի բանս անդ Մխիթարայ 'ի չորրորդ դասու, յերես 239։

Գ. Կարգաւորութիւնք 'ի վերայ եպիսկոպոսաց և քահանայից։

Ի բարեկարգութեանս որք սահմանեցան ըստ ժամանակս ժամանակս, առաջինն եղև յաւուրս մեծին Ներսէսի. զորմէ գրէ Սամուէլ յամի տեառն 369. «Զ[illegible] կարգ եկեղեցւոյ բարիոք և վայելչապէս նորոգէր»։ Եւ Բուզանդ պատմէ վասն Ներսէսի՝ թէ ըստ այլ բարեկարգութեանս իւր նաև 'ի վերայ եպիսկոպոսաց փոյթ մեծ առնէր՝ «եղև խաղաղութի և նորոգութի յաւուրս նորա ամենայն եկեղեցեաց. և յաճախէր շուք պատուի ամենայն

եպիսկոպոսացն ընդ անձնային ունելոյ Հայոց մեծաց. Եւ լուսաւորութի անձնային կարգի եկեղեցւոյ անձնապայ-ծառ ծաղկեաց անձնամեծ լրութի. կարգեցան կարգ-կաթուղիկէ եկեղեցեաց անձնային վայելչութի. և բազմա-ցան կարգք սրբուն պաշտամանցն և պաշտօնէիցն ,, . Է . Կ ։ Գասանեալք ինչ ինչ կարգադրութի լեալ 'ի վերայ եպիսկո-պոսաց նաև 'ի զանազան ժողովս և 'ի կանոնագիրս . զոր օրինակ է տեսանել և 'ի կանոնական Թուղթն Կոստան-դինի կաթողիկոսի, որ յերեքտասաներորդ դարու , առ-Կիլիկեցի . «Հրաման է այս առաքելական, որ 'ի տարւոջ երիցս անգամ առաջնորդք եկեղեցւոյ ժողովեալ տեսանիցեն զկարգս եկեղեցւոյ, թէ որպէս ունիցին զսահմանս յաւէ-տենականս , զոր հոգւոյն սուրբ հաստատեաց . զպականեալսն լնուլ , և զեկամուտ որոմն խլել . և այս պատուիրանս 'ի բազում ժամանակաց խափանեալ եղև յաղագս ազգիս ցիր և ցան լինելոյն ,,։ Ընդհանրական Թուղթ Շնոր-հալւոյն բաց յայլոց խրատուց առ եպիսկոպոսս՝ զգու-նեն և կարգադրութիւնք ինչ 'ի վերայ զգեստուց եպիսկո-պոսաց ըստ այնր ժամանակին . «Ի զգեստս մի աշխարհօրէն ձևիլ , այլ ըստ նոցա նմանութե՝ որոց խաչեալ է աշխարհ . նաև յընթացս ճանապարհի ոչ երևելի և կազմեալ երի-վարօք և կամ կառօք ամբարձեալ երևեսցին 'ի բարձրն կոյս , այլ վասն զանկարացեալն մարմնոյ միայն բառնալոյ ըստ պատշաճի կարգին . և ոչ որսորդաց ձիովք շահա-տակել , և շնովք և բազէիւք որսականօք ձևել առ երե-վելիս և Թռչունս , որպէս լուեալք զոմանց թէ իցեն ,,։

## ՅՕԴՈՒԱԾ Գ

### Մետրապօլիտ ։

ՄԵՏ անուն ածանցեալ 'ի յունական անուանէ , քանզի նշանակէ Մայրաքաղաքացի , Թուի Թէ և Գրիգոր մա-գիստրոս 'ի պատասխանիսն որ առ Թուղթն կաթողիկոսին Ասորւոց՝ զԹարգմանութի սորին դնէ 'ի գրեն . «Ընդ որոյ Մայրաքաղաքացեաց և եպիսկոպոսաց և Հարանց և . . . խա-չակիրս կրօնաւորաց ,,։ Զի 'ի յիշելն յայս բան զզանա-զան զասս եկեղեցականաց՝ պակասին զասք արքեպիսկո-պոսաց և մետրապօլտաց ։

Ի սկզբան անդ կարգաւորութեանն յաւուրս մեծին Ներսեսի՝ մետրապօլիտ կարգեցին ըստ Յոհաննու կաթողիկոսի 'ի Սեբաստիա, 'ի Մելիտինէ և 'ի Մարտիրոսաց քաղաքին։ Իսկ ըստ Ստեփաննոսի Օրբէլեան նախ մետրապօլիտ կարգեցին զՎրացն. իսկ 'ի բաժանիլ նորա յաւուրս Կիւրիոնի 'ի վերջերորդ դարուն, "ետուն զմետրապօլտութիւն, ասէ, Մարդպետական եպիսկոպոսին Թէոդորոսի. և ապա նորա հպարտացեալ խոտորել եպիսկոպոսութեամբ ընդ ձեռամբ լինել. յորմէ երկուցեալ Հայոց ասէին, մի զուցէ և այլ իմն զուտնակ բաժանումն լիցի, առին 'ի նմանէ զայն։ Եւ ետուին զանեալն Սիւնեաց քաջուսմամբ և ուղղափառ և երևելիս յամենայն հայաստանս. և յառաջին հարցն նոյն պատուով կոչեցեալ, պատշաճ համարեցան միաբան ժողովով տալ նոցա զմետրապօլտութիւն առնել. և բարձակից և սեղանակից կաթողիկոսի՝ անթոռով և բարձու 'ի միասին բազմել։ Կացուցանեն ապա զԴաւիթ մետրապօլիտ Սիւնեաց, և տան նմա զխաչանիշ նշանն զառաջեաւ կրել հանապազ"[1]։ Եւ 'ի գլուխն լա. ասէ. "Սիւնեացն վասն մետրապօլտութեան 'ի վերայ էր քան զամենայն եպիսկոպոսաց Հայոց. զի այլ ոչ որ ունէր զմետրապօլտութեան պատիւն. և որքան պատրիարգն քան զարքեպիսկոպոսն է գերիվերոյ, և արքեպիսկոպոսն քան զմետրապօլիտն, այսպէս մետրապօլիտն քան զեպիսկոպոսն, զի նա ձեռնադրէ զեպիսկոպոսն"։ Տես 'ի մեծ Հայս 241։

Օգնատուութիւն մետրապօլտի յիշատակի 'ի պատմութեան Օրբէլեանին 'ի ձեռնադրութեան անդ Օրբէլեան Ստեփաննոսի 'ի մետրապօլիտ Սիւնեաց. որ եղև 'ի Կիլիկիա յաւուրս Բ. Կոստանդնի կաթողիկոսի. "Իսկ թագաւորն (ասէ, որ էր Լևոն Գ.) նմանապէս զգեցուցանէ 'ի թագաւորական զգեստուցն ըստ հայրապետական ձևոյն. և դնէ կրկին անգամ զթագ պատուական 'ի համակ ոսկւոյ 'ի գլուխն, որ և զանուն թագին ինքեանք միտր կոչէին. տային և զեմիփորոնն մեծախորհուրդ զերկբեկինն՝ որ մետրապօլտացն էր. և զխոյր ոսկեթել և մարգարտայեալ յօրինուածովք". Գլ. Թ. Տես յաղագս զգեստուց մետրապօլտին և 'ի վերայ յերես 239. յերրորդ դասի անդ բանիցն Մխիթարայ։

1 Չայտանելի ընդարձակ պատմ. Ստեփաննոս Օրբէլ. 'ի գլ. խէ. խզ. և խէ։

## ԵՊԻՍԿՈՊՈՍ

Սուրբն Սահակ յերեսմն եւս Թուղթս իւր որ առ Թէոդոս կայսր և առ Ակակիոս պատրիարգ Կոստանդնուպօլսոյ և առ Անատօլիոս զօրավար՝ առ Խորենացւոյն Գ. 57. կոչէ զինքն "Սահակ Հայոց Եպիսկոպոս"։ Որպէս և նոքա 'ի պատասխանիսն՝ սոյնն անուամբ կոչեցին։ Եւ ինքն մատենագիրն Գ. 50. գրէ. "Բայց Շապուհ էր ցասմամբ ընդ Խոսրովայ, 'ի բարեկամանալն Արկադեայ անձամբ, և յանհրամանս կարգելն յԵպիսկոպոսութիւն զմեծն Սահակ"։ Սոյնպէս և Յովսէփ կաթողիկոս առ Եղիշէի 'ի գրեան առ Թէոդոս կայսրն՝ կոչէ զինքն "Յովսէփ Եպիսկոպոս բազում եպիսկոպոսակցօք իմովք". 122։

## ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

Զայս անուն կոչէ Ագաթանգեղոս. "Իսկ մեծ Արքեպիսկոպոսն երանելին Գրիգորիոս". ճծէ։

## ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏ

Նոյս անուն յաճախեալ է առ Խորենացւոյն. "Բայց յերկրորդ ամի Վարազդատայ եկաց Եպիսկոպոսապետ Հայոց Զաւէն". Գ. 40։ "Բայց յերկրորդ ամին Արշակայ եկաց յԵպիսկոպոսապետութիւն Հայոց Ասպուրակէս". 41։ "Յետ այսր վախճանեալ Եպիսկոպոսապետն Ասպուրակէս". 49։ "Եկեալ Շմուէլի կալաւ զաթոռ Եպիսկոպոսապետութեանն". 66։ "Իսկ

մին անուամբ, միայն առ 'ի յորոշումն երևելից աթոռոց կոչէին. բայց ինքն չունէր ինչ իրաւասութիւն զոր կալան զինի արքեպիսկոպոսք. այսինքն է՝ ժողովել զիւր ստորակարգեալ եպիսկոպոսունս, և 'ի ժողովի նստել նախագահ այլոց եպիսկոպոսաց. իսկ միւս ստորակարգեալ եպիսկոպոսաց բաժանել յատկեալ արքեպիսկոպոսին։ Յարևելս՝ առաջինն որ կոչեցաւ Արքեպիսկոպոս՝ Թուի լինել սուրբն Աթանաս. և Թէպէտ այս պատուանուն այսպէս 'ի Դ. դարուն մուծաւ, բայց իրաւասութիւն գոյր յառաջնմէ, զի աթոռ եպիսկոպոսին որ նստէր 'ի մեծամեծ քաղաքս՝ Մայր անուանէր 'ի Յունաց. և 'ի քաղաքական կառավարութեան կոչէր Մետրոպոլիս. նաև եպիսկոպոսն որ անդ նստէր՝ կոչէր Մետրոպոլիտ և Մետրոպոլիտ, որ է Մայրաքաղաքացի։ Եկեղեցիք որք ընդ տէրութեամբ Հռովմայեցւոց հիմնեալ եղեն, ըստ բաժանման մեծամեծ քաղաքաց՝ որք 'ի Յունաց կոչէին Մետրոպոլիտ կամ Մայրաքաղաքք, յայնմ ժամէ նաև եպիսկոպոսունք որք նստէին 'ի նոսա, ինքեանք ևս առ սակաւ սակաւ ընկալեալ զայս անուն Մետրոպոլիտ կոչեցան, այսինքն է Մայրաքաղաքացիք։

զաթոռ Եպիսկոպոսապետութեանն տեղապահութ̃ե յաջորդեաց հրամանաւ երանելւոյն Մեսրոպայ նորին աշակերտ Յովսէփ քահանայ „. 67։ Թոմա արծրունի ևս զկաթողիկոսունս զմեծն Ներսէս, զՇահակ, զՋաւէն և զԱսպուրակէս կոչէ Եպիսկոպոսապետ։ Իսկ Բուզանդ 'ի դպր. Դ. Գլուխ եպիսկոպոսաց կոչէ զկաթողիկոսս, սկսեալ 'ի Ջաւենէ։

## ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏ

Բուզանդ Դ. 3. զսուրբն Գրիգոր կոչէ Մեծ Քահանայապետ. և ստորև նաև զսուրբն Վրթանէս կոչէ Քահանայապետ, զոր յառաջն կոչեալ էր Եպիսկոպոսապետ։ Ի Շարակնոցի սուրբն Գրիգոր միշտ կոչի քահանայապետ. որպէս և մեծն Ներսէս։

## ՊԱՏՐԻԱՐԳ

Որ է անուն յունական, և նշանակէ Հայրապետ. որպէս գրի և 'ի դատաստանագիրս Մխիթարայ Գօշի. “Առաջին դասք եկեղեցւոյ Պատրիարգք, որ թարգմանին Հայրապետք „։ Բայց ըստ առմանն տարբերի. զի Հայրապետ կոչին նաև այլ ամենայն եպիսկոպոսունք. իսկ Պատրիարգ կոչին միայն այն եպիսկոպոսապետք՝ որոց աթոռ ընկալեալ իցէ զայս անուն, և ընդ որովք են այլ և այլ աթոռք եպիսկոպոսաց և արքեպիսկոպոսաց։ Յոհաննէս կաթողիկոս զայս զանազանութի̃ դնէ յասելն վասն մեծին Ներսէսի. Առաքեցին զնա “ըստ առաջնոյ կարգի 'ի Կեսարիա ձեռնադրել 'ի հայրապետութի̃ „. որ է յեպիսկոպոսութի̃. բայց ապա տեսեալ, ասէ, զնորա զարդիւնս, խորհեցան “Նախակարգել 'ի պատիւ Պատրիարգութե̃ „։ Յոր անուն կոչէ երբեմն և զկաթողիկոսն. զոր օրինակ յասելն. “Զայսու ժամանակաւ մեծ Պատրիարգն մեր Կոմիտաս „։ Ի գործ ածի նաև 'ի Կիրակոսէ, յասելն. “Միաբանեալ իշխանաց և զօրացն՝ յաւէտ և Պատրիարգն Պետրոս՝ ժողովեցան առ դրունս մեծափառ կաթուղիկէին Անոյ. և կացուցանէին զԳագիկ թագաւոր „։ Իսկ առ Վարդանայ յոյժ յաճախեալ է սորայս գործածութիւն. որպէս յասելն. “Սուրբ Պատրիարգն Գրիգոր երթեալ 'ի Տարօն՝ առնէր չորս ամիս առ Անտոն և Կրօնիդէս „։ Եւ այլուր. “Զուարճացեալ ապա սուրբ Պատրիարգն Սահակ „։ Եւ վասն Անաստասայ կաթողիկոսին գրէ. “Մինչ խորհէր

Պատրիարգն ժողովով հաստատել,,։ Եւ վասն Եսայեայ կաթողիկոսին. «Որպէս և եղեն նախ եպիսկոպոս, և ապա Պատրիարգ 'ի շնորհացն Աստուծոյ,,։ «Ի կարգի Պատրիարգացն յաջորդէ զԳէորգ՝ Յովսէփ,,։ Յայս անուն կոչէ նաև զկաթողիկոսութիւնն և զկաթողիկոսարանն ասելով. «Այն որ նստոյց յաթոռ Պատրիարգութե զսուրբն Սահակ որդի մեծին Ներսէսի,,։ Եւ այլուր. «Ի Պատրիարգութեն Յովհաննու մանդակունւոյ,,։ Եւ թէ. «Զսա յաջորդէ Գէորգ 'ի տանէ Պատրիարգարանին,,։

## ԿԱԹՈՂԻԿՈՍ

Անուն յունական, որ ըստ ստուգաբանութեն նշանակէ Ընդհանուր, Ընդհանրական. բայց ըստ գործածութեանն կաթողիկոս կոչեցան առ Յոյնս համարակալք կամ գործակալք արքունի. որպէս յայտ առնեն վկայութիք նախնեաց վասն այսր յառաջ բերեալք 'ի Տիւքանժայ 'ի լատին, և մանաւանդ 'ի յունական բառարանին իւրում։ Ըստ այսմ նշանակութե առեալ համարի Լըքիէն՝ զկոչելն Հայոց կաթողիկոս զնախագահ կամ զեպիսկոպոսապետ իւրեանց. այսինքն է՝ համարակալ կամ գործակալ[1]. զի կաթողիկոսք իբրև պաշտօնակալք իմն համարին, որպէս էին այն գործակալք թագաւորաց. և անունն իսկ իբր անուն պատուոյ յիշատակի. որպէս և նոյն գործակալք էին մեծապատիւք։ Կօսռ գրէ՝ թէ անունս կաթողիկոս ըստ այժմու առմանն նշանակէ Նախագահ. իսկ 'ի նախնեաց բարբառ՝ Ընդհանրական։ Լաւ ևս լինէր ասել, թէ նաև այժմ ընդհանուր նշանակէ. բայց 'ի գործադրութե սովորին անուամբ իմանամ զնախագահ կամ զեպիսկոպոսապետ. և այս գործադրութի սկսաւ յաւուրց անտի Աղաթանգեղոսի, Պրոկոպիոսի և այլոց։ Եւ հաւաստի իմն է, թէ զայս անունն ոչ սկսանէին արևելեայք տալ իւրեանց եպիսկոպոսապետին, եթէ չէր սկսեալ սորին գործածութի յառաջ քան զինքեանս 'ի սահմանի կայսերութե. սովորին անուամբ կոչելով զմետրապօլիտն իմն պաշ-

1 Մեծայն սխալի Լըքիէն 'ի կարծելն թէ նախագահք Հայոց վասն այնորիկ կոչեցան կաթողիկոս կամ գործակալ, ըստ որում յանուն հայրապետին կեսարիոյ հովուէին զամենայն եկեղեցին Հայոց իբրև փոխանորդք նորին։ Զի կաթողիկոսք կոչեցան ոչ միայն Հայոց նախագահք, այլ նաև այլոց արևելեան ազգաց նախագահք։ Լաւագոյն էր ասել՝ որպէս նոցայն՝ նոյնպէս և Հայոց ազգին այսպէս կոչեցեալ, ըստ որում գործակալք կամ փոխանորդք գլխաւոր պատրիարգաց։

տանակալ, որպէս և խոզք կոչէին զգործակալս, որպէս ա-
տացաք. նաև զզօրավարս, որպէս յայտ առնեն վկայութիք
բերեալք առ Տիւքանժայ. միայն չէք գտանել զորոշ ինչ
վկայութի, թէ որով պատճառաւ 'ի քաղաքական գոր-
ծոց 'ի յեկեղեցականն փոխեալ գտաւ այս անուն [1]:
Քանզի ոչ միայն 'ի մերում ազգի է տեսանել կաթո-
ղիկոս կոչել զեպիսկոպոսապետն, այլ նաև յայլ արևե-
լեան ազգս՝ Վրաց, Աղուանից, Ասորւոց, և այլն. վասն
որոյ Պրոկոպիոս 'ի գիրսն Պատերազմ Պարսից, բարւոք
գրէ. "Զքահանայապետն քրիստոնէից կոչէն Կաթողի-
կոս հելլենացւոց բարբառով. ըստ որում գերագոյն է
ամենեցուն (եպիսկոպոսաց) որոց յայնմ աշխարհի են".
Է. 25: Սոյնպէս և 'ի Թուղթն Պետրոսի պատրիարգին
Անտիոքայ գրեալ առ եպիսկոպոսն Գրադենի. "Եպար-
քոսութիք արևելից՝ առ որս արքեպիսկոպոսութիք առաքին
'ի մէնջ, և ձեռնադրին Կաթողիկոսք մետրապօլիտքն
յախտոնիկ սահմանս՝ որք ունին ըստ իշխանութի իւրեանց
զաղաղում եպիսկոպոսունս": Որպէս և հայելով 'ի բան
Կորիւն վարդապետի և Ագաթանգեղոսի՝ սուրբ երկոքին
առաւել տարածաբար առնուն զընդհանուր նշանակութի
կաթողիկոսի՝ եթէ 'ի վերայ միոյ ազգի, և եթէ յոլովից.
զի Կորիւն յայս անուն կոչէ զպատրիարգն Կոստանդնու-
պօլսոյ իբր ընդհանրական գլուխ յունադաւանաց առհասա-
րակ, յասելն վասն սրբոյն Մեսրոպայ. "Յանդիման լինէր
տիեզերակալ թագաւորացն, և հայրապետին սրբոյ
Կաթողիկոսին աշխարհամուտ դրանն, որում Ատտիկոս
կոչէին ... և երկրպագեալ ծիրանափառ օգոստակա-
նացն՝ և սրբոյ Կաթողիկոսին": Ագաթանգեղոս զևս զգե-
րագոյնն զքահանայապետն Հռոմայ զհայրն հասարա-
կաց զՍեղբեստրոս կոչէ ոչ միայն Պռոտոպապ, այսինքն
նախնին հայր կամ պապ, այլ և Կաթողիկոս, այսինքն ընդ-
հանրական գլուխ՝ յասելն. "Ապա հրաժարեալ 'ի ծիրա-
նափառ օգոստականացն, և 'ի սրբոյ Կաթողիկոսէն (Սեղ-
բեստրոսէ) ընկալեալ ողջոյն". ճղը: Այսչափ ինչ տե-
ղեկութի տուեալ վասն անուան կաթողիկոսին՝ խօսեսցուք
արդ զկաթողիկոսէ ազգին մերոյ:

Նախ՝ առ որում գտանեմք զայս անուն 'ի վաղ ար-

1 Թէպէտ նաև յայլ բազում անուանս ոչ գտանեմք զպատճառն. զոր օրինակ Կուրապաղատ՝ որ նշանակէ հոգաբարձու պալատան, ոչ գտանեմք զպատճառն՝ թէ ընդէր զնոյն պատուոյ անունն եդուն նաև հեռաւոր իշխանաց. որոց գուցէ չէր իսկ տեսեալ զպալատն:

կեալ վասն մերոյ եպիսկոպոսապետին՝ է Ագաթանգե-
ղոս. "Յայնժամ մեծ արքայն Տրդատ և սուրբ Կաթո-
ղիկոսն Գրիգոր հանդերձեցին և արձակեցին զԱրիստա-
կէս „. յղէ: Ապա Նաև Բուզանդ ասէ վասն Արիստա-
կէսի. "Որդի Գրիգորի սքանչելոյ՝ առաջին Կաթողիկոսին
Հայոց մեծաց „. գ. 10: Սոյնպէս զմեծն Ներսէս սուրբ
ուրեք կոչէ եպիսկոպոսապետ, և ուրեք կաթողիկոս. որ-
պէս ՚ի դ. 13: Նաև առ Ղազարայ սովին անուամբ յիշա-
տակի յասելն. "Եւ ապա ըստ Աստուծոյ տեսչութեան յա-
ջորդեաց զԿաթողիկոսութիւն աշխարհիս Հայոց տէր Գիւտ „.
191: "Եւ երանելի այրն Աստուծոյ Կաթողիկոսն Հայոց
Գիւտ „. 198: "Կաց սուր և կամիս. բայց ՚ի գործոյ Կա-
թողիկոսութեան հեռի ես, և չէ քո. և լուեալ զայս սրբոյ
Կաթողիկոսին Հայոց Գիւտայ „: Յոհաննէս կաթողիկոս
զառաջին Յովսէփ անուանէ նախ կաթողիկոս. "Զկնի այ-
սորիկ ապա լինի կատարումն սրբոյ Կաթողիկոսին Յովսէ-
փայ „. զի զառաջինսն հայրապետ կամ պատրիարգ անուամբ
յիշատակէ: Երկրորդ զՅոհան. "ԶՅոհան սա ՚ի գաւառէ
Կոգայ ՚ի Բագարան գեղջէ կացուցանեն Կաթուղիկոս
յունական կողմանն „: Խորենացին ոչ ուրեք յիշատակէ
զանուն կաթողիկոս, այլ եպիսկոպոս, և եպիսկոպոսա-
պետ, և փոխանակ այնր զեկեղեցին Վաղարշապատու կո-
չէ կաթողիկէ, որպէս է տեսանել և յայս բան նորա.
"Զոր թողեալ խարսխեաց յեկեղեցւոջն Կաթուղիկէ՝ որ ՚ի
Վաղարշապատ քաղաքի „. գ. 66: Յոհաննէս. կաթողիկոս
նոյնպէս յաճախ յիշատակէ Կաթուղիկէ եկեղեցի: Ագա-
թանգեղոս որ ՚ի վերոյ գերագոյն աթոռոյն Հռոմայ ետ
զայս անուն, ՚ի թղթ. յկ. զեպիսկոպոսն Կեսարիոյ կո-
չէ "Զսուրբ Կաթուղիկոսն Ղևոնդիոս „: Որպէս և Բու-
զանդ. "Տեսին անդ (՚ի Կեսարիա) զԿաթողիկոսն կաթողի-
կոսացն զսուրբն զմեծանունն զերանելին զհոյակապն զս-
քանչելին Եւսեբիոս „. դ. 4. և թէ, տարին զմեծն Ներսէս
"առ Կաթողիկոսն Եւսեբիոս յերկիրն Գամրաց, և ՚ի մայր
քաղաքացն նոցա ՚ի Կեսարիա, զի ձեռնադրեսցեն անդ
զսուրբն Ներսէս ՚ի Կաթողիկոսութիւն Հայոց մեծաց „: "Հասին
՚ի քաղաքն կեսարացւոց. ետուն ՚ի Կաթողիկոսութիւն զՅու-
սիկն ձեռնադրել „. գ. 12: "Առին գնացին զՓառէն սուրբ
՚ի մայրաքաղաքն Գամրաց ՚ի Կեսարիա, և անդ ձեռնա-
դրեցին զնա ՚ի Կաթողիկոսութիւն Հայոց մեծաց „. դ. 16:
"Եթէ ում պարտ իցէ զհայրապետութեան զԿաթուղիկոսութիւն
ունել... անդ ձեռնադրեն զՇահակն ՚ի Կաթողիկոսութիւն

Հայոց մեծաց»։ 17։ Սոյնպէս և տեղին կոչի կաթողիկոսարան. զորմէ ունիս տեսանել ստորև։

### Բ. Ընտրութիւն և Ձեռնադրութիւն կաթողիկոսին։

Վասն ընտրութեան կաթողիկոսաց յառաջին ժամանակս տեսանեմք փոյթ մեծ ունել 'ի սերնդոց Լուսաւորչին կարգել. որոյ և սերունդ արդարև իւրով բարելաւութեամբ վայրուց արժանի կացոյց զինքն այնր աթոռոյ. մինչև պատճառ եղծանելոյ ամենայն բարեձևութեան աշխարհիս յաւուրս Է. Արշակայ՝ համարի Մերուզ 'ի կողմանէ քաղաքականին՝ գլուխն զօրավար 'ի տոհմէ Մամիկոնէից. իսկ 'ի կողմանէ եկեղեցականին՝ գլուխն հայրապետ կամ կաթողիկոս 'ի տոհմէ Լուսաւորչին. «Եւ տեսեալ Արշակայ, ասէ, որ ոչ գտանի առաջնորդ 'ի մնացորդաց սուրբ ազգին՝ մեծ քահանայապետութեան սրբոյն Գրիգորի, և ոչ զօրավար 'ի քաջ և 'ի տիրասէր ազգէն Մամիկոնէից, և եթէ աւերումն աշխարհիս Հայոց յաղագս այսր պատճառաց եղև»։ Յետ Արշակայ ծանեան զայս և յետնորդք նախարարքն այնոքիկ, բայց փորձիւ և վնասուք իւրեանց. որք յետ փոխելոյ զտուրքն Սահակ զպատուականն շառաւիղ լուսաւորչեան տոհմին, յայնժամ ակն յանդիման տեսին թէ զինչ խաւար կայցէ ընդ նոսա և ընդ այլս 'ի հայրապետաց, որք անդէն զկնի նորա յաջորդեցին. որոց չար օրինակ՝ նաև այլոց բազում եպիսկոպոսաց եղև պատճառք զնոյն առնելոյ, զոր յիշէ Խորենացին. «Յայնժամ, ասէ, ժողովեալ 'ի միասին ամենայն նախարարացն՝ չոգան առ մեծն Սահակ, և զմեղանս յանձն առեալ՝ աղաչէին զնա դարձեալ ունել զաթոռն. խոստանային 'ի Պարսից արքայէն հաստատել զնա, մուրհակ ամենեցուն կնքեալ՝ ազգաւ տալ թոռանց նորա զնոյն իշխանութիւն»։ Գ. 66։ Բայց սուրբ հայրապետն յաստուածուստ եցոյց վճռեալ զդարձումն լուսաւորչեան տոհմին. որ թուի լինել 'ի պատիժ ապերախտութեան այնպիսի խորհրդականացն նախարարաց։

Վասն եղանակի ընտրութեան կաթողիկոսաց յետ հերձուածոյն Դաւթի կաթողիկոսին որ յԱղթամար 'ի սկիզբըն երկոտասաներորդ դարուն, գտանեմք կանոն ինչ սահմանեալ. զի առանց հաւանութեան չորից աթոռոց եպիսկոպոսաց՝ ոչ ոք նստցի կաթողիկոս. որք են եպիսկոպոսն

Բջնոյ, Հաղբատայն, Եւստաթէոս՝ որ 'ի Սիւնիս, և Թադէոսի վանաց՝ որ յԱրտազ։ Գտանի և յիշատակութիւն ինչ 'ի թուղթն Մխիթարայ կաթողիկոսի 'ի սկիզբն չորեքտասաներորդ դարուն՝ զոր գրեաց 'ի Հռոմ [1]. "Ժողովքն Հրամանաւ արքայի արքեպիսկոպոսունք, եպիսկոպոսունք... Իւրաքանչիւրոք 'ի նոցանէ տայ զանուն միոյ ուրուք յեպիսկոպոսաց կամ 'ի վարդապետաց.. և զանուանսն գրով տան Թագաւորին ընդ կնքով իւրեանց. և եթէ բազումք իցեն վիճակեալքն, հրամայէ Թագաւորն զի միաբանեսցին 'ի վերայ երկուց կամ երից։ Եւ ապա Թագաւորն հանդերձ ժողովով իւրով ընտրէ յերից 'ի նոցանէ զմին զոր կամի. և յաւուր օծութեան նորա՝ Թագաւորն ինքնին ծունր կրկնեալ դնէ զմատանին 'ի ձեռս նորա համբուրելով զաջ նորին, և դառնայ 'ի տեղի իւր. և յայնժամ առնուն զնա առաջնորդք, և օծանեն ըստ օրինի կաթողիկոսութեն ,,։

Իսկ ձեռնադրութիւն 'ի սկզբան նորա լինէր 'ի Կեսարիա. զի թէպէտ յետ գալոյ Թադէոսի առաքելոյն յաշխարհ մեր և քարոզելոյ զաւետարանն՝ մնացին աստ և նորա քրիստոնեայք 'ի ծածուկ, որպէս գրեցաք 'ի գլուխն Կրօնի, բայց սակս սաստիկ հալածանաց կռապաշտից ոչ մնաց 'ի հայաստան յաջորդութիւն նորա, և ոչ աթոռ եպիսկոպոսական. վասն որոյ կամելով զուրբն Գրիգոր 'ի յաջորդութէ Թադէոսի կացուցանել հայրապետ և հովիւ 'ի Հայաստան որպէս հարազատ ծնունդ երկանց առաքելական քարոզութեն նորա, 'ի Կեսարիա առաքեցին 'ի ձեռնադրութի. զի ծանեան թէ սուրբն Թադէոս նաև 'ի Կեսարիա էր քարոզեալ, և նորա եդեալ զիւր աթոռն. ուր անխախտ մնալով յաջորդութեամբն՝ եպիսկոպոսունք Կեսարիոյ էին յաջորդք Թադէոսի առաքելոյն, որոց առաջինն կոչէր Թէոփիլոս։ Զայս յայտ առնէ Վարդան յասելն. "'Ի յերեսուն ամի լուսաւորութեան իւրոյ սուրբն Գրիգոր զԱրիստակէս առաքէ 'ի Կեսարիա ձեռնադրել. վասն զառաջին ձեռնադրութիւն նորա առնելոյ Թադէի առաքելոյն, և արկանելոյն հիմունս եկեղեցւոյն. և անուն եպիսկոպոսապետին զոր արար նորա սուրբ առաքեալն Թադէ, Թէոփիլոս կոչիւր ,, [2]։ Այսպէս գրէ և Մեսրոպ Ժ̃Ա. "Բայց

1 Այս Թուղթ լատիներէն գտանի 'ի մեծի հաւաքման ժողովոց տպագրեալ 'ի Մանսեայ, 'ի հատոր ԻԸ. 'ի թղթ. 1258։

2 Զայն գրէ և Վարդան 'ի գովեստ Լուսաւորչին. "'Ի Կեսարիա երթեալ 'ի մայրաքաղաքն կապադովկացւոց՝ և մայրն հիմնարկութեան հաւատոյ 'ի հայաստանեայս 'ի Թադէէ առաքելոյ, ուր արար զառաջին ձեռնադրու-

տասացից եթէ յաղագս որոց պատճառաց առնուլին ձեռ- նադրութիւն 'ի Կեսարիա ... մնալ 'ի նա առաքելոյն Թա- դէոսի՝ անդ լուսաւորեաց և փոխա. և ձեռնադրեաց զամն յիւրոց աշակերտաց եպիսկոպոս Կեսարու, որում անուն էր Թէոփիլոս. և ինքն գնացեալ 'ի Հայս. այնր աղագաւ առնուլին Հայք ձեռնադրութիւն 'ի Կեսարիա »:

Ի դէպ գայ այսմ և բան Ղևոնդի հայրապետին առ Զե- նոբայ 'ի պատասխանիին իւր առ սուրբն Գրիգոր, 'ի պատ- ճէնն երկրորդ. « Ոչ մնաց արար Աստուած զազգս հիւ- սիսականս. որք զրկեալք բազում ժամանակս 'ի ճշմար- տութենէն, զմոլորեցուցիչս իւրեանց աստուած համարէին ... որ թէպէտ 'ի վաղ իսկ ծագեաց արեգական արդարու- թեան ընդ արարածս, սակայն աղջքեղ քո 'ի տունջեան իբրև 'ի գիշերի զորմն խարխափեալք: Ուստի և այժմ դեռ հայեցաւ 'ի դուստ Աստուած ... քև ծագեաց արե- գակն արդարութեան Քրիստոս 'ի դուստ, և դու ընտրեցար 'ի տեղի ընտրելոց սրբոց առաքելոցն Բարթողիմէոսի և Թադէոսի »:

Նաև այսպէս սուրբն Գրիգոր իրաւամբ կոչի յաջորդ Թա- դէոսի, և աթոռ նորին՝ աթոռ սրբոյն Թադէոսի. որպէս և նշանագրէ Խորենացին Բ. 91. « Յեօթն և 'ի տասնե- րորդի ամի թագաւորութեան Տրդատայ գայք նստեալ յա- թոռ սրբոյ առաքելոյն Թադէոսի զնախահայրն մեր Գրիգո- րիոս »: Սոյնպէս և Բուզանդ. « Յիրաւի արժանի եղև սա (մեծն Ներսէս) աթոռոյն հայրապետաց և տեղւոյ հար- ցըն իւրոց առաջնոց զաթոռն Թադէոսի առաքելոյ, և ժառանգութեան հօրն մարմնապէս 'ի նոյն հոգևորին Գրիգո- րի »: Դ. 3: Զնոյն երկրորդէ և Մեսրոպ 'ի Թ. գլ.: Ի ձեռ- նադրութենէ սրբոյն Գրիգորի 'ի Կեսարիա առաջին հայ- րապետին հայաստանեայց՝ թուէր զառաջինն թէ օրէնք իմն հաստատուն լինելոց էր և 'ի յաջորդս նորա 'ի Կեսա- րիոյ առնուլ զձեռնադրութիւն իւրեանց, զոր և յուշ առ- նելով Ղևոնդիոս հայրապետ 'ի թուղթն իւր որ առ Տրր- դատ՝ 'ի նոյն յորդորէ տևել. « Իւ հաստատեալ կացցէ վկայութիւն 'ի մէջ երկոցունց կողմանցս. զի պարգևարաշ- խութիւն նորոգեալ քահանայապետութեանդ ձերոյ նահանգ

Միւն և ընկերակցութիւն եկեղեցւոյ երթեալ առնոյր զառաքելական պատ- ուին .... Քանզի որ առ չերմնք նո- րա յղացաւ և եղև սկիզբն գոյու- թեան բան Աստուծոյ յառաջին աթոռ

նորա, առ զայն Թէոփիլոս՝ եպիսկո- պոս ձեռնադրեաց սբն Թադէոս ... պայծառացեալ գահնոյ 'ի նորին ա- ռաքելական անդաստանն, ինքեան իսկ և նորա վատաւորք հերկեալ »:

գի առ 'ի մէնջ՝ կայցէ անշարժ յեկեղեցւոջս Կեսարու. ուստի և հանդերձեցաւ ձեզ պատրաստութն շնորհուն ձեռնադրութեդ, որով անապականն պարգևք բաշխին ձեզ„. Ագաթանգեղոս յկթ։ Եւ արդարև 'ի նոյն հանապազորդեցին մերքն միշտ մինչև 'ի մեծն Ներսէս՝ 'ի Կեսարիա առաքելով առնուլ զձեռնադրութն. որպէս յայտ առնեն բանք Խորենացւոյն Գ. 39. և Յոհաննու կաթողիկոսին 'ի գրեան զՇահակայ. բայց յետ մեծին Ներսէսի ոչ ևս առաքեցին. զորոյ զպատճառն տեսցես ստորև ։

## Գ. Իշխանութիւն կաթողիկոսին ։

Կիրակոս 'ի սկիզբն պատմութե̃ն իւրոյ խօսելով զգնալոյ սրբոյն Գրիգորի 'ի Հռոմ, պատճառ գնալոյ նորա ասէ լինել սակս դնելոյ "ուխտ և դաշինս 'ի մէջ իւրեանց„։ Արդ դաշն եկեղեցական ոչ է որպէս քաղաքականն՝ օգնել իրերաց կամ դրամով և կամ զօրօք. ապա էր դաշն սակս եկեղեցական ինչ իշխանութե̃՝ թէ յորում կարգի լինելոց էր. և յիրաւի իսկ. զի Թողուլն սրբոյն Գրիգորի զհօտ իւր նորահաւատ յայնպիսի հարկաւոր ժամանակի և յանձն առնուլ զերկար ճանապարհորդուն և գնալ ընդ Տրդատայ 'ի Հռոմ, ոչ էր միայն ուխտի կամ տեսութեան աղագաւ, այլ վասն այլոյ իրիք մեծի հարկաւորութեան եկեղեցական իրաց անկաւոր, թէ վասն զանազան դիպուածոց դիպելոց 'ի նորահաւատ ժողովուրդ իւր, և թէ վասն իւրոյ կառավարութեան և իշխանութեան ։ Ինքն իսկ Կիրակոս՝ որ 'ի վերոյ յիշեաց զուխտ և զդաշն դնել, ստորև յայտ առնէ զիշխանութի̃ն զոր էառ. "Եւ ընկալեալ մեծաւ պատուով Կոստանդիանոս և մեծ հայրապետն (սուրբն Սեղբեստրոս) աշխարհամուտ դրան՝ մեծարանս արարեալ սրբոյն Գրիգորի որպէս խոստովանողի և առաքելաշնորհ վկային Քրիստոսի, տան նմա Աթոռ Հայրապետութեան„։ Յառաջ քան զԿիրակոս զնոյն վկայէ և կաթողիկոսն Գրիգոր Տղայ յերկոտասաներորդ դարուն, յասելն 'ի Թղթի իւրում որ առ արևելեան վարդապետս վասն Լուսաւորչի 'ի Հռոմ գնացեալ՝ "առնուլ ձեռնադրութի̃'ի սրբոյն Սեղբեստրոսէ„։ Այս ձեռնադրութի̃ յայտ է թէ ոչ էր վասն ձեռնադրելոյ զսուրբն Գրիգոր քահանայ կամ եպիսկոպոս, զի զերկոսին ևս առեալ էր 'ի Կեսարիա. ապա յայտ է թէ պարտ է և

մնալ վասն պատրիարգունէ։ Զնոյն հաստատէ և Վանա-
կան վարդապետ յասելն 'ի Ճառս հարցմանց թէ զԼուսա-
ւորիչ 'ի Հռոմ "Պապ կարգեցին,,. որ ցուցանէ՝ զոր են
'ի վեր քան զեպիսկոպոսունս. այն է՝ Պատրիարգ[1]։ Եւ 'ի
Մեկնութեան Շարականին ասէ նոյն ինքն Վանական. "Լուսա-
ւորիչն Գրիգոր 'ի Հռովմայ գահիցն պատուեցաւ,,։ Յայտ
է թէ ոչ իմանայ զարտաքին պատիւն զոր ետուն նմա,
այլ զպատրիարգականն։

Այլ յետ հնագոյն մատենագիրսն 'ի վեր ելեալ, և 'ի
նոսին գտանեմք զհաւաստիս յիշատակութեանս այսորիկ.
զի Ագաթանգեղոս զսուրբն Գրիգոր նախ քան զգնալ նորա
'ի Հռոմ՝ կոչէ Արքեպիսկոպոս. իսկ յետ դառնալոյ նորա
'ի Հռոմայ՝ կոչէ Կաթողիկոս. որ էր յայնմ ժամանակի
պատուանուն մեծաշուք 'ի վեր արկեալ առ հռոմայեցիս.
զոր տայ նոյն մատենագիր նաև նմին իսկ Սեղբեստրոսի, որ-
պէս եդաք 'ի վերոյ։ Այլ ըստ սմին մատենագրի հարկ
է ասել՝ թէ 'ի Հռոմայ ընկալաւ զայս անուն. և ընդ ա-
նուանն յայտ է թէ ընկալաւ նաև իշխանութիւն ինչ գե-
րագոյն՝ շնորհեալ 'ի Սեղբեստրոսէ։ Զի ուր 'ի Թուղթն
Դաշանց[2] ասէ նոյն ինքն սուրբն Սեղբեստրոս. "Զեռնա-
դրեցաք Կաթողիկոս Հայոց զսուրբն Գրիգոր... արարաք զսա
Պատրիարգ Հայոց մեծաց,, , յայտ է ապա թէ ինքն մեծքա-
հանայապետն շնորհեալ էր նմա զիշխանութիւն պատրիար-
գական։ Եւ արդարև թէ և ոչ գտանիցաք ինչ յիշատա-
կութիւն, միայն երթալն սրբոյն Գրիգորի 'ի Հռոմ՝ յայտ
առնէ թէ ոչ դառնայր անտի առանց շնորհս ինչ ընդու-
նելոյ. զի թէ և գուշնաքեայ ոք իցէ, չելանէ անտի ձեռն-
ունայն, ապա քանի՞ առաւել Լուսաւորիչն մեր՝ կենդա-
նի վկայն Քրիստոսի. որ զաշխարհ և զազգ մի ողջոյն մի-
անգամայն արդեամբք անտանելի չարչարանաց իւրոց ա-
րար ժողովուրդ Քրիստոսի։

Այլ ո՛ւր թողցուք, զի և առ Յոհան գտանեմք զհաւաս-
տիս իրացս այսոցիկ. զի 'ի գաւազանագիրս եպիսկոպոսա-
բանաց կայսերութեան արձանագրեալ յաւուրս Զ. Լևոնի

1 Որպէս և 'ի գիրս Հարցմանց վա-
րուց պատրիարգն Աղեքսանդրիոյ կո-
չի Պապ, զի երևելի էր քան զպատ-
րիարգունս Անտիոքայ և Երուսա-
ղեմի։

2 Ի Թուղթն Դաշանց թէ և երևին
տարադէպ յաւելուածք մուծեալք 'ի
յետնոց, սակայն որ ինչ յիշատակին
յայտնեցանէ առ յետագայս՝ զդէպս
առ քահանայապետս Հռոմայ և առ
կայսերս իւրև վկայութիւն և հզօր ա-
պացոյցս անքակ բարեկամութեան մե-
րոցն ընդ հռոմայեցիս, զկնի ան-
հարազատք համարեցին. զորոց տես
'ի գլուխն Կաթողիկոսութեան. Հատոր
Բ. երես 204։

տալոյ զայն պատիւ։ Եւ զի՞ արդեօք մարթ է ասել պա-տուօղ 'ի նախնի ժամանակս. ոչ զպատրիարգս Յունաց, և ոչ զծագումն նոյն նոցա, յորս ոչ գտանեմք նոյն յիշատա-կութիւն այսպիսի. ոչ գտանեմք ուրեք բողոք նոյն Յունաց ընդդէմ այսմ իշխանութեան պատրիարգին Հայոց. զորմէ բողոքէին արդարև, և բազում անգամ 'ի դէմս ածէին մերոց 'ի մեծամեծ հակառակութիւնս և 'ի վէճս իւրեանց, եթէ չէին խրատեալ լեալ հաստատութեան այնմ 'ի Հռոմայ. որպէս և բազում անգամ բողոք բարձին առ ինքնա-գլխաւն Կիպրոսի. ըստ որում չէր առեալ յումեքէ զայն իշխանութիւն։ Այսմ ամենայնի քաջ խելամուտ եղեալ՝ յայտնի 'ի վեր ելանէ հաստատութիւն նախադրելոցս, թէ պատուօղն զոր յիշատակէ այս գաւառագլխագիրք՝ եղև նոյն ինքն սուրբն Սեղբեստրոս, որ ունէր իշխանութիւն տալոյ զայն պատիւ, որ անձամբ ականատես եղև սրբոյն Գրի-գորի, և որ արդարև ոչ արձակէր զնա յուրմէ առանց նոյն պատուի շնորհելոյ նմա 'ի գաւառին 'ի Հռոմայ. մա-նաւանդ եթէ յիշեսցուք զմեծ ուխտն որ կայր յայնժամ 'ի մէջ Կոստանդիանոսի և Տրդատայ, և 'ի մէջ Սեղբես-տրոսի և Լուսաւորչի։

Յետ այսպիսի իշխանութեան գտանելոյ սրբոյն Գրիգորի 'ի Հայս, զձեռնադրութիւն հանապազորդեցին մերքն առ-նուլ 'ի Կեսարիոյ, որպէս և խնդրեալ էր Ղեւոնդիոս հայրապետ, զորոյ զբանս եդաք 'ի վերոյ. և ոչ իսկ 'ի կիր առին զպատուանունն Կաթողիկոս, որպէս երևի. յոյր սակս գուցէ ոչ յիշատակի առ Խորենացւոյն այս անուն։ Զի սուրբն Գրիգոր և որդիք նորա քանզի էին այրք աստուա-ծարեալք՝ առհասարակ փոյթ կալեալ սրբութեան և խոնար-հութեան եւեթ, ոչինչ փոյթ էր նոցա զպատուոյ անուանց և զմեծութեանց[1], այլ միայն զհոգևոր իշխանութիւն իւ-րեանց 'ի գործ ածել ըստ տեղւոյն, առ 'ի հովուել զնոր ժողովուրդն։ Այլ իբրև հասին ժամանակք մեծին Ներ-սէսի, յորում ժամանակի քանզի ամենայն ինչ յաւուրս նորա 'ի կարգի եդան ըստ քաղաքականին և եկեղեցակա-նին[2], զուրկ միայն արդարև վիճակ քահանայապետութեան Հայաստանեայց յուրմէ կարգէ ըստ տալոյ նմա իշխա-

1 Որպէս 'ի դէպ իսկ գրէ Խորենա-ցին Բ. 80. «Մնացորդքն և անանձնա-կանքն միայն ակնկալ, որք ոչ զպա-տիւն յինքեանս ձգէին, այլ պատուին զհետ նոցա ընթացաւ»։

2 «Եւ զինքն Թագաւորութեանն իսկ (առէ Բուզանդ վասն մեծին Ներսէսի) յօրինէր ամենայնիւ կար-նիւք. որպէս և ուսեալ էր իւր առ հօրն Թագաւորօք։ Եւ առաւել

Իսկ զԱղուանս միշտ ընդ իշխանութեամբ Հայոց կաթողիկոսին լեալ տեսանեմք մինչեւ ցՅովհաննէս կաթողիկոս, որ յեւթներորդ դարուն է 'ի սկիզբն տասներորդին. զի 'ի խօսելն զԱղուանից՝ ասէ. "Հալածեալ շրջեցայ քաղաքէ 'ի քաղաք 'ի կողմանս արեւելեայ Աղուանից առ մեծ իշխանն Սահակ երթեալ, եւ առ Թագաւորն Նոցունց Ատրըներսեհ, որ ըստ արեւելից հիւսոյ Կովկասու. զի եւ նոքա 'ի ժողովրդեանն մերում եւ 'ի խաշն արօտէ մերոյ էին": Բայց յետ այնորիկ եւ սոքա եւս յետս կացին 'ի հնազանդութենէ ընդ ժամանակս ինչ. զորս Անանիա կաթողիկոս 'ի մէջն անդ տասներորդ դարուն դարձեալ էարկ ընդ իշխանութեամբ ըստ գրելոյն Վարդանայ. "Տէր Անանիա մակացի... բաղում աշխատութեամբ հնազանդեաց զՍիւնիս, որ զԱղուանիւք թեւակոխէին... այլ եւ զԱղուանս ածեալ 'ի հաւան չձեռնադրել իւրեանց կաթողիկոս առանց աթոռոյն սրբոյն Գրիգորի": Սմին իրի եւ յաւուրս Շնորհալւոյն տեսանեմք 'ի պատմութեան միաբանական թղթոց զԱղուանս եւս դասեալ ընդ ժողովուրդս կաթողիկոսին Հայոց. "Ինքն (Շնորհալին) ժողովս հրամանս հանէր յամենայն հայաստանեայս, սկսեալ յաթոռոյն Աղուանից մինչեւ 'ի կողմանս սուրիացւոց, եւ մինչեւ ցարեւմտային կողմանս. զի ամենքեան 'ի միասին եկեալ եպիսկոպոսք եւ վարդապետք", եւայլն: Այս ինչ յայտնի է, զի նաեւ Յոյնք զՎիրս եւ զԱղուանս ճանաչէին ընդ իշխանութ. կաթողիկոսին Հայոց. քանզի Նիկողայոս յոյն պատրիարք Կոստանդնուպօլսոյ՝ որ 'ի սկիզբն տասներորդ դարու, յայտնի գրէ առ Յովհաննէս կաթողիկոսի. "Յաղագս Հայոց, Վրաց եւ Աղուանից՝ միահամուռ քոյդ հաւատացեալ հօտիցդ": Եւ սորին. "Քոյոյդ հօտիդ Հայոց եւ Վրաց եւ Աղուանից": Զոր ոչ գրէր արդեօք եթէ չէր այսպէս լեալ 'ի սկզբանէ: Կիրակոս յիշատակէ զասորի եպիսկոպոս ոք 'ի կաթողիկոսէն Հայոց առեալ զձեռնադրութիւն. զի ասէ. "Առ սա (առ Գ. Ներսէս շինօղ) եկեալ Ասորւոց խնդրէին 'ի նմանէ եպիսկոպոս... եւ ապա ձեռնադրեցին (Հայք) զԱբդիշոյ եպիսկոպոսն": Իսկ Թովմա Մեծոփեցի 'ի պատմելն զձեռնադրութիւն Կիրակոսի կաթողիկոսին, այնպէս ցուցանէ վասն Ասորւոց՝ որպէս թէ յառաջն միշտ 'ի կաթողիկոսէն Հայոց առնուին, ասա "յեգիպտոսէ առին զիշխանութիւն կաթողիկոսութեան 'ի խաչի ազգէն":

## Ե. Զգեստ կաթողիկոսին.

### ՔՕՂ

Ի գիրս մեր գտանին յիշատակութիւնք ինչ, որք յայտ առնեն յառաջ ժամանակաւ ՚ի կիր արկեալ ՚ի կաթողիկոսաց զքօղն, և ապա բարձեալ. զի Կիրակոս ՚ի պատմելն զխռովութիւն վասն Դէոսկորոսի կաթողիկոսին որ նստաւ ՚ի կենդանութեան Պետրոսի կաթողիկոսին ՚ի սկիզբն մետասաներորդ դարուն՝ ասէ. «Ընթացեալ յանդգնութեան ՚ի վերայ Դէոսկորոսի՝ պատառեցին զքօղն երեսաց նորա յաւուրս յայտնութեան տեառն մինչդեռ օրհնէին զջուրն. քանզի քօղով վարէին յայնժամ ժամանակի կաթողիկոսք»: Բայց ոչ յիշէ թէ յորում ժամանակի էր սկսեալ. արդեօք ՚ի սկզբանէ ՚ի Լուսաւորչէն մինչև ցԴէոսկորոս, թէ զկնի Լուսաւորչին յայլոց սկսեալ, և ապա վասն այնորիկ բարձեալ ՚ի յետագայից. զի դժուարին երևի ազդելին խափանել զայն ինչ՝ որ ՚ի Լուսաւորչէ էր սկսեալ: Միայն ՚ի Յայսմաւուրն ՚ի յուլիսի 30. գտանեմք յիշատակութիւն ինչ այսպիսի, ուր պատմի վասն Լուսաւորչին՝ թէ յորժամ Դաւիթ ՚ի սկիզբն երկոտասաներորդ դարուն նստաւ կաթողիկոս հակառակաթոռ յԱղթամար, պատճառս բերէր առ իւր ունել զպէսպէս նշխարս, ընդ որս յիշէ և քօղ և գաւազան և մաշկեղէն գօտի սրբոյն Գրիգորի. բայց Տէր Խորայէլ ՚ի պատմութեան գիւտի նշխարաց սրբոյ Լուսաւորչին՝ զայն քօղ ցուցանէ ՚ի կարգս եկեղեցական սպասուց լեալ. զի յիշէ գտեալ առ մարմնով նորա սկիհ, մաղզմայ, և քօղ ոսկեհեւ ծածկոյթ: Արդ քանզի Լուսաւորիչ ոչ կրէր ՚ի գլուխ իւր ոսկեթել ինչ, յայտ է թէ այն էր քօղ սկիհ. կամ թէ կրկին քօղք գտան, զգլխոյն այլ, և սկիհին այլ. թող զի ՚ի յիշելն Յովհաննու կաթողիկոսի և Թովմայի արծրունւոյ զիրս սրբոյ հայրապետին պահեալս ՚ի Ձորոյ վանս, ուրանօր կաթողիկոս նստաւ Դաւիթ, ոչինչ յիշատակեն զքօղոյն: Տես ՚ի մեծ Հայս 186: Եւ թէպէտ Յոյնք ՚ի կիր առնուին, բայց ոչ զամենայն ինչ զյունականացն առնին մերքն. այլ ինչ ինչ և զհռովմէականացն. որպէս յայտ առնէ անխմոր պատարագելն մերոց անդստին ՚ի ժամանակաց հետէ Լուսաւորչին, որ հռոմայեցւոցն էր:

Յետ գիտելոյ զայս ամենայն բերցուք և զոր առ այլս գտանեմք։ Վարդան այնչափ մեծապատիւ համարի գլխոյ կաթողիկոսի զքօղն, մինչև վասն անուն բազում ուրեք փոխանակ կաթողիկոսութեան 'ի կիր առնու. զոր օրինակ. "Իսրայէլ կեցեալ յաթոռն ամս տասն վախճանի. և առնու զքօղն տուրքն Սահակ որ 'ի Ձորոփոր յարքունեացն,,. յեօթներորդ դարու։ Եւ յետ պատմելոյ զմահ գետադարձ Պետրոսի՝ ասէ. "Եւ առնու զքօղն Խաչիկ,,։ Եւ թէ. "Տէր Բարսեղ ընկեց 'ի նմին ժամու զկաթողիկոսն Թէոդորոս յաթոռոյն, և առ 'ի նմանէ զքօղն և զգաւազանն և զսուրբ նշանն տէր Պետրոսի,,. որ էր խաչն գետադարձ Պետրոսի։ Այս դիպուած նովին բանիւք յիշատակի և առ Մատթէոսի 'ի ՇԿԶ. իսկ ՇԼԵ. և վասն Գրիգորի վկայասիրի գրէ. "Յայնժամ տէր Գրիգորիս յուղարկեաց զքօղն և զգաւազանն և զսուրբ նշանն տէր Պետրոսի առ տէր Սարգիս,,։

ԵՄԻՓՈՐՈՆ

'Ի դատաստանագիրս Մխիթարայ Գօշի գրեալ կայ. "Ահա առաջարք զեկեղեցւոյ առաջին դասն զհայրապետս (իմա զպատրիարգս.) որք ունին զառաքելական զգեստ և զեմափորոն հինգ կրկին,,։ Սոյն թուով եմիփորոնաց յիշատակի և առ Ստեփաննոսի Օրպէլեան կէ. զգեստաւորիլն Դ. Կոստանդեան կաթողիկոսի, որ յետ երեքտասաներորդ դարու 'ի Սիս. "Եւ զգեցեալ զզգեստն հայրապետական զառաջունն, զլանջն և զեմիփորոնն հինգ կրկին, որ պատրիարգացն է, և զթագն պատուական եդեալ 'ի գլուխն, և զվառբակսն մեծագին ածեալ 'ի ձեռն. և առեալ 'ի ձեռն զաջ սրբոյն Գրիգորի,,։ Վարդան պատմէ վասն Դ. Գրիգոր կաթողիկոսին Տղայ անուանելոյ՝ մերձ յետ երկոտասաներորդ դարուն, գրեալ գիր առ քահանայապետն Հռոմայ Լուկիոս, և 'ի նմանէ ընկալեալ պատասխանի, յորում ասէ Լուկիոս. "Եւ վասն զի երկայն ճանապարհ է 'ի մէջ իմ և եղբօրն իմոյ Հայոց պատրիարգին, առաքեցի նմա զիմ Վակասն, և զՊատն, և զԿօշիկն, զի զայն զգեցեալ պատարագեսցէ Մասնեայ հանդերձ,,։ Այլ 'ի թուղթն թարգմանեալ 'ի Լամբրոնացւոյն այսպէս գտանեմք. "Ոմոփորոն քեզ, եղբայր կաթողիկոս, Պալլիոն, որ է առաջին անձնայն պատուոյ [1], և խոյր զիմոյ գլխոյս ա-

[1] Պալլիում, առ լատինս Բօլլիում ասացեալ՝ է եմիփորոն փոքրիկ առ-

եղև 'ի քրիստոնէից 'ի ճաճանչ նշուլիցն գուշակեալ . և տարեալ եղև 'ի սուրբ Գրիգորոյ լեառն , ուր կայ գերեզմանն նորա . և կայ անդէն՝ առնելով պէսպէս սքանչելիս ,, : Այնչափ սովորական էր այս , զի նաև Մելիք շահն որդի Ալփասլանայ , քանզի սիրող էր քրիստոնէից՝ թոյլ ետ կաթողիկոսին այնպէս մտանել առաջի իւր . զոր այլք 'ի հագարացւոց ոչ տային թոյլ . որպէս վկայէ Վարդան ասելով զնմանէ . "Այր ողորմած և բարեմիտ առաւել ազգիս մեր . մինչ զի զպատրիարքն զԲարսեղ հերոյեալ խաչիւ առաջի իւր մուծանէր , և պատուէր պարգևօք և տուղբայիւ գրոյ ,, : Այսպիսի իմն արտօնութիւն և նախ քան զԲարսեղ տուեալ պատմի 'ի նոյն պատմագրէ վասն Տ̅ր̅ . Զաքարիա կաթողիկոսին 'ի մէջն իններորդ դարուն . "Յաւուրս յայսոսիկ տէր Զաքարիա երթայ տեսանել զՅիսուս որդի Շեխայ . և յոյժ մեծարի 'ի նմանէ . տուեալ նմա բազում պարգևս և դրօշ՝ բառնալ խաչ 'ի վերայ նորա ,, :

## ՊԱՏՈՒԵԼ ԶԱԹՈՌՆ

Չէր օրէն այլում ումեք նստել յաթոռ կաթողիկոսին , որպէս յայտ առնէ այս դիպուած պատմեալ 'ի Կիրակոսէ յետ առման Անւոյ յԱլփասլանայ , և թագաւորացն Անւոյ և Կարուց առ Յոյնս երթալոյ . "Իսկ զկաթողիկոսն Պետրոս (գետադարձ) մեծապատիւ պատուեաց կայսրն , և ետ նմա աթոռ ոսկի . և իբրև յարեաւ յաթոռոյն՝ և կամէր արտաքս ելանել , եպիսկոպոս մի անուն Եղիսէ՝ առ զայլևան (որ է լատիներէն սէլլէում . այս ինքն աթոռ) ոսկի յորոյ վերայ նստաւ կաթողիկոսն . իսկ սպասաւորք արքունի ոչ տային նմա թոյլ առնուլ (զաթոռն) : Եւ եհարց կայսրն զեպիսկոպոսն եթէ ընդէր զայդ առնէր , և ասէ ցնա եպիսկոպոսն . օրէն է մեր՝ զի յաթոռն ուր նստի կաթողիկոս՝ ոչ այլ ումեք (օրէն է) նստիլ բաց 'ի կաթողիկոսէն : Եւ զարմացաւ կայսրն ընդ պատիւն զոր ետ եպիսկոպոսն կաթողիկոսին . և հրամայեաց սպասաւորացն թոյլ տալ զի առցէ եպիսկոպոսն . և ասէ ցնա . հինգ հազար դահեկան է այդ . տար պահեա զայդ 'ի պատիւ կաթողիկոսին քո ,, : Զայս և Մատթէոս պատմէ 'ի ՃԷ . այլովք հանգամանօք :

կաթողիկոսի. «Բայց և ես որ զայս գրեցի՝ պատուեցայ պատուաւորաբար յառաջիկայնէն զգեստիւք ըստ օրինակի կարգիս. և ջերի պաշտուճաբար ոսկեզօծ զարդուք առաջի մատուցանելով իմն»:

Է. Վերստատութիւնք և նորք կաթողիկոսին:

Մեծն Սահակ յերևելին թուղթսն ևս գրեալս առ Թէոդոս կայսր, առ Ատտիկոս պատրիարգ և առ Ականդիոս զօրավար, զորս բերէ Խորենացին Գ. 57. միշտ կոչէ զինքն «Սահակ եպիսկոպոս Հայոց»: Սոյնպէս և Յովսէփ կաթողիկոս, 'ի ժողովական նամակին զոր գրեցին առ Պարսիկս՝ կոչէ զինքն առ Եղիշէի «Յովսէփ եպիսկոպոս»: Շնորհալին 'ի թուղթն որ վասն միաբանութե ընդ Յոյնս՝ գրէ. «Ներսէս նուաստ ծառայ Քրիստոսի, և ողորմութբ և կամօք նորին կաթողիկոս Հայոց»: Նոյնպէս 'ի թուղթն որ առ Սամոսատացին. «Ներսէս ծառայ Աստուծոյ և ողորմութբ նորին կաթողիկոս Հայոց»: Ի ժողովական թուղթն Գ. Գրիգորի կաթողիկոսի 'ի սկիզբն կոչէ զինքն «Գրիգորիոս նուաստ ծառայ Քրիստոսի, և ողորմութբ նորին կաթողիկոս Հայոց»: Իսկ յաւուրսն 'ի տապանագրութե «Գրիգորիոս ողորմութբն Աստուծոյ կաթողիկոս Հայոց մեծաց. և յաջորդ մեծի աթոռոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին»: Յոտար ազգաց Գուլիէլմոս տիւրացի [1] զայսպիսի անուանս տայ Գ. Գրիգորի պահլաւունւոյ. «Մեծ քահանայապետ Հայոց. նա՝ ամենայն եպիսկոպոսաց կաթողիկոս, Մարաց և Պարսից և երկուց Հայոց (մեծի և փոքու) իշխան և վարդապետ դերապայծ, որ կաթողիկոս կոչի»:

Այլ քանզի զասանելին թուղթք և կոնդակք, զորս կաթողիկոսք առաքէին առ հայկազունս բնակեալս յարևմուտս, բերցուք աստանօր զպատուոյ անուանս զոր վարէին 'ի վերստատութիւնս իւրեանց. որով ծանիցես զզանազանութիւնս յաւելեալ հետզհետէ: Մեսրոպ 'ի թուղթն իւր գրեալ առ Լեհացիս 'ի պժԳ. 1364. 'ի սոսորագրութե անդ դնէ. «Մեսրոպայ շնորհօքն Աստուծոյ կաթողիկոս ամենայն հայաստանեայց»: Որպէս և Գ. Կոստանդին 'ի սկիզբն թղթոյն առ Լեհացիս. «Շնորհօքն

[1] Գիրք ԺԵ. պատմութեան պատերազմի. գլուխ 18:

Քրիստոսի կաթողիկոս ընդհանուր ամենայն հայաստա-
նեաց „: Իսկ յաւարտն այսպէս. “Կոստանդին շնորհօքն
Աստուծոյ կաթողիկոս ամենայն Հայոց „: Թէոդորոս Բ.
'ի թուղթն գրեալ առ լեհաստան 'ի թուին պլբ. 1383.
յապրիլի 2. յաւելու կոչել “Թէոդորոս ծառայ ծա-
ռայից Քրիստոսի Յիսուսի Աստուծոյ տեառն մերոյ.
շնորհօք և ողորմութեամբ նորին կաթողիկոս ընդհանուր ա-
մենայն հայաստանեաց „: Իսկ 'ի թուղթն գրեալ 'ի 1390.
կոչէ զինքն “Եպիսկոպոսապետ մեծաց Հայոց, և պատ-
րիարգ ամենայն արևելից „: Յակոբ Գ. որ նստաւ 'ի
1409. սոյնպէս կոչէ զինքն “Եպիսկոպոսապետ Հայոց
մեծաց „: Կոստանդին հինգերորդ, որ նստաւ 'ի 1430.
յաւելու. “Կոստանդին ծառայ ծառայից տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի, ողորմութեամբ Աստուծոյ կաթողիկոս
Վաղարշապատու „:

Իսկ յեօթնեւտասներորդ դարէ և այսր տեսանել եւս
յաճախեալ տեսցես զկնիքնագիրս և զանուանս պա-
տուոյ. զի Փիլիպպոս 'ի թուղթն գրեալ 'ի Կոստանդնու-
պօլսոյ առ լեհաստան 'ի ՌՃԲ. 1653. գրէ. “Յիսուսի
Քրիստոսի ծառայ Փիլիպպոս կաթողիկոս ամենայն Հայոց
և պատրիարգ Վաղարշապատու, լուսաւորչական և քրիստո-
սամատոյց վեհափառ և հրեշտակաբար սրբոյ աթոռոյ
Էջմիածնի „: Յակոբ Դ. 'ի թուղթն գրեալ ՌՃԻ, 1671.
յօգոստոսի 28. 'ի Կոստանդնուպօլսոյ առ հայկազունս
լեհաստանեաւ. “Յիսուսի Քրիստոսի ծառայ Յակոբ կա-
թողիկոս կաթողիկէ եկեղեցւոյ հայաստանեայց. վեհ և
վերադիտող ամենայն հայկազեան ազգի, և պատրիարգ
Վաղարշապատ քաղաքի առաքելական աթոռոյ 'ի տե-
ղւոջ իջման բանին Աստուծոյ. տեղապահ և յաջորդ, ա-
թոռակալ և փոխանորդ մեծահռչակ տեառն մերոյ և
հօրն հասարակաց սրբոյն Գրիգորի լուսաւորչին „: Կա-
րապետ 'ի գրեալն իւր 'ի ՌՃՀԸ 1729. 'ի մայիսի 4. գրէ.
“Յիսուսի Քրիստոսի ծառայ տէր Կարապետ կաթողիկոս
ամենայն Հայոց և պատրիարգ Վաղարշապատու, լուսա-
կառոյց և տիրանիշ սրբոյ և մեծի գերազարդ աթո-
ռոյս Էջմիածնի „: Յայլում դնէ. “Լուսակառոյց և տի-
րանիշ մեծի սրբոյ գերակայ և գերահռչակ աթոռոյս
Էջմիածնի „: Սիմէոն 'ի գրեալն 'ի 1764. յաւելու.
“Յիսուսի Քրիստոսի ծառայ տէր Սիմէոն կաթողիկոս ա-
մենայն Հայոց, և ծայրագոյն պատրիարգ աստուածայ-
նոյ և առաքելականի եկեղեցւոյս Քրիստոսի. Նաև տէր-

զերակամնի մեծի աթոռոյս սրբոյ Էջմիածնիս,,։ Սոյնպէս և յայլ թուղթմն ։

Աշխատասիրութեամբ Եղիոյ Կաթողիկոսին ։ Շնորհալին 'ի թուղթն իւր զոր գրեաց առ եպիսկոպոսունս և վարդապետս Հայաստանեայց վասն սիրոյ և միաբանութեան ընդ Յոյնս՝ սկսանի. "Ողջոյն սիրոյ և խաղաղութեան հասցէ յաստուածընկալ սուրբ նշանէս Վանկոյ, և յառաքելական նշխարացս, և 'ի սուրբ Լուսաւորչին մերոյ յաջէս և յաթոռոյս և 'ի մէնջ,,։ Նոյնպէս և սկզբնաւորութիւն ընդհանրական թղթոյ նորա առ համօրէն հայազգիս ոչ շատ տարբերի աստի։ Եւ 'ի թուղթն գրեալ առ Սամոսատացիս. "Ողջոյն սիրոյ և օրհնութեան առաքեմք յաստուածընկալ սուրբ նշանէս, և 'ի սուրբ Լուսաւորչի աջէս և յաթոռոյս,,։ Եւ 'ի շրջաբերական թուղթն առ Կարս. "Ողջոյն սիրոյ և խաղաղութե հասցէ յաստուածընկալ սուրբ նշանացս և յառաքելական նշխարացս և 'ի սուրբ Լուսաւորչին մերոյ աջէս և յաթոռոյս և 'ի մէնջ,,։ Այլ շրջաբերական թուղթ Կոստանդեայ կաթողիկոսին զոր բերէ Կիրակոս, այլ ազգ ունի սկզբնաւորութի. "Ազդմամբ խնամոց ամենակալ Հոգւոյն սրբոյ, այս գիրս ձեռամբ իմոյ է Կոստանդեայ ծառային Քրիստոսի, և շնորհօք նորին կաթողիկոսի ամենայն Հայոց. զի գրեցի յուսով հոգւոյ իմոյ առ հայաստանեայցդ ընդհանուր լըման կողմանց արևելից, նախ առ սրբազան եպիսկոպոսունսդ, և ապա առ երկնագնամար վանորայդ,,։ Իսկ Արիստակէս Է. որ նստաւ 'ի 1462. առաւելութե իմն յիշէ մեծխարս և զարդոց դիրս, այսպէս սկսանելով. "Շնորհօք և ողորմութե կամօք և ընտրութե ամենակալին Աստուծոյ հօրն երկնաւորի արարչին ամենայն արարածոց, և կարողութե և զօրութե միածնի որդւոյ նորա Յիսուսի Քրիստոսի և հաճութե հոգւոյն սրբոյ Աստուծոյ Ճշմարտի, այս մեր գիր հոգևորական հրամանի և օրհնութեան ամենասուրբ երրորդութեն և միոյ աստուածութեն, նամանակ ողջունի սիրոյ և խաղաղութեան քրիստոսաւանդ և առաքելական՝ առաքեալ յընդհանուր ամենայն ծագս երկրի 'ի փառաւոր և յերջանիկ դիտապետէ, նոր և ընտրեալ հայրապետէ և գերիմաստ պատրիարգէ տէր Արիստակէս կաթողիկոսէ ամենայն Հայոց և Վաղարշապատու քաղաքի Հայոց մեծաց, տեղապահ և յաջորդ, աթոռակալ և փոխանորդ սրբոց առաքելոցն Թադէոսի և Բարդողիմեոսի և սրբոյն Գրիգորի մերոյ լուսաւորչին։ Զոր

ծառայ Յակոբ վարդապետ Ճիւղայեցի. Թվին ՌՃԵ ։ Կնիք Է. Յակոբայ շարջանակի ունի գրեալ "Շնորհիւ տեառն տէր Յակոբ կաթողիկոս ամենայն Հայոց ՌՃԵ"։ Ի մէջն դէմք, առ որով գրեալ "Յիսուս. Քրիստոս"։ Ըստ այսմ են գրեթէ և կնիք այլոց կաթողիկոսաց ըստ մեծի մասին, կամ սուղ ինչ տարբերեալ։

## Ը. Կաթողիկոսարան։

Սովորաբար այս անուն 'ի գործ ածի. զոր օրինակ և յայս բան Յովհաննու կաթողիկոսի, զոր ասէ վասն Կոստանդին կայսեր. "Այպա հեղաբար գնացեալ 'ի քաղաքն Դուին, իջեանեալ 'ի տան Կաթողիկոսարանին արարեալ"։ Բայց նոյնն կոչէ և Հայրապետարան, յասելն վասն Սիոնի կաթողիկոսի. "Սա 'ի տղայական հասակէ սնեալ և ուսեալ 'ի սրբում Հայրապետարանի"։ Որպէս և Հայրապետանոց, յասելն վասն Գագկայ Թագաւորին Արծրունեաց. "Վասն զի Հայրապետանոց տունն համօրէն գերդք և գերդաստանօք . . . ընդ ձեռամբ նուաճեալ էր նորայն"։

## Թ. Պաշտօնէայք կաթողիկոսարանին։

Մատթէոս 'ի Թիւն ՋԺԷ. պատմելով զհանդերձանս և զփառաւորութիւն տան կաթողիկոսարանին՝ ասէ. "Երկոտասան եպիսկոպոսս [1] և չորս վարդապետս 'ի տան հայրապետութեան անպակաս լինէր, և վաթսուն երէց 'ի կրօնաւորաց, և յաշխարհականաց հինգ հարիւր. և չէր նուաստ աթոռ հայրապետութեան քան զԹագաւորութեան Հայոց։ Նաև զարդարանք եկեղեցեացն և տան հայրապետութեան բազում և անհամար և հրաշալի մեծուցեալ, զոր առաջին Թագաւորացն տուեալ հաստատուն առաջին հայրապետացն, որ գայր հասանէր մինչև 'ի տէր Պետրոսն (գետադարձ). և առ նովաւ խափանեալ լուծաւ"։ ԱՆ յայնչափ բազմութէ երիցանց և վարդապետաց՝ զոմանս եթ գտանեմք 'ի գիրս մատենագրաց ան-

[1] Զեպիսկոպոսունս երկոտասան յիշէ և Բուզանդ. յասելն վասն Մեծին Ներսէսի. "Էին 'ի ներքոյ հայրապետին 'ի տան իւրում ընդ նորա ձեռամբ երկոտասան եպիսկոպոսք, աթոռակիցք իւր գործակիցք և խորհրդակիցք"։ Դ. 5։

դիս մերոյ յիշատակեալ յանուանէ կարգի պաշտաման իւրեանց, զորս յայսմ վայրի մի առ մի յիշատակեսցուք։

## ՍԵՆԵԿԱՊԵՏ

Յիշատակեալ առ Ասողկայ Գ. 2. "Ներսէսի կացեալ ամս տասն՝ յաջորդէ զաթոռն Անանիա 'ի ՆՁ. թուին. որ էր Սենեկապետ Ներսէսի"։ Յովհաննէս կաթողիկոս կոչէ Սենեկապան։

## ՓԱԿԱԿԱԼ

Յովհաննէս կաթողիկոս ասէ վասն Եզրի՝ թէ "էր փակակալ սրբոյն Գրիգորի"։ Ստեփաննոս Օրբելեան կայ. յիշէ զոմն Մխիթար աւագ երէց քաղաքին Անւոյ, և փակակալ սուրբ կաթողիկէին։

## ՎԱՆԱՑ ԵՐԷՑ

Յիշատակեալ առ Յովհաննու կաթողիկոսի. "Մովսէս զԿիւրիոն սրբոյ կաթողիկէի Վանաց երէց՝ ձեռնադրէ յարքեպիսկոպոսութիւն Վրաց"։ Որպէս և առ Ասողկայ Բ. 2։

## ԴՐԱՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ

Զայս զուգան համարիմ վասն կաթողիկոսարանին ասացեալ. քանզի Յովհաննէս կաթողիկոս 'ի յիշէն՝ "Դրան մերոյ եպիսկոպոս" ասէ։ Որպէս և 'ի ժողովն Ադանայ՝ որ 'ի 1316. յիշատակի Ստեփաննոս եպիսկոպոս Դրան կաթողիկոսարանին։

## ԴՊՐԱՊԵՏ

Յիշատակի առ Մատթէոսի ՁԻԷ. Գէորգ վարդապետ Դպրապետ Գրիգորիս Վահրամ կաթողիկոսին. որ և 'ի թաւ. բլուր նստաւ կաթողիկոս։

## ՀԻՒՐԱՏԵՍ

Յիշատակեալ առ Լաստիվերտցւոյն գլ. Ժ. "Եւ ունեալ խնդրակացն զոմն զերէց ոմն Կիւրակոս անուն, որ կաթողիկոսարանին Հիւրատեսն էր"։

## ԱՐՔԻԴԻԱԿՈՆ կամ ՍԱՐԿԱՒԱԳԱՊԵՏ

Բուզանդ Գ. 15. 'ի խօսելն զՄեծէն Ներսիսէ յիշա- տակէ ասելով. "Ցղեաց զիւր աթոռակիցն զԽադ, և զիւր Արտիտեանն եպիսկոպոսն' որում անուն Մուրիկ կոչէր ". Խորենացին հայկական Թարգմանութ. վարէ զնոյն անուն ասելով. "Զպատուական մարմինն նորա բարձեալ Սարկա- ւագապետին նորին ( Մեծին Սահակայ ) Երեմիայի՝ համ- դերձ աշակերտակցօք ... տարեալ համդուցին յիւրեանց գիւղն յԱշտիշատ ". Գ. 67. Պաշտօն և իշխանութի սար- կաւագապետութեան ոչ դուզնաքեայ լինէր . զի բաց 'ի սար- կաւագութեան էր և իբր աջակից արքեպիսկոպոսի , զորմէ խօսին հնագիրք [1]։

## ԴՐԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ

Ի ժողովն Սսոյ՝ եղև որ յամին 1307 . յիշատակի "Մար- տիրոս վարդապետ Դրան կաթողիկոսարանին ". Որ դուցէ նոյն էր զոր Եւրոպացիք 'ի 1179 ամաց հետոյ ունէին պա- տուիրեալ, և կոչէին Թէոլոգոլ։

### Ժ. Կալուածք կաթողիկոսարանին :

Ընդ դառնալն Տրդատայ 'ի քրիստոնէութիւն, բազում ագարակս և գիւղօրէս տուեալ 'ի Նմանէ 'ի կալուած կաթո- ղիկոսարանին յայս անուն պատամագիրք . յորս առաւել որոշագոյն յիշատակեալն է Արամօնս գիւղ, զորմէ գրէ Յովհաննէս կաթողիկոս . "Այս գիւղ սեպհական էր տան կաթողիկոսարանին նախ քան զչարչարանս սրբոյն Գրիգո- րի յարքայէն Տրդատայ, նմա իսկ հաստատեալ պայմա- նաւ ընծայեալ. որոյ և յետակար վճարմն պահի մինչև ցայսօր ժամանակի ". Բուզանդ զայսուիկ տեղիս յիշա- տակէ . "Զայնու ժամանակաւ տուրքն Ներսէս շինէր ընդ իւր ձեռական իշխանութիւն . զի հնգետասան գա- ւառ զայն ձեռական իշխանութեան ունէին իբրև սեպհական 'ի բնմէ, առանձին առաջնորդի նոցա էր կարգեալ : Եւ յայն

1 Ըստ Բուզանդայ Զ. 5 . յաւուրս Մեծին Ներսիսի յիշատակի եպիսկո- պոս մի փոխանակ 'ի տան նորին իբրև Թէոդորոս. որ անարժան իմն զօրով զանց արարեալ գնել 'ի կարգին :

գաւառս գլխաւոր գաւառք այս էին, Այրարատ, Դարան-աղի, Եկեղեաց, Տարօն, Բզնունիք, Ծոփք, և որ ընդ մէջ նոցա և որ շուրջ զնոքօք ,,. Դ. 14. Պարտ է զայսոսիկ իմանալ ոչ մեծին Ներսէսի ևեթ, այլ կաթողիկոսու-թեանն տևեալ. կամ ամենայն կաթողիկոսաց նախ յաջոր-դելոց. որպէս յայտ առնէ առելումն՝ Իշխանութիւն նորա. այսինքն հայրապետական իշխանութիւն. սոյնպէս և այն բան առանձին նոցա էր հովուել. այսինքն որոց նստին յայն աթոռ: Ստորև յայտ առնէ նաև զայսոսիկ 'ի Տրդատայ շնորհեալ 'ի կա-լուած կաթողիկոսարանին գէթ ըստ մեծի մասին, յա-ւելուն վասն մարդապետի ներքինեաց. "Սկսաւ ներքինին խօսել բանս հպարտս . . . դնէր Թշնամանս Տրդատայ ար-քայի, 'ի մեռանելն և կենդանւոյն 'ի կեանս, ազգի և տա-նի և տոհմի արշակունեաց Թագաւորացն Հայոց: Զխնդ-ամ, զայսպիսի տեղիս կանանցահանդերձ մարդկան որ-ւեալ է, և ոչ արանց ,,: Եւ այլ կալուածք կաթողիկոսու-թեանն յիշատակին յայս բան Յովհաննու կաթողիկոսի, որք էին յԱյրարատ. Խուզիմայ ոստիկանն, ասէ, "տեսեալ զգեղեցկութիւն մեծամեծ դաստակերտացն տանն կաթողի-կոսարանին՝ զԱրտաշատն և զԿաւակերտն և զՀոռոմոց մարգ հանդերձ նոցուն ագարակօք . . . յինքն 'ի հայրա-պետէն Յովսէփայ խնդրէր տալ նմա զմեծ դաստակերտ-սն իւր 'ի պատճառս գնոց արծաթոյ. իսկ մեծի առն զմահ ընդ կեանս խառնեալ, հազիւ ուրեք միայն ըզ-դաստակերտն Կաւակերտ և զՀոռոմոց մարգ Թափէր 'ի ձեռաց ոստիկանին չարի: Եւ այսպէս տարապարտ զըր-կեալ գտանէր յԱրտաշատէն յախմանէ և ագարակաց ,,: Միանգամայն զամենայն կալուածս կաթողիկոսարանին յիշել ցուցանէ Մատթէոս յայս բան. "Յորժամ էր տէր Պետրոս (գերադարձ 'ի սկիզբն մետասաներորդ դա-րուն) յաթոռ հայրապետութեան և 'ի հայաստան աշխար-հին, ունէր կալուածութիւն հայրենեաց տուեալ 'ի Թագա-ւորացն Հայոց՝ հինգ հարիւր գեղ անուանի և մեծութիք և չահաւէտ ընտիր ընտիր ,,. ՃԺԷ:

### ԺԱ. Տեղիք կաթողիկոսարանին:

## ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

Յաւուրց անտի սրբոյն Գրիգորի սահմանեալ:

## ԴՈՒԻՆ

Յորժամ սուրբն Յովսէփ 'ի կալանս էր ընդ Ղևոնդեանս, զԳիւտ նստուցին կաթողիկոս՝ ասէ Վարդան, և 'ի Դուին փոխեցին զաթոռն :

## ԱՐԱՄՕՆՍ

Սամուէլ 'ի թուին ՃՀԷ. 726. գրէ յետ Յոհաննու կաթողիկոսի, թէ տ̃ր. Դաւիթ կաթողիկոս ձանձրացեալ 'ի Դուինն 'ի Տաճկաց, փոխէ զաթոռն 'ի Դրունայ յԱրամօնս՝ ուստի էր ինքն, և ուր շինեալ էր եկեղեցի և տուն հայրապետականն :

## ՁՈՐՈՅ ՎԱՆՔ

"Այս եղև, ասէ Մատթէոս ՀԷ. տէր Պետրոս 'ի Վասպուրականն զամս չորս, և կացեալ էր 'ի Ձորոյ վանքն, զոր շինեալ էր սուրբ հայրապետն Ներսէս ":

## ՍԵԲԱՍՏԻԱ

Պետրոս գետադարձ գնացեալ էր 'ի Տրապիզոն, բայց աթոռ նորա եղև Սեբաստիա. "Հրամայեաց, ասէ Կիրակոս, կայսրն հայրապետին (Պետրոսի) դնել զաթոռ իւր 'ի Սեբաստիա, և անդ հովուել զհօտն իւր. և եկաց անդ մինչև ցմահ իւր, և եղաւ անդէն 'ի Սեբաստիա, կացեալ կաթողիկոս ամս երեսուն և հինն. և յետ նորա Խաչիկ՝ սակաւ ժամանակս ":

## ԾԱՄՆԴԱՒ

Գրէ Վարդան վասն տ̃ր. Գրիգոր կաթողիկոսին որ կոչէր Վահրամ. "Սա մի կալեալ զաթոռն 'ի Ծամնդաւ ":

## ԱՆԻ

Ի վաղուց անտի լեալ էր աթոռ կաթողիկոսի. բայց որպէս ասէ Մատթէոս 'ի ՇԼԸ. յորժամ 'ի ՇԼ. 1081. ձեռնադրեցին զտէր Բարսեղ կաթողիկոս, "Յայսմ ժամանակիս նորոգեալ եղև աթոռ սրբոյն Գրիգորի 'ի քա

ղաքն Անի, զոր 'ի վաղուց հետէ ժամանակաց խափա-նեալ էր մախանօք և նենգաւորութեամբ... ազգին Հռո-մոց. և եղեւ գայր Բարսեղ կաթողիկոսն Հայոց 'ի Թա-գաւորաբնակ քաղաքն Անի. և եղեւ ամենայն աւանն Շիրակայ գնաց ընդ առաջ նորա":

## ԾՈՎՔ ԵՒ ՀՌՈՄԿԼԱՅ

Կիրակոս ասէ. "Եւ յաջորդէ տէր Գրիգորիս եղբայր Ներսէսի. (որ է Գ. Գրիգոր որդի Ապիրատայ, յաջորդ Բարսղի)... սա փոխեաց զաթոռն հայրապետականն 'ի բերդն որ կոչի Հռոմկլայ. քանզի իբրև առնէին Յոյնք զԹագաւորն և զտէր Պետրոս առ իւրեանս, այնուհետև ոչ եղև յարևելս աթոռ հայրապետականն, այլ ընդ իշ-խանութեամբ Յունաց. երբեմն 'ի Սեբաստիա, երբեմն 'ի Ծովք վայրին կոչեցեալ: Իսկ սա փոխեաց 'ի Կլայն Հռով-մէականն. և պատճառ փոխելոյն այս էր. զի նեղացաւ 'ի սկիւթականաց և 'ի Տաճկաց այսր անդր յածելով. և ապա եկեալ զբերդն (Հռոմկլայ) առնոյր, բարձեալ զսր-բութիւն իւր և զսպասք եկեղեցւոյ տարաւ եդ անդ 'ի պահեստի առ բարեկամ կին մի իշխանի ազգաւ Փռանկ":

Նաև յայլ զանազան տեղիս փոխեցաւ աթոռ կաթո-ղիկոսութեան ընդ ժամանակս ժամանակս, զորոց զյիշատա-կութիւնս տեսցես ստորև:

### Կաթողիկոսութիւնք բաժանեալք :

Յորժամ պետութիւնն հայաստանեայց 'ի յաճախե-լս թշնամեացն մերձակայից յերկրի կայր ընդ փոքու սահմանաւ պարագրեալ, տեսաք այլուր[1] զի բազմացան 'ի նմա թագաւորք 'ի մի և 'ի նոյն ժամանակի. նոյնպէս 'ի դառն ժամանակին յայնմիկ տեսանեմք բազմացեալ և զեկեղեցւոյ առաջնորդսն, այսինքն է զկաթողիկոսս. զի զառաջինն գանեալ 'ի հարկէ յերկուս բաժանեալ աթո-ռոյն, յետ այնորիկ ընդդիմացան այլ և այլ անձինք 'ի ձեռն աշխարհական իշխանութեան զանձամբ առնուլ զշուք և զիշխանութիւն կաթողիկոսութեան:

1 Ի գլուխն Կառավարութեան. հատոր Բ. երես 55 :

### Ա. Բաժանումն կաթողիկոսութեան յերկուս ։

Նոյս առաջին բաժանումն եղև յետ միջերորդ դարուն, յորժամ Մօրիկ կայսրն 'ի յունական բաժնի աշխարհիս Հայոց կացոյց զայլ կաթողիկոս Յոհան անուն 'ի քաղաքագլուխն Աւան, մինչդեռ ընիկ կաթողիկոսն ա̅. Աբրահամ նստէր 'ի Դուին 'ի բաժնին Պարսից, որպէս գրէ Յոհաննէս կաթողիկոս. “Եւ գետն Ազատ զսահմանս բաժնիցն երկոցունց ընդ մէջ հատանէր . . . ( որոց ) հակառակաթոռ գոլով յերկուս հատածս ձեղքեալ լինէր միաւորութիւն հայրապետական աթոռոյն. և առաւ ոչ սակաւ հակառակութիւն կրեալ լինէին կողմանքն երկոքին ”։ Իսկ Ստեփաննոս Օրպէլեան զայլ հանգամանս յառաջ բերելով, փոխանակ Աբրահամու զՄովսէս կաթողիկոս դնէ ասելով, թէ յորժամ 'ի սկզբան անդ յերկուս բաժանեցաւ կաթողիկոսութիւնն՝ յայնժամ Պետրոս քերթող Ճ̅. եպիսկոպոս Սիւնեաց “ետես նուաղեալ զճշմարտութիւն, և քայքայեալ զաթոռ սրբոյն Գրիգորի, և մերձ 'ի բաժանումն. քանզի երկու կողմն Յունաց և Պարսիցն զհակառակուն քերէին զմէջ առ միմեանս. և կամէին Յոյնք հակառակաթոռ նստուցանել. զոր և արարին յետ սակաւուց. զի Մովսէս նստաւ յաթոռ սրբոյն Գրիգորի 'ի Դուին. և Յոհան ոմն 'ի Թէոդուպօլիս ”. Գլ. Իը ։

### Բ. Բաժանումն կաթողիկոսութեան 'ի չորս ։

Ի մետասաներորդ դարու բաժանեցաւ աթոռն յեգիպտոս, 'ի Հանի, յԱնի, 'ի Մարաշ. զորմէ ասէ Մատթէոս ՃԾԴ. “Ի ժամանակիս յայսմիկ 'ի չորս բաժանեցաւ աթոռ սրբոյն Գրիգորի. զի առհա տէր Վահրամ (ի. Գրիգոր մկայասէր) յեգիպտոս, և տէր Թէոդորոս 'ի Հոնին, և տէր Բարսեղ 'ի Թագաւորաբնակ քաղաքն Հայոց Անի. և տէր Պօղոս 'ի Մարաշ քաղաքն ։ Եւ սոքա իւրաքանչիւրաքն առնէին ձեռնադրութիւն և օծանէին եպիսկոպոսունս և տային օրհնութիւն սուրբ միւռոյն. և 'ի նոցանէ օրհնէին քահանայք ”։ Նոյնպէս գրէ և ընդարձակօրէն Սամուէլն 'ի Թուին ՇԼԱ̅. “Ի սոյն ժամանակս 'ի չորս բաժանեցաւ Հայոց կաթողիկոսութիւնն. տէր Վահրամ . . . յեգիպ-

տոս, տէր Բարսեղ յԱնի, տէր Պօղոս Հայրն Վարագայ 'ի Մարաշ, տէր Թորոս (կամ Թէոդորոս) 'ի Հայնի,, որ է Հանի, որպէս գրեն այլք։ Այլ 'ի ՇԻԴ. Թուին այլ ազգ Թուէ զքարեսին կաթողիկոսս ասելով. "Նստաւ կաթողիկոս տէր Սարգիս. և յայսմ ամի էին չորս կաթողիկոսք. տէր Գրիգորիս Վահրամն, տէր Գէորգ վարդապետն (որ նստաւ 'ի Թաւբլուր), տէր Սարգիսն (որ նստաւ 'ի Հանի), և Աղուանից,,. զոր այլք ոչ յիշեն։ Այսաւէլ որոշակի գրէ Վարդան. "Փիլարտոս ձեռնադրել ետ զՍարգիս քուերորդի տեառն Պետրոսի կաթողիկոսի 'ի Մրջմնեւս ('ի Հանի), այր սուրբ և պարկեշտ, մինչ կենդանի էր Վահրամ (որ է Վկայասէրն), և տէր Բարսեղ որ յԱնեւոյ (յԱնի), զոր 'ի Հաղբատ ձեռնադրեցին . . . այլ և զկնի մահուանն տեառն Սարգսի կաթողիկոսի ետ ձեռնադրել 'ի տեղին ('ի Հանի) Փիլարտոսն զԹէոդորոս ոմն,,¹։

### Գ. Բաժանումն կաթողիկոսութե՛ն 'ի վեց։

Յետ նախագրեալ բաժանմանցս սուղ ինչ ժամանակ անցանելոյ 'ի վերայ, 'ի վեց բաժանեցաւ աթոռ կաթողիկոսութե՛ն. զորմէ ասէ Մատթէոս. "Ցայսմ ժամանակի եղև ազգիս Հայոց վեց կաթողիկոս. երկու յԵգիպտոս, և չորս ամենայն աշխարհիս Հայոց՝ որպէս յառաջն ասացաք,,։ Որում համաձայնի և ընդարձակօղն Սամուէլի 'ի Թուին ՇԺԴ. գրելով. "Ի սորա աւուրս (Գրիգորի վկայասիրի) էին Հայոց վեց կաթողիկոսք,,. յորոց մին է այն որ նստէր 'ի Թաւբլուր, կոչեցեալ Գէորգ. զորմէ ասէ Մատթէոս 'ի Թիւն ՇԺԵ. "Նստուցանէին յաթոռ հայրապետութե՛ն 'ի Թաւբլուր. և կացեալ անդ զամս երիս,,։ Այլ զամենեսեան զսոսա հնազանդեցոյց Բարսեղ կաթողիկոս. զորմէ այսպէս պատմէ ընդարձակօղն Սամուէլի. "Ի ՇԼԲ. Թուին նստաւ տէր Բարսեղ

¹ Այլով օրինակաւ յիշէ և Կիրակոս. "Ի բազում բաժանեցաւ կաթողիկոսութի՛ւն Հայոց. տէր Գրիգորիսն որ և Վահրամ (Վկայասէրն) յԵգիպտոս, և Գէորգ 'ի կողմանս Արևմտից ('ի Թաւբլուր), և միւս ոմն 'ի Վասպուրական 'ի կղզին Աղթամարայ, և տէր Բարսեղ յաշխարհիս Հայոց (յԱնի). այսպէս 'ի յոլովս բաժանեալ էր,,։ Մատթէոս զՍարգսին կաթողիկոսութի՛ն միայն յիշելով ասէ 'ի Թիւն ՇԼԵ. "Եւ ձեռնադրեցին ըզ տէր Սարգիս յաթոռ կաթողիկոսութեանն Հայոց 'ի քաղաքն որ կոչի Հանի 'ի Ջահան գաւառի,,։ Իսկ 'ի Թիւն ՇԽԷ. մահն Թէոդորոսի գրէ նոյնպէս նստուցեալ 'ի Հանի։

յաթոռ Հայրապետական որդւոյն Վաստակայ, և զամենայն հակառակեան հնազանդեցուցանէ, որք էին յայնմ ժամանակի վեց կաթողիկոսք. գնացեալ առ մեծ սուլտանն Մելիք շահ որ 'ի Խորասան՝ բազում համարձակութե ընդ քաղաքամէջեան Պարսից (անցանելով) ձիով և խաչալամով որ առաջի ամբարձեալ էին 'ի ձողի „: Զայս միութիւն այսպէս պատմէ Վարդան. "Ի չխ. թուին մեռաւ Գոդոս կաթողիկոսն որ 'ի Մարաշ, զոր եդեալ էր Փիլարտոսն, և սուրբ և մեծ գիտնականն Հայոց Գէորգ վարդապետն, և թաղեցաւ 'ի Կամրջաձոր առ Սամուէլ վարդապետի. և եղև միահեծան սուրբ աթոռն պատրիարգութե. քանզի տէր Բարսեղ ընկեց 'ի նմին ժամու զկաթողիկոսն Թէոդորոս յաթոռոյն . . . և լինէր ամենայն ուրեք խնդութիւն մեծ „:

Դ. Բաժանումն կաթողիկոսութեան յերիս:

Ի վախճան երկոտասաներորդ դարուն յետ Ե. Գրիգորի զահավիժի՝ յորժամ կաթողիկոս նստաւ Զ. Գրիգոր Ապիրատն, դարձեալ սկիզբն արար 'ի վեր երևիլ այս ոգի փառասիրութե ըստ գրելոյ Կիրակոսի, և բազմացուցանել զաթոռն. "Այսուհետև սկսան մախողքն Գրիգորիսի զմիմեամբք ելանել, թէ ո նստցի յաթոռ հայրապետական. և Յովհաննէսն զի ընտանի էր թագաւորին Լևոնի՝ բռնացաւ և կալաւ (զՀռոմկլայն). իսկ և ևս զայն միւս եպիսկոպոսն Անանիա՝ չոգաւ նա առ սուլտանն զոր Հոռոմոց կոչէին (որ է սուլտանն Իկոնիոյ), ետ նմա կաշառ, և նստաւ կաթողիկոս 'ի Սեբաստ. զի ասէր զինքն յազգէն կաթողիկոսին Պետրոսի (գետադարձին), որ կայ թաղեալ անդր „: Եւ ընդ սմին թուելով և զԱղթամարայն՝ ասէ. "Եւ այսպէս բաժանեցաւ աթոռ սրբոյն Գրիգորի յերիս. մի՝ բուն՝ զոր էառ Յովհաննէս. որ է Հռոմկլան. և միւս 'ի Սեբաստ՝ որ ապստամբեցաւ Անանիա. և միւս ևս 'ի կղզւոջն Աղթամարայ՝ Դաւիթ անուն „: Թէպէտ և սկզբնաւորութի Աղթամարայն 'ի վաղուց էր, այսինքն յաւուրց անտի Գ. Գրիգորի կաթողիկոսին. որոյ գոլով տեղական՝ բաժանումն մնաց յերկուս, մին 'ի Սիս, որ ապա փոխադրեցաւ 'ի նախնական տեղին յէջմիածին, և միւսն յԱղթամար:

# ՅՕԴՈՒԱԾ Զ

## Թիւք և Եպիսկոպոսարանք Մեծին Հայոց։

ԹԷՊԷՏ 'ի ստորագրութեան Մեծին Հայոց եղեալ կան եպիսկոպոսարանք Հայաստանեայց, այլ քանզի ցրուեն անդ իւրաքանչիւրն յայլ և այլ տեղիս, նմին իրի աստանօր գէթ զոմանս 'ի նոցունց միանգամայն 'ի մի կարգ առաջի աչաց ընթերցողին դնել 'ի դէպ թուեցաւ մեզ, յիշատակեսցուք յանուն. թեմի իւրեանց ըստ նահանգաց, ըստ գաւառաց և ըստ քաղաքաց. և որ յանուն այլ և այլ նախարարութեանց և մենաստանաց կոչեցան. և որք դարձեալ յանուն այլ և այլ տեղեաց արտաքոյ Հայաստանեայց։

### Ա. Եպիսկոպոսարանք նահանգաց։

ԱՂՁՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ. յիշատակի առ Բուզանդայ Դ. 15. միանգամայն ընդ եպիսկոպոսին Կորդուաց. իսկ առանձին՝ յիշատակի առ Մեսրոպայ ԺԷ. Սիմէոն եպիսկոպոս յաւուրս Մեծին Ներսէսի։

ԱՅՐԱՐԱՏՈՅ ԵՊԻՍԿՈՊՈՍ, այսինքն կաթողիկոս՝ Յովսէփ. առ Եղիշէի 46. 'ի ժողովն որ ընդդէմ Պարսից։

ԴՈՒՌՆԱՅ ՔԱՂԱՔԻ ԵՊԻՍԿՈՊՈՍ. 'ի սրբոյն Գրիգորէ ձեռնադրեալ. որպէս է տեսանել առ Զենոբայ, որ ասէ՝ թէ սուրբն Գրիգոր "ելեալ 'ի Կեսարիոյ՝ մնայր ժամանակս ինչ 'ի Սեբաստիա՝ հաւաքել զդասս կրօնաւորաց. և զոմանս վարդապետս կոչէր յԱղէքսանդրիոյ, և հրաշազան պաշտօնեայս. յորոց մին Դիկլաւիոս, զոր Դուռնայ գաւառին եպիսկոպոս ձեռնադրեաց„. Թղթ. 24։

ԾՈՓԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ. 'ի ժողովական թղթի Դ. Գրիգորի կաթողիկոսի ընդ Տարօնոյ ստորագրէ. "Ստեփաննոս եպիսկոպոս Ծոփաց„։

ԿՈՐԴՈՒԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ. յիշատակեալ առ Բուզանդայ Դ. 15. միանգամայն ընդ եպիսկոպոսին Աղձնեաց։

ՀԵՐ ԵՒ ԶԱՐԵՒԱՆԴ ԳԱՒԱՌԻՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ, այսինքն է Պարսկահայոց. 'ի ժողովական թղթի Դ. Գրիգորի կաթողիկո-

ւի, զկնի Ծոփաց ստորագրէ. “Ղազար եպիսկոպոս Հեր և Զարեւանդ գաւառին„:

Մոկաց եպիսկոպոս Բասիլ. առ Եղիշէի 47. և առ Ղազարայ 75. իսկ առ Մեսրոպայ Է. յիշատակի Ներսէս եպիսկոպոս Մոկաց, մի 'ի նոցանէ որք զմեծն Ներսէս ածին 'ի Կեսարիա: Գրիգոր եպիսկոպոս Մոկաց. առ որ գրեաց Թուղթ Մագիստրոս:

Սիւնեաց եպիսկոպոս. Անանիա առ Եղիշէի 46. և առ Ղազարայ 74. 'ի ժողովն որ ընդդէմ Պարսից: Եւ առ Մեսրոպայ Է. Գրիգոր եպիսկոպոս, մի 'ի նոցանէ որք զմեծն Ներսէս ածին 'ի Կեսարիա: Առ Կիրակոսի յաւուրս Անանիա կաթողիկոսի յիշատակին կրկին եպիսկոպոսունք. “Էր եպիսկոպոս մի կողմանցն Սիւնեաց Յակոբ անուն . . . և այլ միւս եպիսկոպոս Խոսրով անուն„: Այլ յայտ է թէ երկոքին սոքա կողմանց ինչ Սիւնեաց էին եպիսկոպոսք: Ի ստորագրութիւնս ժողովոյն Դ. Գրիգորի կաթողիկոսի՝ յհնգերորդ կարգի զկնի Տփխեաց ստորագրէ. “Ստեփաննոս արքեպիսկոպոս Սիւնեաց„: Եւ այլ բազում ուրեք յիշատակին եպիսկոպոսք Սիւնեաց:

Տայոց եպիսկոպոս Տաճատ. առ Եղիշէի 46. և առ Ղազարայ 75: Յիշատակի եպիսկոպոս Տայոց և առ Բուզանդայ Գ. 11. և առ Կիրակոսի. որպէս և Սարգիս եպիսկոպոս Տայոց 'ի ժողովն Իմաստասիրի, որ յամին 726:

Տուրուբերանոյ եպիսկոպոս Քասու. յիշատակեալ առ Եղիշէի 46. իսկ առ Ղազարայ 75. գրի Տուրուբերանոյ եպիսկոպոս տէր Քասու:

## Բ. Եպիսկոպոսութիւնք գաւառաց:

Անձեւացեաց եպիսկոպոս Եղբայր. յիշատակեալ առ Եղիշէի 47. առ Ղազարայ 75:

Ապահունեաց եպիսկոպոս Երեմիա. առ Եղիշէի 47. առ Ղազարայ 75:

Արծրունեաց եպիսկոպոս Սահակ. առ Ասողկայ Գ. 32. որ և եղև գլուխ ժողովոյն՝ զոր ժողովեաց Ա. Գագիկ արքայ յընտրել զՍարգիս կաթողիկոս:

Բագրեւանդայ եպիսկոպոս Եզնիկ. առ Ղազարայ 74. առ Եղիշէի 46. ուր գրի Եզնակ: Իսկ Բագրեւանդայ և Արշարունեաց եպիսկոպոս միանգամայն անուանեալ Խադ, առ Բուզանդայ Դ. 12:

Սամոյ եպիսկոպոս Վարդան . 'ի ժողովն Սսոյ 'ի 1307 ։

Սեւորդեաց եպիսկոպոս Մարտիրոս . 'ի ժողովն Էջմիածնի յամին 1441 ։

Սանահնեաց եպիսկոպոս Գաթ . առ Ղազարայ 75 . առ Եղիշէի 47 . ուր գրի Գադ . և առ Բուզանդայ Դ. 10 . Ջորթուայ եպիսկոպոս ։

Տարօնոյ եպիսկոպոս Սահակ . առ Եղիշէի 46 . առ Ղազարայ 74 . և առ Մեսրոպայ Է . Թաթուլ եպիսկոպոս որ յաւուրս մեծին Ներսէսի ։ Ի ժողովական Թղթի Դ. Գրիգորի կաթողիկոսի "Դաւիթ եպիսկոպոս Տարօնոյ" ստորագրէ զկնի Մանազկերտոյ ։

## Գ . Եպիսկոպոսարանք քաղաքաց ։

Շնհերդոյ եպիսկոպոս Մկրտիչ . առ Կիրակոսի 'ի ժողովն զոր արար Ա. Կոստանդին կաթողիկոս ։

Շնոյ եպիսկոպոս Սարգիս . յիշատակեալ 'ի ժողովն Ա. Կոստանդին կաթողիկոսի . իսկ 'ի ժողովն Դ. Գրիգորի կաթողիկոսի՝ յերրորդ կարգի զկնի կաթողիկոսին և յետ Աղուանից կաթողիկոսին ստորագրէ "Բասիլիոս արքեպիսկոպոս Թագաւորանիստ քաղաքին Անւոյ" ։

Շմուշատայ եպիսկոպոս Թէոդորոս ստորագրէ 'ի ժողովն Դ. Գրիգորի զկնի Կիպրոսի ։

Բողնըզոյ եպիսկոպոս Ստեփաննոս . 'ի ժամանակս ժողովոյն Էջմիածնի , որ 'ի 1441 ։

Բջնոյ եպիսկոպոս Գրիգոր վանական . առ Կիրակոսի 'ի ժողովն Ա. Կոստանդին կաթողիկոսի . իսկ Մագիստրոս 'ի պատասխանին որ առ Թուղթն կաթողիկոսին Ասորւոց՝ յիշէ Բջնոյ եպիսկոպոս զԵփրեմ ։

Պատնոյ եպիսկոպոս Գէորգ . յիշատակեալ 'ի Մեսրոպայ ԺԷ . յաւուրս մեծին Ներսէսի ։

Դունոյ եպիսկոպոս . 'ի ժողովն Դ. Գրիգորի կաթողիկոսի զկնի եպիսկոպոսին Կեսարու ստորագրէ . "Յովսէփ արքեպիսկոպոս Դունայ" ։

---

տութեան . . . սա նախ կարգեալ էր յեպիսկոպոսութիւն Բասենոյ ,, ։ Այս գաւառ Թէպէտ չէր նշանաւորեալ 'ի Խորենացւոյն 'ի կարգս գաւառաց , բայց լինել նորա աթոռ եպիսկոպոսութեան՝ կամ՝ յայտ առնէ փոփոխումն ինչ լեալ նախնի անուանն . և որպէս Թուի 'ի ստորագրութեան Յոհաննու կաթողիկոսի՝ էր եպիսկոպոս կամ Կորձէից, և կամ մեծի ինչ քաղաքի նորա ։

Դ. Եպիսկոպոսարանք յանուն նախարարութեանց անուանեալք :

Ամատունեաց եպիսկոպոս Եղիշէ. յիշատակեալ առ Եղիշէի 47. առ Ղազարայ 75 : Գրիգոր եպիսկոպոս Ամատունեաց առ Թովմայի արծրունւոյ Դ. 11 : Տաճատ եպիսկոպոս Ամատունեաց առ Մեսրոպայ : Տես և 'ի Մեծ Հայս 'ի Թղթահամարն 438 :

Արծրունեաց եպիսկոպոս Մուշէ. առ Ղազարայ 74. որ առ Եղիշէի 47. կոչի Մուշեայ : Առ Մեսրոպայ Է. յիշատակի Շապուհ Արծրունեաց եպիսկոպոս, մի 'ի նոցանէ որք զմեծն Ներսէս ածին 'ի Կեսարիա :

Բագրատունեաց եպիսկոպոս Յովսէփ. յիշատակեալ առ Մեսրոպայ Է. որ էր մի յեպիսկոպոսաց որք զմեծն Ներսէս ածին 'ի Կեսարիա :

Մամիկոնէից եպիսկոպոս. յիշատակեալ առ Զենոբայ յառաջին պատճէնի սրբոյն Գրիգորի առ Ղեւոնդ. "Եղբայր Յակոբայ առաքելոյ, զոր ընդ իս ածեալ ձեռնադրեցի եպիսկոպոս Մամիկոնէից տանն". որ է Տարօն գաւառ : Յիշատակի և առ Մեսրոպայ Է. Վահան եպիսկոպոս Մամիկոնէից, մի 'ի նոցանէ որք զմեծն Ներսէս ածին 'ի Կեսարիա. և 'ի ժողովն Իմաստասիրի, որ յամին 726. Սահակ Մամիկոնէից եպիսկոպոս : Տես և 'ի Մեծ Հայս 91 :

Մարդպետական եպիսկոպոս : Տես 'ի Մեծ Հայս 220. զյիշատակեալ եպիսկոպոսունս. իսկ վասն անուանն տես 'ի մասունս 'ի նախարարութիւնս Մարդպետական. հատ. Բ. երես 138. 139 :

Մարդպետական եպիսկոպոս Քաջաջ. յիշատակեալ առ Մեսրոպայ Է. որ զմեծն Ներսէս ընդ այլ եպիսկոպոսունս եած 'ի Կեսարիա :

Ե. Եպիսկոպոսարանք յանուն վանօրէից կամ եկեղեցեաց անուանեալք :

Էջմիածնի եպիսկոպոս Գաբրիէլ. յիշատակեալ 'ի ժողովն Էջմիածնի որ 'ի 1441 : Գուցէ նոյն պատուոյ եպիսկոպոս է որ 'ի ժողովն Սսոյ յամին 1307. յիշատակի Ստեփաննոս եպիսկոպոս Կաթողիկոսարանին :

Թադէոսի սուրբ առաքելոյն եպիսկոպոս Գրիգոր վարդապետ.

յիշատակեալ առ Թովմայի Մեծոփեցւոյ, որ գտաւ 'ի ժո-ղովին վասն ձեռնադրելոյ զԿիրակոս 'ի կաթողիկոս յամին 1441: Եւ տէր Պետրոս եպիսկոպոս սուրբ առաքելոյն Թադէոսի: Այսպէս յանուն սրբոյն Թադէոսի անուա-նեն եպիսկոպոսունք Արտազ գաւառին: Տես 'ի Մեծ Հայս 'ի Թղթ. 202:

Խառաբաստայ եպիսկոպոս. առ Թովմայի Մեծոփեցւոյ 'ի ժողովին ձեռնադրութեան Կիրակոսի կաթողիկոսի յիշատա-կեալ. "Տէր Զաքէոս եպիսկոպոս Խառաբաստայ քաղջե-րունեաց":

Հաղբատայ եպիսկոպոս Համազասպ. առ Կիրակոսի 'ի ժո-ղովին ա. Կոստանդնի. յիշատակի և առ Թովմայի Մեծո-փեցւոյ Գրիգոր եպիսկոպոս "Հռչակաւոր ուխտին Հաղ-բատու". որ էր 'ի ժողովն ձեռնադրութեան Կիրակոսի կաթողիկոսի:

Հաւուց Թառայ եպիսկոպոս Զաքարիա. 'ի ժողովին Էջ-միածնի 'ի 1441:

Մեծոփայ վանից Առաքելոց եպիսկոպոս Յովհաննէս, որ էր 'ի ժողովին Էջմիածնի վասն ձեռնադրութեան Կիրակոսի կա-թողիկոսին. յիշատակեալ առ Թովմայի Մեծոփեցւոյ:

Յովհաննու վանից եպիսկոպոս Կարապետ. 'ի ժողովին Էջ-միածնի:

Նորավանից եպիսկոպոս Զաքարիա. 'ի նոյն ժողովի:

Սաղատարայ եպիսկոպոս Կիրակոս, որ է Ձորոյ վանք. 'ի նոյն ժողովի:

Սորագայ եպիսկոպոս Յովհաննէս. 'ի նոյն ժողովի:

Զայլ և այլ ծանօթութիւնս վասն եպիսկոպոսական ա-թոռոցս մինչև ցայս վայր յիշելոց, տեսցես 'ի Մեծ Հայս:

## Զ. Եպիսկոպոսարանք արտաքոյ աշխարհին Հայոց յիշատակեալք 'ի Գիրս:

Խաչիկ կաթողիկոս որ նստաւ յԱնի յամին 972. 'ի բա-զում քաղաքս սահմանացն Յունաց և այլոց ազգաց կացոյց զեպիսկոպոսունս Հայոց, յԱնտիոք, 'ի Տարսոն, և այլն. վասն որոյ տեսանեմք և 'ի գիրս զեպիսկոպոսունս յազգէս Հայոց յիշատակեալս 'ի յետագայից յայլ և այլ տեղիս՝ որ արտաքոյ են սահմանաց հայաստանեայց. յայն-մանէ իմանամք զբազմութիւն հայկազեան ժողովրդեան՝ որք 'ի զանազան ժամանակս յայլ և այլ տեղիս ցրուեալ

կայիւ. որոյ աղագաւ և զանեղեկանն ախտորինի Հարկաւոր դաւանելով ընթերցողին՝ առաւելոք յիշեցուք:

Մամեստիոյ եպիսկոպոս Գէորգ. յիշատակի 'ի ժողովն Սսոյ:

Մոպսուեստոյ եպիսկոպոս Կոստանդին գոյ 'ի ժողովն Ատանայ, որ 'ի 1316. որպէս և Բասիլ եպիսկոպոս Անկուրիոյ գոյ 'ի ժողովն Սսոյ որ 'ի 1342:

Մանազկերտոյ եպիսկոպոս յիշատակի 'ի ժողովն Է. Գրիգորի կաթողիկոսի, որ զկնի արքեպիսկոպոսին Անւոյ 'ի չորրորդ կարգին ստորագրէ. «Գրիգորիոս արքեպիսկոպոս աստուածային քաղաքին Անտիոքայ»:

Մարաշոյ եպիսկոպոս. 'ի ժողովական թղթի Է. Գրիգորի կաթողիկոսի զկնի Կոկիսոնոյ ստորագրէ. «Կոստանդին եպիսկոպոս Ապամիոյ Ասորւոց»:

Ռաբեննոյ եպիսկոպոս Սահակ. 'ի ժողովն Սսոյ 'ի 1307:

Երուսաղէմի եպիսկոպոս: Գրիգոր Է. կաթողիկոս՝ որ էր յերկոտասաներորդ դարուն՝ 'ի Հրովարտակին զՀայկազեան եպիսկոպոսութեանս 'ի ժողով, կոչէ և զեպիսկոպոսն Երուսաղէմի, որպէս և գրեալ է 'ի պատմութեան թղթոյ. «Հրաւէր եհան ժողովոյ 'ի մեծ Հայս և յարևելս և 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ»: Որ 'ի ստորագրութեան նորին ժողովոյ՝ զկնի արքեպիսկոպոսին Անտիոքայ 'ի հինգերորդ կարգին ստորագրէ. «Սահակ արքեպիսկոպոս աստուածակոխ քաղաքին Երուսաղէմի»:

Խեսաղմելիկեոյ եպիսկոպոս Եսայի. 'ի ժողովն Սսոյ 1307:

Իկոնիոյ արքեպիսկոպոս Բարսեղ. 'ի ժողովն Սսոյ 1342:

Իսաւրիոյ եպիսկոպոս Սարգիս. 'ի ժողովական թղթի Է. Գրիգորի կաթողիկոսի ստորագրէ զկնի եպիսկոպոսին Ապամիոյ:

Կիպրոսի եպիսկոպոս Թադէոս. զկնի եպիսկոպոսին Մամուեստիայ ստորագրէ 'ի ժողովական թուղթն Է. Գրիգորի կաթողիկոսի:

Կոստանդնուպօլսոյ եպիսկոպոս Յուսիկ. 'ի ժողովն Սսոյ 1307:

Հարքանոյ եպիսկոպոս Անդրէաս 'ի նոյն ժողովի:

Տրապիզոնի եպիսկոպոս. յիշատակի ուրեք ուրեք:

Իսկ զեպիսկոպոսապետս փոքուն Հայոց, որպէս և զՄիջագետաց և զԿիլիկիոյ, յիւրաքանչիւր ստորագրութեան հաստատութեանց նոցա յիշելոց եմք:

# ԳԻՐՔ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ

## ԲԱԺԱՆՈՒՄՆ

## Հ Ա Յ Ա Ս Տ Ա Ն Ե Ա Ց

### ՅՕԴՈՒԱԾ Ա

Բաժանումն աշխարհաց ՚ի նախնի Բագրատունեաց օրերս :

ՆԱԽ քան զնշանագրելն մեր զբնիկ բաժանումն նա-
հանգաց և գաւառաց աշխարհիս մերոյ որ գտանի առ մա-
տենագիրս մեր, յիշատակեսցուք զբաժանումն զոր ստոյգ
թագաւորք արարին ՚ի Հայաստան աշխարհիս յորոշումն
սահմանաց իւրեանց. յորս նախնագոյն քան զամենեսեան
յիշատակեալ է Շամիրամայն, զորմէ գրէ Խորենացին.
"Ի բազում տեղիս յաշխարհին Հայոց Արձանս հաստա-
տեալ, նովին գրով յիշատակ ինչ հրամայէ գրել. և ՚ի
բազում տեղիս Սահմանս նովին գրով հաստատէր". Ա.
16: Նման այսմ զոր արար Սեսոստր արքայ Եգիպտացւոց,
արձանս կանգնելով յամենայն աշխարհս զորս գրաւէր
յինքնամեայ ժամանակի, և յիշատակ ՚ի վերայ գրելով.
որպէս պատմէ Դիոդորոս Սիկիլիացի հատ. Ա. Թղթ. 65:
Նաև յաւուրս տէրութեան Հռոմայեցւոց յիշատակի բաժա-
նումն ինչ լեալ աշխարհիս Հայոց յաւուրս Անտոնինոսի և
Պոմպէոսի. բայց այն բաժանումն միայն ՚ի մատենագրաց
Յունաց և Հռոմայեցւոց պատմի, և այն ոչ որոշակի, յոր-
մէ ոչ կարեմք ստոյգ ինչ իմանալ: Վասն Պոմպէոսի այս-
չափ ինչ գրէ Ստրաբոն ժԲ. 541. Թէ ՚ի գրաւելն ընդ
ձեռամբ իւրով զտէրութիւն Միհրդատայ, զայն սահմանս
որք առ եզր կային Հայաստանեայց և Կողքիսոյ՝ բաժա-

նեաց 'ի փոքր Թագաւորն՝ որոց օգնութիւն մղեաց զպա-
տերազմն . իսկ զմնացեալ սահմանս 'ի մետասան հասա-
րակապետութիւնս բաժանեաց , և յաւել և միացոյց 'ի
գաւառն Բիւթանիոյ : Ի բանից աստի իմանաս զի յայսմ
բաժանմանն ոչինչ մտանէ 'ի սահմանացն Հայոց մեծաց ,
այլ 'ի սահմանացն փոքուն Հայոց . իսկ զոր մնացեալ սահ-
ման ասէ , էին այլ արեւմտեայ սահմանք փոքուն Ասիոյ
'ի կողմն Բիւթանիոյ ձգեալք : Յետ որոյ , ասէ անդէն
Ստրաբոն , "յաղագս ժամանակս հռոմայեցիք զայլ իշխանս
և զայլ բաժանմունս կարգեցին . Թագաւորս և փոքր Թա-
գաւորս կացուցանելով . և զքաղաքս ոմանս ազատս սահ-
մանելով , և զոմանս ընդ փոքր Թագաւորօք արկանելով ,
և զոմանս ընդ տէրութ. ժողովրդեանն Հռոմայ թողլով" :
Զայս ամենայն նոյնպէս պարտ է իմանալ վասն սահմա-
նաց փոքուն Ասիոյ : Եւ այսպէս ոչինչ որոշակի գտանելով ,
'ի ժամանակի տէրութեան հռոմայեցւոց որ նախ քան
զՔրիստոս , անցցուք յառաջ բերել որ ինչ յիշատակին յետ
Քրիստոսի յաղագս բաժանման աշխարհիս :

## ԴԱՐ Գ

Յետ սպանանելոյ մեծին Խոսրովայ , ասէ Խորենացին ,
"Յունաց Թագաւորեաց Պռոբոս , և խաղաղութիւն արա-
րեալ ընդ Արտաշրի (Պարսից Թագաւորի՝) բաժանէ զաշ-
խարհս Սահմանադրութեամբ փոսս գործելով" . Գ. 77 : Այսպ
գրէ վասն Արտաշրի . "Եւ զերկիրս գրով ընդ հարկաւ
իւրով արկանէ , և ամենեւին զիւր անունն հաստատէ :
Նաև զՍահմանս հաստատեալս յԱրտաշիսէ՝ (որ մեր Թա-
գաւոր էր , զորմէ ասացաք ,) զքարինս յերկրի կացուցա-
նելով նորոգեաց , և յիւր անունն փոխելով Արտաշիրա-
կան անուանեաց" : Ագաթանգեղոս վասն Յունաց և
Պարսից միաբանդաշնայն յիշելով ասէ թէ յետ սպանանելոյ
զմեծն Խոսրով մեր , "զերկիրն Հայոց եկեալ ախոյեան
ազգային Պարսից (Արտաշրի) յիւր անուն զտեղին ա-
նուանէր , և զզօրսն Յունաց փախստականս առնէր . հալա-
ծական առնէին մինչև 'ի սահմանս Յունաց . Վէմս փոստա-
ցուցեալ Սահման հաստատէին . և տեղւոյն անուն եդեալ
Դրունս փոսից՝ առ տեղեաւն՝ որոյ Ոյծքն կոչին" :

## ԴԱՐ Դ

Յետ չորրորդ դարուն կայսրն Յունաց Արկադէոս և Գ. Շապուհ Պարսից թագաւոր յերկուս բաժանեցին զաշխարհս Հայոց։ Այլ այս էր միայն բաժանումն յերկուս տէրութիւնս, կամ յերկուս մասունս, ուր ոչ յիշատակին ինչ բաժանմունք 'ի նահանգս և 'ի գաւառս. վասն որոյ զայն բաժանումն եդաք 'ի գլուխն Պատմութեան։ Տես 'ի նոյն գլուխ վասն առաջին պատճառի նուաղման աշխարհիս մերոյ. հատոր Ա. էջ 402։

## ԴԱՐ Զ

Յետ այսորիկ 'ի գիրս Յունաց այլ և այլ բաժանմունք յիշատակին արարեալք 'ի կայսերաց, մանաւանդ 'ի մեծէն Յուստինիանոսէ, բայց 'ի փոքր Հայս գոլով՝ անդանօր ունիմք խօսել զնոցունց։

Այլ 'ի բաժանմունս կայսերաց համբաւեալ է առ պատմագիրս մեր բաժանումն Մօրկայ կայսեր յետ վեցերորդ դարուն, որ ձգեալ տարածի նաև արտաքոյ փոքուն Հայոց 'ի մեծ Հայս, զորմէ ոչ յիշեն ինչ Յոյնք. այլ առ մեզ առաջին յիշօղն է Յովհաննէս կաթողիկոս, որ պատմէ՝ թէ յորժամ Խոսրով Պարսից արքայ փախստեայ անկաւ առ Մօրիկ, փախուցեալ 'ի Վահրամայ ումեմնէ, որ զինքն թագաւոր կարգայր, օգնութեամբ Մօրկայ կարող եղև Խոսրով սպանանել զՎահրամ և հաստատիլ յիւրում թագաւորութեան. յայնժամ, ասէ, "ըստ երախտահատոյցն լինելոյ խնդրէ Մօրիկ 'ի Խոսրովայ զՄիջագետս Դարայիւ և Մծբնաւ հանդերձ. և 'ի Հայոց զայն աշխարհ որ տանուտիրական գունդն անուանէր, բայց յոստանէն 'ի Դուինն քաղաքէ, և յերկուցն են գաւառաց յոր է Մասեաց ոտն, և կողմն Արագածոյ։ Զայսոսիկ 'ի բաց զատուցեալ՝ զայլն ամենայն թողու Խոսրով 'ի Մօրիկ՝ 'ի լեռանէն որ կոչի Ծնծաքար, մինչև ցԱզատեան ոստան. և ցՀացիւն։ Այսպէս կայսեր Մօրկայ ձեռներիցութիւն [illegible] փոփոխումն արարեալ անուանց աշխարհացն այնոցիկ, որ 'ի մերոյն Արամայ կարգաւ եդեալ էր։ Եւ նախ զԱրմէնիան զայն՝ որ առաջին Հայքն անուանիւր, երկրորդ Հայք զնա Մօրիկ կոչեաց. յորում մայրաքաղաք է Սեբաստիայ։ Իսկ զԿապադովկիա, յորում մայրաքաղաք է Կեսարիա,

և Երկրորդ Հայք նախ անուանիւր, կոչէ զնա Երրորդ Հայք. և առնէ զնա Եպարքի։ Իսկ զՄելիտինէ, որ ունի զհամանուն իւր գաւառ, է և Երրորդ Հայք, կոչէ զնա առաջին Հայք։ Իսկ զՊոնտոս յորում մայրաքաղաք է Տրա-պիզոն՝ կոչէ զնա մասն Մեծ Հայոց։ Եւ զչորրորդն կոչե-ցեալ Հայք՝ յորում մայրաքաղաք Մարտիրոսաց պօլիս, այս-ինքն Նփրկերտ՝ (կոչէ) Յուստինիանու նիստ։ Դարձեալ զաշ-խարհն Կարնոյ յորում մայրաքաղաք է Թէոդոսուպօլիս, անուանէ զնա Մեծ մասն Մեծ Հայոց։ Եւ որ 'ի Մեծն Հայոց մասն ինչ մնացեալ էր 'ի ձեռս հռոմայեցւոց կող-մանց անտի Բասենոյ մինչև 'ի սահմանս ատրպատանի՝ Մեծ Հայք զնա կոչէ։ Իսկ զկողմանս Տայոց սահմանօք իւրովք հանդերձ խորագոյն Հայք անուանէ և զկողմն Դուինն քաղաքի՝ Ներքագոյն Հայք։ Այսպէս ամենեցունց նոցա փոփոխումն արարեալ Մօրկայ՝ գրէ 'ի դիւանս արքունի,,։ Ըստ այսմ յիշէ և Վարդան։ Իսկ Թովմա արծ-րունի նախ գնէ զխոստումն զոր արար Խոսրով առ Մօրիկ եթէ օգնեսցէ նմա զօրօք. "Տաց քեզ, ասէ, զկողմանս Ասորոց, և զամենայն արուաստան մինչև ցՄծուրին (Մըծ-բին) քաղաք. և 'ի յերկրէ Հայոց զաշխարհ տանուտէ-րականն իշխանութեան մինչև յԱյրարատ, և ընդ Դուին քաղաք, և յեզր ծովուն Բզնունեաց, և ցԱռեստն աւան. և զՄեծ մասն աշխարհին Վրաց մինչև ցՏփխիս քաղաք,,. Է. 3։ Իսկ յետ հաստատելոյ Խոսրովայ 'ի թագաւորութեան ըստ խոստման իւրոյ "ետ նմա (ասէ, այսինքն է կայսեր) զարևաստան զամենայն մինչև ցՄծուրին, և զերկիրն Հայոց մինչև ցգետն Հուրազդան, և զգաւառն Կոտայից մինչև յաւանն Գառնի յեզր ծովուն Բզնունեաց, և մին-չև յԱռեստն աւան, և զԿոգովիտ գաւառ մինչև ցՀա-ցիւն և ցՄակու,,։ Ի Յունաց Թէոփիլակտոս Սիմոքատ-տա՝ որ էր պատմաբան ժամանակակից՝ միայն զառնուլն Դու-րա քաղաքին Միջագետաց յիշէ. գիրք Է. գլուխ 3.

## ԴԱՐ Է

Ի պատմութեան խաչին Հաղթանակաց յիշատակի և այլ բաժանումն և այլ անուն սահմանաց որ ընդ մէջ Հե-րակլի կայսեր և Խոսրովայ Պարսից արքայի որ 'ի սկիզ-բըն եօթներորդ դարուն. "Եւ եկեալ բանակեցան (զօր-քըն Յունաց) 'ի դաշտին Ջարևանդ գաւառին... և դա-դարեաց (Հերակլ) 'ի տեղւոջն յայնմիկ աւուրս երե-

# ՅՕԴՈՒԱԾ Բ

Բաժանումն աշխարհիս արարեալ 'ի նախնեաց մերոց ։

Յետ յիշելոյ զպէսպէս բաժանմանս օտար Թագաւորաց 'ի Հայաստան աշխարհիս՝ նշանակագրեսցուք զբնիկ բաժանումն որ 'ի նմա 'ի կիր արկեալ 'ի մերոց ․ յորս առաջին արժան է խնդրել Թէ երբ և յորմէ եղև այս բաժանումն ։ Ինձ այսպէս Թուի Թէ առաջին սկզբնաւորութեն բաժանման գաւառաց լեալ իցէ միանգամայն ընդ սկզբնաւորութեան նախարարութեանց ․ զի յորժամ առաջին նահապետք մեր տէրք լինէին երկրի միոյ, առ Հմանն նորին երկրին զոր մշակէին և յորում բնակէին, իշխէին ցուցանել զբաժանումն 'ի միւսոյն․ վասն այսորիկ և անուանք գաւառացն ըստ մեծի մասին են անուանք նախարարութեանց [1] ։ Զայս յայտ առնէ և Պլինիոս Է․ 9․ ուր 'ի ստորագրելն զՀայաստան՝ գրէ վասն մեծին Հայոց․ “Բաժանի՝ որ ասացաք է՝ 'ի նախարարութիւնս, զորս Ստրատեգիա կոչեն (որ է անուն յունական, իբր զօրավարական, կամ զինուորական,) զոմանս 'ի նոցանէ իբր մի մի Թագաւորութիւն երբեմն (կոչէին) խուժադուժ անուանք Հարիւր և քսան„ ։

Այլ քանզի յայնչափ մեծի առհմանի մարթ էր բազում ուրեք անորոշ մնալ և չգիտել՝ մանաւանդ զկնի այնչափ պատերազմաց, հարկ էր զի 'ի Թագաւորաց ոք կարգ ինչ սահմանեսցէ նմին ․ և ահա զայդ կարգաւորութիւն գաւառաց Թուիմ արծրունի նախ տալ Պտղոմեայ և Աղեքսանդրի ․ բայց Պտղոմէոս էր աշխարհագիր, որ յառաջ բերէ զգաւառս մեծին Հայոց ըստ կայլին բազմօք յառաջ քան զինքն ․ իսկ Աղեքսանդր յորժամ գնայր յարևելս,

[1] Զայս առաւել յայտ առնէ բաժանումն փոքուն Հայոց, ուր չէք գըտանել առ մեզ բաժանումն ինչ 'ի գաւառս ․ վասն զի չեղև անդ մերոց 'ի սկզբան անդ տանուտիրական բնակութիւն և սեփականութիւն կալուածոց, որ է ասել նախարարութեան ։ Այլ յետ Արտաշիսի եւ այն աշխարհն ընդ մերով տէրութեամբ ․ որոյ բնակիչքն կալուածովք՝ չէին 'ի սկզբանէ զրաւեալ զերկիրս տանուտիրական սեփականութեամբ որպէս եղև 'ի մեծ Հայս ։ Վասն որոյ և բաժանումն փոքուն Հայոց եղև յանուանէ երևելի քաղաքաց նորա, որպէս և է անուանել յայլ աշխարհս ․ և կամ կամաւոր ինչ բաժանումն եղեալ 'ի Յունաց կայսերաց, որպէս ունիմք անուանել 'ի փոքր Հայս ։

արդէն իսկ 'ի զանազան գաւառս բաժանեալ կայր մեծ Հայք. վասն որոյ և Թովմա զնոյն ուղղութ. ասոյ Դ. Արտաշէսի: Զի որովհետև այս Թագաւոր զամենայն իւր հորդեալ ուղղեաց ընդ 'ի բարեկարգութիւն, մանաւանդ զի զամենայն երկիրս հայաստանեայց զլեռնայինս և զդաշտայինս էարկ ընդ մշակութեամբ, հարկ էր ընդ չափու արկանել զերկիրս անդաստանաց, այգեաց և ագարակաց, և այլն, ընդ իւրաքանչիւր գաւառաք յորս էին. իսկ յորս չէին որոշեալ՝ հարկ էր նմա անդ որոշել և Թուել զսահմանս իւրաքանչիւր տեարց և նախարարութեանց, յորմէ բընաբար զհետ գայր որոշումն և Թիւ և անուն սահմանաց նախարարացն. և անուն իւրաքանչիւր գաւառաց: Զայս հաստատէ ցուցանէ բան Խորենացւոյն որ ասէ վասն Բ. Արտաշիսի. “Հրամայէ զսահմանս գիւղից և ագարակաց որոշել... և նշանս սահմանաց հաստատեաց այսպէս. հրամայէ տաշել քարինս կոփել չորեքկուսիս, և պնակաձև փորել զմէջսն, ծածկել յերկրի. և չորեքկուսիս 'ի վերայ յարուցանել ամբարտակս, սակաւ ինչ բարձրագոյն յերկրէ „. Բ. 56: Զայս հաստատէ և յասելն վասն Արտաշրի Պարսից Թագաւորի. “Նաև զսահմանս հաստատեալս ('ի մերայն) յԱրտաշիսէ, զքարինս յերկրի կացուցանելով նորոգեաց. և յիւր անունն փոխելով Արտաշիրական անուանեաց „. Բ. 77: Այս կարգադրութիւն սահմանաց մերայն Արտաշիսի այնչափ հաճոյ եղև նմին իսկ Արտաշրի Պարսից արքայի, զի և նա նախանձեալ ընդ այն՝ նման նմին հրամայեաց, ասէ, առնել և 'ի պարսկաստան. “Ընդ որ նախանձեալ Արտաշրի որդւոյ Սասանայ՝ զնոյն նման հրամայէ առնել և 'ի Պարսից աշխարհին „. Բ. 56: Իսկ բան Թովմայի արծրունւոյ է այս. “Բայց Աշոտ (արծրունի) գնացեալ տալ պատերազմ ընդ ծովեզերեցին որ Ուլթմանիկքն կոչին, որք ամրանային 'ի յԱմիւկ անկասկածելի քարանձաւսն. վասն զի ըստ Պտղոմեայ և Աղէքսանդրի սահմանադրութեան՝ կամ Թէ մերն Արտաշէսի որդւոյ Սանատրկոյ (որ է Բ. Արտաշէս) 'ի Վասպուրական գաւառացն համար Թուեալ է գաւառն այն. զոր հարիւր ամօք յառաջ հանեալ էր բռընակալութեան Տաճկաց 'ի Վասպուրական պետութէ „. Գ. 17:

Իսկ այսպէս յայտնի իմանամք զստուգութիւն բանին զոր եդաք 'ի վերոյ, Թէ նախկին բաժանումն աշխարհիս եղև 'ի սկզբան անդ ժամանակին, յորժամ նախարարութիւնք տիրեցին զանազան մասանց մեծին Հայոց. իսկ աստ յա-

ցուց յիշեն[1] . բայց առ մեզ միայն յաշխարհագրութեան Խորենացւոյն յիշատակի այս բաժանումն և այս անուն . արտաքոյ այնր ոչ ուրեք յիշատակեալ գտանեմք զփոքր Հայս 'ի գիրս մեր , որպէս խօսելոց եմք 'ի հնախօսութեան փոքուն Հայոց : Այլ Մեծ Հայք անունն է որ միշտ յիշատակի 'ի գիրս մեր . զոր օրինակ առ Եղիշէի 18 . յասելն . "Գունդ կազմէր 'ի Հայոց Մեծաց" : Իսկ առ Ագաթանգեղոսի ստէպ յիշատակի ասելն յարակցեալ անուամբ Մեծ Հայք , և Հայոց Մեծաց . որ առաւել թուի լինել պատուանուն քան տեղւոյ : Զբաժանմունս և զգաւառս մեծին Հայոց յայսմ վայրի դատակարգեսցուք . իսկ վասն փոքուն Հայոց և նորուն գաւառացն՝ առաջին , երկրորդ և երրորդ Հայոց՝ ունիմք խօսել ուրոյն 'ի տարագրութեան փոքուն Հայոց : Միայն վասն չորրորդ Հայոց՝ որ է գաւառ մեծին Հայոց՝ ծանուցանեմք աստէն , զի առ Յոյնս ըստ ժամանակս ժամանակս բազում փոփոխութիւնս ընկալաւ . քանզի Յոյնք՝ ոյք ըստ իւրեանց ունէին զփոքր Հայս , բաժանեալ յառաջին , յերկրորդ և յերրորդ Հայս , որչափ լինէր երկիր առնուլին 'ի մասանէ մեծին Հայոց՝ զայն Չորրորդ Հայք կոչէին . 'ի նոյն գաւառ յարակցեալ նաև զորս հետզհետէ յաւելուին առնուլ . որով այն չորրորդ Հայք նոցա՝ ոչ համեմատի չորրորդ Հայոց նահանգին տարագրելոյ 'ի Խորենացւոյն . որ 'ի մերոց թագաւորաց կոչէր 'ի նախնումն Ծոփք . վասն զի Յունացն՝ բաց 'ի մեր չորրորդ Հայոց՝ ունէր և մասն ինչ նահանգին բարձր Հայոց , գուցէ և մասն ինչ փոքուն Հայոց : Զայս յայտնի կարես տեսանել 'ի գաւառագրանագիրս եպիսկոպոսարանաց Լևոնի և Անդրոնիկոսի , յորում գտանես զայլ և այլ տեղիս նահանգաց մեծին Հայոց 'ի մի կարգ առանձնագրեալ , բայց միանգամայն անուանեցեալ նոցա եղեալ Չորրորդ Հայք :

Արդ թողեալ զյունականացն բաժանմունս , 'ի գիրս մեր թիւ անուանց գաւառաց աշխարհիս 620 առնի լինել առ Զենոբայ . զի բերէ զթուղթն զոր գրեաց սուրբն Գրիգոր հանդերձ թագաւորաւ և նախարարօք առ երկուս եպիսկոպոսունս Եղիազար և Տիմոթէոս . ուրանօք խօսելով զնուազութէ եպիսկոպոսաց և քահանայից , ասէ.

1 Առ Տակիտոսի , որ ոչ ուրեք յիշէ զՄեծ Հայս , այլ անուանցն ուրեք յիշէ Արմենիա , որ է Հայաստան , միայն 'ի միում տեղւոջ գտանեմք յիշատակեալ զփոքր Հայս 'ի տարեգրութեան իւրում գիրք ԺԶ . գլուխ 9 :

«Զինչ են այսոքիկ առ մեզ հարիւր և քսան գաւառս Հայոց» : Բայց յայտ է թէ խօսի անդամոր առեալ միան-գամայն նաև զայն անդրի՝ որ արտաքոյ էին Հայաստա-նեայց, բայց ընդ տէրութ. Հայոց Թագաւորին յայնմ ժամանակի. զի յերկոսին ևս Հայս 'ի փոքրն և 'ի մեծն ոչ գտանին այնչափ գաւառք : Խորենացին յաշխարհա-գրութեն իւրում զմեծ Հայս բաժանէ 'ի փոքր աշխարհս, և զնոսին 'ի գաւառս. մեք առ 'ի յորոշումն՝ զայն փոքր աշխարհս կոչեմք Նահանգս. և զթիւ Նահանգաց Մեծին Հայոց գնեմք ստորանօր յանուանէ, և զգաւառս ընդ իւ-րաքանչիւր Նահանգաւ, որպէս գնէ նա ինքն :

# ՄԵԾՆ ՀԱՅՔ

## ՆԱՀԱՆԳՔ, ԵՒ ԳԱՒԱՌՔ ՈՐ ԸՆԴ ՆՈՔՕՔ

### Ա. ԲԱՐՁՐ ՀԱՅՔ

1. Դարանաղի
2. Արիւծ
3. Մնձուր
4. Եկեղեաց
5. Մանանաղի
6. Դերջան
7. Սպեր
8. Շաղագումք
9. Կարին

### Բ. ՉՈՐՐՈՐԴ ՀԱՅՔ

10. Խորձեան
11. Հաշտեանք
12. Պաղնատուն
13. Բալահովիտ
14. Ծոփք
15. Հանձիթ
16. Գորեք
17. Դեգիք

### Գ. ԱՂՁՆԻՔ

18. Արզն
19. Նփրկերտ
20. Քեղ
21. Կեթիկ
22. Տատիկ
23. Աղնուաց ձոր
24. Սերխեթք
25. Գզեղ
26. Սալնոյ ձոր
27. Սասուն

### Դ. ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ

28. Տուարածատափ
29. Դալար
30. Հարք
31. Վարաժնունիք
32. Բզնունիք
33. Երևարք
34. Աղիովիտ

35. Ապահունիք
36. Կորի
37. Խորխոռունիք

### Ե. ՄՈԿՔ

38. Իշայր
39. Միւս Իշայր
40. Իշոց գաւառ
41. Արուենից ձոր
42. Միջա
43. Արանձնակ Մոկս
44. Արքայից գաւառ
45. Արգաստովիտ
46. Ջերմաձոր

### Զ. ԿՈՐՃԷՔ

47. Կորդուք
48. Կորդրիք
49. Այտուանք
50. Այտաուանք
51. Այ
52. Մոթողանք
53. Որսիրանք
54. Կարտաւունիք
55. Ճահուկ
56. Փոքր Աղբակ

### Է. ՊԱՐՍԿԱՀԱՅՔ

57. Այլի
58. Մարի
59. Թրափի
60. Ագուերս
61. Ըռնա
62. Տամբեր
63. Զարեհաւան
64. Զարուանդ
65. Հեր

### Ը. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ

66. Ըռշտունիք
67. Տոսպ
68. Բզնունիք
69. Արճիշակովիտ
70. Աղովիտ
71. Կուգանովիտ
72. Դառնի
73. Բալախովիտ
74. Առբերանի
75. Բուժունիք
76. Առնոյոտն
77. Անձևացիք
78. Ատրպատունիք
79. Երուանդունիք
80. Մարդաստան
81. Արտազ
82. Ակէ
83. Աղբակ մեծ
84. Անձախիձոր
85. Թոռնաւան
86. Ճուաշ
87. Կրճունիք
88. Մեծնունիք
89. Պալունիք
90. Գուկան
91. Աղուանդռոտ
92. Պարսպատունիք
93. Արտաշիսեան
94. Արտաւանեան
95. Բաքան
96. Գաբիթեան
97. Գազրիկեան
98. Տանգրիեան
99. Վարաժնունիք
100. Գողթն
101. Նախճաւան
102. Մարանդ

166 . Աղորդ
167 . Ասեաց փոր

## ԺԵ . ԱՅՐԱՐԱՏ

168 . Բասեն կամ Բասեան
169 . Գաբեղեանք
170 . Աբեղեանք
171 . Հաւնունիք
172 . Արշարունիք կամ Երասխաձոր
173 . Բագրեւանդ
174 . Ծաղկոտն
175 . Շիրակ
176 . Վանանդ
177 . Արագածոտն
178 . Մասեաց ոտն
179 . Ճակատք
180 . Կոգովիտ կամ Կոգ
181 . Աշոցք
182 . Նիգ
183 . Կոտայք
184 . Մազազ
185 . Վարաժնունիք
186 . Ոստան
187 . Դրունայ քաղաքն մինչեւ ցգաւառն Շարուր

Օրոց զամենեցուն զանուանս, զտոպագրութիւն եւ զանցքեկուն, որչափ ինչ գտանելն 'ի գիրս մեր եւ օտար ազգաց՝ մի ըստ միոջէ գտցես 'ի տոպագրութեան մեծին Հայոց ։



սանդրացւոյ երկրագրութեան՝ որ ըստ ինքնադիր բոլորա-կին կցորդեալ Պտղոմէի տիեզերագրութեանցն չափուց,,։ Երրորդ անգամ յիշէ 'ի Թղթ. 14. "Այսուհետեւ սկըս-ցուք պատմել զաշխարհ աշխարհ առանձինն ըստ գրեցն տեղագրութեանց Պապպայ աղեքսանդրացւոյ,,։ Անուն ինչ ինչ և 'ի Պտղոմեայ, մանաւանդ 'ի հասարակախօսութե անդ. այսինքն 'ի խօսելն զերկնից առ հասարակ և զկաց-մանց և այլն, որպէս ինքն իսկ յիշէ. Նաև 'ի Դիոդորայ սամէացւոյ, զոր յիշէ 'ի Թղթ. 4. և 'ի քրիստոնէական տեղագրութէ Կոստանդինոսի անտիոքացւոյ, զոր յիշէ 'ի Թղթ. 8։ Ինչ ինչ տեղեկացեալ ունէր և 'ի մերոց վա-ճառականաց, որք շրջէին ընդ զանազան աշխարհս. որ-պէս և ինքն իսկ յիշէ 'ի Թղթ. 9. ասելով. "Քանզի զպոնտականաւն և զկասպիականաւն ( որք են միջերկրա-կան և կասպից ծովք,) և մերոց իսկ արանց պատահեաց շուրջ անցանել,,։ Իսկ 'ի գաւառագրութիս մեծին Հայոց՝ յայտ է թէ հմտեալ ունէր յարքունական դիւանաց մե-րոց. որոյ և յայտնի նշան այն է՝ զի անուանս պատմուէք նախարարութեանց մերոց և անուանս եպիսկոպոսարանաց և համօրէն ազգիս, որ ինչ և յիշատակին ուրեք յամե-նայն պատմութեան մեր, 'ի վերայ նոյն գաւառաց յածին. յորոց ոմանք եւեթ հազիւ յիշատակին յաշխարհագիրս և 'ի մատենագիրս նախնեաց Յունաց և Հռոմայեցւոց։ Այդ աշխարհագրութիս այս՝ քանզի այսպէս ընտրանօք հաւաքեալ է աստի և անտի 'ի հինգերորդ դարուն յամե-մեկ յորում եկաց ինքն Խորենացին, պատուական զանձ համարեալ է յազգիս, և պարծանք մատենագրին, զորոյ զանուանն կրեն 'ի վերայ անուանս ձեռագիր օրինակք նորին զորս ունիմք առ մեզ. և մեք չգտանեմք 'ի նմա օտար ինչ անվայել Խորենացւոյն և ժամանակի նորին՝ մերժելի։

Բայց յարդեաց 'ի գաղղիացւոց անուն Սէն Մառդէն՝ որ ուսաւ հայկական լեզու 'ի Փարէզ, և 'ի 1819. գաղ-ղիարէն թարգմանեաց զայս աշխարհագրութի Խորենա-ցւոյն՝ եդեալ յերկրորդում հատորի յիշատակարանաց իւրում, քանզի վրիպակ կարծեօք համարեցաւ թէ իցեն 'ի նմա օտարոտի խորթութիք, համարձակեցաւ յայտնի խոտագիր դնել 'ի վերայ հայկական բնագրին 'ի թղթահա-մարն 318. *Աշխարհագրութիւն սուտ Մովսէսի Խորենացւոյ*։ Այսպիսի

րան 'ի Վենետիկ յամին 1752։ Յա- քաղաքաց, և զեկեղեցւոյն աշխար-
րակցեալ զինի և զհերձուածութիւն հաց, որք ոչ են Խորենացւոյն։

յայտնի վճիռ արձանագրել 'ի վերայ՝ չէր արժան նմա, թէ և քանի մի ձեռագիր օրինակս ունէր 'ի ձեռին, տպաւորելով և այլոց օրինակաց. ո՞ւր թողցուք զի զոր ինչ հանէ՝ 'ի միոյ ևեթ տպագրեալ օրինակէն առնու. որպէս ինքն իսկ վկայէ յերկրորդ հատոր յիշատակարանին 'ի թղթ. 316.[1]: Վիպասանանք որ զպատմութիւն Խորենացւոյն և զաշխարհագրութիւն նորա թարգմանեալ 'ի լատին 'ի լոյս ընծայեցին յամին 1736. ոչ իշխեցին այսպիսի ինչ վճիռ հատանել երբէք, թէ և բազում թերութիւնս գտին յօրինակին իւրեանց: Պատճառ այսպիսի թերութեան Սէն Մառդէնին է նախ տպագրեալ օրինակ իւր, յորում բազում ինչ են՝ որք քանզի զկնի Խորենացւոյն եղեն, նմին իրի զլանայ նորին մատենագրի տալ զայն աշխարհագրութիւն. այլ 'ի յետագայից յերիւրեալ կարծէ որ յիններորդ կամ 'ի տասներորդ դարու. բայց ոչ գիտէ թէ այնպիսի բանք ոչ գտանին 'ի ձեռագիրս: Եւ երկրորդ՝ վէր 'ի վերոյ տեսութիւն քննել նորա զբանս մատենագրին, և ոչ ամենայն ասացուածոցն քաջ միտ դնել, զոր աստ 'ի վեր հանցուք:

Քանզի որպէս տեսեր՝ նախագրեալ բանք Խորենացւոյն յայտ առնեն, թէ զոր ինչ ինքն կամեցաւ՝ զայն էառ 'ի Պապայ և յայլոց. և այնպէս ինքն յօրինեաց նոր իմն փոքրիկ աշխարհագրութիւն. որպէս և այլ բազում մատենագիրք մինչև ցայժմ առնեն յեւրոպիա. վասն որոյ և յետ յիշելոյ զաշխարհագրութիւն Պապայ, ասէ թէ ծայրաքաղ կամիմ առնել, փնչանաւորս միայն առնլով 'ի նմանէ: Բայց Սէն Մառդէն ոչ խորհի այսպէս. այլ ընդդէմ բանից Խորենացւոյն համարի՝ թէ ամենայն որ ինչ գրեալ կայ յայնմ աշխարհագրութեան՝ առհասարակ առեալ է 'ի Պապայ, կամ թէ մանաւանդ թարգմանեալ. մինչև յայտնի թարգմանութիւն կոչել զայն 'ի թղթ. 387. և զյօրինող նորին անուանել թարգմանիչ: Յետ այսպէս դնելոյ 'ի մտի՝ և զայլ թերութիւն ջանայ արկանել 'ի վերայ այնր աշխարհագրութեան. այսինքն է՝ զոր ինչ ինքն անյարմար դատի Պապայ կամ Բարբոսի՝ զայն 'ի թարգմանչէն յաւելեալ վճռելով սահմանէ թէ ընդէր եղեալ է այսպէս կամ այնպէս. որովհետև ոչ գտանէր,

[1] Յիշէ անդէն՝ թէ 'ի գրատան ոչինչ տարբերութիւն ունէր ասէ 'ի տըփարիզու ձեռագիր միայն գտանէր տպագրելոյն: Այլ որպէս գրեցաք 'ի վեմզնոնաշխարհութեան քաղաքաց. որ և թոյլ՝ այն չէ գործ Խորենացւոյն:

ասէ, այն բան 'ի սկզբնագիրն Պապպոսի. Թէպէտ և նոքին իսկ ոչ գիտէ, թէ զինչ եդեալ էր 'ի սկզբնագիրն, այլ մտացածին կարծեօք ասէ զայդ: Օրինակի աղագաւ յիշատակեմ յայսմ աշխարհագրութեան բոյսք՝ մանաւանդ ծխանելիք սակաւագիւտք. զայսոսիկ 'ի թղթ. 387. 'ի Թարգմանչէն կարծէ յաւելեալ, յոյր սոկս և զԹարգմանիչն կարծէ լեալ բժիշկ ոք: Տես ուր առեալ տարան զնա վրիպակ մտածութիւնքն իւր և չկալ հաստատուն 'ի վերայ բանից մատենին, որ յայտնի զնէ ոչ զամենայն առեալ 'ի Պապպոյ և ոչ թարգմանեալ, այլ միայն ծայրաքաղ արարեալ:

Այլուր զայս մատեան կարծէ լինել ոչ թարգմանութիւն, այլ համառօտութիւն աշխարհագրութեան Պապպոյ. և յայնժամ ևս զայն բան զոր անդէպ մարկանի Պապպոյ՝ արհամարհելով յառաջ բերէ, իբր խանգարիչ լեալ աշխարհագրութեան Պապպոյ: Որ ինչ վերաբերին, ասէ 'ի թղթ. 303. առ աշխարհ Հայոց և առ շրջակայս նորին, յայտ է թէ 'ի բաց եթող յայսմ աշխարհագրութե, զորս գրեալ էր Պապ. և փոխանակ այնր եդ ծանօթութիւնս հանեալ կամ 'ի հայկազուն մատենագրաց, և կամ զորս ինքն գիտէր. որպէս են գաւառք հայաստանեայց, Վրաց և Աղուանից: Յետ այսպէս ասելոյ՝ փոխանակ գովելոյ զնա, լուր զինչ ասէ 'ի թղթ. 304. "Այս խառնուրդ տեղեկութեանց առեալ յայսպիսի զանազան աղբերաց, ետ նմա գործել գործողութիւնս կրկին, որք չփոթութիւն մեծ արկին յայսմ մասին իւրոց աշխատութեանց": Պակասութիւն գտանէ նաև 'ի վկայութիւնս Պտղոմէայ յառաջ բերելոյ յայսմ աշխարհագրութեան՝ ասելով 'ի թղթ. 304. Հայկազեան աշխարհագիրն բազում ուրեք 'ի սկզբան անդ յիշէ զաշխարհագրութիւն Պտղոմէայ, այնպէս ցուցանելով թէ այս մատեան իւր է բովանդակութիւն ինչ Պտղոմէայ և Պապպոյ. զի բերէ հատուածս ինչ բանից Պտղոմէայ սուղ ինչ համառօտեալս. բայց քանզի տարբերութիւնք գտանին 'ի նոսա զորս նշանակեցաք, յայտ է թէ առնու զայնոսիկ ոչ 'ի բնիկ գրոց Պտղոմէայ, այլ անշուշտ 'ի գրոց Պապպոյ՝ որ յիշեալ էր զայն հատուածս Պտղոմէայ, որպէս հաւանական թուի: Այսպէս գրէ Սէն Մարդէն. զի ոչ յիշէ թէ Խորենացին զայնոսիկ ոչ բերէ 'ի վկայութիւն իբր բուն հատուած բանիցն Պտղոմէայ, այլ զիմաստ բանիցն միայն առեալ. զի որ զայնչափ յունական մատենագիրս առ իւր ունէր, յորոց եհան զիւր պատմագրութիւն, զի՞արդ

պակասէր առ Նմա Պտղոմէոս, և ստիպեալ մոռանայր 'ի բանից Պտղոմեայ, որպէս ինքն Սէն Մառտէն ըստ կամի հերձէ ։ Բայց յայսմ վայրի յառաջ բերցուք զվրիպակս աշխարհագրութեան Խորենացւոյն տպագրելոյ 1752 . զոր զայն եւեթ ունելով 'ի ձեռին Սէն Մառտէն, եդ 'ի մտի լինել ընտիր բան աշխարհագրութեան Խորենացւոյն ։

### Ա. Վրիպակք աշխարհագրութեան Խորենացւոյն տպագրելոյ յամին 1752 ։

Սէն Մառտէն 'ի թղթահամարն 304. 305. գրէ՝ թէ հայկազեան աշխարհագրութիւն Խորենացւոյն կարծե-ցեալ՝ 'ի թղթ. 4. յիշէ 'ի բանից Պտղոմեայ զԱղուէկէկոն. այս անուն չիք, ասէ, 'ի յունականն Պտղոմեայ. և ոչ իսկ ածանցի 'ի յունականէն, այլ 'ի լատինէն Աքուիլոս. իբր ասել արեգդէմ, կամ եղեալ յարևու ։ Զայս ասելով բազում անտեղութիւնս 'ի վեր հանէ. բայց վայրապար տա-ժանի, զի 'ի ձեռագիրս ոչ գրի Աղուէկէկոն, այլ Պտո-ղէկոն ։

Ի թղթահամարն 306. յառաջ բերէ նա ինքն, թէ յաշխարհագրութեան անդ 'ի թղթ. 15. յետ գնելոյ զԴա-նուբ գետ, ասէ, որ է Ցօղոս Ռուսաց ։ Զայս առիթ առեալ՝ գրէ, թէ չգիտէր Ռուսաց յեղերս Դանուբայ, կամ ծանօթութիւն Ռուսաց զկողմամբք Դանուբայ՝ յայսպէս ժա-մանակս եղև. ուստի և թարգմանօղն կամ յօրինօղն այսր աշխարհագրութեան բազում ժամանակօք զկնի լինել պարտ է, ասէ, քան զԽորենացին ։ — Այլ վայրապար և այս, զի 'ի տպագրեալն է միայն, չիք 'ի ձեռագիրս ։

Ի թղթահամարն 309. գրէ՝ թէ յաշխարհագրութեան ընծայեալ Խորենացւոյն՝ թղթ. 17. յիշատակի Քերսոնէ Խրիմ. այլ անունս Խրիմ հաւանական երևի, ասէ, լինել անուն նոր, որ չէր եղեալ յաւուրս Խորենացւոյն ։ — Բայց 'ի տպագրեալն միայն գտանի այս անուն. զի 'ի ձեռա-գիրս դնի միայն Քերսոնէ կամ Քերսոնն ցամաք կղզի ։

Ի թղթահամարն 310. ասէ. Այս աշխարհագրութիւն 'ի խօսելն զժողովրդոց՝ որ յասիականն Սարմատիա, թղթ. 30. յիշէ զՇրուան. բայց ամենայն արևելեան մատենա-գիրք, ընդ որս և Մասուտի, վկայեն՝ թէ այս էր անուն նախնի Ալպանիոյ (Աղուանից). և սկսաւ 'ի գործ ածիլ առ տէրութեամբ թագաւորին Պարսից անուանեալ Խոս-

րով Նուշիրվան․ որ էր 'ի մէջին անդ վերջերորդ դարու․ ուստի և զկնի Խորենացւոյն։ — Բայց 'ի տպագրեալն միայն դնի Շապուհ․ իսկ յերկուս ձեռագիրս դնի Զենոն․ և 'ի միւսումն Շապուհ ։

Ի Թղթահամարն 311․ Այս աշխարհագրութիւն, ասէ, 'ի չորրորդ Հայս 'ի կարգս գաւառացն նորա յէջ 33․ յիշէ Շարունի գաւառ․ այլ ըստ գրելոյ Յոհաննու Մամի-կոնենի այս անուն եղաւ 'ի սկիզբն եօթներորդ դարու․ ուստի և զկնի Խորենացւոյն։ — Բայց և այս անուն չիք 'ի ձեռագիրս։

Ի Թղթահամարն 311․ Աշխարհագրութիւնս այս յէջ 39․ յառաջադաշն Արաբիա յիշէ, ասէ, զՓառանիտիս, և անդ դնէ զտունն Աբրահամու․ բայց յայտ է թէ, ասէ, որն էր Փարանիտիս գաւառ․ իսկ զտունն Աբրա-համու արաբացիք դնեն 'ի Մէքքէ։ — Այս և այլօրինակ դնի 'ի ձեռագիրս այսպէս․ Փառանիտս յորում Մոքէ, ուր զտունն Աբրահամու ։

Ի Թղթահամարն 313․ Զկողս քաղաքն յիշատակեալ 'ի Խորենացւոյն 'ի Թղթ․ 39․ նոյնացուցանէ Սէն Մար-տէն ընդ Քուֆահ անուան․ և զի Քուֆահ էր, ասէ, քա-ղաք' շինեալ յամին 638․ վասն որոյ և յետոյ յոյժ քան զԽորենացին։ — Ի ձեռագիրս չիք անունս Կողս․ այլ փո-խանակ այնր գրի Կողշս քաղաք․ իսկ Կողշս, որպէս նաև Կողս, են այլ անուանք յանուանէս Քուֆահ։

Ի Թղթահամարն 315․ ասէ, թէ յայսմ աշխարհա-գրութեան 'ի գաւառս Մարաց[1] դնի Ռուան․ այլ այս, ասէ, ինձ երևի լինել Ռէյան․ յոր անուն կոչեցին Տաճիկք (որք էին յետ Խորենացւոյն' յեօթներորդ դարուն սկը-սեալ) զմասն ինչ հայաստանեայց, որոյ մայրաքաղաք էր Երևան։ — Բայց 'ի ձեռագիրս ոչ գրի Ռուան, այլ Ռուէլ։ Սոյնպէս և անունս Կնշրիմ եդեալ յԱսորիս յէջ 38․ Խորենացւոյն, 'ի ձեռագիրս գրի Կշրիս կամ Կշրիմ․ վասն որոյ վայրապար ընդդիմութիւն է Սէն Մարտէնի։ Իսկ զՄուծղ եդեալ յէջ 41․ Խորենացւոյն յարաւաստան կամ յասորեստան, վայրապար նոյն անուն կարծէ լի-նել ընդ Մոսուլ անուան․ մանաւանդ զի Խորենացին անդանօր յիշէ զՆինուէ քաղաք իբր տարբեր 'ի Մուծղ անուանէ և տեղւոյ․ զոր այս Նինուէ էր' որ այժմ կոչե-ցաւ Մուսուլ։

1 Սէն Մարտէն գրէ 'ի գաւառս Ատրպատականի։

### Բ. Վրիպակք պատճառաւն եղելոց 'ի Սէն-Մառդէնէ :

Ի Թղթահամարն 305. գրէ Սէն Մառդէն՝ թէ հայկազեան թարգմանիչն այսր աշխարհագրութեան յէջ 15. զՓրանկս գնէ բնակեալս 'ի Գաղղիա. արդ եղեալ թէ, ասէ, թարգմանիչն էր Խորենացին, ճշգրտիւ խօսելով թէպէտ մարթ էր Խորենացւոյն խօսել զՓրանկաց իբր զբնակչաց Գաղղիոյ, բայց դժուարին երևի հաւատալ յայնմ ժամանակի ծանօթ լինել այամ 'ի հայաստան. և յայտնի լինի թէ իւր թարգմանութիւնն է աղաւաղանք իմն. զի անկարելի էր Բաբբատի կամ Պապայ՝ որ գրէր 'ի յերկիր ինչ յոյժ տարակայեալ 'ի Գաղղիոյ՝ զոր օրինակ էր Աղեքսանդրիա, և նախ քան զամն 400. կարող լինել զՓրանկս բնակեալ անդ 'ի Գաղղիա, որք տակաւին բնակէին յայնկոյս Ռհենոսի, և չէին ծանօթ սահմանացն որ յայսկոյս Ռհենոսի, բայց եթէ հինահարութեամբ իւրեանց: Եւ ևս, ասէ, զազգն Փրանկաց բնակելոց 'ի Գաղղիա, կոչէ հզօր. այլ յայնժամ չէին տակաւին հզօրացեալք ըստ ամենայնի 'ի Գաղղիա, յորում ժամանակի գրէր Խորենացին. այսինքն է յամին 460. ըստ Նորա:
— Առ որ ասելի է. այս բան ահա յայտնի կացուցանէ, թէ աշխարհագրութիւն Խորենացւոյն չէ թարգմանութիւն Պապայ, և ոչ իսկ բոլորովին առեալ 'ի բանից Պապայ, որպէս ինքն Սէն Մառդէն եղեալ է 'ի մտի, այլ ծայրաքաղ արարեալ զմեծամեծսն և զնշանաւորսն միայն, որպէս ինքն իսկ Խորենացին վկայէ վասն իւր, որում չէ քաջ մտօ եղեալ Սէն Մառդէն. վասն որոյ և յաւելորդս տաժանի: Ապա յայտ է թէ առնու զայս Խորենացին կամ 'ի գրոց այլոց, և կամ 'ի պատմելոյ մերոց վաճառականաց, որք շրջէին ընդ զանազան աշխարհս: Իսկ վասն անուանս հզօր, ինքն միայն զտպագրեալսն ընթերցեալ՝ կարծէ թէ Խորենացին զՓրանկս կոչէ հզօր. զի որ 'ի տպագրեալն եղեալ կայ վասն Գաղղիոյ՝ "Ունի քաղաքս և ազգս բազումս, և հզօրս, զազգն Փռանկաց„, հնագոյն օրինակն ձեռագիր այսու կետադրութեամբ բերէ զայս բան. "Ունի քաղաքս և ազգս բազումս և հզօրս. և զազգն Փռանգաց„:

Ի Թղթահամարն 309. Այս աշխարհագրուն̃, ասէ, զցամաք կղզին Քերսոնի քերսոնէսից տալով յէջ 17.

զքրիստոնէութիւն մուծեալ առ յայն կղզի. այլ յաւուրս Պապայ և Խորենացւոյն քանզի Քերսոն չէր տակաւին անցեալ ընդ տէրութեամբ հռոմայեցւոց, նմին իրի յայտ երկբայական է թէ մուծեալ իցէ քրիստոնէութիւն 'ի նմա: — Բայց քաջայայտ է գիտնոց, զի պատմութիւնք այնոցիկ կողմանց և վասն այնր ժամանակի՝ անորոշ են առհասարակ և ոչ յայտնի ամենեցուն. և թէպէտ Ռուսք յամին 986. ընկալան զքրիստոնէութիւն, բայց քերսոնացիք 'ի նախնումն չունելով ինչ կապակցութիւն ընդ Ռուսս՝ վայրապար է զժամանակ դարձի սոցա չափել 'ի ժամանակէ դարձի Ռուսաց: Այլա ուրեմն որ ինչ երկբայական է և անորոշ՝ չէ արժան քաջի առն քննաբանի նիւթ առնուլ հաստատութեան իւրոյ դատաստանի, և զմատենագիրն տարագրել յիրաւանց և յանուանէ մատենագրութեան իւրոյ. այլ մանաւանդ բանի նորին Խորենացւոյ հաւատալով ասել, թէ այս ցամաք կղզի գէթ լոկ մասին ընկալեալ էր զքրիստոնէութիւն յառաջ քան զանցանելն ընդ տէրութեամբ կայսերաց:

Ի Թղթահամարն 311. վասն յիշելոյ Խորենացւոյն յէջ 39. յապառաժին Արաբիա զտունն Աբրահամու 'ի Մէքքէ՝ այնպէս ցուցանէ Սէն Մառդէն, թէ այս աւանդութիւն վասն տանն Աբրահամու ոչ գոյր յարաբացիս նախ քան զՄահմէտ, որ էր յեօթներորդ դարու. ուստի և է զկնի Խորենացւոյն. այլ թէ և դիցուք, ասէ, թէ գոյր, տակայն 'ի մէջ իւրեանց միայն յԱրաբիա. իսկ արտաքոյ Արաբիոյ չէր մարթ ծանօթ լինել այնմ, բայց եթէ յետ ծաւալելոյ դենոյ Տաճկաց՝ որ եղև զկնի Խորենացւոյն: — Զայս պատճառ ևս 'ի կարգս նախագրելոյն արժան է դասել, յանորոշ և յերկբայելի իրաց հաստատուն ինչ վճռել: Սակայն ասելի է՝ թէ արաբացիք իշխեալք յիսմայելէ որդւոյ Աբրահամու՝ յառաջ քան զՄահմէտ ունէին զայն աւանդութիւն վասն տանն Աբրահամու. յորոց լուաւ 'ի հարկէ զնոյն և Մահմէտ. և ծանուցեալ իսկ էր այն նաև շրջակայ ազգաց, մանաւանդ ազգին մերոյ՝ որք վաճառականութեան աղագաւ երթևեկս առնէին յամենայն տեղիս, նաև 'ի կողմանս Արաբիոյ: Բայց պատճառ յետ Մահմէտի առաւել ծանօթանալոյ այն է՝ զի զանազան ազգք հեռաւորք ընդունելով զդենն նորա, 'ի զանազան ազգաց և յաշխարհաց յաճախեցին այնուհետև գնալ յուխտ 'ի Մէքքէ:

Ի Թղթահամարն 314. յայնմ աշխարհագրութեան, ասէ,

Փէրսէնկն պարսկական՝ անուանի փարսախ. այլ այս է ա-
ծանուցեալ յարաբացւոց հնչմամբս Ֆարսախ, որպէս 'ի գործ
ածէին արաբացիք յետ վեցերորդ դարուն. ուստի և յետոյ
է քան զխորենացին: — Ահա և զայս բերէ իբր մի յե-
րևելի պատճառաց առ 'ի ստարացուցանել և ասել թէ
այն աշխարհագրութիւն ոչ է Խորենացւոյն: Բայց նախ
մարթ է ասել թէ արաբացիք այնպէս 'ի գործ ածէին
նաև յառաջ քան զվեցերորդ դար. զի չունի ինչ հիմն
'ի ցուցանել զներհակն: Եւ երկրորդ՝ հայկական անունս
փարսախ ոչ է ածանցեալ 'ի հնչմանէ արաբացւոյն, որ-
պէս ինքն համարձակ վճռէ, այլ 'ի բնիկ պարսկական
հնչմանէ. որպէս և զայլ բազում գտանեմք այսպիսի այ-
լայլութիւնս ածանցեալս առ մեզ 'ի պարսկականէն:

Ի նոյն թղթահամարն այսպէս գրէ Սէն Մառտէն.
“Կարէի գտանել և զայլ բազում բանս, բայց կարծեմ
բառ բաւականին ցուցաւ, թէ չէ մարթ այսր աշխարհա-
գրութեան լինել թարգմանեալ կամ շարագրեալ 'ի ժա-
մանակս Մովսէսի խորենացւոյ„: Զայս ասացեալ՝ ածէ
ստորև դարձեալ իբրև ապացոյց զայլ օրինակ, որ է ա-
նունս Թուրք, յիշատակեալ յաշխարհագրութեան Խորե-
նացւոյն յէջ 43. 'ի գրեալն զՍկիւթիոյ: Այս անուն,
ասէ Սէն Մառտէն, “ոչ գտանի 'ի պատմութեան արևե-
լից և Բիւզանդիոյ, բայց եթէ իբր յետ վեցերորդ դա-
րու (որով լինի զկնի Խորենացւոյն). և ոչ յիշատակի
'ի հայկազեան պատմութեան Մովսէսի խորենացւոյ. թէ-
պէտ և բազում առիթք գտանէին, ուր անկ էր յիշել
եթէ էր ծանուցեալ յիւր ժամանակս„: — Բայց և աստա
նօր թերի գտանի այրն 'ի կարևոր հմտութեանց, ընդէր, չգի-
տեմ, անգիտացեալ թէ զԹուրքս յիշեն և Մելա աշխար-
հագիր 'ի Ա. գիրս 'ի վերջն 19 գլխոյն, և Պլինիոս գիրք Զ.
գլ. 7. որք էին յառաջին դարուն Քրիստոսի, բազմօք յա-
ռաջ քան զխորենացին. ապա ընդէ՞ր չյիշիցէ և խորենա-
ցին. մանաւանդ արժան էր զարմանալ ընդ հմտութեան
խորենացւոյն, և բանիւ նորին զայլս լուսաւորել. իսկ զի
ոչ յիշէ Խորենացին 'ի պատմութեան իւրում, քանզի ար-
շաւանք Թուրքաց որով ծանօթ գտան նոքա 'ի պատ-
մագրութիւնս՝ եղև 'ի յետագայ դարս զկնի Խորենացւոյն.
իսկ նախնի պատմութիւնք ազգին մերոյ, զորովք յածի բան
Խորենացւոյն, չունին ինչ կապակցութիւն ընդ գործս
Թուրքաց:

Ի թղթահամարն 310. ասէ. Այս աշխարհագրութիւն

զբազում գաւառս Հիւսիսակողման Հայաստանեայց՝ յիշէ 'ի Վիրս և յԱղուանս. զկնի յիշէ զնոսին և 'ի Հայաստան. յայտ է թէ սակս անկեալ գոլոյ ընդ տէրութեամբ Վրաց և Աղուանից. բայց այս եղև զկնի կործանելոյ թագաւորութեան Արշակունեաց 'ի Հայս՝ որ եղև յամին 428. ուստի և անյարմար Խորենացւոյն այսպէս գնելոյ. աւր թողցուք զի և բազում մատենագիրք վկայեն, ասէ, յետ բազում ժամանակաց ընդ տէրութեամբ Հայկազանց իշխանաց լեալ այնց գաւառաց։ — Բայց պարտ էր նմա գիտել, զի նաև նախ քան զկործանել թագաւորութեան Արշակունեաց մերոց՝ այն գաւառք ընդ ժամանակս ժամանակս անցին ընդ տէրութեամբ Վրաց և Աղուանից, որպէս յիշէ Բուզանդ, զորս դարձեալ 'ի Հայս գրաւեաց Մուշեղ սպարապետ Արշակայ թագաւորին. նմին իրի յիշելն Խորենացւոյն զայն գաւառս 'ի Վիրս և յԱղուանս՝ յայտ առնէ թէ յաւուրս նորա այն գաւառք դարձեալ անցեալ էին 'ի ձեռս նոցա. մանաւանդ զի բարձումն թագաւորութեան Արշակունեաց եղև առ ժամանակօք Խորենացւոյն. իսկ վերստին գրուելն՝ բազմօք զկնի Խորենացւոյն, զի եղև 'ի թագաւորացն Բագրատունեաց. և վասն այսր չէ անկ ստաբացուցանել զայս աշխարհագրութեան 'ի Խորենացւոյն։

Ի թղթահամարն 312. գրէ. Այս աշխարհագրութեան յէջ 39. զՊասրա դնէ 'ի Բաբելոն. այլ քաղաքն այն քաղաք շինեալ եղև յամին 635. ոչ կարէր, ասէ, յիշել զայն Խորենացին։ Այսպէս դնեն մատենագիրք արաբացւոց. զորոյ զշինութիւն չէ մարթ առնել թէ էր նորոգութեան. զի մատենագիր ոմն նոցա ասէ՝ թէ բազմօք յառաջ քան զշինութիւն խնդրէին արաբացիք գտանել տեղի ինչ հաստատուն առ 'ի շինել քաղաք, և նովին խափանել զառաւելութեան Պարսից ընդ հնդկային ծովն. այլ գոլով անմատոյն տեղի Ճախճախուտ՝ հազիւ գտին զայս ցամաք և հաստատուն, որ էր 'ի մօտակայս Օպոլահայ, տեղի ինչ՝ որ էր առ հասարակ քար սպիտակ, յորմէ և զանունն ընկալաւ Պասրահ, որ նշանակէ զազգ ինչ սպիտակ քարի։ Եւ եթէ պնդեսցեն ոմանք թէ և յառաջնումն իսկ գոյր անդանօր փոքրիկ տեղի ինչ Պասրահ կոչեցեալ, բայց հարկ է ընդունել թէ այս քաղաք չեղև հռչակաւոր, բայց եթէ յորժամ արաբացիք իշխեցին. յայնժամ ժամանակի եղև սա գլխաւոր տեղի վաճառականութեան ընդ Հնդիկս 'ի ձեռն Տիգրիսի և Եփրատայ՝ զոր յառաջին առնէին յՕպոլահ քաղաք, որ պահեաց տակա-

սին ընդ երկար ժամանակս զիւր մեծութիւն ։ Իսկ ծաղ-
կելն Պասրայի վաճառականութեան և երթևեկութիւն նա-
ւուց Հնդկաց և ամենայն արևելից 'ի Պասրա՝ զոր յիշէ
այս աշխարհագրութիւն ընծայեալ Խորենացւոյն, եղև յա-
ւուրս խալիֆէից կամ ամիրապետաց արաբացւոց. ուստի
և այն աշխարհագրութիւն ոչ է Խորենացւոյն՝ այլ յետագայի
ուրուք ։ Ցայս վայր Սէն Մառդէն ։ — Այս բան Պաս-
րայի քանզի յամենայն ձեռագիրս աշխարհագրութեան Խո-
րենացւոյն գտանի, պարտ է ասել նախ՝ թէ ոչ միայն
վասն շինուած այսր քաղաքի, այլ նաև վասն այլոց երև-
ելի քաղաքաց գտանեմք տարբերութիւնս բազումս, յո-
րոց մին է և Բաբիլոն, զորոյ զշինօղն ոմանք ասեն զՆեբ-
րովթ, ոմանք զՇամիրամ, և այլք զՆաբուգոդոնոսոր.
որպէս և զշինօղն Եկբատանայ՝ ոմն զԱրփաքսադ համարի,
ոմն զՍելևկիոս, և այլ պատմաբան զՏէյօչէ (զԴէոկկ),
որք յայլ և այլ ժամանակս եղեն. և սակայն ամենայն
քաջ քննաբանք ջանան տալ մեկնութիւն իւրաքանչիւր
մատենագրաց որք այսպէս զանազանեն, և ոչ թէ զգիրս
նոցա մերժեն, կամ օտարացուցանեն 'ի հարազատութենէ
բնիկ հեղինակին՝ զորոյ զանուանն կրէ 'ի վերայ ։ Եւ երկ-
րորդ՝ ինքն իսկ Սէն Մառդէն գրէ, թէ արդէն Օպօլահ
քաղաք յառաջագոյն էր վաճառատեղի, և մերձակայ տե-
ղին կոչէր Պասրա վասն սպիտակ քարանց. ապա չէ ինչ
ընդդէմ Պասրա անուամբ գտանիլ յաշխարհագրութեան
Խորենացւոյն ։ Այլ առաւել ճահողագոյն էր Սէն Մառ-
դէնին բանիւ Խորենացւոյն ուղղել զբանս արաբացի մա-
տենագրաց, և ասել թէ նոյն իսկ Պասրա անուանեալ
քաղաքն գոյր բազմօք յառաջ քան զամն 635. որպէս
յայտ առնէ վկայութիւն Խորենացւոյն որ յառաջ է քան
զնոսա. և ծաղկիլ Պասրայի վաճառականութեան յառաջ
էր քան զայն ժամանակս խալիֆէից ։ Որպէս և նախ-
նիքն իսկ զայս ցուցանեն վասն վաճառականութեան այնոցիկ
կողմանց. զի ըստ գրելոյ նոցա 'ի վաղ ժամանակաց հետէ
նաւք եկեալք յՈվկիանոսէ՝ ընդ Եփրատ ելանէին մինչև
'ի Բաբիլոն. յոյր սակս մեծն Աղեքսանդր 'ի բերան Եփ-
րատայ կառոյց տեղի մեծ, ուր նաւք 'ի Հնդկաց եկեալ
ժողովէին. և որպէս պատմեն՝ յայնմ ժամանակի Պար-
սիկք էին որք խափանել կամէին զվաճառականութիւն
արաբացւոց, և ոչ թէ արաբացիք զՊարսիցն [1] ։ Նմին իրի

1 Տես զյիշատակն մեր 'ի գլուխն վաճառականութեան վասն ուղղոյն Եփրատայ. հատոր Ա. երես 116 ։

Վարդապետի »: Որ և տպագրեալ է 'ի Կոստանդնուպօլիս յամի տեառն 1728. և 'ի Սէն Մառդէնէ Թարգմանեալ գաղղիարէն, և եդեալ յերկրորդում հատորի յիշատակարանի իւրում տպելոյ 'ի Փարէզ յամին 1819: Ցայսմ աշխարհագրութեան ըստ մեծի մասին է ստորագրութի, մանաւանդ թէ անուանակոչութի տեղեաց հայաստանն աշխարհիս, քան թէ այլոց աշխարհաց: Եւ քանզի բազում ուրեք յետ դնելոյ զհին անուանս տեղեաց՝ նշանագրէ նաև զնոր անուանս, ոչ սակաւ լոյս տայ մեզ յայսմ մասին. որպէս կարես տեսանել 'ի մերում ստորագրութ մեծին Հայոց. զոր բազում ուրեք յիշատակեսցուք, առեալ բաղդատութեամբ զանազան ձեռագրաց: Ցորոց տարբերութեն իմանասցուք ինչ ինչ յաւելեալ և յայլմէ ումեքէ. զոր վասն այնորիկ կոչեսցուք Ընդօրինակող Վարդանայ:

## ԹՈՄԱՍ ԿԻԼԻԿԵՑԻ

Սորա աշխարհագրութին է համառօտ իմն քաղուած աշխարհագրութեան Խորենացւոյն, թէպէտ և ոչ ամենայն աշխարհաց յիշելոց 'ի նմանէ, այլ յԱսորւոց սկսեալ: Զհին անուանցն դնէ զհնգետասան աշխարհս Հայոց, անուանեալ խորագիր այսպէս. «Սահմանք եղլխաւորութեան աշխարհէ Մեծաց Հայոց»: Ցետ աւարտելոյ զսոսա՝ զհին անուանցն դնէ զԿիլիկիա, և զբազում բերդս նորա յանուանէ յիշէ՝ զորս ոչ յիշէ այսպէս յայլ աշխարհս. և յետ գրելոյ թէ լինի 'ի Կիլիկիա Թուզ, Նաւան, սերկևիլ, և այլն, այսպէս գրէ. «Եւ այլ բիւր բարիս անթուելիս: Եւ բարունին հանճարեղ Թուման, յօրինող այսմ բանի»: Այս բան յայտնի ցուցանէ զԹումաս լինել 'ի Կիլիկիոյ. յայլ սակս և տուեալ՝ քան զայլոց աշխարհաց՝ զիւրոյ հայրենեացն յիշեաց զբերդս:

## ՅՕԴՈՒԱԾ Բ

### Աշխարհագիրք յայլքէն Յունաց :

### ՍՏՐԱԲՈՆ

ԱՇԽԱՐՀԱԳԻՐ ճոխաբան, լի պատմականն և աշխարհագրական տեղեկութեամբք. բայց յունական ձեռագիրք օրինակք նորին յոյժ սակաւք, որպէս կարես տեսանել 'ի յառաջաբանութիւն տպագրողաց. և բազում ուրեք աղձատեալք, որպէս յայտ առնեն 'ի վերլուծութեան նորա Քսիլանդեր՝ որ զայն 'ի լատին թարգմանեաց, և Գազաւբոն՝ որ բազում վերլուծութիւնս յաւել. ուրեք ուրեք և պակասորդք, որպէս և 'ի վերջին եօթներորդ գրոց. զորս 'ի համառօտութենէ նորին լնուն, որ տպագրեալ կայ 'ի վախճանի գրոց նորին Ստրաբոնի, որք են գիրք ժէ: Ի զանազան տպագրութեանս որք եղեն յեւրոպա յունարէն և լատիներէն, թէպէտ ընտիր տպագրութիւն է Ամստերդամին յամին 1707. բայց ընտրելագոյն զատի Փարիզուն որ 'ի 1620. սակս անսխալ տպագրութեանն. և այն է զոր յիշատակեն բանասէրք, որպէս և մեք 'ի թիւս թղթահամարոց:

Ստրաբոն էր կապադովկացի ծնեալ յԱմասիա. 'ի մօր կողմանէ սերեալ 'ի Դորիլաւոս անուանէ ումեմնէ, որ էր բարեկամ և զօրավար Միհրդատայ Եւերգետայ անուանելոյ. մին յուսուցչաց նորին եղև Տիրան, որ էր հռչակաւոր քերթող կամ քերական: Զայսպիսի մերձաւորութիւն սորա առ ազգ և առ աշխարհ Հայոց տեսեալ՝ մարթ է ումեք յերկբայս լինել վասն ազգին իւրոյ, արդեօք ընիկ յոյն իցէ թէ ոչ. զի և յունական լեզուն գոլով յայնժամ ընդհանուր լեզու 'ի գրաւորականս, որպէս այժմ գաղղիականն, ամենայն բանասէրք այնր ժամանակի որք 'ի մէջ Յունաց ընակեալ էին և 'ի նոցանէ ուսանէին, 'ի յոյն լեզու գրէին զգիրս իւրեանց: Ծաղկեցաւ Ստրաբոն յաւուրս Օգոստոսի և Տիբերեայ կայսեր, յամի տեառն իբր 14. ճանապարհորդեալ ընդ ծով և ընդ ցամաք, յարևելից յարևմուտս՝ 'ի հայաստանեայց սկսեալ, և 'ի հիւսիսոյ 'ի հարաւ՝ սկսեալ 'ի Պոնտոսէ մինչև 'ի խորս Արաբիոյ.

Սա 'ի ժԷ. գիրս իւր խօսի զՀայաստանեայց. բայց քանզի 'ի կարգին նախ զնէ զՄարս, ապա զՀայս, բազում ինչ յիշէ զՀայոց 'ի խօսելն զաշխարհէն Մարաց՝ ասե- լով. այսպէս է և 'ի Հայս, կամ այս ինչ գտանի և 'ի Հայս։ Ոչ դասակարգէ զբաժանմունս գաւառաց մեծին Հայոց, որպէս առնէ Պտղոմէոս. այլ զանուանս 'ի գաւառաց յիշէ կամ այլայլութեամբ, և կամ աղաւաղեալ անուամբք. զոր օրինակ Փանինի. Գամիսինի. Օրխիստինի՝ որ բազում հեծելազօրս ունի ասէ. Գորդինի՝ որ է Խորձեան. Գամ- վեսինի։ Սոքա, ասէ, առաւել 'ի հիւսիսակողմն անկանին, վասն որոյ են գաւառք ձիւնախաղխաղք. Սոփինի, որ է Ծոփք. Ակիլիսինի, որ է Եկեղեաց, և այլն. յորոց զա- նանս գտցեն ցանկացօղք 'ի մեծ Հայս 'ի տեղիս իւրեանց։

## ՊՏՂՈՄԵՈՍ ԿՂԱԴԻՈՍ

Իմաստուն մականուանեալ 'ի Յունաց, ծնեալ 'ի Պտ- ղոմայիդ Եգիպտացւոց, և կացեալ յԱղեքսանդրիա յա- ւուրս Ադրիանոսի և Անտոնինոսի կայսերաց յերկրորդ դարուն Քրիստոսի։ Բաց յայլոց մատենագրութեանց ունի աշխարհագրութիւն. յորում իւրաքանչիւր աշխարհք դա- սակարգեալ կան ըստ աստիճանաց երկայնութեան և լայ- նութեան ըստ ծանօթութեան այնր ժամանակի. որ և համա- րի զանձ հնութեան առաջի բանասիրաց [1]։ Սա ինքն Պտո- ղոմէոս է՝ զոր յիշէ մերս Խորենացի յաշխարհագրութեան իւրում։ Յերեքտասաներորդ գլուխ մատենին իւրոյ ստո- րագրէ և զՄեծ Հայս ըստ իւրում ոճոյ, գծելով զսահ- մանակցութիւնս զոր ունի 'ի զանազան կողմանց. յիշէ և զլերինս մեծ գետոյն, և ըստ ընթացից նոցին գտանէ ապա զգաւառս և զքաղաքս՝ բազմօք առաւել քան զՍ- տրաբոն, այլ 'ի պատմական ծանօթութիւնս սակաւախօս է քան զնա, մանաւանդ թէ ոչինչ։ Եւ քանզի այն ա- նուանք գաւառաց ըստ մեծի մասին են աղճատեալք և անծանօթք՝ զանց առնեմք յիշել. որպէս և Կելլարիոս իսկ զանց առնէ սակս անծանօթ գոլոյ նոցա անուանց։ Միայն զծանօթսն յիշատակեալս 'ի Պտղոմեայ կարեմ գտանել

[1] Տպագրութիւն աշխարհագրութեան Պտղոմէոսի երևելի է. զոր յու- նարէն և լատիներէն տպագրեաց Պետրոս Պերտիոս Պէլճէոս։ Ի նոյն յաւելեալ և զերկրորդ հատոր, յո- րում բաց յայլոց գտանին և Ճանա- պարհորդութիւն Անտոնինոսի կայսեր, և տախտակն Պէօյթինկերեան. յորոց և ինչ ինչ առեալ ունիմք։

բոյն՝ որ ազգականն էր նորա և որդեգրեալ 'ի նմանէ.
Մեռաւ տարաժամ 56 ամաց յաւուրս Տիտոսի կայսեր 'ի
Հրայրեացն անդ Վեսուվ լերին մինչդեռ 'ի մօտոյ զննէր,
յամի տեառն 79: Վասն ծննդեան տեղւոյ սորին վէճ
է առ բանասէրս. ոմանց 'ի Վէռօնա դնելով, և ոմանց 'ի
Կօմօ: Բնական պատմութիւն մակագրեալ մատեան նորա
յայտնի է ամենեցուն, որ է գանձարան անբաւ տեղե-
կութեանց. ոչ միայն 'ի վերայ բնական բերոց, բժշկական
դեղորէից, այլ նաև աստեղաբաշխութեան և արուեստից
նախնեաց. սուրբք սուրբք նաև հին պատմութեանց: Նախ
ստորագրէ զհամօրէն աշխարհ. ապա զամենայն ազգ բերոց
աշխարհի յիշել նկարուի: Յաշխարհագրական մասին 'ի Զ.
գիրս. 'ի գլ. 9. ստորագրէ նաև զմեծ Հայս. բայց չանկա-
ցողք և այլոց տեղեկութեանց հայաստանի՝ ընթերցցին զա-
մենայն գիրս նորա, և յաճախ իմանան եթէ զինչ է և
քանի արժիցէ մատեանն Պլինիոսի հռչակաւոր գանձն
հնութեան, և գտանիցեն զայլ և այլ ծանօթութիւնս 'ի վե-
րայ Հայոց աշխարհիս ցրիւ յայլ և այլ տեղիս, զոր ոչ
կարծէին: Ի բազում մեկնչաց նորա, քանզի ընտրելա-
գոյն է Հարտուինին, զնորայն միշտ 'ի կիր արկաք յայսմ
մատենիս հնախօսութեան: Նախ քան զմեկնութիւն և
զքննութիւն սորա եւրոպացիք իբրև առասպելախօս ոք հա-
մարէին զՊլինիոս. բայց յետ քննութեան ծանեան զյարդ-
սորա. որպէս և երբեմն նախ քան զՃանապարհորդելն իւ-
րեանց յԱսիա՝ զամենայն պատմեալս Մարկոսի Պօղոսի
յառասպելեաց սակի գրեալ էր եւրոպացւոց. այլ յետ
ճանապարհորդելոյ իւրեանց ծանեան զճշմարտախօսութիւն
առնն: Սոյնպէս և զբազում ինչ 'ի պատմելոցն Պլինիոսի
ստուգեցին՝ պատմեալ գտանելով և առ այլ նախնի
մատենագիրս, զոր ոչ կարծէին. իսկ զորս ոչ գտին՝ դիւ-
րաւ իմաստասիրեցին, թէ առեալ է նորա յայլոց մա-
տենագրաց՝ զորս ինքն Պլինիոս յիշէ. բայց այժմ կորու-
սեալ են. ծանեան առեալ նորա ինչ ինչ և յականա-
տես անձանց յորոց լուաւ. յորոց և զանուանս ուրեք ու-
րեք յիշէ. զոր օրինակ վասն ակամն Եփրատայ յիշէ ըզ-
Դոմետիոս Կորբուղոն, և զԼիկինիոս Մուկիանոս. որոց
տեսեալ էր զայն 'ի մօտոյ. բազում ինչ ստուգեցին նաև
յայժմեան ճանապարհորդաց և 'ի բնաբանից:

խարհին հանէին 'ի յոյն Առամէնիոսէ անուանէ, որ էր, ա-
սեն, ընկեր իւրեանց Յասոնին. զԿորտիէա, այսինքն զԿոր-
դուք, հանէին 'ի Կորտիոսէ իւրեանց, որ էր, ասեն, որդի
Դրիբզօլէմայ: Այլ յայտնիսկ որք օտար են ամենեւին
'ի ճշմարտութենէ՝ չէ պարտ անսալ բնաւ, և ոչ իսկ ժա-
մավաճառ լինել 'ի ցոյց ստութեանն. զի գիտակ են այսմ
ամենայն քաջ քննաբանք եւրոպացւոց՝ որք գուն գործեն
լուսաւորել զհնագրութիւն [1]: Ընդ հակառակն չերևի ինչ
փոյթ ամենեւին մերոց մատենագրաց պահել զհին բնիկ
անուանս մերոց սահմանաց. այլ ըստ փոփոխութեան Յու-
նաց կամ այլոց դրացեաց ազգաց՝ նշանակեն և փոխեն:
Յայտնապէս մուծան աստ անուանք այլալեզուք և այլահըն-
չիւնք յաշխարհս մեր, մանաւանդ յեզերս սահմանաց մե-
րոց, որք և են անուանք Ասորւոց, Ասորեստանեայց, Մա-
րաց կամ Ատրպատականաց, Աղուանից և Վրաց:

Դ. Մա 'ի խեղաթիւր լինել բանից նախնեաց և հանել 'ի
նոցունց տեղեկութիւն ինչ վասն հայաստան աշխարհիս՝ հարկ
է ուսանել և իմանալ թէ որով հնչմամբ գրէին զանուանս
քաղաքաց և գաւառաց մերոյ աշխարհին: Քանզի բա-
զում անգամ յայն սակս չգտանեմք ինչ 'ի նոսա, վասն
զի ոչ գիտեմք թէ որով օրինակաւ այլայլէին նոքա զա-
նուանս տեղեաց մերոց. որպէս զԾոփս գրել Սօփինի.
զԴերջանն գրել Տէրքսէնէ. զԵկեղեացն՝ Ակիլիսինի [2].
և այլ ինչ բազում, զոր ուսուցէ քեզ մատեանս այս: Եթէ
այսմ ոչ լինիս մտադիր՝ ոչինչ կարես իմանալ, և ոչ հա-
նել տեղեկութիւն ինչ:

Ե. Որ ինչ գրեն հին մատենագիրք վասն նախնի ժա-
մանակին Պարսից, Մարաց և Ասորեստանեայց, պարտ է
մտադրութեամբ ընթեռնուլ որ ինչ բանք կան 'ի նոսա վասն
ազգին և աշխարհին մերոյ: Քանզի թէ ընդէր սակաւս
գտանեմք տեղեկութիւնս 'ի գիրս նոցա վասն մերոյ աշ-
խարհիս՝ այս է, զի նախնի աշխարհագիրք զմեծամեծ
տէրութիւնս դիտէին ըստ օրինի ստորագրել, և զնոցին
սահմանս. որպէս և պատմագիրք զնոցին պատմութիւնս
պատմել. իսկ զտէրութիւնս որք ստորին էին քան զնոսին՝

1 Բալթեռան 'ի վերլուծութիւնս Մովսիսի ժա. 503. գրէ. "Օրէն էր Յունաց կերպել զամենայն ազգս յիւրեանց գիւցազանց անուանել,: Նոյն 'ի Թղթահաւաքումն 314. վասն անուան Կիւրոս գետոյ, որ է Կուր, մինչ զազգամանել հնչումն Պարսկարանն՝ որ կոչէ Գիւրոն. և Ասպաբանոն՝ որ գրէ Գիւրոս:

2 Զոմանս յառաջ բերէ և Կելլարիոս. որպէս 'ի ստորագրութեան Աղուա-

վեր 'ի վերայ անցանելին բանիւք, մանաւանդ զի այն փոքր տերութիւնք և աշխարհք գոլով ընդ տերութեամբ նոցին իսկ մեծամեծ տերութեանց կամ բոլորովին՝ և կամ հարկատուութեամբ, 'ի ստորագրելն զաշխարհս մեծամեծ տերութեանց՝ 'ի նոսին խառնելին ինչ ինչ և փոքր տե-րութեանց, իբր նոցին սահմանս համարելով: Զայս 'ի ստո-րագրութեան աշխարհին մերոյ առաւել գտցես 'ի կիր ար-կեալ քան թէ այլոցն, վասն զի մեծագոյն տերութիւնքն այնոքիկ էին առհասարակ շուրջ զաշխարհաւ մերով. այսինքն են Մարացն, Պարսիցն, Ասորեստանեայցն, յորս յաւել և զՅունացն, ամենեքին մեզ սահմանակից. բայց ոչ այսպէս կցեալ էին սահմանացն Վրաց, Աղուանից և այլոց կովկասայնոց: Զստուգութիւն պատճառիս յայն-մանէ կարես իմաստասիրել, զի Ստրաբոն, որ ճոխագոյն է 'ի նախնի աշխարհագիրս, բազում ինչ զՀայոցն յիշէ 'ի Մարս և 'ի Պարսս՝ տանելով. այսպէս է 'ի Հայս, կամ այս-պէս առնեն և Հայք. զի 'ի խօսելն զՄարաց և զՊարսից, համարէր խօսեցեալ և զՀայոցն. որպէս բազում անգամ տեսցուք:

Զ. Այսչափ ինչ տեղեկութիւն տան նախնիքն վասն Հայոց աշ-խարհիս, զայն ևս դժուարին լինի գտանել, մի 'ի պատ-ճառս այլայլութեան անուանց, որպէս ծանուցաք 'ի վերոյ, յորոց ոմանք են աղաւաղեալք, և ոմանք բոլորովին փո-խեալք: Եւ երկրորդ սակս գրելոյ զայսմանէ ոչ յաշխար-հիս Հայոց՝ այլ այլուր. և այն հարևանցի. և կամ խառն ընդ այլ բանս. յորմէ բազում արթնութեան և քննութեան պէտք են առ 'ի վեր հանել զայն տեղեկութիւն: Օրինակ իմն՝ զոր եդեալ եմք 'ի խօսելն վասն կուսակալութեան Հայոց յերես 176. թէ ոսկի արձանն Անահտայ որ 'ի մեհենին Եկեղեաց՝ առաջին էր 'ի մէջ ամենայն ոսկի արձանաց որք գտանէին ընդ համօրէն աշխարհ: Զայս տեղեկութիւն առեալ է մեր 'ի Պլինիոսէ. այլ Պլինիոս ոչ խօսի զայսմա-նէ 'ի հայաստան աշխարհիս, այլ 'ի գլուխն ուր խօսի զասիայ. և անդ ոչ նշանագրէ թէ էր 'ի մեհեանն որ յԵ-կեղեաց՝ այլ գրէ, զտեղի մեհենին այնր Անահտայ այլուր նշանագրեալ եմք. և 'ի հայելն յայն տեղի՝ ոչ գտանես ուղիղ անուամբ Եկեղեաց, այլ Ազիլիսենի. զի օտար ազգք այնպէս կոչեն զմեր Եկեղեաց գաւառ այլայլելով: Տես ահա քանի քննութեանց պէտք եղեն յերևան հանե-լոյ զստոյգ տեղի այսր արձանիս: Այսպէս իմա և զայլոց բազմաց:

Է. Որպէս զխալանս անուանակոչութեան տեղեաց մերոյ աշխարհին որք գտանին 'ի գիրս օտարազգի նախնեաց՝ արժան է 'ի գրոց մերոց ուղղագրել, նոյնպէս և զխալանս գրոց տեղեաց գտելոց առ նախնիս՝ անկ է յայժմեան գրոց նոցին ուղղել: Որպէս ասեն նաև անգղիացի հեղինակք ընդհանուր պատմութեան, և Կելլարիոս 'ի ստորագրութեան Աղուանից 'ի Թղթ. 314. որոյ տեսեալ թէ բազումք 'ի նախնեաց գրեն վասն Կիւրոս՝ այսինքն է Կուր գետոյ և Երասխ գետոյ՝ թէ այլ և այլ բերանովք մտանեն 'ի ծով, գրէ. "Այժմեան աշխարհացոյցք ոչ դնեն առանձին մուտ Երասխայ 'ի ծով, այլ զամենայնն խառնեալ դնեն 'ի Կուր. որ այնչափ հաւաստի թուեցաւ Սահակայ Վոսսեայ 'ի լուծմունս Մելայի 'ի Թղթ. 247. մինչև յայտնի բանիւք գրել. Երասխ խառնի 'ի Կուր գետ. զոր օրինակ ոչ միայն Պլուտարքոս և Ապպիանոս, այլ և այժմեան փորձն ուսուցանէ ,,:

## ՅՕԴՈՒԱԾ Դ

### Աշխարհագիրք յայլոց ազգաց:

### ԲԵՆԻԱՄԻՆ ԴՈՒՏԵԼԵԱՆ

ՌԱԲԲԻ հրեայ, ծնեալ 'ի Դուտելա քաղաք Նաւարրայի՝ որ է 'ի Սպանիա, և մեռեալ յամին 1173: Ճանապարհորդեաց յամենայն ժողովրդանոցս իւրեանց որք գտանին յաշխարհի. և գրեաց զպատմութիւն Ճանապարհորդութեան իւրոյ տպագրեալ 'ի Բիւզանդիա յամին 1543. որ համարի Ճշմարտապատում: Յորմէ և ինչ ինչ առեալ գտցես 'ի մերում ստորագրութեան մեծին Հայոց:

### ԷՏՐԻՍ

Արաբացի. մականուանեալ Շէրիֆ իւլ իտն Իտրիս. ծնեալ 'ի Կէվտա քաղաք Ափրիկոյ յամին 1099. և ուսեալ 'ի Կորդովա. գնաց 'ի Սիկիլիա և անդ յամին 1150 արար աշխարհագրութիւն բաժանելով ըստ Պտղոմեայ յեօթն բաժինս: Բազում ինչ գրէ՝ ըստ մասին տեղեկացեալ իւրով Ճանապարհորդութեամբ, և ըստ մասին առեալ 'ի գր-

րոց այլոց. որոյ համառօտութիւն քաղեալ 'ի ձեռն ուրումն որչափ ինչ պէտք են 'ի ծանօթութիւն վաճառականաց, տպագրեցաւ 'ի Հռոմ, և 'ի Փարէզ 'ի 1619. խորագիր ունելով Աշխարհագրութիւն Նուպեան. կարծելով թէ համառօտիչն էր 'ի Նուպիոյ. զոր չընդունի Ռէլանտ: Սովին Նուպեան անուամբ բառ մեծի մասին կոչեն զայն 'ի վկայութիւն: Իսկ սկզբնագիր գործն մնայ ձեռագիր 'ի դրատան Փարիզու, և 'ի դրատան Օքսֆորտի որ յԱնգղիա:

## ԱՊՈՒԼՖԷՏԱ ԻՍՄԱՅԷԼ

Սա էր չէյխ Համայ յԱսորիս, և սուլդան անուանեալ, որ մեռաւ յամին 1332: Ունի աշխարհագրութիւն ընդհանուր, անուանեալ Թագվիմ իւլ պօլտան. յորում բաղում ինչ առնու 'ի նախագրելոյն. ունի և այլ բաղում գործս:

### Գիտելիք վասն աշխարհագրաց այլազգեաց:

Սուղ ինչ ևեթ բան դէպ եղև մեզ առնուլ յաշխարհագրաց արաբացւոց վասն հին աշխարհագրութե հայաստանեայց. քանզի մատենագիր գոլով նոցա յետին դարուց, որպէս տեսեր 'ի վերոյ, նաև գրուածք իւրեանց յազգաս այսր դարուց են: Բայց Սէն Մառդէն յաշխարհագրութե իւրում, նաև 'ի բանասիրական օրագրութեն Փարիզու որ յամին 1828. 'ի սեպտեմբերի, մեծ համարումն ունելով 'ի վերայ մատենագրաց արաբացւոց, բազում ինչ առեալ 'ի նոցանէ գրէ. և կարեկից լինի մեզ սակս ոչ առնլոյ մեր 'ի նոցունց 'ի պատրաստութե մեծին Հայոց: Մեք որպէս թարգմանեալ ունէաք առ մեզ ըզծիհաննիւմայն Քեաթիպ չէլէպիին վասն համօրէն օսմանեան աշխարհին, նոյնպէս և որ ինչ բանք գտանէին վերաբերեալ առ աշխարհագրութի հայաստանեայց առ մատենագիրս այլազգեաց՝ ունէաք առ մեզ թարգմանեալ. բայց զամենայնն գտաք վասն յետագայ ժամանակի, ուստի և վերաբերեալ առ նոր հայաստան. և զայն եւս սակաւ յոյժ, զորս ուրեք ուրեք յիշատակեցաք: Արդ յայսպիսեաց տասի յետագաս մատենագրաց առնուլ բան, և ուղղել կամ ճշմարտուցանել զաշխարհագրութի հին հայաստանեայց որպէս առնէ Սէն Մառդէն, չիցէ վրիպակ մեծ, որպէս եթէ նոր աշխարհագրութե կարգաւորել

զՀին աշխարհագրութիւն. որ թէ քանի անտեղի իցէ՝ յայտնի է գիտնոց ։ Այլ զայսմանէ տեսցես և զկնի ։

## ՅՕԴՈՒԱԾ Ե

### Աշխարհագիրք յարդի նորագոյնոց ։

ԹՈՂՈՒՄ յիշել զԼուպին զօգոստինեան, զՊօտրան, զՄառդինիէ և զայլս, յորոց խուն ինչ տեղեկութիւն հազիւ մարթ է հանել յաղագս հին աշխարհագրութեան Հայաստանեայց ։ Յիշեսցուք աստանօր զնա՝ որ ըստ կարգի այլոց աշխարհագրաց ուրոյն և որոշակի գրեաց զՀին Հայաստանեայց ։

### ԿԵԼԼԱՐԻՈՍ ՔՐԻՍՏԱՓՈՐ

Այր ուսուցիչ Ճարտասանութեան և պատմութեան 'ի Հալլ քաղաք որ 'ի Սաքսոնիա, մեռեալ 'ի 1707. ունի ծանօթութիւն հնոյն տիեզերաց. որ է հին աշխարհագրութիւն հնոյն դարձուցեալ ժամանակի. այսինքն է՝ հանեալ 'ի գրոց նախնեաց՝ որք հասանեն մինչև ցժամանակս Մեծին Կոստանդիանոսի, յերկուս հատորս բաժանեալ ։ Ուր նորա ճշգրտագոյն, զամենայն ինչ վկայութ(եամբ) նախնի մատենագրաց ցուցեալ. յամենայնի հմուտ բաց 'ի հմտութէ հայաստանեայց սակս չունելոյ ինչ գիր առ իւր 'ի մերոց մատենագրաց վասն աշխարհիս Հայոց. զի յայնժամ և ոչ աշխարհագրութիւն կամ պատմութիւն Խորենացւոյն էր թարգմանեալ 'ի լատին. Նմին իրի զթերութիւնս և զվրիպակս զոր առ նուազ ծանօթութեան գրէ, գտանես ուրեք ուրեք ուղղագրեալ առ 'ի մէնջ 'ի մատենիս ։ Եւ մատեան նորա ոչ եթէ աշխարհագրութիւն կամ ստորագրութիւն է հայաստանեայց տիրապէս, այլ տեղեկութիւն ինչ յաղագս հայաստանեայց ըստ օտարազգի մատենագրաց ։ Միայն ուրեք ուրեք 'ի կրճատելն զվկայութիւնս 'ի մէջ բերելոյ՝ զանց առնէ դնել զկէտանիշս, որ սովորական նշան է կրճատելոյ, առ ամենայն մատենագիրս ընկալեալ. բայց մարթ է այսմ լինել և վրիպակ գրչաց կամ տպագրութեան ։ Յերկրորդում հատորի, գիրք Գ. գլ. 11. ստորագրէ և զՀայաստան. նախ զՄեծ Հայս յութ թուղթս, ապա զՓոքր Հայս 'ի մի թուղթ և կէս

ամփոփեալ. Նախ յիշելով զգաւառս, ապա զքաղաքս և զաւանս միանգամայն, որչափ և որպէս յիշատակին առ Նախնիս Յունաց և Հռոմայեցւոց։ Ի տպագրութեան անդ Լիբանիոյ 1773, և անդ Շլպերց անուն Գերմանացւոյ յաւել ուրեք ուրեք վերլուծութիւն, այլ համառօտ յոյժ։ Կեր-լարիոս ունէր 'ի մտի յօրինել և զայլ աշխարհագրութիւն միջին դարու անուանեալ ժամանակի. այսինքն է՝ աշ-խարհագրութիւն հանեալ 'ի գրոց Նախնեաց որ յետ մեծին Կոստանդիանոսի. բայց առ կանխեալ օրհասին իւրոյ ոչ կա-րաց. միայն զաշխարհացոյցս այնր ժամանակին էր գծա-գրեալ, զորս գտանեմ եդեալ յետակայս երկրորդ հատո-րոյն։ Մատեանս այս առաւել պատուական և պիտանի լինէր. զի և մատենագիրք մեր առհասարակ են յայսմ մի-ջին աւագեալ դարու կամ ժամանակի. և այս է յորմէ զրկեալ կան առհասարակ եւրոպացիք, թէպէտ և բազ-մատեսակ գրեանք յղփացեալք. քանզի ոչ ոք իշխեաց մինչև ցայժմ միջամուխ լինել յայս գործ տաժանելի. զի զհամօրէն աշխարհի զաշխարհագրութիւն այնր ժամանակի պարտի հանել 'ի մատենագրաց և 'ի մի հաւաքել. թէպէտ աշխատեցան ոմանք, այլ մասնաւոր աշխարհաց եթ։

## ՍԷՆ ՄԱՐՏԷՆ

Յառաջադիմս նշանաւորեալս հայկական բարբառոյս 'ի վերջին ժամանակս յաւուրս մեր՝ սա առաւելու քան զամենեսին. որ և 'ի յիշատակարանի իւրում տպագրեալ 'ի Փարէզ 1818. բաց յաշխարհագրութեան Խորենացւոյն և Վարդանայ, զորս յիշեցաք 'ի վերոյ, ինքն յօրինեալ ունի զգաղղիարէն աշխարհագրութիւն հայաստանեայց 'ի Ա. հատոր. 'ի թղթ. 17։ Ուր եթէ 'ի գրոց մերոց ժողովեալ առաջի դնէր պարզմտութեամբ զգաւառս, և ըստ նոցին զքա-ղաքս և զաւանս և այլն՝ լինէր գործ պիտանի վասն եւրո-պացւոց. այլ զի ըստ մտաց իւրոց առաջնորդեալ բա-զում ինչ կամեցաւ յիւրմէ որոշել կամ մերժել, 'ի բա-զում սխալանս անկաւ։ Առաջին պակասութիւն այսր գոր-ծոյ նորա է, զի զատորագրութիւն հին և նոր հայաստա-նեայց խառնէ 'ի միասին. յորմէ և բազում շփոթութիւն գտանի 'ի նմա, զորս երկար լինի յիշել առանձին։ Երկ-րորդ, բազում ուրեք իշխէ համարձակ ջնջել և որոշել զորս են անորոշ և երկբայական. զոր օրինակ 'ի թղթա-համարն 106. գտանես քաղաքս որ 'ի նոր հայաստան՝ հա-

մարձակ նախայաջուցանէ ընդ Խնուս անուն տեղւոյ հին հայ-
աստանեայց, որոշէ նաև զՀին գաւառ նորա ըստ Տուա-
րածատափ գաւառ Տուրուբերան նահանգին, որ չէ այն-
պէս: Եւ երրորդ՝ զի զոր ինչ գտանէ գրեալ առ մատենա-
գիրս արաբացւոց վասն տեղեաց մերոյ աշխարհին՝ իբր ուղ-
ղագոյն և ստուգագոյն նախադասէ, քան զմեր մատենա-
գրացն. և զգրեալս մերոցն եկրոտի ըստ նոցա յարմարել:
Մեք այնպէս գիտեմք, թէ ամենայն ողջախորհուրդ քննու-
թանից սկիզբն է և օրէնք՝ զիւրաքանչիւր ազգաց պատմութի
և զաշխարհագրութի և զանուանս մարդոց և տեղեաց՝ հա-
նել առնուլ ՚ի հաւատարիմ պատմագրաց և յաշխար-
հագրաց նոյն ազգին. իսկ զպատմեալս յօտարազգի պատ-
մագրաց՝ ջանալ յաւէտ համաձայնել ըստ կարի ընդ
պատմագիրս սեփականս ազգին: Այլ սկիզբն Սէն Մար-
տէնի ընդ հակառակն տեսանի ՚ի պատմականս և յաշխար-
հագրականս մերոյ ազգին. զի զոր ինչ պատմեն օտարազ-
գի մատենագիրք՝ մանաւանդ արաբացւոցն վասն մերոյ
աշխարհին՝ ընտրելագոյն և առաջին դասէ քան զմեր մա-
տենագրաց. գուն գործէ բանիւք նոցին զմերսն ուղղել,
և զնոցայն հաւատարմագոյն ցուցանել. ոչինչ ածեալ
զմտաւ թէ արաբացւոց մատենագիրք օտար են, և ժաման-
նակաւ իսկ յետոյ քան զմերսն. զի նոցայն սկսանի յութե-
րորդ դարու, իսկ մերն ՚ի հինգերորդ դարու: Ի հաստա-
տութիւն այսորիկ՝ թողեալ զգրեալսն նորա յիւրում աշ-
խարհագրութեան, բերցուք զոր ինչ գրէ վասն մերոյ ստո-
րագրութեան մեծին Հայոց ՚ի բանասիրական օրագրութեան
Փարիզու յամին 1828. յամսեանն սեպտեմբերի. գաղ-
ղիարէն անուանեալ ժուռնալ տէ սավան:

Գրէ անդ վասն մեր՝ թէ մեք ՚ի ստորագրելն զմեծ
Հայս՝ միայն ՚ի մատեանս Յունաց և հռոմայեցւոց հայե-
լով հանեալ եմք զտեղեկութիւնս, և ոչինչ ՚ի մատեանս
արաբացւոց և Պարսից: Ո՞ր չէ այնպէս. զի որպէս աս-
ցաք ՚ի վերոյ՝ բաց ՚ի թարգմանեալ գրոց արաբացւոց յեւ-
րոպերէն լեզուս՝ որ ինչ այլ տեղեկութիւնք գտանէին առ
մատենագիրս նոցա վասն հայաստանեայց՝ ունէաք առ
մեզ ՚ի Կոստանդնուպոլիս ՚ի ձեռն տեղեկագունի ուրուք
թարգմանեալ ՚ի հայերէն. այլ առ դուզնաքեայ հմտութեան
՚ի նոսա լինելոյ, և այն վասն յետագայ ժամանակի, և մեք
դոյզն ինչ բան քաղեցաք ՚ի նոցանէ. նմին իրի վայրապար
է ասել թէ օգուտ բազում լինէր մեզ, եթէ առընթեր
կային մեզ տեղեկութիւնքն այնորիկ. որպէս ասէ ինքն:

Գրեալ է մեր 'ի տառադարձութեան մեծին Հայոց 'ի Թղթ. 86. Թէ զոր Խորենացին գրէ վասն Վաղարշակայ՝ ընդ իշխանութեամբ բդեշխին Աղձնեաց տուեալ նաև զԿղզեռուրն ամենայն, է այն երկիր՝ զոր Յոյնք կոչեն Գելիսիրիա, որ Թարգմանի Խորին Ասորիք. և 'ի գիրս Մակաբայեցւոց մերքն Թարգմանեն Ստորին Ասորիք. և յայսմ ոչ խաբեցաք 'ի Թարգմանութենէ Վիտղմեանց որպէս վճռէ նա ինքն. որք զԽորենացւոյն Կղզեռուրն Թարգմանեցին Գելիսիրիա. այլ զի բան Խորենացւոյն յայտնի զայս ցուցանէ: Բայց ինքն Սէն Մառտէն բազմօք ընդդիմանայ այսմ, Թէ իշխանն Աղձնեաց զիա՞րդ կարէր իշխել յայնչափ հեռաւոր սահմանս: Սակայն անկ էր նմա զայն յուշ առնել, Թէ ընդ իշխօղն ոչ էր իշխանն Աղձնեաց, այլ Վաղարշակ պարթև Թագաւոր մեծազօր, որ իշխէր ոչ միայն արևմտեայ մասին Ասորւոց, այլ առաւել հեռագոյն սահմանին Պաղեստինու, որպէս ասէ Մարիբաս, յորմէ առնու և Խորենացին. տես 'ի մեծ Հայս 86: Արդ հարկ էր Վաղարշակայ կացուցանել զոմն իշխան 'ի վերայ սահմանացս այսոցիկ, բայց չիք ինչ յիշատակութիւն, եթէ ոչ այն՝ զոր 'ի վերայ եդաք, Թէ իշխանին Աղձնեաց ետ նաև զԿղզեռուրն ամենայն. որ է յայտնի տառադարձեալն առ մեզ Գելիսիրիա անուան. և բդեշխին այն քանզի մեծ էր իշխանութիւն՝ զայլ ոք 'ի նախարարաց 'ի հարկէ առաքէր անդր. և այնպէս ինքն առ Տիգրիսիւ նստեալ՝ կարող էր կառավարել զորս էին առ Որոնդիս գետով, ոչ ինքնին՝ այլ 'ի ձեռն այլոյ իշխանի որ ընդ տէրութեամբ իւրով. այնպէս որպէս կառավարէին յայնժամ զՊաղեստին զառաւել բացակայ սահմանն. և այս յայնչափ ժամանակ՝ ցորչափ տևեաց այն ընդարձակ տէրութիւն մերոցն: Զայսպիսիս բազում ընթերցեալ էր Սէն Մառտէն 'ի նախնի պատմութիւնս Հռոմայեցւոց, և այլոց ազգաց. յորոց ընդարձակ սահմանս տէրութեան գտանէին այնպիսի իշխանք՝ որոց իշխանութիւն ձգէր 'ի լայնածաւալ երկիրս, զորս և կառավարէին 'ի ձեռն այլոց զանազան իշխանաց փոքունց ընդ իւրեամբք եղելոց. ապա ընդէ՞ր է նմա այնչափ դժուարահաւան գտանիլ յորժամ զնմանն բանս տեսանիցէ 'ի պատմութեան ազգիս Հայոց: Գրէ և վասն մեր, որպէս Թէ զԱղձնեաց նահանգն ձգեալ իցեմք 'ի Տիգրիսէ մինչև ցՈրոնդիս գետ. զայս չէ մեր գրեալ ուրեք, այլ Թէ բդեշխին Աղձնեաց էր յանձնեալ իշխել նաև 'ի վերայ Կղզեռուրայ, այսինքն է Գելիսիրիոյ. զի ինքն Խորենացին է որ այսպէս

գրէ։ Այլ ինքն Սէն Մառդէն սխալի յորժամ 'ի պատ-
մութիս արաբացւոց գտեալ նեղ անցս կամ կիրճս Ճա-
նապարհի, կոչեցեալ Տէրպէնտ եւ Դուռն առ Նինուէիւ,
մինչեւ ցայն վայր տարածէ զսահմանսն Աղձնեաց, ընդ իշ-
խանութեամբ բդեշխին Աղձնեաց համարելով զայն կիրճ. որ
օտար է յամենայն պատմութեանց։ Սխալի դարձեալ եւ
զայլ բան ածեալ 'ի մէջ, առեալ 'ի բանից մերոց. քանզի
զի մեք 'ի նոյն թղթահամարն 86. 'ի քննութիւն մատու-
ցեալ թէ Կղեաուր անուամբ զինչ պարտ է իմանալ, յի-
շատակեալ եմք զԳլխաւոր տեղիս որք գտանին 'ի գիրս
Պրոկոպիոսի. բայց տեսեալ թէ այս չէ անուն սեփական
ուրուք տեղւոյ՝ կամ ուրուք աշխարհի, այլ յայս անուն
կոչէ նա զամենայն նեղ անցս կամ զկիրճս ճանապարհի եւ
զկապանս, 'ի բաց թողումք։ Իսկ Սէն Մառդէն իբր յիւր
մէ գտեալ առ Պրոկոպիոսի, զայսուիկ հաստատէ լինել
Կղեաուր անուանեալն 'ի Խարբերդացւոյն, եւ ոչ զԳեղխի-
րիայն. եւ 'ի պատճառս այսորիկ յերկարեալ զբան իւր՝ յիշէ
զայլ եւ այլ կիրճս կամ կապանս յիշատակեալս յաւէտ 'ի
գիրս արաբացւոց, որք ոչինչ իւիք վերաբերին յայս բան։
Այլ թէ քանի ընդդէմ է պատմութեան ազգիս եւ անտեղի՝
իշխանին Աղձնեաց իշխել եւ կառավարել զերկիր Խնչ, որք
էին 'ի սահմանս այլոց զանազան իշխանաց՝ Սիւնեաց,
չորրորդ Հայոց, Գուգարաց եւայլոց, թող քննեսցեն
հմուտք ազգիս։ Քանզի օրինակի աղագաւ՝ բդեշխն Գու-
գարաց զկիրճս ճանապարհաց, որք գտանէին 'ի սահմանի
իւրում, զիա՞րդ թողոյր 'ի ձեռս օտար իշխանի ուրուք՝
որպէս էր բդեշխն Աղձնեաց՝ գալ կամ իշխանս առաքել
'ի կառավարել, կամ 'ի պահպանել. եւ զի՞նչ յարմարութիւն։
Համարձակի դարձեալ Սէն Մառդէն զբան Թովմայի ար-
ծրունւոյ եդեալ 'ի մէնջ 'ի մեծ Հայս 'ի թղթ. 135. յա-
րում յիշի 'ի Ղեաուրս Ջերմաձորոյ, վճարել եւ ասել, թէ 'ի
բնագրին էր 'ի Կղեաուրս Ջերմաձորոյ, եւ գրչաց մոռացմամբ
անկեալ է առաջին տառն. եւ ասէ վասն մեր թէ խնճի-
ճեանն չկարաց իմանալ թէ էր նոյն ինքն Կղեաուրն, զոր
մէ է խնդիրն, որ ասէին վկայութեամբ Թովմայի՝ կատարեալ
որոշեալ է ասէ։ Այլ որ ասեմք, թէ 'ի մատենագրել մեր
զպատմագրութն մեծին Հայոց՝ քանզի մի միայն օրինակ էր
առ մեզ Թովմայի արծրունւոյ, զայդ դատաստան չմարթ-
էր մեզ առնել. թող զի եւ որ այժմ կայ առ մեզ եւ երկ-
րորդ օրինակ նորին մատենագրի՝ նոյնպէս ունի 'ի Ղեաուրս,
եւ ոչ 'ի Կղեաուրս։ Դարձեալ, ընդէ՞ր չասիցեմք թէ առ-

վէն անուամբ զայլ տեղի իմանայ մատենագիրն. Թող զայլ անտեղութիւն որք զհետ գան, եթէ անդ զնոյն անուանն՝ կղեաուր իմացուք:

Յետ զայս աւարտելոյ սկսանի գտանել ինչ ինչ և 'ի Փայտակարան նահանգի ասելով. եթէ Խնձիձեանն ունէր 'ի ձեռին զմեր յիշատակարան աշխարհագրութե, ոչ տագնապէր գտանել զդիրս քաղաքին և նահանգին Փայտակարանի, զոր ընդունայն յուզէ, ասէ, ընդ համօրէն արևելեան հայաստան. այլ գտանէր անշուշտ՝ թէ այս Փայտակարան քաղաք է Պայլականն, ծաղկեալ 'ի տասներորդ դարուն, և յաճախ յիշատակեալ առ արաբացի և պարսիկ մատենագիրս: Այս որ համառօտիւ ասասցուք: ԶՊայլիգանն կամ ԶՊէյլէգանն յիշեալ է և մեր 'ի Նոր Հայաստանն 'ի Թղթ. 272. և եդեալ 'ի տեղւոջ իւրում, ուր կայ մինչև ցայժմ, որ ըստ հին աշխարհագրութե հայաստանի անկանի 'ի Սիւնիս: Արդ չկցէ վրիպակ մեծ անդ 'ի Սիւնիս դնել զՓայտակարան. զի Փայտակարան ըստ խորենացւոյն անկանի 'ի սահմանն՝ որ յետ խառնման Կուր գետոյ յԵրասխ՝ և յԵրասխայ անտի ձգի մինչև 'ի ծովն կասպից. իսկ Պայլականն ասացեալն Սէն Մարդէնի է 'ի սահմանին՝ որ նախ քան զխառնումն Կուր գետոյ յԵրասխ: Արդ ո՞ յանձն առնուցու զայդ շփոթութի տեսանել յաշխարհագրութե 'ի կողմանէ գրից տեղեացն՝ նոյն համարել զՊայլականն և զՓայտակարան սակս փոքր մի նոյնահնչիւն գոլոյ նոցա: Ո՞ւր թողցուք, զի Սէն Մարդէն չէ իմացեալ ամենևին զտարակուսանս իմ, զոր ինքն ընդունայն կոչէ: Իմ ոչ եթէ տարակուսեալ ինչ է վասն գտանելոյ զդիրս քաղաքին և նահանգին Փայտակարանի, որպէս ինքն կարծէ. քանզի յայտնի է մեզ դիրք Փայտակարան նահանգին, որպէս կարես տեսանել 'ի մեծ Հայս 318. 319. յորում էր և քաղաք իւր համանուն. այլ ընդ այն եմ տարակուսեալ՝ թէ զի՞ է զի զՓայտակարան քաղաքն (և ոչ նահանգն) զոր առաջին պատմագիրք մեր 'ի համանուն Փայտակարան նահանգի ասեն լինել՝ յետագայ պատմաբանք նոյնացուցանեն ընդ Տփխիս քաղաքի, որ հեռի է յոյժ. տես 'ի մեծ Հայս 'ի Թղթահամարն 327: Այլ յաւարտ բանիցս զայս ասեմք, թէ չէր արժան Սէն Մարդէնի հմտագոյն ցուցանել զանձն յաշխարհագրական իրս հայաստանի քան զմերն ազգայինս Հայոց, և ուղղագրել զհինն հայատան. զի ոչ ապաքէն 'ի վեր քան զկար ձեռնամուխ լինել իցէ՝ թէ մեք զհինն Գաղղիա ուղղագրել կամի-

ամենայն ուղեակք քաջ գիտեն, թէ 'ի համօրէն պատ-
մութեան ազգին մերում զարմանալի է պատմութիւն սկըզ-
բնաւորութեան ազգիս սակս ունելոյ զամենայն նշանս ճշմար-
տապատում ստուգութեան։ Մի՛ զի զոր ինչ պատմէ վասն
աշտարակաշինութեան, վասն ցրուելոյ մարդկան և վասն
բանաւորութեան հսկային Նեբրովթայ, ամենայնիւ համա-
ձայնի սուրբ գրոց։ Եւ երկրորդ՝ զի ոչինչ հրաշալիք գտա-
նին 'ի նմա, ոչ սերունդք աստուածոց, կամ օտարոտի դի-
ցաբանութիւնք, որ ըստ ասելոյ Կիկերոնի՝ հասարակ իմն է
'ի պատմութիւնս սկզբնաւորութեան ամենայն ազգաց։ Սէն
Մարդէն փոխանակ զայս ցուցանելոյ եւրոպացւոց, և
յայս մտադիր առնելոյ զնոսա, առաւել ինչ պատճառի
թերահաւատել ուսուցանէ նոցա։ Եւ ընդ այն եմ զար-
մացեալ՝ զի թէ պատմօղն լինէր Խորենացին եւեթ, ըստ
իւրում բնութեան անկ էր նմա թերահաւատել, զի չունի
ինչ համարումն 'ի վերայ մատենագրաց ազգիս, որպէս
ասացաք. այլ դուցէ չէ յուշ ածեալ թէ պատմօղն սկըզ-
բնաւորութեան ազգին մերոյ է Մարիբաս, որ ասորի է ազ-
գաւ և ոչ հայ. մանաւանդ թէ քաղդէացի մատենանն է.
զի էր քաղդէարէն յօրինեալ ընդհանուր պատմութիւն
այնչափ ճշմարտապատում՝ մինչև մեծին Աղեքսանդրի
տալ թարգմանել զայն յունարէն։ Արդ՝ ինքն Սէն Մար-
դէն որպէս 'ի վերայ արաբացւոց ունի վարկումն մեծ,
նոյնպէս և 'ի վերայ քաղդէացւոցն պարտ էր ունել. որով
և 'ի վերայ պատմութեան սկզբնաւորելոյ ազգիս և աշխար-
հիս, և ոչ թէ արհամարհութիւն։

Իզուր դարձեալ զոր ինչ գրէ և վասն սկզբնաւորութեան
Աղուանից։ Մերս Խորենացի, որպէս յայտ է, զԱղուանս
գաղթականս ասէ լեալ 'ի Սիսակայ՝ որ 'ի սերնդոցն մե-
րոյն Հայկայ. բայց Սէն Մարդէն 'ի թղթ. 215. թէ-
պէտ այսպէս է, ասէ, վկայութիւն Մովսէսի Խորենացւոյ,
"այլ յոյժ դժուարին է հաւատալ՝ թէ Աղուանք կամ
Ալպանեանք զմի և զնոյն ծագումն ունիցին ընդ Հայս"։
Պատճառ այսմ բերէ մի զի Հայք բազում ժամանակօք
յառաջ ձևացեալ էին ազգ ինչ զանազանեալ յոյժ յԱ-
ղուանից. և զի զԱղուանս հաւանական մտօք 'ի դէպ է,
ասէ, դասել ընդ բազմաթիւ ժողովուրդս բարբարոսաց
ցրուելոց 'ի լերինս Կովկասու, զորոց զծագումն անհնա-
րին է մեզ որոշել։ Երկրորդ պատճառ դնէ զտարբերու-
թիւն լեզուի. "Մի յառաւել զօրաւոր պատճառաց,
ասէ, զոր մարթ է բերել ընդդէմ կարծեաց՝ որք զԱ-

ղուանս առեն լինել հաստատած ինչ Հայոց ազգին, է սար-
գերութիւն լեզուաց զոր 'ի կիր առնուն այս երկու ժողո-
վուրդք»։ Մանաւանդ զի Խորենացին Գ. 54. կոչելովն
զԱղուանից լեզուն «Կոկորդախօս, աղխազուր, խժական,
խեցբեկագոյն», ցուցանէ, ասէ, թէ լեզուն Աղուանից
կարի իմն տարբեր էր 'ի լեզուէ անտի սերնդոցն Հայկայ։
— Բայց զայն ոչ ցուցանէ թէ ո՞ 'ի հնագրաց ունի ե-
դեալ կանոն, թէ գաղթական իւրաքանչիւր ազգաց 'ի
սկզբան անդ ունին լինել. իսկ յետ բազում ժամանակաց
անցելոց ոչ. և զիա՞րդ չէ յուշ ածեալ զգաղթականս իւ-
րոյ ազգին 'ի Սան Տօմէնիգօ կղզին և յայլ Նորագիւտ
երկիրս, որպէս և զանգղիացւոցն 'ի Հնդիկս, որք եղեն
'ի վերջին ժամանակս, բազմօք զկնի ձևանալոյն ազգին
գաղղիացւոց և անգղիացւոց։ Եւ ո՞ է եդեալ զմիւս կա-
նոնս 'ի հնագիրս՝ թէ գաղթականք իւրաքանչիւր ազգի
պարտին խօսել զմի և զնոյն լեզու՝ յորոց հաստատեալ գը-
նացին։ Պարտ էր նմա յիշել որ ինչ եղև 'ի ժամանակս
աշտարակաշինութեան. քանզի յետ խառնելոյ և բաժանե-
լոյ առաջին լեզուին նոցա՝ ելեալ 'ի Սենաարայ ընդ զանա-
զան կողմանս աշխարհի հաստատեալ գնացին ամենայն
ժողովուրդք և ազգք՝ որք գտանին ընդ համօրէն աշխարհ,
որպէս յայտ առնեն սուրբ գիրք. բայց քանի՞ լեզուք ծը-
նան 'ի Սենաար, և քանի՞ լեզուք տարբերք և յօրինա-
թիւք գտան՝ և այժմ ևս գտանին յաշխարհի՝ որք ոչ
լսէին 'ի Սենաար։ Ապա ըստ իւրումն ձևանորինելոյ պարտ
է զլանալ նաև զծագումն այսց ժողովրդոց լինել 'ի Սենաա-
րայ ընդդէմ սուրբ գրոց։ Ոչ գիտէ ևս թէ զնոյն մակ-
գիրսն զոր տայ Խորենացին լեզուին Աղուանից՝ զնոյն
տան մեր պատմաբանք նաև լեզուաց ինչ՝ որք գտանէին
'ի կողմանս ինչ Հայաստանեայց. թէպէտ և լեզու նոցա
էր հայկական։

Ի վերայ այսոցիկ թերութեանցս յաւելու և զայլ ինչ.
այն է անձին սեփականել և իբր յիւրմէ գտեալ զայն
ինչ՝ զոր այլք բազմօք յառաջ քան զինքն գտեալ են։
Օրինակի աղագաւ 'ի նախագրեալ օրագրութեան ցուցա-
նէ թէ ինքն գտեալ իցէ զԱմիդ քաղաքն ընդ Տիգրանա-
կերտի նոյն լինել. զոր բազմօք յառաջ արձանագրեալ
են մերքն 'ի բառարանի յատուկ անուանց. և յաշխարհա-
ցոյցն Հայաստանեայց փորագրեալ յամին 1751. նոյնպէս
և 'ի պատմագրութեան ազգիս Հայոց։ Իսկ 'ի տետրակս
զորս եհան վասն Քրօնիկոնին Եւսեբեայ՝ իբր յիւրմէ գը-

չեղեն զՀեռ՝ և ոչ իսկ 'ի միտս նոցա անկաւ քննել և իմանալ զնախնի տեղեկութիւն այնր աշխարհի՝ ուր բնակեցան և բազմացան որդիք և թոռունք Նոյի, որ էր հինն Հայաստան․ ոչ աշխարհին և ոչ հին անուանցն և գաւառաց նորա, յորոց ոչ սակաւք մնացին պահեսն զանունն։ Քանզի սովորութիւն էր առ նախնի նահապետօ՝ կամ յանուն իւրեանց, և կամ յանուն որդւոց իւրեանց կոչել զանուանս տեղեաց յորս բնակէին։

Երկրորդ՝ այսպէս անգէտ մնալով սոցա հնագրութեան աշխարհին մերոյ և ազգի՝ զՀայս ոչ գտեն և ոչ յիշեն 'ի կարգս նախնի ազգաց, այլ զՀրեայս, զարաբացիս, զփիւնիկեցիս և զԱսորիս։ Յաւելէ և 'ի գտանելն 'ի հին անուանս կամ ըղմերձաւորութիւն ինչ հեռաւոր՝ և կամ նշանակութիւն ինչ 'ի լեզուս այսոցիկ ազգաց, իսկ և իսկ վճռեն 'ի լեզուաց նոցա ածանցեալ․ թէպէտ և այն տեղի ոչ է յաշխարհի նոցա․ որպէս վասն Հայկ տեղւոյն հայաստանեայց ասեն նշանակել բազմութիւն, ըստ որում Հրեայք այնպէս անուանեն զբազմութիւն․ զԱրարատն թարգմանեն անէծք սասանման 'ի Հրէից լեզուէ ածանցեալ կարծելով։ Սորին աղագաւ պարտ է կարի իմն մտադիր լինել և վերայ հին անուանց մարդոց և տեղեաց՝ զորս տեսա 'ի մէջ բերեն․ զի արդի հնագիրք չխնդրեն այնչափ ինչ ճշդութիւն 'ի ստուգաբանութիւն հին անուանց, այլ նաև զհեռաւոր ինչ նմանութիւն բառական համարին։

Երրորդ՝ անծանօթ լինելն այժմեան քաջ հնագիտացն եւրոպացւոց պատմութեան և աշխարհագրութեան հին հայաստանեայց՝ պատճառ տայ անկանելոյ յայլ իմն վրիպակ մեծ, այսինքն է՝ գտանել պակասութիւն և սխալ առ նախնի մատենագիրս Յունաց և հռոմայեցւոց անդ՝ ուր չէր նոցա սխալեալ։ Զայս ցուցցուք օրինակաւ։ Անգղիացի հեղինակք ընդհանուր պատմութեան սխալեալ ասեն զնախնիս՝ որք զՓասիս գետոյն գրեն բղխեալ 'ի հայաստանեայց․ զի այժմ տեսանեմք ասեն բղխեալ զնոյն գետ 'ի կովկասեան լերանց։ Զայս ասացին, զի ոչ գիտացին թէ Փասիս գետ նախնեաց ոչ է այժմեան Ֆաշ գետն, որպէս եւրոպեանք համարեցան՝ սխալեալ 'ի մերձաւորութենէ անուանց, այլ է այժմեան Ճորոխ գետն, որպէս յայտնի ցուցանէ ստորագրութիւն ընթացից հին Փասիս գետոյ՝ զոր նախ-

իւքեանց անկանելն աստանօր կարծիք և դրութիւնք նոցա առաջի իմաստնոց։

տեղեկութիւն նորա յայլ իմն ճանապարհ մոլորեցոյց զմիտս 'ի գերև հանեալ զպիտանութիւն. զի առաջին իւր դնէ խօսել զաշխարհէ ինչ և զհին բնակչաց նորա՝ որում չէր անհնարին ծանօթ ոչ աշխարհին՝ որ էր հինն Հայաստան, և ոչ լեզուին: Յաւելլ 'ի վերայ և զմիւս պատճառ թիւ-րելոյ նորա. զի զբան Ստրաբոնի՝ թէ լեզուն Հայոց ունի նմանութիւն կամ մերձաւորութիւն իմն ընդ Ասորւոց և ընդ արաբացւոց լեզուի՝ 'ի թիւրս առեալ, զոր ինչ անուն գը-տանէ մարդոյ կամ տեղւոյ յաւուրս նոյն նահապետացն առաջնոց՝ որ ունի ինչ մերձաւորութիւն ունիցի կամ ընդ արաբացւոց և կամ ընդ Հրէից լեզուի՝ թողու զՀայաս-տան, և երթեալ խնդրէ զայն գտանել յԱրաբիա կամ յաշխարհին քաղդէացւոց՝ ուր էին Հրեայք նախ քան զԱբրահամ: Եթէ գտանէ զայն անուն նշանակեալ 'ի բար-բառ արաբացւոց, իսկոյն զայն տեղի առնէ լեալ յԱրա-բիա կամ 'ի մերձակայս նորա. ուր նախնի նահապետքն ժամանակին այնորիկ հովիւ շրջեալ և լեալ էին զՀայ-աստան և զշրջակայս նորա, և ուր Արաբիա, և խաղալ գնալ նոցա յայնչափ հեռաւոր վայրս: Եւ դարձեալ առ 'ի գտանել զնշանակութիւն արաբացի և եբրայական բա-ռի՝ բաւական է նմա հեռաւոր ինչ ստուգաբանութեան կամ նմանութիւն ինչ 'ի միում վանկի: Վասն որոյ իմաստունք վասն այսր գրոց նորա՝ կոչեցեալ Սրբազան աշխարհա-գրութիւն, լի է ամեն մտացածին ստուգաբանութեամբք: Եթէ տեղեակ լինէր սա լեզուի մերում և աշխարհա-գրութեան որչափ ինչ եղեն 'ի ժամանակիս ոմանք յեւրոպա-ցւոց, զայլ կերպարան զգենոյր մատեան նորա և 'ի յար-գի լինէր ամենեցուն: Բայց յայսմ ամենայնի վերայ այս գործ Սրբազան աշխարհագրութեան Բոշարայ պիտանի է ամենեցուն վասն նոյեան ժամանակի. ոչ վասն ամե-նայն կարծեաց նորա, այլ վասն գտանելոյ զբանս նախնի մատենագրաց, զորս հաւաքեալ գտցես 'ի նմա զամենայն յիւրաքանչիւր խնդիրս, որչափ ինչ գտանին գրեալ առ Հրեայս, առ արաբացիս, առ Յոյնս և առ Հռոմայեցիս. և է իբր գանձարան վկայութեանց նախնեաց, յորմէ առ-նուն զրեթէ ամենայն յետագայք 'ի խօսել զայնմ ժա-մանակէ:

Սոլչեր Օփոռինոս: Բաց յայլ գործոց ունի ընդհա-նուր պատմութիւն և մեկնութիւն սուրբ գրոց առհասարակ: Հմտութիւն սորա թէպէտ ոչ հասանէ 'ի չափ հմտութեան Բոշարայ, ոչ ըստ լեզուագիտութեան արեւելեան ազգաց,

և ոչ ըստ տեղեկութեան այնչափ գրոց նախնեաց, բայց յայսմ առաւելու քան զնա և քան զայլս բազումս, զի զցրուել ազգաց Նոյի հին եղեալ առաջի ՚ի մեկնութեան անուն ծննդոց, նովին հիմամբ յառաջ խաղայ ՚ի պատմութեան իւրում։ Որովհետև, ասէ, բնականն առաջին նահապետաց սկսեալ ՚ի Նոյէ ՚ի Հայաստան երկրէ, եթէ զայն մինչ յիշատակարան վասն այսր՝ անդ ՚ի Հայաստան պարտ է խնդրել և գտանել զանուանս և զտեղիս առաջին նահապետաց։ Զայս դնելով իւր հիմն՝ բազում ինչ գրէ որ մերձենայ ՚ի ճշմարտութիւն՝ համաձայնելով աշխարհագրութեան և պատմութեան ազգի մերում, և բազում ուրեք ուղղէ զՊօշար։ Անմեղայն յետագայ մատենագիրք եւրոպացւոց որք ոչ կարէին զարտուղին ՚ի հետոց պատմութեան ազգիս, և յորս ունայնին նախնականի հիմունք որպէս ՚ի Կալմէթ՝ զպատճառս բանից իւրեանց առնուն ՚ի Կալմէթայ. որպէս և որք յեբրայեցւոց և յարաբացւոց պատմութեան չխոտորին շատ՝ ՚ի Պօշարայ առնուն։ Այլ ցուցէ մեզ այն՝ զի անծանօթ գոլով Կալմէթի բնաւին աշխարհագրութեան և պատմութեան ազգիս՝ սխալի ՚ի նշանագրելն զանուանս տեղեաց. զորս ուղղագրեալ և յարմարեալ գտանեն բազում ուրեք ՚ի մատենին յայս։

Զայսչափ ինչ տեղեկութիւն վասն երկուց մատենագրաց՝ որք երևելի եղեն ՚ի խնդիրն որ յաղագս ցրուելոյ՝ տեղափոխութեան և գաղթականաց յաւուրս Նոյի և որդւոց և թոռանց նորա՝ քաջ ՚ի միտ առեալ, կարես իմաստասիրել թէ զինչ արժան է առնել վասն այլոց հնագրաց, որք համարձակ մտանելով գրեցին զոր ինչ և կամեցան, սակս անտեղեակ գոլոյ աշխարհին՝ ուր բնակեալ կային նախնի նահապետքն, այսինքն է Նոյ և որդիք և թոռունք նորա։ Յորս Ռուտպէկ Օլաւս ազգաւ շվէտ, ՚ի լոյս հանեալ մատեան ինչ՝ այսպէս ունելով խորագիր Ատլանտիք բնակարան և հայրենիք սերընդոյն Յաբեթի, որոշէ զամենայն որպէս և կամի. որ և զովեալ է յոմանց, որպէս և ՚ի Վիւէյ բնագրանէ ՚ի ճառեն իւրում զմարդոյ և ընդսփռելոյ ամենայն մարդոյն։ Բայց Լամպլէ[1] ՚ի գրելն թէ անուանս Թուղլիս քանզի ՚ի բարբառ փիւնիկեցւոց նշանակէ երկար գիշեր կամ խաւար, համարեցան փիւնիկեցւոց նաւարկեալ մինչև ՚ի Թուղլիս կղզի և այսպէս անուանեալ.

1 Ի գիրսն որ յաղագս ուսմնելոյ զպատմութիւն. հատոր Ե. Թղթ. 142. տպ. Փարիզու ՚ի 1772։

միայն թէ առ 'ի որոշել զայս Թուղիս կղզի տարաձայնեն մատենագիրք. զի ոմանք եդին լինել Աքանտինաւիա, այլք Իսլանտիա, և կէսք Շէդլանտ, ապա ասէ. "Են և բազում մատենագիրք՝ որք գուն գործեցին ցուցանել թէ Նորվեկիան և Շվէտն է հաւաստեաւ ոչ միայն Թուղիս կղզին, այլ նաև Ադլանտեան կղզին Պղատոնի։ Այս երկու իմն մտացածին ինչ, և մանաւանդ գործ Ռուտպէքայ, որ ակնդէ ցուցանել թէ գիրք Յունաց, դպրութիւք, արուեստ գրելոյ և այլ արհեստք ըստ մեծի մասին, հաւսկ ապա գրեթէ ամենայն գաղթականք Եւրոպիոյ՝ ելեալ են յաշխարհէ աստի,,. Ի կարծեաց աստի Ռուտպէքայ թուի ինձ այնպէս՝ իբր թէ Նոյ նահապետ յետ ջրհեղեղին զամս 350 յորս եկեաց՝ ճանապարհորդեաց նաւարկելով ընդ ծովեզերս, յիւրաքանչիւր աշխարհս հանելով գաղթականս 15 կամ 20 անձանց. զոր և մերժէ Լանկլէ անդանօր. և այլք յիմաստնոց գրեալ են վասն այսր մատենին Ռուտպէքայ, լի հմտութ՝ բայց լի և ծանրաբեռնեալ օտարախորհ կարծեօք։ Քանզի տարադէպ իրք են տեսանել զայս բազմահմուտս, որոց ընդ գրելն վասն հնութեան նոյեան ժամանակի՝ առ պակասութեան տեղեկութեան նոյեան աշխարհի, որ էր հինն Հայաստան, յօտար սահմանըս յածեալ շրջին, յօտարոտի կարծիս տատանեալ, որք բոլորովին հեռի են 'ի ճշմարտութենէ զոր սուրբ գիրք առաջի դնեն։ Ընդ սոսին տեսանեմ և զՄալդ Պրիւնն՝ զայլ տեղեակ աշխարհագրութե, բայց 'ի ճառեն յիւրում յառաջաբանութե զցրուելոյ նախնի նահապետաց՝ իբր ոչինչ համարեալ զՀայաստան, զի չուծէր ինչ ծանօթութե զհին Հայաստանեայց, ոչինչ խօսի զցրուելոյ մարդկան 'ի Հայաստան աշխարհէ 'ի շրջակայս նորա, և անտի յայլ և այլ սահմանս, որպէս բնիկ աղբիւրք պատմութեցն ցուցանեն. այլ 'ի հեռաւոր վայրս 'ի խնդիր ելեալ՝ զափանեալն անդ յիշէ. մինչև զցրուեալն 'ի Աքանտինաւիա և յԱդլանտեանս, որք են անորոշք. իսկ զոր սուրբ գիրք յայտնի որոշեն և յիշեն, ինքն զանց արարեալ անյիշատակ թողու։

## ՎԱԽՃԱՆ ՎԵՐՋԻՆ ՀԱՏՈՐՈՅ ՀՆԱԽՕՍՈՒԹԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

# ՑԱՆԿ

## ԳԼԽՈՑ ՄԱՏԵՆԻՍ

### ԳԼՈՒԽ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

### ԼԵԶՈՒ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ



### ԳԼՈՒԽ ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

### ԴՊՐՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԱՐՈՒԵՍՏՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ

### ԿՐՕՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ

## ԲԱԺԱՆՈՒՄՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ



## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐՐՈՐԴ

## ԱՇԽԱՐՀԱԳԻՐՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ

